# ՑԱՆԿ

# ՊԱՏՄՈՒԹԻՒՆ

# ԻՏԱԼԻԱՅԻ

ԻՍԿԶԲԱՆԷ

ՄԻՆՉԵՒ ՄԵՐ ՕՐԵՐԸ

ԳՐԵՑ

Հ. ՊՕՂՈՍ Վ. ՅՈՎՆԱՆԵԱՆ

ՄԽԻԹ. ՈՒԽՏԷՆ

ՎԻԷՆՆԱ

ՄԽԻԹԱՐԵԱՆ ՏՊԱՐԱՆԸ

ՌՑԺԳ. 1864

# ՅԱՌԱՋԱԲԱՆ



ԻՏԱԼԻԱ բոլոր Եւրոպայի մէջ իր բնական գե-ղեցկութեամբն ու բարեբերութեամբն առաջին տեղն ու կարգն ունենալէն զատ՝ Հռոմէական աշխարհակալ պետութեան կենդրոնն ըլլալուն՝ իր քաղաքային պատ-մութիւնն աշխարհքիս ընդհանուր պատմութեան ա-մենէն նշանաւոր ու գլխաւոր մասերուն մէկը կրնայ սեպուիլ: Ասիայէն դուրս ու ետքը՝ հին Եւրոպայի պատմութիւնը սկսուած ատեն՝ ամէն տեղերէն առաջ Իտալիա մեր բոլոր մտադրութիւնը կը գրաւէ: Աս մեծ թերակղզին խել մը ատեն մասնական կառավա-րութիւններու տակ այլ եւ այլ բախտեր ունենալէն ետքը՝ Հռոմայեցւոց աշխարհակալ պետութեան սկըզ-բնական ստացուածն ու արքունի կալուածն եղաւ: Թէպէտ եւ ասոնց ատենը Կարքեդոնացւոց եւ ուրիշ քանի մը ազգերու գնդերն ու բանակներն Իտա-

լիայի երկրին մէկ կամ մէկալ կողման՝ մինչեւ նոյն իսկ մայրաքաղքին տէրութիւնը գրաւելու համար մեծ մեծ պատերազմներ ըրին. սակայն Հռոմէական արծիւն ամէնուն գլուխը կոխեց, իր իշխող թեւերը բոլոր Իտալիայի վրայ տարածած պահելէն ետքը՝ անկից դուրս ալ շատ գաւառներ ու երկիրներ իր հովանւոյն տակն առաւ։

Բայց Հռոմէական աշխարհակալ պետութիւնը դարերու պտոյտին մէջ ընկղմելէն ետքը՝ Իտալիա ետեւէ ետեւ ուրիշ իշխողներ եկան ու այլ եւ այլ ազգեր մտան, մէկ տէրութիւնը մէկ քանիի բաժնեցին։ Մանաւանդ թէ չէ թէ միայն թերակղզիին այլ եւ այլ նահանգները, հապա այլ եւ այլ գաւառները՝ նոյն իսկ քանի մը քաղաքներն իրենց պզտիկ սահմաններովն առանձին տէրութիւններ կամ իրարմէ բաժնուած ու անկախ հասարակապետութիւններ եղան։ Անկից ետեւ այլ եւ այլ միապետութիւններ կամ թագաւորութիւններ հաստատուեցան։ Վերջապէս երբեմն աշխարհաց մայրաքաղաք ըլլող Հռոմայի հայրապետն իբրեւ կաթողիկէ եկեղեցւոյ գլուխը նոյն յաւիտենական քաղքին վրայ աշխարհական իշխանութիւն ընդունելէն ետեւ՝ բարեպաշտ վեհապետաց պարգեւատուութեամբը նաեւ թերակղզւոյն մէկ մասին ալ տէրն եղաւ։ Այսպէս Իտալիայի 24 միլիոնի չափ բնակիչքը՝ միալեզու եւ գրեթէ միակրօն ազգ մ'ըլլալով, քանի մը տէրութեանց տակ իրարմէ

բաժնուած ու առանց իրարու դաշնակից ըլլալու կը կառավարուէին։

Սակայն ութեւտասներորդ դարուն վերջերը Գաղղիացւոց մեծ Յեղափոխութեան փոթորիկները Թերակղզւոյն բոլոր քաղաքային հանգամանքը կերպարանափոխ ըրին։ Նոյն ժամանակները դրուած յեղափոխական կառավարութիւնները վերջանալէն ետքը՝ երկրին այլ եւ այլ կողմերն ըստ մասին հին վեհապետները հաստատուեցան, ըստ մասին ալ նոր վեհապետներ դրուեցան։ Բայց ետքի ատեններս նոր փորձերու ձեռք զարնուեցաւ աս բաժանուած տէրութիւնները միացընելու, մէկ երկիրն ու մէկ ազգը միակ թագաւորութիւն ու միապետութիւն ընելու։ Աս՝ կէս մը յաջողած փորձին կատարեալ յաջողութիւնն Իտալացւոց յուսալի՝ իսկ օտարաց շատ տարակուսելի ըլլալով, Իտալիա ալ դեռ իր վերջնական քաղաքային հաստատուն վիճակը գտնելու կը սպասէ։

Իտալիայի հանգամանքն աս ու այսպիսի ըլլալով՝ մենք անոր ընդհանուր պատմութիւնն ըստ կարի համառօտելով գրած ատեննիս՝ անոր վրայ մեր Ազգայնոց կատարեալ տեղեկութիւն մը տալու համար իր մէջն եղած գլխաւոր փոփոխութիւններն ու կառավարութեանց յաջորդութիւնները նշանակեցինք։ Իր սկզբնական պատմութեան համար, մանաւանդ Հռոմայեցւոց ստոյգ պատմութիւնները սկսելէն առաջ, հին մատենագրաց վաւերական վկայութիւննե-

րուն հետեւեցանք։ Անկից ետքը Հռոմայեցւոց Իտալիայի մէջ ըրածներն՝ ընդարձակ Հռոմէական պատմութեննէն իբրեւ արդէն Ազգերնուս ծանուցեալ տեղեկութիւններ՝ գրեթէ բոլորովին լռութեամբ անցնելով, ետքի դարերուն դէպքերը ճշդիւք բայց համառօտիւ քաղեցինք։ Իսկ վերջին ատեններու (60—70 տարուան) պատմութիւնն՝ եղած դէպքերն ընդհանուր Եւրոպայի վրայ քիչ շատ ազդեցութիւն ունենալնուն ու աւելի հետաքրքրական ըլլալնուն՝ քիչ մը ընդարձակ գրելը պատշաճ համարեցանք։ Կը յուսանք որ առաջիկայ աշխատութիւննիս, զորն որ առանց կողմնասիրութեան հաւատարիմ աղբերաց համեմատ գրելու ջանացինք, ազգային ընթերցողաց հաճելի ու ընդունելի ըլլալով՝ մեր փոքր աշխատութիւնն իր նպատակին կը հասնի։

# ՊԱՏՄՈՒԹԻՒՆ
# ԻՏԱԼԻԱՅԻ

## ԱՇԽԱՐՀԱԳՐԱԿԱՆ ՈՒ ՎԻՃԱԿԱԳՐԱԿԱՆ
## ՏԵՍՈՒԹԻՒՆ

### *Անուն, Սահմանք, Տարածութիւն:*

ՀԻՄԱԿՈՒԱՆ *Իտալիա անուամբ ծանուցուած երկրին հարաւային հրուանդանին կամ լեզուին հարաւային ծայրը միայն՝ (այսինքն Հռոմայեցւոց ատենը Պրուդդիում կամ Պրուդդիա ըսուած կտորը, ուր է հիմայ Անդրի Կալաբրիա,* Գալապրիա Ուլթերիօրէ,) *ի սկզբան անդ* Իտալիա *անունն ունէր, զորն որ առած էր* Իտալք *ըսուող ժողովրդէն, որոնք հոն Սիլէ լերան բոլորտիքն արջառ* (ἰταλός=*ցուլ. եզ. կամ յատկապէս* ἴταλος=*որթ) արածելու յարմար գետնին վրայ կը բնակէին ու հովուական կեանք կ՚անցընէին։ Քիչ մը ետքը (իբր* 400 *տարի Ք. Ա.) նոյն հարաւային հրուանդանին դէպ ի ներսերը կամ հիւսիսային կողմը բնակող Ենոտրիացիներուն* (Oenodrii) *երկիրն ալ* Իտալիա *անուանեցաւ։ — Հռոմայեցիք ցամաքակղզւոյն մեծ մասն իրենց իշխանութեան տակ առնելէն ետքը (իբր Քրիստոսէ* 260 *տարի յառաջ)* Իտալիա *անունը տալու սկսան երկրին հարաւային ծայրէն դէպ ի հիւսիս մինչեւ* Տիբերիս *եւ պզտիկ* Ռուբիկոն *

* Ռուբիկոն, պզտիկ գետի մը անուն էր Հռոմայեցւոց ժամանակը, որն որ Ադրիական ծովը կը մտնէր, Այսրալպեան

գետը հասնող մասին։ Վերջապէս Օգոստոս կայսեր ատեններն՝ բոլոր ցամաքակղզին մինչեւ Ալպեան լեռները Իտալիա ըսուելու սկսաւ, եւ նոյն սահմաններու մէջ նոյն անունը միշտ պահեց ու կը պահէ։ — Յոյները զԻտալիա երբեմն Հեսպերիա (Երկիր Արեւմուից) կ՚անուանէին, որ անուան մէջ նա եւ Սպանիա կը բովանդակէր. երբեմն ալ կը կոչէին Սատուռնիա։ Երբեմն նա եւ անոր այլ եւ այլ մասանց վրայ դտնուող ժողովրդոց անուամբ կ՚անուանէին՝ Ենոտրիա, Աւսոնիա, Տիւռենիա։ Աս եռաքի երեք անունները առնուած էին՝ Իտալիայի հարաւային հրուանդանին վրայ բնակող Ենոտրիացիներէն, ասոր հիւսիսային արեւելեան կողման վրայ բնակող Աւսոնացիներէն, զորոնք Հռոմայեցիները Աւրունկացի կ՚անուանէին, ու Տիբեր գետէն մինչեւ Ապենինեան լեռները տարածուած երկրին վրայ բնակող Տիւռենացիներէն։ Աս անունները եռաքէն Հռոմայեցի պէտաներն ալ կը գործածէին։ Թերակղզւոյն հարաւային արեւելեան մասը կ՚անուանէր Յապիգիա (Յապիգիոն = Գաբոյ տի Լեւգա)։ —

Գաղղիայի ու բուն կամ Միջին Իտալիայի մէջ տեղը։ Աս գետին բուն անունն ու որոշ սահմաններն ալ հիմայ գրեթէ բոլորովին անծանօթ է. բայց ըստ ոմանց հաւանական կը համարուի թէ հիմակուան Բիզադէլլոյ ըսուած պզտիկ գետին հետ նոյն ըլլայ, որն որ Հռոմայի երկրին մէջ Չեզենա քաղքին մօտերը կը բղխէ ու Ռիմինի քաղքէն տասնումէկ մղոն հեռու դէպ ի հիւսիսային կողմը՝ Ադրիական ծովը կը թափի։ Ըստ այլոց՝ Բիզադէլլայէն իբր 100 քայլ դէպ ի հարաւ ըլլող Լուղոյ գետակը հին Ռուբիկոնին հետ նոյն կը համարուի։ — Հին պատմութեանց մէջ Ռուբիկոն գետը մասնաւոր նշանաւորութիւն մ՚ունի անոր համար՝ որ Հռոմայեցւոց մէջ խիստ օրէնքով մը արգելուած էր՝ ձեռքը զէնքով աս գետին վրայէն անցնիլը. եւ սակայն Յուլիոս կայսրը (49. Ք. Ա.) աս օրէնքը բանի տեղ չդնելով՝ իր զօրքովն ու զէնքերովը նոյն գետէն անցաւ, դէպ ի Հռոմ երթալու ճամբան բռնեց, ու այն հռչակաւոր քաղաքային պատերազմը սկսաւ, որուն վրայ տես Ռոլէն, Պատմ. Հռոմ. Հատ. Ե. Եր. 611—663։

Հարաւային Եւրոպա երեք մեծ թերակղզիներ ունի, արեւելեան կողմն է՝ Յածկի Եւրոպան, որն որ մեծ թերակղզի մը կը կազմէ. արեւմտեան կողմն է Պիրենեան թերակղզին (Սպանիա ու Բորտուգալ). իսկ ասոնց մէջ տեղն է Իտալիա, կամ Իտալիայի թերակղզին: Աս ետքինը կը տարածի հիւսիսային արեւմտեան ուղղութեամբ դէպ ի արեւելեան կողմը իբր 180 գերմանական մղոն տեղ երկայնութեամբ մինչեւ Միջերկրական ծովը, որն որ իր այլ եւ այլ մասերովը (Լիգուրեան, Յոնիաննեան կամ Տիւ֊ռենեան ու Ադրիական ծովերով,) երեք կողմանէ Իտալիա պատելով՝ անոր բնական ծովային սահմանները կը կացուցանէ, ուստի եւ միայն հիւսիսային ու ըստ մասին արեւմտեան կողմերէն Եւրոպայի բուն ցամաքին հետ կպած ըլլալով, աս կողմանէ Ալպեան լեռներն իր բնական ցամաքային սահմանները կ'ըլլան: —

Արդ բոլոր աս՝ Իտալիա ըսուած ցամաքակղզին մինակ՝ 4674, իսկ իր մէկ քանի մեծ (Սարդինիա, Սիկիլիա, Գորսիքա) ու պզտիկ կղզիներովը մէկտեղ՝ 5840 գերմ. քառակուսի մղոն տարածութեամբ երկիր ունի. ու կ'իյնայ 38 ու 46 աստիճանաց հիւսիսային լայնութեան եւ 23 ու 36 աստ. երկայնութեան տակ: Ըստ քաղաքային կարգաց՝ իր սահմաններն են՝ արեւմուտքէն Գաղղիա (Սավոյայով մէկտեղ), հիւսիսէն՝ Հելուետիա, Տիրոլ ու Լիւրիկէի (Իլլիրիայի) մէկ մասը, արեւելքէն՝ Լիւրիկէի հարաւային մէկ մասն ու Ադրիական ծովը. իսկ արեւմուտքէն Միջերկրական ծովը:

## Լերինք, Ջուրեր:

Իտալիայի ցամաքին հիւսիսային ու ըստ մասին արեւելեան սահմանապահները՝ ինչպէս ըսինք՝ Ալպեան լերինք կամ Ալպք են, բոլոր Եւրոպայի գլխաւոր լեռ֊

ները, զորոնք հոս քիչ մը ընդարձակ կը ստորագրենք։ Ասոնք Հարաւային արեւմտեան կողմանէ՝ երեք շղթայ բաժնուած, այսինքն Արեւմտեան, Մէջին ու Արեւելեան Ալպք, կ՚երթան կը տարածին դէպ ի հիւսիսային արեւելեան կողմը։ Արեւմտեան շղթան՝ Ծովային Ալպք անուամբ՝ Նիսայի (Նիցցա) քովերը միջերկրական ծովուն եզերքէն սկսելով՝ Գաղղիայի ու Սարդինիայի մէջ տեղէն կ՚անցնի կ՚երթայ դէպ ի հիւսիս. իր խիստ բարձր կատարը՝ Մօնդէ Բէլվօ՝ 9342 ոտք է։ Ասոնց շարունակութիւնն են Կոտտեան Ալպք, որոնք նոյն ընթացիւք կ՚երթան մինչեւ Գաղղիայի ու Սավոյայի սահմանը. իրենց խիստ բարձր կատարը, որ Գաղղիայի մէջ կ՚իյնայ ու անոր ամենաբարձր լեռն է, Բէլվու տը Վալլուիզ ըսուած, 14,044 ոտք բարձրութիւն ունի, իսկ Սարդինիայի մէջ կ՚իյնայ իրենց 11,800 ոտք բարձր կատարը Մօնդէ Վիզօ։ Ասոնց կը յաջորդեն Գրայեան կամ Գօրշ Ալպք, որոնք Իտալիայի մէջ Կոտտեան Ալպերէն սկսեալ դէպ ի հիւսիսային արեւելեան կողմը կ՚երթան Սարդինիայի ու Սավոյայի մէջ. իրենց բարձր կատարներն են Իզէրան՝ 12,456 ոտք, Պզտիկ Ս. Բեռնարդ՝ 9000 ոտք, ու Դուրինի եւ Կէնֆի (Ճինեվրայի) մէջ տեղը Մօն Սենի՝ 8916 ոտք։— Մէջին կամ Կեդրոնական շղթան կը բովանդակէ Պեննինեան կամ Վալլէզեան Ալպերը, որոնք արեւմտեան շիտակութեամբ Հելուետիայի սահմանին վրայ յառաջ կ՚երթան, որոնց բարձր գագաթներն են՝ Եւրոպայի ամենէն բարձր լեռը Մօն Պլան (Ճերմակ լեռ) 15,668 ոտք՝ Սավոյայի մէջ, ու Մեծ Ս. Բեռնարդ (Մօնս Եօվիս՚) 10,400 ոտք՝ Հելուետիայի մէջ։ Ասոնց շարունակութիւնն են Լէպոնդեան Ալպք, որոնք հիւսիսային արեւելեան կողմէն Սարդինիայի ու Հելուետիայի սահմաններուն վրայ կը յառաջանան. իրենց բարձր կատարներն են՝ Սարդինիայի մէջ Մօնրօզա կամ Մօնդէ Ռօզա (Վարդէ

պլան) 15,527 (ըստ ոմանց՝ 14,200) ոտք. իսկ Հելուետիայի մէջ՝ Սիմփլըն՝ 11,730 ոտք, ու Ս. Գոթարտոս՝ 11,300 ոտք: Լեպոնտեան Ալպերուն կը յաջորդեն արեւելեան կողմանէ Ռեթեան Ալպք, որոնք գլխաւորապէս Տիրոլի մէջ ինկած են՝ նա եւ Տիրոլեան Ալպք կ'ըսուին, իրենց ամենէն բարձր գագաթն է Օրթլէս՝ 13,065 ոտք: — Իսկ Արեւելեան շղթան կը բովանդակէ Ալպեան լերանց այն ամէն մասերը, որոնք Տիրոլեան Ալպերէն սկսած Պաւիէրայէն, Գարինթիայէն ու Գրանիայէն կ'անցնին ու կ'երթան մինչեւ Ադրիական ծովը՝ Սթիրիական, Գարինթեան ու Ցուլիական կամ Գրանիական անուամբ. իրենց խիստ բարձր կատարներն են՝ Սալիապուրկի սահմանին վրայ՝ Կրոս-Կլոքնէր՝ 12,000 ոտք. Պավիէրայի մէջ՝ Վացման՝ 9150 ոտք, Գարինթիայի սահմանին մօտ՝ Տերկլու՝ 10,194 ոտք ու Թրիէստի մօտ Մոնթէ (Ձիւնալեառն) 6996 ոտք: Իբրեւ Ցուլիական Ալպերուն շարունակութիւնն են Դինարեան Ալպերը, որոնք Խրուաթաստանի վրայէն անցնելով մինչեւ Օսմանեան տէրութեան սահմանը կը հասնին, ու անկից ետքը իրենց դէպ ի արեւելք գացող ճիւղը՝ Պալգան (Հեմոս) լեռները կը դիմաւորեն, որոնք զատ լերանց կարգ մըն են: Դինարեան Ալպերուն խիստ բարձր կատարը՝ Գափոր՝ նա եւ Իւան ըսուած՝ Պոսնիայի մէջ կ'իյնայ ու 9000 ոտք է:

Արդ Ալպեան լերանց այսչափ ճիւղերը Իտալիա բոլորած ըլլալով՝ իրենց Ծովային ու Կոտտեան մասերը զանիկայ Գաղղիայէն կը բաժնեն, Պեննինեաններն ու Լեպոնտեանները՝ Հելուետիայէն, ու Ռեթեանները՝ Գերմանիայէն: Իսկ Գրայեան կամ Գորշ Ալպերը միայն Իտալիայի մէջ կը տարածին, որոնք քանի որ դէպ ի հարաւ յառաջ կ'երթան՝ կը ցածնան, մինչեւ վերջապէս տափակ գետին կ'ըլլան: Անկից ետքը Լոմպարդեան խո-

րունկ ու ընդարձակ դաշտը կը սկսի տարածիլ, որն որ շատ տեղ դէպ ի Ադրիական ծովն այնչափ ցած է՝ որ ծովեզերքաց մօտ ճահիճներ դուրս ելլելով, հարկ կ'ըլլայ թումբերով պաշտպանուիլ: Իսկ երկրին հարաւային արեւելեան կողմը նորէն սկսելով բարձրանալ Ապեննին կամ Ապեննինեան լեռը, կամ լերանց գօտին իր գլուխը կը վերցընէ, որն որ Իտալիայի մէկ հատիկ սեպհական լեռն է: Անիկայ Նիսայի (Նիցցա) մօտերը իբր Ծովային Ալպեան շարունակութիւնը սկսելով, գրեթէ 170 մղոն երկայնութեամբ տեղ հիւսիսէն դէպ ի հարաւ յառաջ կ'երթայ. կրէ ու աւազաքարէ բաղադրուած (տեղեն մը բոլորովին անտառներով ծածկուած,) լերանց շղթայ մըն է, որն որ երեք մաս կը բաժնուի՝ հիւսիսային, միջին ու հարաւային, ու բոլոր Իտալիա երկու մաս կը բաժնէ՝ հիւսիսային-արեւելեան ու հարաւային-արեւմտեան: Իր ընթացքին վրայ Իտալիայի այլ եւ այլ մասերուն մէջ այլ եւ այլ անուններ կ'առնու, այսինքն Լիգուրեան, (որոնց բարձր գագաթը Մոտենայի մէջ Մոնթէ Ջիմոնէ՝ 6780 ոտք է,) — Եդրուրեան, — Հռոմէական, (որոնց բարձր գագաթը՝ Մոնթէ տի Սիպիլլա՝ 7037 ոտք է,) ու Նէապոլսեան Ապեննինք: Հիւսիսային մասը կ'ըսուի Աբրուցեան (Աբրուցցի) լերին, որոնց Մոնթէ Գորնօ, կամ Գրան Սասսօ տ'Իտալիա (Մեծ ժայռ Իտալիոյ) ըսուած մասը՝ 9577 ոտք բարձրութեամբ՝ Ապեննիններանց ամենէն բարձր կատարն է: — Ապեննիններանց արեւմտեան եզերները հրաբղխական կազմութիւն ունին, որն որ չէ թէ միայն Հռոմայի վիճակին մէջի մարած խառնարաններէն յառաջ եկող լճերէն, եւս՝ Պոնտինեան ճահիճներէն, Տոսկանայի երկրին մէջ ծծումբի շոգի հանող ճահիճներէն (Սոֆֆիոնի), ու մանաւանդ Նէապոլսոյ երկրին մէջ յաճախ կրակ ու բոց ցայտող՝ 3700 (բստ այլոց՝ 3922) ոտք

բարձր Վեսուվ հրաբուղխ լեռնէն, հապա նա եւ Իտա-լիայի՝ մանաւանդ Կալաբրիայի մէջ յաճախ հանդիպող գետնաշարժերէն կ'իմացուի։ — Երկրին արեւելեան կողմը անուանի է Ապուլեան ընդարձակ ու բերրի դաշտը։ — —

Իտալիայի մէկհատիկ գլխաւոր մեծ գետն է Բօյ (Պատօս), որն որ Կոտտեան Ալպերուն վերաբերող Վիզոյ լերանց ձիւնապատ գագաթներուն վրայ կը բղխէ, առաջ դէպ ի արեւելք՝ ետքը դէպ ի հիւսիս Սարդինիայի մէջ կը յառաջէ, իր ընթացքին վրայ 30 հատ՝ բատ մեծի մասին Ալպերէն ու բատ փոքր մասին Ապենիններէն իջնող՝ պզտիկ գետեր իր մէջը կ'առնէ, ու 88 մղոն տեղ քալելէն ետքը՝ 7—8 բերնով Ադրիական ծովուն Վենետական ծոցը կը թափի։ Երկրորդ նշանաւոր գետն է Ադիճէ (Էչ), որն որ Տիրոլի մէջ Ռետեան Ալպերուն Որդլէս լերան մօտերը կը բղխէ, բատ մեծի մասին Վենետական երկրին մէջ 48 մղոն տեղ քալելէն ետքը՝ Բոյի բերաններուն հիւսիսային դիէն Ադրիական ծովը կը մտնէ։ Իսկ մնացած ամէն գետերը մեծ չեն ու չեն կրնար մեծնալ եւ երկայն ընթացք ունենալ, ինչու որ Ապենինեան լեռանց ճիւղերը Ադրիական ու Միջերկրական ծովերուն մօտ ըլլալով՝ անոնցմէ իջած գետերը երկրի վրայ պտըտելու երկայն տեղեր չեն գտներ, ուստի կարճ ճամբայ մ'ընելէն ետքը՝ այն երկու ծովերուն մէկը մտնելու կը պարտաւորին։ Աս երկրորդական գետերուն մէջ նշանաւոր են՝ Դա-լիամենտոյ, Բիավէ ու Պրէնտա, որոնք Ռետեան Ալպերէն կ'իջնան, Լոմբարտեան-Վենետական երկրին մէջ կը քալեն ու Ադրիական ծովը կը թափին. Արնոյ, որն որ Ապենիններէն կ'իջնայ, Տոսկանայի երկրին մէջ կ'ընթանայ ու Տիւռենեան ծովը կը մտնէ. Տիբերիս (Դեվերէ), որ Ապենիններէն կու գայ, Հռոմայի երկրին մէջ կը քալէ ու Ներա եւ Դեվերոնէ գետերը մէջն առնելէն ետքը Տիւռենեան

ծովը կը թափի. Կուրէլլիանոյ, որ Հռոմայ երկրին մէջ կը բղխէ, դէպ ի Նէապոլսոյ երկիրը կ'երթայ ու հոն Կաէդայի ծոցը կը մտնէ. Վոլդուռնոյ, որ Ապրուցեանց վրայ կը բղխէ, Նէապոլսոյ երկրին մէջ միայն կ'ընթանայ, որուն եւ գլխաւոր գետն է, ու Կաէդայի ծոցը կը մտնէ: Մեկալ պզտիկ գետերէն յիշատակի արժանի են՝ Տարօ, Սեզիա, Դիչինոյ (Դեսէն), Ադդա, Օլեոյ, Մինչիոյ (Սարքա), Դրեբբիա, Դարոյ, Բրենդարա, Սեքքիա, Բանարոյ, եւ այլն: —

Իտալիայի մեծ լճերն են՝ Լակոյ Մաճճիորէ (Լ. Պերպանոսա, Մեծ լիճ), որն որ Հելուետիայի, Լոմպարտիայի ու Սարդինիայի սահմաններուն մէջ կ'իյնայ. Գոմոյ ու Իզէոյ լճերը՝ Լոմպարտիայի երկրին մէջ. Կարտա, նոյնպէս Լոմպարտիայի մէջ, միայն իր հիւսիսային ծայրը կամ եզերքը Տիրոլի մէջ կ'իյնայ. ասոր վրայ շոգենաւեր կը քալեն. Թրազիմենոյ լիճը՝ Հռոմայ երկրին մէջ է ու մինչեւ Տոսկանայի սահմանին կը հասնի. Պոլսենայ լիճն ալ Հռոմայ երկրին մէջ է. իսկ Ձելանոյ լիճը Նէապոլսոյ Ապրուցեան գաւառին մէջ կ'իյնայ: Նա եւ Հելուետիայի Լուկանոյ լճին հիւսիսային արեւելեան ծայրը Լոմպարտիայի սահմանին վրայ կու գայ: —

Հանքային՝ ծծմբային տաք ու պաղ ու առողջարար ջրեր, ուստի եւ բնական բաղնիքներ Իտալիայի գրեթէ ամէն մասին մէջ կը գտնուին ու կը գործածուին: Վենետական երկրին մէջ անուանի են՝ Ռէքօարոյի, Գալդիէրոյի, Աբանոյի (Բատտուա քաղաքին մօտերը) ու Չեններոյի ջրերը, — Լոմպարտիայի մէջ՝ Մաղէնոյի, Պորմիոյի (Վորմս) կամ Ս. Մորփինոյի ու Դրեսգորրէի (Պերկամոյի մօտերը) բաղնիքները. — Բիէմոնդի մէջ՝ Վալդիէրէի, — Սավոյայի մէջ՝ Շամպերէի ու Ս. Ճէօվաննիի (Ս. Ժան տը Մօրիէն), — Սարդինիայի մէջ՝ Աքքուիի, Սարդինիա կղզւոյն վրայ՝ Սարդարայի, — Տոսկանայի մէջ՝ Ա-

բերցոյի մօտ Գէօվնլէօնոյի կամ Մոնդրէջօնլնէնոյի ջրերը, ու Մոնդէ Գարգէնի (Բիսդոյայի ու Բեշիայի մօտերը) բաղնիքները, որոնք քանի մը հատ են ու շատ ազդու ջրեր ունին: Բիզայի բաղնիքներն ալ շատ նշանաւոր են ու յաճախեալ. Լուքքայի երկրին մէջ Պանէի աւանին ու Պանեոյ ալլա Վիլլա եւ Բոնդէ ա Սերալյոյ գեղերուն մէջ ըլլող բաղնիքներն անուանի են. Հռոմայի երկրին մէջ Դիվոլիի ջրերը նշանաւոր են:

## Հող ու Բերք. Օդաբաժին ու Օդ:

Իտալիայի գետինը կամ հողը թէպէտ եւ իր այլ եւ այլ մասանց ու հիւսիսային եւ հարաւային կողմերուն նկատմամբ այլ եւ այլ բնական հանգամանք ունի. բայց բառ մեծի մասին մշակուելու յարմար՝ ու շատ տեղեր մանաւանդ աղէկ ջրարբի կողմերը արտաքոյ կարգի բերրի ու պտղաբեր է. մինչեւ՝ հարաւային մասերուն մէջ խիստ ճոխ ու ամէն բերքեր ալ յառաջ կը բերէ: Իր անտառները, որոնք առաւելապէս լեռնային տաք կողմերը կը գտնուին, ուրիշ հասարակ ծառերէն զատ՝ նաեւ բարձր նոճիի, ճոխ դափնիի, պիստակի (ֆըսդըգ), առատ շագանակի ու նուշի ծառերով զարդարուած են: Կան՝ կիտրոն, նարինջ, թուզ, տեղ տեղ նաեւ արմաւ, (որն որ շատ ցանցառ կատարեալ կը հասուննայ,) ու ճոխ ձիթենի, մանաւանդ՝ Տոսկանայի մէջ: Ընդհանրապէս Իտալիայի քանի մը տեղերուն ձէթը՝ ազնուութեան, մաքրութեան ու համին կողմանէ ուրիշ երկիրներու մէջ յառաջ եկածին ամենէն ընտիրներուն կարգը կը դասուի: Թթենին առատ է, որուն համար ալ շերամ (մետաքսի թրթուր) շատ կ'ըլլայ: Շատ տեղ կ'ելլէ քթան, գխտոր (ճօղը), քրքում, մատուտակ (մէյան քէօքիւ), ծխախոտ, նաեւ՝ առանձինն Սիկիլիա ու Մալդա կղզիներուն վրայ՝ բամբակ

ու շաքարի եղէգ։ Շագանակն այնչափ առատ է՝ որ ստորին ու աղքատ ժողովրդեան հասարակ հացի տեղ կը ծառայէ։ Նոյնպէս եղջիւր (քէչի պօյնուզու) Նէապոլսոյ երկրին մէջ այնպէս առատ է՝ որ հացին պակսութիւնը կը լեցընէ։ Բրինձը՝ շատ կողմեր մանաւանդ Բոյ գետին քալած ձորերուն մէջ՝ յառաջ կու գայ, բայց Լոմբարտիայի մէջ շատ առատ է։ Արմտիքը մանաւանդ ցորենը, որն որ առաւելապէս վերին Իտալիայի ու Տոսկանայի մէջ առատ է, հազիւ երկրին կարօտութեան բաւական կ'ըլլայ։ Ասոր պակսութիւնը կը լեցընէ սիմինտրը՝ կամ եգիպտացորեանը, որն որ ամէն տեղ առատութեամբ յառաջ կու գայ։ — Իսկ խաղողն ու գինին չէ թէ միայն առատ ու ընտիր է, հապա քանի մը՝ ուրիշ տեղեր չգըտնուող՝ խիստ ազնիւ տեսակներ ալ ունի․ ինչպէս՝ Նէապոլսոյ մօտ Վեզուվ լեռան ստորոտները յառաջ եկող՝ Արտասուք Քրիստոսի (Lacrimae Christi) նա եւ Յունական գինի (Vino greco) ըսուած՝ շատ ազնիւ գինին, նոյն երկրին՝ Ապուլիա ու Կալաբրիա գաւառներուն արտաքոյ կարգի զօրաւոր ու առատ գինիները․ Տոսկանայի մէջ Մոնդէբուլչինոյի հռչակաւոր գինին․ Հռոմայի երկրին մէջ՝ Մոնդէֆիասքոնէի ընտիր գինին․ Լոմբարտիայի Պրէշիա գաւառին՝ ինչպէս նա եւ Վենետիկի Վիչէնցա գաւառին մէջ Վինօ սանթօ (սուրբ գինի) ըսուած անոյշ գինին․ Ելպա կղզւոյն շատ համեղ կարմիր (Վէրմօն, Չէլվոդէքոյ) գինին, եւ այլն։ — Վայրենի ու ընտանի կենդանիներուն մէջ յիշատակի արժանի են՝ երեքուկէս միլիոն արջառը, (եզ, կով,) որոնց մէջ շատ մըն ալ գոմէշ կան․ Բատուայի մօտերը ու Տոսկանայի մէջ ընտիր ոչխար, նա եւ մանր ուղտ, բազմաթիւ էշ ու ջորի․ Նէապոլիս՝ շատ ընտիր տեսակ ձի․ եւ այլն։ Կենդանեաց կարգին մէջ Իտալիայի ամենէն ընտիր ու առատ բերքն է

մետաքսի թրթուրը, որ թէպէտ Սարդինիայի մէջ շատ կը յաջողի, բայց առանձինն Հռոմայի երկրին Ուրպինոյ կուսակալութեան Ֆոսսոմպրոնէ գեղին մօտերը յառաջ եկողներէն ելած մետաքսը՝ չէ թէ միայն բոլոր Եւրոպայի մէջ՝ հապա բոլոր երկրի վրայ գտնուող մետաքսին ամենէն ընտիրն է։ Միայն Լոմպարտիայի մէջ տարւէ տարի 24,000 կենդինար ու Վենետիկի երկրին մէջ 15,000 կենդինար մետաքս կ'ելլէ։ — Մեղու ալ առատ է, ուստի եւ մեղր ու մեղրամոմ առատութեամբ կը ժողվուի։ — Վնասակար մանր կենդանիներ ալ շատ կան, մանաւանդ քարբ (էնկէրէք եըլանը), կարիճ, անհամար մուն (առաւելապէս ծովալիճներու ու ճահիճներու մօտիկ տեղեր), ու տարենտական սարդ (tarentule) ըսուող տեսակ մը խոշոր մամուկ, որ բոլոր Նէապոլսոյ Ապուլիա ու Կալաբրիա գաւառներուն մէջ խիստ շատ կ'ըլլայ։ — Վայրենի կամ որսի կենդանիներէն ունի՝ եղջերու, այծեամն, տեսակ մը վայրենի ոչխար՝ Մուֆլոն ըսուած. կինճ, նա եւ ոզնի, աղբեան մուկ (տօղ սըչանը), Ալպեանց վրայ արջ ու գայլ։ Թռչնոց կարգին մէջ ամենէն շատ է աղաւնի. նա եւ համեղ սարեկ (օրթըլան գուշու) ու արտոյտ (չայըր գուշու)։ — Ծովու բերքերուն մէջ քանի մը տեսակ ընտիր ու առատ ձուկերէն զատ, նա եւ բուստ (մէրճան) Սարդինիայի, Տոսկանայի ու Սիկիլիայի ծովեզերաց մօտ կը հանուի։ —

Հասարակ ու ազնիւ հանքերու կողմանէ Իտալիա հարուստ չէ։ Նէապոլսոյ երկրին մէջ ազնիւ մետաղներ կը գտնուին, բայց զանոնք գործելու եւ հանելու այնչափ հոգ չիտարուիր։ Սարդինիա ու Տոսկանա ունին քիչ արծաթ։ Երկաթ՝ կ'ելլէ գրեթէ միայն Էլպա կղզւոյն վրայ (տարին՝ իբր 200,000 կենդինար) ու Լոմպարտիայի մէջ (տարին՝ իբր 260,000 կենդինար)։ Տեղ

տեղ՝ կապար (տարին՝ իբր 2000 կենդ.), պղինձ, սընդիկ. Հռոմայի երկրին, Տոսկանայի ու Նէապոլայ մէջ՝ պաղլեղ (շապ), ծծումբ՝ գլխաւորաբար Սիկիլիա կղզւոյն վրայ ու Հռոմայի երկրին մէջ. սակաւ աղ. Վենետիկի երկրին մէջ՝ արուրաքար (calamine=Լէյ-Լէնա), ուսկից անագ կ՚ելլէ։ Տոսկանայի երկրին մէջ կ՚ելլէ տեսակ մը աղ՝ Պօրաքս (Borax) ըսուած, որն որ բոլոր Եւրոպայի մէջ ուրիշ տեղ չիգտնուիր. իսկ Ասիայի մէջ միայն Ճենաստան, Թիպէթ ու քիչ մ՚ալ Պարսկաստան կ՚ըլլայ։ Կը գտնուին քանի մը տեսակ առաջին կարգի ազնիւ քարեր. Սիկիլիա կղզւոյն վրայ՝ սաթ։ Կան նաև եւ ընտիր քարահանքեր, սպիտակ կուճ (սու մէրմէրի=albâtre), հանքային ածուխ. Հռոմայի ու Նէապոլայ երկրին մէջ ընտիր հողի տեսակ մը՝ Պոզզուոլանեան հող ըսուած. Հրաբուղխներէն յառաջ եկած կրափրփուր (լաւա) ու չէչաքար (փօմզա թաշը)։ Բայց Իտալիայի ամենէն ընտիր ու առատ հանքն է ազնիւ մարմարիոն, որ թէպէտ իր քանի մը մասերուն մէջ կը գտնուի, բայց ամենէն ազնիւն ու ընտիրը՝ Մոտենայի երկրին Գարրարա վիճակին մէջ կ՚ելլէ ու ամէն տեղ Գարրարեան մարմարիոն անունով հռչակուած է։ — —

Իտալիայի օդաբաժնին (կլիմային) կամ բնական եղանակին նկատմամբ կրնանք ըսել՝ որ իր քանի մը լեռնային կողմերը դուրս հանելով՝ Եւրոպայի խիստ բարեխառն ու զուարճալի եղանակն ունի։ Հարաւային ու ծովեզերեայ տեղերուն վրայ գրեթէ հաստատուն գարուն մը կը տիրէ. նաեւ հիւսիսային կողմերն ալ ձմեռը կարճ ու տկար կ՚ըլլայ։ Իտալիայի եղանակին բարեխառնութեան ու անուշութեան համար՝ իրեն Լոմպարտեան մասը՝ "Եւրոպայի պարտէզը", իսկ Տոսկանայի երկրին մէջ Փլորենտիայի շրջանակը՝ "անոր Դրախտը" կ՚անուանուի։ —

Բոլոր երկիրն իր օդաբաժնին նկատմամբ չորս գըլխաւոր մաս կամ նահանգ կը բաժնուի. Ա. Վերին Իտալիա, $46^{1}/_{2}$ ու $43^{1}/_{2}$ աստ. լայնութեան տակ, Ապեննինեան լերանց հիւսիսային դին, ուր ձմեռը Ալպեան լեռներէն փչող հիւսիսային հողմերուն պատճառաւ ցուրտ կ՚ըլլայ, ձիւնը շատ հեղ օրերով գետնի վրայ կը մնայ, Յունուար ու Փետրուար ամիսներուն մէջ երբեմն սառոյց ալ կ՚ըլլայ. Ադրիական ծովէն կազմուած ճահիճները սառուցով կը ծածկուին, եւ ընտիր պտուղները՝ միայն շատ յարմար տեղեր ազատ օդի մէջ յառաջ կու գան. բայց թթենին կը յաջողի ու բրինձ ալ յառաջ կու գայ: Բ. Միջին Իտալիա, որ Գենուայի մօտերը $43^{1}/_{2}$ աստիճանէ լայնութեան կը սկսի ու դէպ ի հարաւ մինչեւ $41^{1}/_{2}$ աստ. լայն. կ՚երթայ. ուր բուն ձմեռ միայն լեռներու վրայ կ՚ըլլայ, ձորերու մէջ ձիւն շատ ցանցառ կը կենայ ու ձիթենի եւ կիտրոն ազատ օդի մէջ կը յաջողին: Գ. Ստորին Իտալիա, որ $41^{1}/_{2}$ աստիճանէ լայնութեան սկսած մինչեւ 39 աստ. լայն. կ՚երթայ. ուր ձիւն խիստ ցանցառ կու գայ եւ երկրի վրայ չի մնար, անանկ որ ձմեռը՝ աւելի դէպ ի հիւսիս ըլլող երկիրներուն գարնան կը նմանի. ուր եւ հալուէ եւ ուրիշ շատ ընտիր բերքեր ազատ օդի մէջ ձմերուան ամիսներն ալ անվնաս կը մնան: Դ. Նէապոլսոյ հարաւային մասը կամ ծայրը, ու Սիկիլիա եւ Մալդա կղզիները, 39 աստիճանէն մինչեւ 36 աստ. լայնութեան տակ. ուր ջերմաչափին սնդիկը գրեթէ երբեք սառուցի կէտէն կամ զրոյէն (0 —) վար չիջնար. ուստի եւ կաղնի կամ հնդիկ թզենի, արմաւենի ու շաքարեղէգ՝ ինչպէս նա եւ բամբակ յառաջ կու գան: Ամառուան մէջ երկինքը միշտ յստակ ու պայծառ է. եւ ծովային հովերը սաստիկ տաքը կը բարեխառնեն. բայց շատ հեղ երաշտութիւն կամ չորու-

թիւն կը տիրէ, ու Շիրոկկոյ ըսուած հարաւային տապա-խառն հողմը ամառուան մէջ շատ նեղութիւն կու տայ։ Աս հողմէն աւելի վնասակար են առողջութեան՝ երկրին քանի մը դիերը՝ մանաւանդ Տոսկանայի ճախճախուտները (մարեմմա), Հռոմայի երկրին Գամբանիա ըսուած մէկ մասին մէջ եւ հասարակաբար Միջին ու Ստորին Իտալիայի շատ ծովեզերեայ տեղերը՝ գետնէն վեր ելլող գէշ օդ (մալարիա) անունով ծանօթ գոլորշիքը։ Ստորին Իտալիայի մէջ եւ Սիկիլիա կղզւոյն վրայ յաճախ երկրաշարժերն ու հրաբուղխներուն բորբոքիլը շատ վնաս ու նեղութիւն կը պատճառեն։

## Վաճառք. Վաճառականութիւն։

Իտալիայի բնակչաց վրայ խօսելէն առաջ հոս իր վաճառներուն ու վաճառականութեան վրայ խօսելնուս գլխաւոր պատճառն ան է՝ որ աս վաճառքը գրեթէ միայն երկրին բնական բերքերն են ու վաճառականութիւնն ալ նոյնպէս միայն աս բերքերով կ՚ըլլայ, ուստի եւ նոյն բերքերը նշանակելէն ետքը նոյներուն գործածութիւնն ու շահն ալ անընդմիջաբար աւանդելը պատշաճ կ՚երեւայ։

Վաճառականութեան նկատմամբ Իտալիայի բնական բերքերը կրնանք երկու կարգի բաժնել. առջի կարգին մէջ անոնք են, որոնք հազիւ երկրին բնակչաց կարօտութիւնը լեցնելու բաւական կ՚ըլլան, ուստի եւ երկրին մէջ կը գործածուին, կը ծախուին ու կը սպառին, եւ չեն կրնար իբրեւ վաճառք դուրս երկիրներ խաւրուիլ։ Աս կարգին կը վերաբերին գլխաւորաբար արմտիքն ու հասարակ, որոնք՝ թէ որ գետինն ամէն տեղ իր բերրիութեան համեմատ խնամքով ու ջանքով մշակուելու ըլլար, գուցէ բնակչաց կարօտութիւնը լեցնելէն զատ, նա եւ իբրեւ վաճառք օտար տեղեր կրնային խաւրուիլ։ Աս ա-

սանկ չըլլալով՝ Իտալիա իրեն պակսած արմտիքն՝ առաւելապէս ցորենը՝ Եգիպտոսէն Աղեքսանդրիայի վրայով ու Ռուսիայէն Օտեսայի վրայով կ՚ընդունի։ Աս վաճառքներուն ու անոնց առուտուրին համար Իտալիայի ամէն ծովեզերեայ քաղաքներէն աւելի Ցոսկանայի տէրութեան Լիվորնոյ քաղաքին ու Սարդինիայի տէրութեան մէջ Գենուայի նաւահանգիստները մեծ գործունէութիւն կը ցուցընեն ու շատ բանուկ են։ Ասոնցմէ ետքը կու գան՝ Նիսայի (Նիցցա), Վիլաֆրանգայի (Սարդինիայի մէջ), Անգոնայի, Չիվիդավէքքիայի (Հռոմայ երկրին մէջ), Նէապոլսոյ, Ռէճճիոյի, Սալերնոյի, Կաէդայի, Կալլիբոլիի, Մեսսինայի ու Բալէրմոյի (Նէապոլսոյ տէրութեան մէջ) նաւահանգիստները։ Առանձինն Վենետիկոյ ազատ նաւահանգիստը ամէն տեղերու հետ ըլլող վաճառականութեան համար շատ բանուկ ու գործունեայ է։ — Իսկ երկրորդ կարգի մէջ ըլլող բերքերն անոնք են, որոնք չէ թէ միայն իրենց առատութեամբը Հապա նա եւ իրենց ազնուութեան ու պատուականութեան պատճառաւ բուն տեղացւոց բաւական ըլլալէն զատ իբրեւ վաճառք ամէն դիհաց կը փնտռուին ու ամէն երկիրներ՝ մինչեւ Ամերիկա կը խաւրուին։ Աս կարգի բերքերը շատ են, որոնց մէջ գլխաւորներն են մետաքս, (միայն Լոմբարտիայէն տարին 17,500 կենդինար, իսկ Վենետիկի երկրէն՝ իբր 900 կեն. գործուած մետաքս դուրս կը խաւրուի.) — առատ ձէթ ու բրինձ. ազնիւ պտուղներ՝ ըստ մասին թարմ, ինչպէս՝ կիտրոն, նարինջ, նուռ, եւ այլն, ու ըստ մեծագոյն մասին չորցած, ինչպէս, շագանակ, թուզ, չամիչ, նուշ, Սիկիլիայէն՝ եղջիւր (քէչի պօյնուզու), եւ այլն, նա եւ առատ շաքարամիրգ (շէքէրլէմէ), որն որ առանձինն Սիկիլիա կղզիէն Ամերիկա կը խաւրուի։ Դարձեալ՝ ազնիւ մարմարիոն, մանաւանդ Կարրարեան մարմար, գինի, քըր-

քում, մատուտակ, գխտոր, դաքնի, կանեփ, բամբակ, ընտիր ծծումբ (աւելի՝ Նէապոլսոյ ու Հռոմայի երկիրներէն), աղ, Տոսկանայի երկրէն առանձինն՝ պօրաքս․ բուստ, եւ այլն։ Նա եւ շատ ասր կամ բուրդ դուրս կը խաւրուի. միայն Լոմբարտիայի մէջ եղած ասրին տասը հազար կենդանիները, իսկ Վենետիկի երկրին մէջ եղած տասուերկու հազար կենդանիներէն աւելի ասրին մեծ մասն իբրեւ վաճառք ուրիշ երկիրներ կը խաւրուին։ —

Իտալիայի արտաքին վաճառականութիւնը գըլխաւորաբար ծովով՝ ու երկրորդաբար ցամաքով կ'ըլլայ՝ առանձինն Հելուետիայի, Գաղղիայի, Գերմանիայի եւ ուրիշ քանի մը տէրութիւններու հետ. իսկ սոր ներհակ՝ ներքին՝ այսինքն ընդհանուր Իտալիայի այլ եւ այլ տէրութեանց իրարու հետ ըրած վաճառականութիւնը գըլխաւորաբար ցամաքով կ'ըլլայ, որուն հիմայ շատ կ'օգնեն երկաթուղիները, առանձինն Լոմբարտիայի, Վենետական երկրին, Սարդինիայի ու Տոսկանայի մէջ, ու երկրորդաբար ծովով։ Վերը յիշեցինք այլ եւ այլ տէրութեանց քանի մը գլխաւոր նաւահանգիստները. հոս կը նշանակենք անոնց սեպհական առեւտրական նաւերուն գործունէութիւնն ու իրենց երթեւեկը։ Աս կտորիս մէջ, այսինքն սեպհական նաւերով տարուած ու բերուած վաճառքներուն ու եղած վաճառականութեան մէջ գլխաւոր ու առաջին տեղն ունի Տոսկանայի տէրութեան Լիվորնոյ քաղաքը Միջերկրական ծովուն եզերքը, որուն սքանչելի նաւահանգիստը երկու մաս կը բաժնուի, արտաքին ու ներքին։ Արտաքինը հաստատուն քարաշէն թումբով մը՝ ամէն ալեաց կատաղութեան դէմ կը կենայ ու կը պաշտպանուի. հոս կը կենան չէ թէ միայն օտար տէրութեանց յաճախ եկող գացող պատերազմական նաւերը, հապա նա եւ Արեւելքէն եկող վաճառականի նաւերը՝ քառան-

օրեայ դժուարութեան (քառանթինա) ժամանակին առջի կէսն անցընելու համար: Ներքինին մէջ կայ մեծ նաւարան՝ կամ նաւ շինելու գործարան մը, որուն մէջ շատ ընտիր պատերազմական ու վաճառականութեան նաւեր կը շինուին: Հոս կը կենան վաճառականութեան նաւերն ու իրենց վաճառքները կ'ընդունին ու կը հանեն: Աս նաւահանգիստը չէ թէ միայն ազատ ըլլալուն, հապա նա եւ բոլոր Իտալիայի ու Արեւելքի մէջ ըլլող վաճառականութեան ու առեւտրական գործողութեանց միջակէտը սեպուելուն՝ առաջնոյ կարգի բանուկ է, ու շատ մեծ ու ընդարձակ առուտուր, ինչպէս նա եւ երեւելի դրամական գործողութիւններ կ'ընէ. անանկ որ երբեմն տարին 100 միլիոն ֆրանգի վաճառք միայն ներս բերուած է: Նշանաւոր է նա եւ Լիվորնոյէն Արեւելքի հետ՝ գլխաւորաբար Հրէից ձեռքով՝ ըլլող դրամավաճառութիւնը, որն որ տարին չորս հինգ միլիոն ֆրանգի ստակ շրջանի մէջ կը դնէ: Աս նաւահանգիստին, ինչպէս նա եւ Ելպա կղզւոյն նաւահանգիստին մէջ Տոսկանայի տէրութեան վաճառականները 1855ին 172 հատ մեծ ու 761 պզտիկ վաճառականաց նաւեր ունէին: Իսկ ներքին վաճառականութեան համար երեւելի է Փլորենտիա քաղաքը:

Արտաքին վաճառականութեան համար Լիվորնոյէն ետքը Սարդինիայի տէրութեան Գենուա քաղաքին ազատ նաւահանգիստը շատ անուանի է. հոս՝ ինչպէս նա եւ քանի մը ուրիշ նաւահանգիստները՝ դեռ քանի մը տարի առաջ 3153 մեծ ու պզտիկ Սարդինիայի վաճառականաց նաւեր կային. որոնք թէ Արեւելքի ու թէ Իտալիայի եւ օտար երկիրներու վաճառք բերելու եւ բուն երկրին վաճառքը տանելու կը բանէին. անկից ետքն ալ աս թիւը տարուէ տարի աւելցած է: Մօտիկ տարիներուն մէկուն մէջ միայն՝ բոլոր տէրութեան նաւահանգիստներուն մէջ մտնող

ազգային եւ օտարական վաճառականի նաւերուն ու շոգենաւերուն թիւը՝ 12,678, իսկ ելլողներուն թիւը՝ 13,345 հատ էր։ Իսկ մէկ տարուան մէջ դրսէն մտնող վաճառանըներուն գինը՝ յիսուն միլիոն ֆր. ու դուրս ելլողներուն գինը՝ յիսուն եւ երեք միլիոն ֆրանգի հասաւ. միայն Գենուայի նաւահանգիստը երբեմն տարին 6000 նաւէն աւելի կը մտնէ։ Ներքին վաճառականութեան համար գըլխաւոր քաղաքներն են՝ Դուրին, Ալեքսանդրիա, Շամպերի, Սուզա, Նովարա, եւ այլն. որոնց շատը երկաթուղիներով իրարու հետ կապակցած են։ Սակայն ամէն հաշիւները կը ցուցընեն որ Սարդինիայի տէրութեան՝ իր խաւրած վաճառքներուն, գլխաւորաբար՝ մետաքսին, մետաքսեղէնին, ձէթին ու բրինձին դէմ ուրիշ տեղերէն ընդունած վաճառքներուն գինը հասարակօրէն քանի մը միլիոն ֆրանգ աւելի է։ Ամենէն մեծ առուտուրը արմտիքով ու մետաքսով կ'ըլլայ. 1843ին եկող գացող նաւերուն բոլոր վաճառքին գնոյն, այսինքն 75 միլիոն ֆրանգին կէսը՝ միայն արմտեաց համար էր։ Սարդինիայի Արեւելքէն՝ մանաւանդ Եգիպտոսէն առած գլխաւոր վաճառքները՝ արմտիք ու բամբակ են։ Ետքի տարիները առանձինն Սարդինիա կղզւոյն ցորենի, արջառի, ոչխարի ու ձէթի առուտուրը Ճեզայիրի հետ շատ յառաջադիմութիւն ըրաւ։

Պարմայի ու Մոտենայի տէրութեանց վաճառականութիւնը այնպիսի վիճակի մէջ է՝ որ ներսէն դուրս խաւրուած վաճառքներուն գնոյն հետ դրսէն ներս մտածներուն արժէքը գրեթէ հաւասար կու գայ։

Հռոմայի տէրութեան մէջ վաճառականութիւնը՝ երկրին բերքերն ու նպաստաւոր հանգամանքը՝ մանաւանդ երկու (Միջերկրական ու Ադրիական) ծովերու մէջ ըլլալը նկատելով, կրնայ ըսուիլ՝ որ այնչափ ծաղ-

կեալ վիճակի մէջ չէ. Հասարակօրէն ներս բերուած վաճառքներուն գինը դուրս տարուածներուն գնէն աւելի է. օրինակի աղագաւ, տարի մը՝ յիսուն միլիոն ֆրանքի արժէքով վաճառք ներս մտած է, ու նոյն տարին քառասունուվեց ու կէս միլիոն ֆրանքի արժէքով վաճառք դուրս խաւրուած է. միայն տարւոյ մը մէջ (1852) բացառութիւն մը կը տեսնուի, որովհետեւ ան տարին դուրս ելած վաճառքը՝ ներս մտածէն 1¼ միլիոն ֆրանք աւելի էր: Իր գլխաւոր նաւահանգիստները վաճառականաց նաւերուն համար՝ Անգոնա ու Չիվիդավէքքիա են. որոնց մէջ տարին 2300 նաւէն աւելի կը մտնեն կ՚ելլեն. Հասարակօրէն ասոնց եւ ուրիշ ամէն նաւահանգիստներուն մէջ մէկտեղ տարին եօթը հազար նաւէն աւելի կը մտնեն. որոնց մէջէն միայն իբր հազար հատը բուն տէրութեան հպատակ ըլլող վաճառականաց է: Դուրս խաւրուած գլխաւոր վաճառքներն են՝ արմտիք (դէպ ի Իտալիայի ուրիշ երկիրները), տակառի տախտակ, բուրդ, ծծումբ, եւ այլն: Ներքին վաճառականութեան համար գլխաւոր քաղաքներն են Պոլոնիա ու Սինիկալիա:

Նեապոլսոյ տէրութեան վաճառականութեան հանգամանքը շատ աղէկ վիճակի մէջ չէ. գլխաւորաբար՝ իր առուտուրն ըստ մասին օտարականաց՝ Անգղիացւոց, Գաղղիացւոց եւ ուրիշ ազգաց ձեռքով ըլլալուն. որով եւ թէպէտ դուրս խաւրուած վաճառքներուն գինը ներս մտածներուն արժէքէն (երբեմն 7—8 միլիոն ֆրանք) աւելի կ՚ըլլայ, բայց աս շահն աւելի օտարականները կ՚ընեն քան թէ բուն երկրին բնակիչքը: Դուրս խաւրուած վաճառքները՝ որ են երկրի բերքերը՝ առաւելապէս Սիկիլիա կղզիէն ելածները՝ շատ տեսակ են, որոնք ծովով ու ցամաքով ամէն երկիրներ մինչեւ Ամերիկա կը խաւրուին: Քանի մը տարի առաջ բուն տէրութեան վաճառականաց

նաւերը քիչ էին. բայց տարէ տարի աւելնալով՝ հիմայ տասը հազարի կը հասնին ։ Իր գլխաւոր նաւահանգիստները վաճառականաց նաւերու համար են՝ (վերը յիշուածներէն զատ) Պարի, Պարանդոյ, Պարլէդդա, Անկոնա, Գաղանիա, Ճիրճէնդի, Դրաբանի, եւ այլն ։ Իսկ ներքին վաճառականութիւնը Նէապոլսոյ ցամաքին ու Սիկիլիա կղզւոյն հետ շոգենաւերով կ'ըլլայ, եւ երկրին մէջ գլխաւոր առուտուրի քաղաքներն են՝ Նէապոլիս, Ֆօճճիա, Ալդամուրա, Լէջջէ, Աւելլինոյ, Գամբոյ Պասսոյ եւ այլն ։ Սալերնոյի ու Ֆօճճիայի տօնավաճառները շատ յաճախած են, ու ներքին առուտուրին մեծ օգուտ եւ յառաջադիմութիւն կու տան ։

## Հին ու Նոր բաժանում ։

Հռոմայեցիք բոլոր Իտալիա՝ իր հիմակուան տարածութեամբը (կղզիները դուրս թող տալով, ինչպէս վարը պիտ'որ գրենք,) կը բաժնէին՝ Ա. *Այսրալպեան* (Ալպեան լերանց ասդին կամ հարաւային կողման) *Գաղղիա*, (հիմայ՝ Վերին Իտալիա). Բ. *Բուն Իտալիա* (հիմայ՝ Միջին Իտալիա) ու Գ. *Մեծ Յունաստան* (հիմայ՝ Ստորին Իտալիա) ։

Այսրալպեան Գաղղիոյ մէջ իրենց ատենները կը բովանդակէին ա. Լիգուրիա (հիմակուան Գենուայի դքսութեան երկիրը). բ. բոլոր Պադոս (Բոյ) գետին դաշտավայրը կամ ձորը, այսինքն նոյն գետին հիւսիսային դին, որ եւ կ'ըսուէր Անդրպադոսեան (Պադոսի անդին կողման) Գաղղիա (հիմայ՝ Լոմբարտիայի երկիրը), նոյն գետին հարաւային դին ըլլող երկիրը, որ կ'ըսուէր Այսրպադոսեան (Պադոսի ասդին կողման) Գաղղիա (հիմայ՝ Բարմայի ու Մոտենայի երկիրներն ու Հռոմայի տէրութեան հիւսիսային մասը) ու գ. Վենետիկոյ երկիր (հիմայ՝ Վենետկոյ ցամաք երկիրը) ։ Հռոմայեցւոց Իտալիայի սա մասին

(Այսրալպեան) Գաղղիա անուն տալուն պատճառը՝ չէ թէ միայն բուն Գաղղիայէն Ալպեան լեռներով միայն բաժնուած ու իբր անոր մէկ կտորը սեպուիլն էր, հապա նաեւ ան որ աս մասին շատ կողմերը գրաւած ու բնակած էին Կեղտք, այսինքն հին Գաղղիացւոց այլ եւ այլ ցեղերը, Ինսուբրացիք, Տաւրինացիք, Սաղասսացիք (Ալպեանց լեռնաբնակ ժողովուրդը), Բոյացիք, Լինգոնացիք, Սենոնացիք, եւ այլն, որոնց եւ հին քաղաքներն էին աս մասին մէջ՝ Մեդիոլանոն (Միլան), Բրիքսիա, Մանտուա, Պարմա, Մուտինա, Բոնոնիա (Պոլոնիա), Սենոգալլիա, եւ այլն։

Բուն Իտալիայի արեւմտեան մասին մէջ էին ա. Էտրուրիա (Հիմակուան Տոսկանայի մեծ դքսութեան երկիրը), բ. Լատիոն *, որուն մէջ կ'իյնար Հռոմ քաղաքն իր սահմաններովը. գ. Կամպանիա (Հիմայ՝ Դերրա տի Լաւորոյ), որուն երկիրն աշխարհքիս խիստ գեղեցիկ ու

* Լատիոնի երկիրը, զորն որ Հռոմայեցիք Հին ու Նոր Լատիոնի բաժնած էին, քանի մը պզտիկ լեռներով միայն ընդհատուած ընդարձակ դաշտ մըն էր, որուն գլխաւոր մասը Դաշտ կամ Ագարակ Հռոմայ (Ager romanus=Campagnia di Roma) կ'ըսուէր։ Հինը Տիբերիս գետէն մինչեւ Կիրկէի (Չիրչելլոյ) հրուանդանը Դերրաչինայի մօտ կ'երթար, ուր կ'իյնան (հինգ մղոն երկայն ու իբր երկու մղոն լայն) Պոնտինեան ճահիճները. (Paludi Pontine)։ Իսկ Նորը՝ մինչեւ Լիրիս (Կարիլիանոյ) գետը դէպ ի հարաւ կ'երթար, որով եւ բոլոր Լատիոն Տիբերիս ու Անիոյ (Դեվերոնէ) գետերուն, Աղգիդոս լեռնային անտառին ու Տիւռենեան ծովուն մէջտեղը կ'իյնար։ Հոս Աղգիդոս պզտիկ լեռան ստորոտն էին անուանի Ալբանեան ու Նեմորեան ծովակները, որոնց մէջտեղն էր՝ Քրիստոսէ 1163 տարի յառաջ շինուած Ալբալոնգա (Ալպա Լոնկա) հին գլխաւոր քաղաքը, (ուր է հիմայ Ալպանոյ քաղաքը Հռոմայէն երեք մղոն հեռու), իսկ միւս երեւելի հին քաղաքները, բաց ի եօթը բլուրներու վրայ շինուած Հռոմ քաղքէն, էին՝ Տիբուր (Դիվոլի) Հռոմայեցւոց ամենէն սիրական գեղադնացութեան տեղը. Պրենեստէ, Տուսկուղոն (Ֆրասգադի), Ոստիա, Վելիտրէ (Վելլեդրի), Տարրակինա (Դերրաչինա), Արպինոն (Կիկերոնին ծննդեան քաղաքը), Լաւրենտոն (Լորէդդոյ), եւ այլն։ Աս երկրին մէջ կը բնակէին՝ Հռոմայեցւոց պատմութեան մէջ յաճախ յիշուած՝ քանի մը հին ցեղեր, Էկուացիք, Հեռնիկացիք, Ռուտուղացիք, Վոլսկացիք, եւ այլն։

զուարճալի կողմերուն մէկն է, ու իր պտղաբերութեանը համար նոյն իսկ Իտալիայի շտեմարանն ու պտղանոցը կրնայ սեպուիլ. ընտիր գինի բերող լեռներով զարդարուած, ուր կ'իյնայ նաև Վեզուվ հրաբուղխ լեռը: Իր գլխաւոր քաղաքն էր Սալերնոյ. իսկ միւս երևելի քաղաքներն էին՝ Նէապոլիս (Պարթենապէ), Նոլա, Կապուա, և այլն: Հոս էին նաև Հերկուլանոն ու Պոմպէիք (Հերքուլանում, Պոմբէի) քաղաքները, որոնք (79 Ք. Ե.) Վեզուվ լերան յանկարծ բորբոքելովը՝ անոր մոխրոյն տակ ծածկուեցան, ու հիմակ իրենց աւերակները գետնի տակէն ամբողջ ու անարատ կը հանուին: — Իսկ արևելեան մասին մէջ էին, դ. Ումբրիա, որուն մէջ կ'իյնան հիմակուան Ռիմինի ու Սինիկալիա քաղաքները, ե. Պիկենիոն (Բիչենում), որուն մէջն է Անգոնիա, ու զ. Սամնիոն (Սամնիում), որուն գլխաւոր քաղաքն էր Բենեւենտոն (Պենեւենդ), ուր կ'իյնան Ապրուցեան լեռները, նաև Հռոմայի երկրին Ռիէդի և ուրիշ քանի մը քաղաքները:

Իսկ Մեծ Յունաստանի (Ստորին Իտալիայի) մէջ էին՝ ա. Լուկանիա, որուն մէջ կ'իյնային Սիպարիս ու Հերակլէա քաղաքները, բ. Բրուտիոն (հիմայ՝ Անդրին Կալաբրիա), ուր էին Հռեգիոն, Գոնսենտիա, Կրոտոն, և այլն, քաղաքները. գ. Ապուլիա ու դ. Կալաբրիա (հիմայ՝ Անդրին Կալաբրիա). աս երկուքին մէջն էին՝ Յունաց գաղթականութեան անուանի քաղաքը Տարենտոն, ինչպէս նաև Բրունտուզիոն (Պրինտիզի) ու Գալլիպոլիս (Կալլիբոլի): — —

Հռոմայեցւոց ատեններէն ետքը Իտալիայի 180 մղոն երկայնութեամբ երկիրը՝ ինչպէս վերը նշանակեցինք՝ իր դիրքը համաձայն երեք մաս կը բաժնուէր. այսինքն՝ Ա. Վերին Իտալիա, Բ. Միջին Իտալիա ու Գ. Ստորին (Ներքին) Իտալիա: — Վերին Իտալիայի մէջ են հի-

մայ՝ 1. Սարդինիայի տէրութիւն, 2. Լոմպարտեան-Վենետական թագաւորութիւն, 3. Պարմայի եւ 4. Մոտենայի դքսութիւններուն երկիրները: Միջին Իտալիայի մէջ են՝ 1. Տոսկանայի մեծ դքսութիւն, 2. Հռոմայի տէրութիւն ու 3. Ս. Մարինոյ պզտիկ Հասարակապետութեան երկիրները: Այս մասին կը վերաբերի Գորսիգա կղզին, որն որ Գաղղիայի իշխանութեան տակ է: Իսկ ստորին Իտալիայի մէջ է՝ Նէապոլսոյ կամ երկու Սիկիլիայի (ցամաքին ու կղզւոյն) թագաւորութեան երկիրը: Այս մասին մէջ կ՚իյնայ Սարդինիայի տէրութեան տակ ըլլող Սարդինիա կղզին: Նոյնպէս աս մասին կը վերաբերի Նոա եւ Մալդա կղզին, որն որ Անգղիացւոց իշխանութեան տակն է:

Ըստ այսմ տեսութեան մինչեւ հիմակ Եւրոպայի տէրութեանց մէջ առ հասարակ ընկալեալ կարգաց համաձայն, (հիմակուան դեռ տիրող ու շարունակող շփոթութեանց ու յեղափոխութեանց միտ չդնելով, որոնց կատարածն ու վերջնական ելքը դեռ անորոշ է.) բոլոր Վերին, Միջին ու Ստորին Իտալիա՝ հետեւեալ տէրութեանց տակ այսպէս կը բաժնուի.

Ա. *Սարդինիայի թագաւորութիւնը*՝ Լոմպարտիայի գլխաւոր մէկ մասովը:

Բ. *Լոմպարտեան-Վենետական թագաւորութիւնը* Աւստրիայի կայսեր իշխանութեան տակ, որ է Լոմպարտիայի հիւսիսային-արեւելեան մէկ մասը ու Վենետիկի ցամաքն ու կղզիները:

Գ. *Պարմայի դքսութիւնը:*

Դ. *Մոտենայի դքսութիւնը:*

Ե. *Տոսկանայի մեծ դքսութիւնը:*

Զ. *Հռոմայի Քահանայապետին տէրութեան երկիրը:*

*Է. Ս. Մարինոս հասարակապետութիւնը:*

*Ը. Նէապոլսոյ, կամ Երկոց Սիկիլիայի թագաւորութիւնը:*

Նորերս՝ *Սավոյայի երկիրն ու Նիսա* (Նիցցա) քաղաքը՝ Սարդինիայի տէրութենէ Գաղղիայի կայսրութեան անցան:

*Իտալիայի կղզիները:*

Հռոմայեցիք իրենց ատենը Իտալական կղզիները, *Սիկիլիա, Սարդինիա, Գորսիգա, Էլպա, Մալդա* եւ ուրիշ քանի մը պզտիկները, Իտալիայի մէջ չէին համարիր. հապա իբրեւ անկից դուրս ըլլող նահանգներու մասեր կը սեպէին: Սակայն իրենց դիրքն ու բնական հանգամանքը զանոնք Իտալիայի հետ կապակցած ըլլալով, բնակիչքն ալ Իտալական ցամաքին բնակչացը հետ ցեղակից ու ազգակից գտնուելով, պէտք է որ Իտալիայի մասերը սեպուին. ինչպէս հիմակ ալ հասարակ կը սեպուին:

Արդ՝ այս կղզիներուն մէջ ամենէն մեծը՝ Սիկիլիա (ըստ հին անուանն՝ Սիքանիա), որն որ ցամաք երկրէն Մեսսինայի նեղ կիրճովը կը բաժնուի, իր անունն առած է՝ շատ հին ատեններ Իտալիայէն հոս գաղթող Սիկուղացիներէն կամ Սիկանացիներէն: Ասկից ի զատ կ'ըսուի նա եւ Տրինակրիա (երեքծագեան), երեք սուր ծայրով ձեւ մ'ունենալուն համար, որ են իրեն երեք հրուանդանները, այսինքն՝ հիւսիսային արեւելեան դին Բելորոն (Գլուխ Փարոսի), հարաւային դին Բաքինոն (Գլուխ Բասսարոյ) եւ արեւմտեան դին՝ Լիլիբէոն (Գլուխ Պոերա), որուն հետ է նա եւ Դրեպանոս (Գլուխ Դրաբանի): — Բոլոր կղզւոյն տարածութիւնը 498 քառակուսի մղոն է. երկայնութիւնը 40 մղոն ու լայնութիւնը 26 մղոն: Իր

միջէն՝ իբր հարաւային (Նէապոլսեան) Ապեններեանց շարունակութիւնը՝ գլխաւոր լերանց կարգ մը Արեւելքէն դէպ Արեւմուտք կը քալէ, ըստ հնոց՝ Հէրէեան կամ Յունոնեան լերինք ըսուած, որն որ Դրեպանոս հրուանդանին մօտերը 2170 ոտք բարձր Երիւքս (Մ. Ճուլիանոյ) լեռան հետ կը միանայ։ Կղզւոյն արեւելեան ծովեզերաց մօտերը Կատանիա քաղաքէն քիչ մը վերով՝ մինակուկ կը բարձրանայ 10,800 ոտք բարձրութեամբ, հին ատեններէն իր զարհուրելի բորբոքմունքներովը հռչակուած հրաբուղխ լեռը Եթնա (Մ. Ճէպէլլօ), որուն ստորոտին բոլորտիքը 20 մղոն է, ու թէպէտ եւ հրափրփուրի (լաւա) հեղեղներու անթիւ հետքեր ունի, սակայն արտաքոյ կարգի պտղաբեր՝ ու բազմաթիւ գեղերով ծածկուած է։

Կղզւոյն ծովափանց վրայ շատ հին ատեններէ սկսած Փիւնիկեցի գաղթականութեանց քաղաքներ կը գտնուէին, ինչպէս հիւսիսային արեւմտեան դին Պանորմոս (Պալերմոյ), արեւմտեան դին՝ Լիլիբէոն հրուանդանին վրայ՝ Լիլիբէոն (Մարսալա) քաղաքը, ասոր հիւսիսային դին՝ Դրեպանոս (Դրապանի)։ Ետքէն՝ Քրիստոսէ առաջ՝ 750 ու 640 տարիներուն մէջ՝ յունական գաղթականք նոյն տեղերը նուաճեցին առին ու առջի բնակիչները երկրին ներսերը քշեցին։ Ասոնցմէ ետքը տիրեցին Կարքեդոնացիք, զորոնք Հռոմայեցիք (212. Ք. Ա.) հոսկից վռնտեցին։ Արեւմտեան Հռոմէական պետութեան կործանելէն ետքը կղզին նախ արեւելեան Գոթաց, ետքէն Բիւզանդեան կայսերաց ձեռքն անցաւ։ Յամի 842ին Արաբացիք տիրեցին, որոնցմէ առին զանիկայ Նորմանք յամի 1061ին, անկից ետքն ալ Սիկիլիա Նէապոլսոյ տէրութեան բախտին հետ հասարակ բախտ ունեցաւ։ Հոստեղաց հին յունական քաղաքներուն մէջ աւելի անուանի ըլլողներն էին՝ Սիրակուզա, Գեղա (Դէրրա Նուո-

վա=Նոր երկիր), Ագրիգենտոն (յն. Ագրական, իտ. Ճիրճենդի), Սեղինոս, Կատանիա (Գադանիա), Մեսսանա (Մեսսինա), Սեգեստա ու Իմերա։

Սիկիլիայի հիւսիսային դին կ'իյնան՝ իրենց վուլկանեան կազմութեան պատճառաւ հին ատեններէն ի վեր հռչակուած՝ Եոլեան հիմայ Լիփարեան (13) կղզեաց խումբը ու արեւմտեան դին՝ Եգադեան կղզիները։ Նեապոլսոյ ծովածոցին բերանն են պզտիկ կղզիները՝ Բրոչիտա, Իշիա կամ Իսքիա (ըստ հնոց Ենարիա), որ ունի հանքային առողջարար ջրեր. Նիզիտա, որ աղուոր պարտէզ մը կը նմանի, ու Կափրէա (հիմայ՝ Գաբրի), ուր Տիբերիոս կայսրը իր տէրութեան վերջին եօթը տարիները ամէն տեսակ զեղխութեամբ ու անառակութեամբ անցուց։ —

Իսկ Մալդա (Մեղիտէ), Կոցցոյ (Գաւղոս), Գոմինոյ ու (անբնակ) Գոմինոդդոյ կղզեաց խումբը Սիկիլիա կղզւոյն հարաւային-արեւմտեան ու Ափրիկէի հիւսիսային ծովեզերաց մէջ կ'իյնայ, ու Սիկիլիայի հիւսիսային ծայրէն միայն 12 մղոն հեռու է։ Ամէնը մէկտեղ 10 քառակուսի մղոն երկիր ունին, ըստ մեծի մասին կրային ժայռերէ կազմուած. միայն Մալդայի ու Կոցցոյի գետինը բարերեր հողով ծածկած է։ Ջուրը շատ նուազ է. գետեր չկան. անձրեւ ալ ցանցառ կու գայ. սառոյց ամենեւին չ'ըլլար։ Եղանակը շատ բարեխառն ու զուարճալի է. ամառուան տաքն ալ ծովային հողմերով կը բարեխառնի։ — Մալդա, որուն սկզբնական անունը Իոգէրիա էր, ու ետքէն Յունացմէ Մեղիտէ ըսուեցաւ, իսկ Արաբացիք Մալդա անուանեցին, ի սկզբան անդ Փէակեցւոց ձեռքն էր, ետքէն Փիւնիկեցիք եկան զանոնք հոսկից վռնտեցին. բայց իրենք ալ քիչ ատենէ ետքը Յունաց գաղթականներէն վռընտուեցան։ Յունաց ձեռքէն Կարքեդոնացիք առին, անոնցմէ ալ Հռոմայեցիք. մինչեւ յամի 818ին Սարա-

կինոսք կամ Արաբացիք եկան կղզւոյն տիրեցին: Իբր հարիւր տարի ետքը (1090) Սիկիլիացի Նորմաններն անոնցմէ առին. անկից ետեւ ալ բոլոր աս կղզեաց խումբը Սիկիլիացւոց կամ Նէապոլսոյ տէրութեան իշխաններուն ձեռքը մնաց: Կարոլոս Ե. կայսրը յամի 1530ին Մալթա կղզին Հռոդոսէն հալածուած Յովհաննիսեան ասպետաներուն պարգեւեց, որոնք եւ Մալթայեան ասպետք անուանեցան: Քանի մը փոփոխութիւններէն ետքը յամի 1800ին Անգղիացիք տիրեցին, ու մինչեւ հիմայ իրենց ձեռքն է: —

*Սարդինիա* կղզին Ստորին Իտալիայի արեւմտեան կողման դիմացը՝ 430. քառ. մղոն երկիր ունի, ուր հիւսիսէն դէպ ի հարաւ լերանց կարգ մը կ'ընթանայ: Գետինը բերրի, բայց օդը վտանգաւոր է *: Իր բուն բնակիչքը՝ Լիբիացի գաղթականներու հետ խառնուելով՝ Սարդք կամ Սարդոնիացի անուամբ ծանուցուած ժողովուրդն էին, որոնց վրան աւելցան ետքէն՝ Կարքեդոնացւոց հոս տարած ատենը՝ նա եւ Իբերացիք: Երկրին մէջերն ըլլող լեռնաբնակները ոչ Կարքեդոնացիք եւ ոչ Հռոմայեցիք՝ (238 Ք. Ա.) հոս տիրելէն ետեւ՝ կրցան նուաճել: Քրիստոսէ ետքը յամի 720ին Արաբացիք բոլոր կղզւոյն տիրեցին, որոնց ձեռքէն առին զանիկայ Պիզացիք 1050ին. ասոնցմէ անցաւ Սպանիացւոց, ետքը Աւստրիայի տէրութեան, ուսկից փոփոխութեամբ մը Սարդինիայի տէրութիւնն առաւ:

* Կղզւոյն ծովեզերքը ընդարձակ ճահիճներ կան, որոնց արտաշնչութիւնը վտանգաւոր ջերմեր կը պատճառէ: Անոր համար Հռոմայեցիք աս տեղս անանկ անարգ կը սեպէին՝ որ միայն մեծ յանցաւորները հոս կ'աքսորէին: Բայց ան ատեններն ալ իր գետնին բերրիութեանն ու արմտեաց առատութեանը համար ցորենի շտեմարան մը կը սեպուէր: Հիմակ ալ նոյն բերրիութիւնն ունի, բայց աղէկ մշակուած չէ. նա եւ իր ընդարձակ անտառները շատ օգուտ չեն ըներ, որովհետեւ անոնցմէ կտրուած փայտերը ծովն իջեցունելու յարմար ճամբաներ չկան: Իր գլխաւոր բերքն է Մուֆլոն ըսուած վայրի ոչխարը:

Սարդինիա կղզւոյն մօտ է Դաւօլարա կամ Պուլինա պզտիկ կղզին, որուն վրայ շատ վայրի այծ կը գտնուի՝ արտաքոյ կարգի մեծութեամբ ու համեղ մսով: — Հիւսիսային ծայրին մօտ է Մատտալէնա 12 հատ կղզեաց խումբը, որոնց գլխաւորն է Մատտալէնա, ու իր վայրի այծերուն բազմութեան համար երեւելի ըլլող Գաբրերա կղզին: Ասոնց բնակիչքը շատ վարպետ են նաւավարութեան մէջ: Սարդինիայի տէրութեան կը վերաբերի նա եւ Գաբրայա կղզին, որն որ Գորսիկայի հիւսիսային ծայրին արեւելեան դին ու Լիվօրնոյէն ինը մղոն հեռու է, ուր շատ վայրի այծեր կան: —

Նշանակելու արժանի է նա եւ պզտիկ կղզին Էլպա (Իլուա, Էլպա), Գորսիկա կղզւոյն ու Իտալիայի ցամաքին մէջ՝ Տոսկանայի իշխանութեան տակ, որուն վրայ Նաբոլէոն Ա. կայսրը (1814. Մայ. 4 — 1815. Փետր. 26.) իբրեւ կղզւոյն անկախ իշխողը բնակեցաւ: Գլխաւոր քաղաքն է՝ Բորդոյ Ֆէրրայոյ: — Տոսկանայի տակ են նա եւ աս կղզիները. Բիանոզա, որն որ շատ անուշ օդ ու բերրի գետին ունի. ձիթենին առատ է: Հոս քշեց Աւգոստոս կայսրն իր թոռը Ագրիպպա Պոստհումոսը, զորն որ ետքը Տիբերիոս կայսրը հոս սպաննել տուաւ: Մոնդէ Քրիսդոյ կղզին միայն ձկնորս բնակիչներ ունի. Ճաննուդրէ ու Ճիլիոյ կղզիներն ընտիր մարմարիոն ունին: —

Գորսիկա (Գիւռնոս, Գորս), Սիկիլիայէն ու Սարդինիայէն ետքը Իտալիային ամենէն մեծ կղզին, որն որ միայն Ս. Պոնիֆաչիոյի նեղուցով Սարդինիա կղզւոյն հիւսիսային ծայրէն բաժնուած է, ունի 178 քառ. մղ. ընդարձակութեամբ երկիր. երկայնութիւնը 25 մղ. ու լայնութիւնը 11 մղ. է: Իր բերքերուն մէջ նշանաւոր է շոճ կամ սարոյ ծառին մէկ տեսակը՝ Լարճիոբերճ սարոյ (Pinus altissima) ըսուած, որն որ բոլոր Եւրոպայի հողին վրայ բուսնող

ծառերուն մէջ ամենէն բարձրն է։ Իր մարմարիոնն ու երկաթի հանքն ալ առատ է. ունի նաև վայրի ոչխար (մուֆլոն)։ Աստեղաց սկզբնական բնակիչքն էին Իբերացիք, Լիգուրացիք, Տիւռենացիք ու Փոկէացիք, ետքէն Կարքեդոնացիք տիրեցին ու գաղթականներ դրին։ Հռոմայեցիք (238—230 Ք. Ա.) զանիկայ իրենց իշխանութեան տակ առին։ Բայց զկղզեցիները կամ Գորսիկացիներն իրենց բիրտ բարուցը համար շատ կ'արհամարհէին, ուստի և իրենց մէջ Գորսիկա աքսորուիլը խիստ մեծ պատիժ կը սեպուէր։ Արեւմտեան Հռոմէական տէրութեան վերջանալէն ետքը՝ կղզւոյն վրայ իրարու ետեւէ տիրեցին՝ Վանդալք, Գութք, Լոմբարտացիք, Բիւզանդեանք ու Արաբացիք։ Աս ետքիններուն ձեռքէն առին զանիկայ Գենուացիք յամի 806ին։ Մետասաներորդ դարուն մէջ Բիզացիք տիրեցին. բայց 1284էն ետքը Գենուացիք նորէն առին։ Ետքէն բուն կղզեցիք ապստամբելով՝ 1735ին իրենց զատ թագաւոր դրին. բայց Գենուացիք զանիկայ հանգիստ չթողուցին, և շատ շփոթութիւններէն ետքն իրենք ալ չկրնալով Գորսիկացւոց հետ հաշտութիւն ընել ու խաղաղութեամբ տիրել՝ բոլոր կղզին 1768ին Գաղղիացւոց տուին, որոնք մինչև հիմայ հոս կը տիրեն։ Ետքի ժամանակները Գորսիկա նշանաւոր եղաւ Նաբոլէոն Ա. կայսեր հայրենիքն ըլլալովն, որն որ յամի 1689ին աստեղաց գլխաւոր քաղաքը Այաչչիօ (Աժեաչչիօ) ծնաւ։ —

Իտալիայի կղզիներուն կարգը պէտք է դնել Վենետիկ, որն որ Ադրիական ծովալճերուն (Laguni) մէջ 136 հատ պզտիկ կղզիներէն 450 կամուրջներով միացած է, որոնց մէջէն 134 հատ ջրմուղներ կամ ջրանցքներ կ'անցնին։ Աս ծովալճերուն կազմութիւնը հետեւեալ կերպով եղած է։ Ադրիական ծովն իր արեւմտեան եզերաց կողմը՝

սաստիկ հոսանքներու կամ յորձանքներու, տիրող հողմե-րու եւ ուրիշ տեղական հանգամանաց զօրութեամբ հարիւ-րաւոր տարիներու մէջ արտաքոյ կարգի առատութեամբ տիղմի զանգուածներ դիզած ու ասանկով անչափ ընդարձակութեամբ ճահիճ մը կազմած է. Ի վերայ այսր ա-մենայնի աս լայնածաւալ ճահիճին մէջէն քանի մը գետեր (Սիլէ, Պրէնդա,) բռնութեամբ իրենց ճամբայ բացած կը քալեն ու ծովը կը թափին։ Իսկ մարդկային հնարա-գիւտ ճարտարութիւնը միջոցներ գտած է աս ահագին ճահիճը՝ գետերէն կազմուած ու արհեստով յօրինուած ջրմուղներով այլ եւ այլ մասերու բաժնել ու անանկով բազմաթիւ կղզիներ կազմել, Եւ ահա աս ծովալճերն (Laguni) են, որոնց մէջն ու վրան համբաւաւոր Վենետիկը կը կենայ ու կը տիրէ։ Աս ծովալճերուն սահմաններն են ծովու կողմանէ խել մը աւազէ կոյտերու կամ կղզիներու շարք, որոնք տեղական անուամբ Լիտօ (ափունք) կ'ը-սուին։ Աս աւազի կղզիներուն հետ միացած՝ գրեթէ կէս մղոն երկայնութեամբ՝ քարաշէն թումբ (Murazzi) մը ծովին ցամաքը սաստկութեամբ զարնուիլը ու կոխելը կ'արգե-լու։ Աս ըսածներնէս կ'իմացուի՝ որ Վենետիկ ի բնու-թենէ կազմուած կղզի մը չէ, հապա արհեստով յօրի-նուած կամ [illegible] կղզի մը։ — Իր բոլորտիքը նոյն ծովալճին մէջ ըլլող միւս պզտիկ կղզեաց նշանա-ւորներն են՝ Ս. Ղազար, 150 տարիէ ի վեր՝ Մեծին Մխի-թարայ հաստատած Մխիթարեանց վանքովն անուանի. Ս. Սերվոլօ, մեծ հիւանդանոցով մը. Տորչելլօ, որուն եպիսկոպոսարանն աս կղզիներուն վրայ եղած եպիս-կոպոսարանաց մէջ ամենէն առջինն էր. բայց հիմայ միայն քանի մը աղքատ բնակիչք ունի. Ս. Քրիստափոր, ուր է Վենետիկի գերեզմանոցը. Պօվէլեա, ուր է նոր արգելա-նոցը ժանտախտի համար (լազարէթ). Քիոճճիա կամ Քիոջ-

յա, որն որ քարաշէն կամուրջով մը Պրանտոլոյ կղզւոյն հետ միացած է. Պուրանոյ, Մուրանոյ, եւ այլն: Դարձեալ՝ վերը յիշուած ուսպէ կղզիներուն երեւելիներն են՝ Մալամոքքոյ, Սոտտոմարինա, Բելլեստրինա, եւ այլն:

## Հին ու Նոր Բնակիչք:

### Ա. Հին Բնակիչք:

Մ՚ինչեւ հիմակ ամէն հնախօսք ու պատմիչք իրենց երկայն ու զգուշաւոր քննութիւններովը չեն կրցեր որոշակի գտնել ու հաստատել՝ թէ Իտալիայի բուն առաջին կամ սկզբնական ու ամենէն հին ժողովուրդը ո՛րն էր եւ այս ժողովուրդը երկրին ո՛ր կողմը կը բնակէր: Կը յիշուին այն Աբորիճինացիք (Aborigines=Αὐτόχτων) այսինքն անուամբ սկզբնական բնակիչք. բայց ասոնց վրայ ստոյգ ու ճիշդ տեղեկութիւն մը չկայ՝ թէ Իտալիայի մէջ այնչափ անչափ անուններով յիշուած ժողովրդներէն ո՛րը՝ կամ որո՛ւն նախահարքն էին *: —

* Ըստ հռովմէական կարծեաց՝ այս Աբորիգինացիք ըսուած ու բուն տեղացի սեպուած բնակիչքը յունական ցեղ մըն էր, որն որ Թեսաղիայէն Իտալիա գաղթեցաւ, Լատիոնի երկրին մէջ Ապեննինեանց սարարաները Ռէատէի՝ կամ հիմակուան Ռիէդի քաղքին մօտերը իրենց բնակութիւնը հաստատեց: Աս գաղթականութիւնը պէտք է որ Ենէասայ ու Տրովադացւոց հոս գալէն առաջ եղած ըլլայ. ինչու որ ըստ Լիւիոսի (Գիր. Ա. Գլ. 1.) Ենէաս ու իր ընկերները հոս եկած ատեննին ասոնց հետ պատերազմելու պատրաստուեցան, մինչեւ որ Ենէաս Լատիոնի Լատինոս թագաւորին հետ բարեկամանալով, հոն հաստատուեցաւ, ուր եւ ետքէն իր որդին Ասկանիոս՝ Ալբալոնգա (Ալպա լոնկա) քաղաքը շինեց: — Ետքէն Աբորիգինացիք իրենց սահմանակից ըլլող Սիկուղացւոց (Լատինացւոց) հետ պատերազմ բանալով՝ Պեղասգացի Յոյներն իրենց օգնութեան կանչեցին ու անոնցմով Սիկուղացւոց մէկ մասը Լատիոնի երկրէն ու Կամպանիայէն վռնտեցին. որով եւ աս հալածուած Սիկուղացիք պարտաւորեցան Իտալիայի ցամաքը թողուլ ու Սիկիլիա կղզին անցնիլ, ուր եւ հաստատուեցան մնացին: Աս պատերազմներէն ետքն ալ Աբորիգինացւոց անունը հերթէ Իտալիայի մասնաւոր ժողովրդեան յիշատակը՝ պատմութեանց մէջէն անհետ կ'ըլլայ: Հռովմայեցիք զԼատին-

Ոմանք կը կարծեն՝ թէ Լիգուրացի ժողովուրդն Իտալիոյ սկզբնական ժողովուրդն կամ այդրէնածիններն ըլլայ, որովհետեւ ամենէն հին պատմութիւնները կը յիշեն՝ թէ Հոստեղաց շատ հին ժողովուրդները տեղացի Լիգուրացւոց դէմ պատերազմներ ըրին։ Բայց նոյն պատմութեանց մէջ աս ալ կը յիշուի՝ թէ աս Լիգուրացւոց բնակած երկիրը նա եւ Ումբրացիք կը բնակէին, զորոնք ոմանք Իտալիոյ ամենէն հին բնակիչքը կը սեպեն։ Ուրիշներն ալ՝ Սիկանացիները, որ են Սիկուղացիք, Լիգուրացիներէն հին կը համարին։ Աս ամենայն նկատելով՝ հնախօսք ու պատմիչք՝ Իտալիոյ ամենէն առջի ու սկզբնական ժողովուրդը ճշդիւ որոշելը իբր անհնարին կը սեպեն։ Ասոր համար միայն շատ հին ժամանակներէ սկսած դրսէն Իտալիա գաղթող այլ եւ այլ ցեղերուն մէջ ամենէն առջինները իբրեւ սկզբնական բնակիչք՝ հին Յոյն ու Լատին պատմագրաց ու աշխարհագրաց տուած տեղեկութիւններուն համաձայն՝ հաւանական կարծեօք կը նշանակեն։ —

Իտալիոյ գեղեցիկ ու դրախտանման երկիրը՝ շատ հին ու պատմութեանց մէջ մթութեան քօղով ծածկուած ատեններէ սկսեալ՝ Արեւելքէն այլ եւ այլ ճամբաներով դէպ ի Եւրոպայի արեւմտեան կողմերը գաղթող ազգերն ու ժողովուրդները իր ձորերուն ու ծովեզերեայ դաշտերուն վրայ բնակութիւն հաստատելու հրաւիրած ու քաշած է։ Ասոր համար Հռոմայեցւոց սկզբնաւորութենէն շատ դարերով յառաջ աս երկիրն իր բարձրագոյն մշակութիւնն ու յառաջադիմութիւնը սկըսած է, որոնք հիւսիսէն ու արեւելքէն գաղթած ժողո-

ները աս Աբորիգինացւոց սերունդը կը սեպէին, որպէս զի՝ իրենք ալ Լատինացւոց սերունդն ըլլալով, նոյն՝ տեղացի կամ բուն սկզբնական բնակչաց հարազատ յաջորդներն ըլլալնին պարծանօք հաստատեն։

վուրդներու արդիւնքն են: — Այս ժողովուրդները կրնան երեք գլխաւոր ցեղերու մէջ բովանդակիլ. Ա. Հելլենական ու Հելլենական-Լիւրիկեան, Բ. Իտալական-Կելտական, ու Գ. Տիւտոնական-Պելասգեան=Ետրուսկեան ցեղերու մէջ: Մենք՝ մեր թերթերուն ներածին չափ՝ այս ցեղերուն գլխաւոր ու պատմութեանց մէջ յաճախ յիշուած ճիւղերը կը նշանակենք:

Ա. Շատ հին ատեններ (Քրիստոսէ առաջ՝ 1700 ու 1000 տարիներուն մէջ,) Հելլենք Լիւրիկեցւոց, Թեսաղացւոց ու Եպիրացւոց հետ խառն՝ երկրիս հիւսիսային-արեւելեան ու արեւելեան կողմերէն Իտալիա եկան: Անոնցմէ ոմանք Վենետացի կամ Վենետիկեան+ անուամբ Պօ գետին բերաններուն մօտ իրենց բնակութիւնը հաստատեցին: Ըստ Լիւիոսի* այս ետքիններն ըստ մասին Տրովադայի պատերազմէն ազատած ու Պափղագոնիա փախած եւ հոն բնակող Տրովադացիներն ու նոյն Պափղագոնիայի մէջ ըլլող Հենետացիներն էին, որոնք իրենց Անտենոր գլխաւորին առաջնորդութեամբը Ասիայէն ելան ու Ադրիական ծովուն վերջին ծոցը եկան, հոն Ալպեան լերանց եւ ծովուն մէջտեղի երկիրը բնակող Եւգանացիները վռնտեցին ու հոն բնակեցան: "Այն տեղը, ուր որ անոնք նախ առաջին ցամաք ելան, Տրովադա կ'անուանի, կ'ըսէ նոյն Լիւիոս, ուր եւ Տրովադա անուամբ գեղ մ'ալ կայ: Եւ բոլոր այս նոր եկող ցեղը՝ Վենետացի կ'անուանուի,,: — Անոնցմէ ետքը եկաւ Ենէաս իր Տրովադացիներովն եւ ուրիշ ընկերներով ու Լատինի երկիրը բնակեցաւ, ինչպէս ետքը պիտ'որ յիշենք: — Իսկ ուրիշ՝ Յունաստանէն հոս գաղթող՝ Հելլէնները դէպ ի Միջին ու Ստորին Իտալիա յառաջ գացին: Այս ետքիններուն կը վերաբերին հաւանականաբար վերը յիշուած

* Գի. Ա. Գլ. 1:

Իտալիները։ Այս Հելլենական կամ յունական ցեղերը առաւելապէս Ստորին Իտալիոյ (Հիմակուան Նէապոլսոյ երկրին ու Հռոմայ տէրութեան մէկ մասին մէջ) բնակելնուն, նոյնը Մեծ Յունաստան ըսուեցաւ։ Մեծ ըսուելուն պատճառն ան էր՝ որ այս յունական գաղթականութեանց Իտալիոյ մէջ բռնած տեղերն ան ատենուան բուն Յոյներուն ունեցած երկրէն կամ Յունաստանէն աւելի ընդարձակ էր։ Ասոնք հոս Ստորին Իտալիոյ մէջ անուանի յունական քաղաքները՝ Տարենտոն, Սիբարիս, Կրոտոն, Բրունդուզիոն, Նէապոլիս (Պարթենոպէ), Հռեգիոն, եւ այլն, հիմնեցին։ Այս քաղաքներուն մէջ՝ երբոր դեռ Հռոմայեցւոց անունը լսուելու նոր սկսած էր, արդէն չէ թէ միայն զինուորական հրահանգաց ու փառաւոր գործքերու, հապա նա եւ աւելի բարձրագոյն քաղաքականութեան շարժումն ու յառաջադիմութիւնք երեւելի քայլեր բռնած էր. անանկ որ ասոնց դիմացը բուն Յունաստանի մտաւոր ու քաղաքական գործունէութիւնն իր սկզբնական բարձրութենէն խոնարհելու պէս կ'երեւար։

Այս յունական գաղթականաց մէջ պէտք է դնել Ենոտրիացիներն ու անոնց հետ Պեւկետիացիներն ալ, որոնց սկզբնահարց վրայ գրուածները թէպէտ եւ անստոյգ զրուցաց ու առասպելաց կարգին կամ ժամանակին կը վերաբերին, բայց բուն իրենց գոյութեան ու Յունաստանէն կամ Արկադիայէն հոս գաղթելուն ստուգութեան ցոյցերը կան։ Մանաւանդ որ շատ հին ատեններէ ի վեր ասոնց բնակութեան տեղերը պատմութեանց մէջ կը նշանակուին. Պեւկետացւոց բնակութեան տեղն էր Ստորին Իտալիոյ ծովեզերքը. իսկ Ենոտրիացիները կը բնակէին Թերակղզւոյն հարաւային ծայրերը, որ ըստ հնոց Պրուդդիում ու Լուկանիա կ'ըսուէր, ու ետքէն Կալաբրիա ըսուեցաւ։ Դիոնիսիոս Հալիկառնացին կը

կարծէ՝ որ տանք Իտալիայի Աբորիգինացւոց կամ տեղ-
բնական բնակչաց նախահարքն ըլլան ։ Բայց ըստ այլ
ստուգագոյն տեղեկութեանց աւելի հաւանական կ'ե-
րեւայ՝ որ Արկադիացի Յունաց գաղթականք էին ։ —

Լիւիոսին յիշած Եւգանեացւոց վրայ Պլինիոս ա-
ռանձինն կը գրէ * թէ Գրայեան Ալպեանց բնակիչքն
էին, ու իրենց բարուց ազնուութեան համար այսպէս Եւ-
գանեացի+ (իբր Եւգենիտացիք=εὐγενίται, այսինքն ազ-
նուատոհմք) անուանեցան ։ Աս անունէն կը տեսնուի թէ
տանք Տրովադացիներէն առաջ հոս գաղթող հելլենա-
կան ցեղերուն մէկէն յառաջ եկած են, թէպէտ ոմանք
կը կարծեն՝ թէ Լիւրիկեցւոց ցեղերուն մէկն ըլլան ։
Արդ Եւգանացիք Ալպեան լեռներէն մինչեւ Ադրիական
ծովն ըլլող տեղերը բռնած էին. ըստ Պլինիոսի (Գլ.
19.) Վերոնա՝ Եւգանացւոց գլխաւոր քաղաքն էր, ո-
րոնք նա եւ ուրիշ 33 աւաններ ունէին ։ Իրենց անուան
յիշատակը նոյն կողմերը մինչեւ հիմայ մնացած է, որով-
հետեւ Բատուայի հարաւային արեւմտեան դին բլուրնե-
րու կարգ մը Եւգանեան+ (Euganei) կամ Եւգանեան լե-
ռէն+, ինչպէս նա եւ կղզիացեալ կամ Պադուական լեռէն+
(Monti isolati, Padoani) կ'անուանուին, որոնց ստորոտն
է՝ իր սաստիկ տաք ու առողջարար ջրերովը հռչակուած՝
Ապանոյ աւանը ։

Իսկ Լիւրիկեցի գաղթականք՝ առանձին անուամբ
Լիբուռնացի+ ըսուած՝ ըստ Հերոդոտոսի Վենետացւոց մօտ
կը բնակէին, Ադրիական ծովուն հիւսիսային եզերքը ։
Մէկ մասն ալ դէպ ի արեւմուտք Ատիճէ գետին բերնին
ու Վիչէնցայի մօտերը Պաքքիլիոնէ գետին մէջ տեղն
ըլլող երկիրը կը բնակէր ։ Գոնիքացի կամ Գոանիքացի ը-
սուած ցեղն ալ Լիւրիկեցիք էին, ու իրենց բնակութեան

* Բն. Պատմ. Գի. Գ. Գլ. 20 ։

երկիրը Ասպուլիայի եւ Պեւկեզացւոց երկրին մէջ տեղն էր: —

Բ. *Իբերական (Վերիական) - Կեղտեան ցեղը:* Իբերացիք, որոնք շատ հին ժամանակներ Ասիայի Իբերիայէն (Վրաստանէն) Սպանիա ու Գաղղիայի հարաւային կողմերը գաղթած էին, ու Գաղղիայի մէջ Կելտք Իբերոյք կամ Կելտիբերոյք (Celtiberi) կ'անուանէին *, աս իրենց արեւմտեան երկրորդ հայրենիքէն դէպ ի հարաւ քշուեցան. իրենց մէկ քանի ճիւղերը դէպ ի Իտալիա ու անոր կղզիները ցրուեցան ու ան տեղերը հաստատուեցան, ինչպէս հին յոյն ու լատին պատմիչք կը վկայեն: Աս Իբերական-Կեղտ ցեղերուն ճիւղերն են Իտալիայի

* Յոյները շատ հին ատեններ Սպանիայի երկիրը Իբերիա (Վերիա) կ'անուանէին. ինչպէս Պլինիոս (Բն. Պատմ. Գի. Գ. Գլ. 3.) ու Ապպիանոս (Վասն Պատեր. Սպան. Գի. Ա. Իօլիէ.) կը վկայեն: Հօն՝ ըստ հին յիշատակաց՝ կը բնակէր ժողովուրդ մը, որն որ Իբերոյք կ'ըսուէր: Աս Իբերացւոց անուամբը նոյն երկրին մէջ գետ մ'ալ Իբերոս (Էգրոյ) կ'ըսուէր: Ըստ յոյն ու լատին պատմագրաց աս Իբերացի ժողովուրդը չէ թէ միայն Սպանիա, հապա նաեւ հարաւային Գաղղիայի մէկ մասին մէջ կը բնակէր: Եւ աս ետքինները կ'ըսուէին Կելտիբերոյք, այսինքն Կելտք Իբերոյք: Ինչպէս յայտնի ու առ հասարակ ծանուցուած է, բուն Իբերացի կամ Վերիացի=Վիրք ազգին երկիրը Ասիայի մէջ Կաւկասուստորոտները՝ Հայաստանի հիւսիսային սահմանին վրայ է, ուր եւ ըստ Պլինիոսի (Բն. Պատմ. Գի. Զ. Գլ. 10.) Իբերոս անուամբ գետ մը կայ, որն որ Կուր գետը կը մտնէ: Արդ ըստ հին սոյգ զրուցաց, Սպանիայի մէջ ըլլող Իբերացիները շատ հին ժամանակներ Ասիայի Իբերացիներէն գաղթած ու Եւրոպայի արեւմտեան-հարաւային ծայրը՝ Սպանիա եկած, իրենց բնակութիւն հաստատած ու երկրին իրենց անունը տուած են: Ասոնք՝ ինչպէս Վարրոն (Առ Պլինի. Բն. Պատմ. Գի. Գ. Գլ. 1.) կը վկայէ՝ դրսէն Սպանիա եկող ամենէն հին ժողովուրդներուն մէկն են: Նաեւ Ապպիանոս (Վասն Պատ. Միհրդ. Իվերճ կոյս.) կ'ըսէ թէ ըստ ոմանց Ասիացի Վիրք կամ Իբերացիք Եւրոպայի Իբերացւոցմէ գաղթած են, իսկ ըստ ոմանց՝ ասոնք անոնցմէ, որով կը ցուցընէ՝ թէ հինք Կաւկասու եւ Սպանիայի Իբերացիներուն մի եւ նոյն ազգ ըլլալուն վրայ տարակոյս չունէին: Հիմակ աս Իբերացւոց բուն սերունդները կամ յաջորդները կը սեպուին Սպանիայի Պասքեան գաւառներուն մէջ եւ Գաղղիայի հարաւային կողմերը բնակող Պասք ըսուած ժողովուրդը, որոնց լեզուն ըստ հմուտ քննչաց՝ հին Իբերացւոց լեզուին հետ նոյն է:

մէջ Սիկուլացի (Սիկիլիացի), Ումբրացի, Սաբելացի ու Ոսկացի ըսուած ժողովուրդները կամ ցեղերը։

Սիկուլացիք կամ Սիկանացիք առաջ Լատիոնի ու Հարաւային Ետրուրիայի (Տոսկանայի) կողմերը գրաւեցին։ Ետքէն Սաբելացիներուն ստիպելովը Սաբինեան լեռներէն վար իջնող Կասքերը կամ Աբորիգինացիք (սկզբնական տեղացիք) ասոնց մէկ մասը չէ թէ միայն դէպ ի Հարաւ յառաջ քշեցին, հապա նա եւ իրենց իշխանութեան տակ նուաճեցին. բայց վերջապէս անոնց հետ միանալով կամ իրարու խառնուելով՝ Լատինացի կամ Լատին ըսուած ցեղը կազմեցին, որ անունն՝ ինչպէս կը կարծուի՝ Սիկուլացիք յառաջագոյն կը կրէին։ Իսկ Սիկուլացւոց մէկ մասն ալ նոյն Աբորիգինացւոց կամ Սաբելացւոց հարստահարութիւններէն ստիպուելով, յառաջ գացին ու իրենց անուամբն անուանուող Սիկիլիա կղզին ելան, հոն բնակեցան ու բազմացան։

Ումբրացիք, որոնք ըստ Պլինիոսի (Բն. Պատմ. Գրք. Գ. Գլ. 14.) ու Փլորոսի՝ Իտալիայի ամենէն հին ժողովուրդը կը սեպուին, կամ աւելի ճիշդ խօսելով՝ ամենէն հին ժողովուրդներէն մէկն էին, ի սկզբան Ետրուրիայի, այսինքն՝ Տիբերիս գետին, Ադրիական ծովուն, Այսրալպեան Գաղղիայի կամ Ռուբիկոն գետին մէջ տեղն ըլլող երկիրը կը բնակէին։ Իրենց գլխաւոր քաղաքը Ամերիա՝ Հռոմի շինութենէ 380 տարի առաջ կար ու իրենք շատ զօրաւոր ու բազմամարդ էին. վերը յիշուած տեղերէն դուրս ալ տարածուեցան, ու այլ եւ այլ քաղաքներ, Գորտոնա, Պերուզիա եւ այլն, հիմնեցին։ Բայց թշնամիներ ալ շատ ունեցան. յառաջ Սաբինացիք զիրենք հալածեցին, ետքէն Ետրուրացիք մինչեւ Ադրիական ծովուն ու Բոյ գետին ստորին կողմերը քշեցին։

Սաբելացիք կամ Սաբելեան ցեղերը, որոնք՝ ազնուա-

պետական կամ յատկապէս նահապետական կարգաց համեմատ՝ ցեղերու գլխաւորներուն կամ ծերագոյններուն առաջնորդութեամբը կը կառավարուէին, երկրագործութեան ու խաշնարածութեան պարապելնուն համար՝ բաց տեղեր ու պզտիկ աւաններու մէջ կը բնակէին։ Անոնց մէջ Սաբինացիք կամ Սաբինեանք, (որոնք իրենց Սաբինոս առաջնորդին անուամբն այսպէս կը կոչուէին,) ու Սամնիացիք կամ Սամնիտեան ժողովուրդները՝ բարոյական ու ֆիզիքական զօրութեամբ ու գործունէութեամբ եւ իրենց ընտիր կարգերուն պատճառաւ անուանի եղան։ Սաբելացւոց ցեղակից էին նաեւ Լուկանացիք։ — Ոսկացիք կամ Ոսկեանք՝ հաստատուն ու ամրացուած քաղաքներու եւ բերդերու մէջ կը բնակէին ու աւելի պատերազմասէր էին։ Աս Սաբելացի (առանձինն Սամնիացի ու Ոսկացի) ցեղերը Յոյնք նաեւ Ոպիկեանք կամ Ոպացիք կ՚անուանէին։ — Ոսկացւոց ցեղակից էին Վոլսկացիք, Ռուտուլացիք, Աւսոնացիք (Աւրունկացիք) ու Էկուացիք։ —

Իբերական-կելտ ցեղերուն մէկն էին նաեւ Լիգուրացիք, որոնք ծովու մօտ Ալպեան լերանց վրայ կը բնակէին ու յանդուգն, գործունեայ, բայց ծովահէնութեան հակամէտ մարդիկ էին։ — —

Գ. *Տիրրենեան-Պեղասգացի ցեղ* կամ *Էտրուսկացիք*՝ վերը յիշուած ցեղերէն առաջ Իտալիա եկած են։ Անոնց Յոյները Տիւռենացի կամ Տիւրսենացի անուն կու տային, իսկ Հռոմայեցիք առաջ Տուրսկացի ետքէն Տուսկիացի անուն տուին։ Անոնց լեզուն՝ հնչման ու քերականական կազմութեան կողմանէ՝ Իտալիայի միւս բնակչաց լեզուէն շատ տարբեր էր. նաեւ այբէն դէպ ի ձախ կը գրէին։ Աս հանգամանքն ինչպէս նաեւ ուրիշ քանի մը սեպհականութիւններն առիթ տուին քննչաց զանոնց սկիզբն ասիական համարելու. անանկ որ շատ ատեն

Ետրուսկեան արձանագիրներու քննիչները այս լեզուին մէջ ոչ յունական ու ոչ լատինական լեզուաց հետ ազգակցութիւն կամ նմանութիւն մը կրցան գտնել։ Մինչեւ Նոր ատեններս Գերմանացի քաջ քննիչներէն մէկը՝ Ցավլ. Կուստ. Շտիքքէլ՝ երկայն քննութիւններէն ետքը հաստատուն հիմամբք կը ցուցընէ կամ կը ջանայ ապացուցանել՝ որ Ետրուսկացիք փոքր Ասիայէն՝ յատկապէս Լիւդիայէն գաղթած խառնիճ եկած են, ըստ որում Հերոդոտոսի պատմութենէն ալ՝ ասոնց ու Լիւդացւոց մէջ եղած սովորութիւններու, կրթութեան, արհեստական յաջողակութեան, խաղերու՝ մանաւանդ կաքաւի կերպերու, նուագարաններու, հանդիսական զգեստներու փառաւորութեան, մեռելները թաղելու կերպին, եւ ամենէն աւելի արհեստի մէջ եղած ազգակցութիւնն ու միաբանութիւնը յայտնի կը տեսնուի։ Ուստի եւ Դիոնիսիոս Հալիկառնացւոյն ասոնց համար բուն Իտալիոյ բնիկք կամ Իտալացի են ըսելուն չհաւանիր այս քննիչը։

Արդ՝ Ետրուսկացիք կամ Ետրուրացիք վերջին Իտալիոյ մէջ Տիւռենեան ծովէն մինչեւ Ադրիական ծովը սփռեցան, եւ նախ իրենց անուամբը Ետրուրիա կամ Տուսկիա (հիմայ՝ Տոսկանա) ըսուած երկիրը բնակեցան, ու հոնկից Ումբրիացիները դէպ ի Իտալիոյ արեւելեան կողմը քշեցին, նա եւ իրենցմէ գաղթականներ դէպ ի հիւսիս՝ Պոյին քովերը ու դէպ ի հարաւ՝ Կամպանիոյ երկիրը խաւրեցին, եւ անկից զՈսկերը դէպ ի վար քշեցին։ Իրենց տասուերկու վիճակներէն մէկ եղած դաշնակցութեան ամէն մէկը մէյ մէկ գլխաւոր քաղաք ունէր, Տարկուինիա, Վոլատերրա, Արրետիոն, Պերուզիա, Վեյիք, Կորտոնա, Կլուսիոն, Վետուլոնիոն, Ռուսելլիք, Վոլսինիա, Փալերիք ու Ագիլլա (Կերէ), որոնց սահմանին մէջ կը բովանդակէին ու անոնց գաւառաստանին տակը

կ՚իյնային ուրիշ պզտիկ քաղաքները, աւանները, եւ այլն։ Ասոնց կրօնական ու քաղաքական սովորութիւններէն Հռոմայեցիք շատ բան առին։ Նա եւ շատ պատերազմներէն ետքը, անոնց տասուերկու քաղաքներուն տիրեցին ու հոն գաղթականներ խաւրելով անոնց հետ միացան։

Հիւսիսային Ապեննինեանց միւս կողմը՝ Բօյ գետին երկու եզերքը գաղթած (հիւսիսական) Ետրուսկացիները՝ հոն տեղը բնակող Լիգուրացիներն եւ Ումբրացիները վռնտեցին դուրս հանեցին. եւ անկից Տիկինոս (Դիչինոյ) գետին ու Վենետկոյ երկրին (Բօյի բերաններուն մէջի երկրին եւ Ալպեան ու Ապեննինեան լերանց ստորոտները) տասուերկու (Մելըան, Վերոնա, Մանտուա, Պրիքսիա, Մուտինա, Բարմա, Ֆելզինա [Պոնոնիա], Ֆէզուլէ, Լուքքա, Լունա, Բիզա ու Ատրիա) քաղաքներէ միաբանած դաշնակցութիւն մը կազմեցին՝ իրենց մայր երկրին կամ գլխաւոր ցեղին կարգերուն համաձայն։ Այնպէս եւ դէպ ի հարաւ գաղթող (հարաւական) Ետրուսկացիք Կամպանիայի բարեբեր երկրին վրայ՝ հոն բնակող Սամնիացի (Ոբիկեան) բնակիչքը հալածելէն ետքը՝ Տիբերիս ու Սիլարոս գետերուն մէջ տեղը հաստատուեցան, ու իրենք ալ տասուերկու քաղաքներէ միաբանած դաշնակցութիւն մը կազմեցին, որոնց երկուքին միայն (Վոլդուռնում ու Նոլա) անունները յայտնի են։ Բայց աս ետքի դաշնակցութիւնը երկայն տեւողութիւն չունեցաւ, որովհետեւ Սամնիացիք զանիկայ շուտով քայքայեցին։—

Ստոյգ է որ Ետրուրացիք առ հասարակ իրենց զարգացման ու զօրութեան առջի ժամանակները Իտալիայի մէջ շատ ընդարձակ տեղեր բռնած ու շատ տարածած էին։ Բայց տարիներ անցնելով իրենց առջի ուժէն ինկան ու կամաց կամաց դրացի ցեղերէն յաղթուելով աւելի ամփոփեցան ու միայն Ետրուրիա (հիմակուան Տոս-

կանայի երկիրը ու Հռոմայի տէրութեան քանի մը գաւառները) իրենց սեպհական տեղն ու ժառանգութիւնը մնաց։ Վերջապէս սա ալ Իտալիայի ուրիշ ցեղերուն կալուածներուն պէս Հռոմայեցւոց տէրութեան տակ ինկաւ ու անոր հետ բոլորովին մէկ եղաւ։

Բ. Նոր բնակիչք։

Իտալիայի հիմակուան բնակիչքը, այսինքն իտալացիք առ հասարակ հին Հռոմայեցւոց սերունդներն ու յաջորդները կը սեպուին, բայց չէկրնար որոշակի նշանակուիլ, թէ Իտալիայի այլ եւ այլ կողմանց բնակիչներէն որո՛նք շիտակ շիտակ Հռոմայեցիներէն սերած՝ յառաջ եկած են։ Հին ատենուան Յունական, Իբերական-Կեղտ (Գաղղիական), Ետրուսկական եւ ուրիշ գաղթական ցեղերուն վրայ Փիւնիկեցիք նա եւ Կարքեդոնացիք աւելնալով, նոյն իսկ հին ցեղերը կամաց կամաց իրարու հետ խառնուեցան։ Դարեր անցնելէն ետքը Նորմանք, Լոմբարտացիք, Գութք, Գերմանացիք ու Արաբացիք Իտալիայի այլ եւ այլ կողմերը գրաւելով ու տիրելով, ըստ մեծի մասին տեղի բնակիչներուն խառնուեցան, եւ այսպէս բոլոր Իտալիայի բնակիչքն այլ եւ այլ ազգաց խառնուրդ մը եղաւ։ Բայց ըստ գլխաւոր հանգամանաց ամէնքն ալ մէկտեղ իբր մի ժողովուրդ, մէկ ազգ ու առանձինն՝ մի միայն գլխաւոր լեզուաւ ու զօրաւոր միութեամբ իրարու հետ կապուած՝ իբր մէկ սկիզբէ յառաջ եկող ցեղ մը կը կազմեն. անանկ որ իրենց մէջ հիմայ ցեղերու տարբերութիւն կամ այլեւայլութիւն չիգըտնուիր։ Եւ որովհետեւ իրենց ընդհանուր իտալական լեզուն՝ մանաւանդ գրոց մէջ՝ Հռոմայեցւոց կամ Լատինական լեզուին մէկ բարբառը, կամ նոյնին աշխարհաբարն է, անոր համար Հռոմանեան (Հռոմանական) ըսուած ազգե-

րուն մէջ միայն Իտալացիք՝ տեղուով, լեզուաւ ու՝ գոնէ ըստ մասին՝ սերնդեամբ հին Հռոմայեցւոց յատուկ յաջորդները կրնան համարուիլ*։ Ստոյգ է՝ որ Բիւզանդեան կայսրութեան ժամանակները Ստորին Իտալիայի մէջ Նոր յունական գաղթականներ դրուած էին. բայց ասոնք ըստ մեծի մասին ընկճելով՝ կամաց կամաց տկարացան, քիչցան, եւ հիմայ իրենց մնացորդներէն յառաջ եկած ու ետքի ատեններն ալ հոս եկող ու բնակող Յոյներուն թիւը 80,000 կը համարուի, որոնց գրեթէ ամէնն ալ Նէապոլսոյ տէրութեան մէջ են, քանի մը հազար ալ Տոսկանայի տէրութեան Լիվորնոյ քաղաքը կը բնակին։— Իտալիայի այլ եւ այլ քաղաքները կան շատ Հրեաներ ալ։ Իսկ Եւրոպայի ուրիշ ազգերէն հոս գտնուողները օտարականք կը սեպուին եւ հաստատուն բնակչաց կարգը չեն դրուիր։

Բոլոր Իտալիայի տէրութեանց եւ անոնց սահմանակից ըլլող տեղերուն (Իստրիայի, Իտալական Տիրոլի, Հելուետիայի Գեսին ու Կրաւպինդտէն կամ Կռիզոն գաւառներուն, ինչպէս նա եւ Գորսիկա ու Մալդա կղզեներուն) մէջ բնակող Իտալացւոց բոլորական թիւը, ինչ-

* Գրոց մէջ գործածուած մաքուր իտալերէն լեզուին հիմն անտարակոյս Հռոմայեցւոց կամ լատինական լեզուն է. բայց Իտալիայի այլ եւ այլ կողմերու ժողովրդոց խօսած լեզուն շատ խառն է ու իր մէջը հին ցեղերու լեզուներէն շատ մնացորդներ կը նշմարուին. ուստի եւ ըստ այլ եւ այլ գաւառաց, որոնց մէջ այլ եւ այլ կերպով կը խօսուի, զանազան բարբառներու կը բաժնուի, եւ ասոնց մէջ միայն Տոսկանացւոց ու Հռոմայեցւոց բարբառներն ամէնէն աւելի գրոց լեզուին մօտ ու մաքուր են։ Սավոյայի մէջ, որն որ Իտալիայի կը վերաբերի ու բնակիչքն ալ Իտալացիք են, ըստ մեծի մասին Գաղղիերէն կը խօսուի։ Իսկ Մալդա կղզւոյն վրայ աւելի Արաբերէն քան թէ իտալերէն կը խօսուի. քաղաքներու մէջ բնակողները իտալերէն լեզուն կը գործածեն. իսկ գեղացիք ու ռամիկը շատ մը յունարէն, իտալերէն ու գաղղիերէն բառերով խառնուած Արաբերէն կը խօսին։ Աս կղզին Անգղիացւոց իշխանութեան տակ ըլլալուն, Անգղիարէն լեզուն (1823էն սկսած) հրապարակական ու պաշտօնական գործոց մէջ գործածուելու համար սահմանուեցաւ։

պէս Նոր Իտալացի վիճակագրի մը հաշուէն կը առնուի, գրեթէ 28 միլիոնի կը հասնի։ Նոյն վիճակագիրը աս բոլորական թիւը այլ եւ այլ աէրութեանց բնակիչներէն հետեւեալ կերպով կը դնէ.

| | | | |
|---|---|---|---|
| Սարդինիա | ունի | . . 5.532,590 | բնակիչ |
| Լոմբարտիա ու Վենետիկ | ,, | . . 5.324,998 | ,, |
| Բարմա | ,, | . . 501,185 | ,, |
| Մոտենա | ,, | . . 608,991 | ,, |
| Տոսկանա | ,, | . . 1.811,234 | ,, |
| Մոնագօ | ,, | . . 8,010 | ,, |
| Հռոմայի երկիրը | ,, | . . 3.260,163 | ,, |
| Ս. Մարինոս | ,, | . . 6,031 | ,, |
| Նէապոլիս | ,, | . . 9.279,604 | ,, |
| Գորսիկա | ,, | . . 240,000 | ,, |
| Մալդա | ,, | . . 130,000 | ,, |
| Իսդրիա | ,, | . . 549,629 | ,, |
| Իտալական Տիրոլ | ,, | . . 559,223 | ,, |
| Դեսին | ,, | . . 120,847 | ,, |
| Կրաուպիւնդտէն (Կռիզոն) | ,, | . . 15,263 | ,, |
| | | 27.947,768 | |

Իտալացիք՝ հասարակաբար խօսելով՝ սրամիտ են ու թափանցող, բայց արիւննին տաք ու բնաւորութիւննին վառվռուն ըլլալուն՝ ծանրակշիռ նիւթերու վրայ աւելի թեթեւութեամբ կը մտածեն, քան թէ երկայն քննութեամբ անոր վրայ խորունկ զննութիւններ ընելու կ'աշխատին։ Բնութեամբ ճարտարախօս են, ուստի եւ իրենց խօսքին ու գրուածոց մէջ աւելի վայելչութիւն, քան թէ բանադատութիւն ու հիմնական պատճառաբանութիւն կը նշմարուի։ Իրենց քանի մը բարի բարի հանգամանաց հետ նա եւ քանի մը նշանաւոր պակասութիւններ ունին, մանաւանդ կասկածոտութիւն, վրէժ-

խնդրութեան փափագ, անգթութիւն, նախանձոտութիւն ու կեղծաւորութիւն: Քաղաքավարութեան կամ կենակցութեան մէջ մասնաւոր ջանքով մը բարակութիւն ու վայելչութիւն կը ցուցընեն եւ զուարճախօսութեամբ ընկերութիւնը կը զուարթացընեն: Տնային կենաց մէջ ալ Հասարակ պարզութիւն ու անզարդութիւն կ'ուզեն, տանց ճիշդ կարգերու եւ մաքրութեան վրայ մեծ հոգ ունենալու, բայց արտաքուստ զգեստի ու ծառայից փառաւորութեան ու շքեղութեան մասնաւոր ջանքով հետամուտ կ'ըլլան: Թէպէտ եւ ալ Հասարակ ծոյլ չեն, բայց հիւսիսային ազգաց պէս ալ աշխատասէր ու. ժիր չեն եւ հանգիստ կեանքը կը սիրեն:

Ճարտարութեան ու այլ եւ այլ արհեստներու մէջ մինչեւ միջին դարուն ետքերը (750—1500) Իտալացիք Եւրոպայի ուրիշ ամէն ազգերէն աւելի յաջող ու յառաջադէմ էին: Հիմայ ալ թէպէտ եւ աս նկատմամբ յառաջացեալ գլխաւոր ազգերուն՝ Անգղիացւոց, Գաղղիացւոց, Գերմանացւոց, ինչպէս նա եւ Հիւսիսային Ամերիկացւոց չեն կրնար հաւասարիլ, սակայն քանի մը ճիւղերու մէջ ուրիշ ամէն ազգերէն վեր ու յառաջադէմ կրնան սեպուիլ: Առանձինն Լոմբարտեան-Վենետական մասին, բայց եւ Վերին ու Միջին Իտալիայի բնակիչքը, նա եւ Նէապոլսեցիք ըստ այսմ մասին քաջ ու յաջողակ են: Լոմբարտացւոց մետաքսի գործարաններուն նշանաւորութիւնն անկից յայտնի է, որ միշտ 80,000 գործաւորք անոնց մէջ զբաղում կը գտնեն եւ տարուէ տարի 80 միլիոն ֆրանգի արժէքով մետաքս կը հանեն. նոյնպէս եւ մետաքսեղէն կերպասագործութիւնը շատ յառաջացած է ու տարին 16 միլիոն ֆրանգի արժէքով մետաքսեղէն կերպասներ Միլանի ու Գոմոյի գործատուններէն կ'ելլեն: Աս կտորիս մէջ նա եւ շատ յառաջադիմութիւն կը տես-

նուի Վենետկոյ, Սարդինիայի, Նէապոլսոյ ու Տոսկանայի մէջ։ Անկից ետքը շատ յառաջացած է՝ առաւելապէս Միլանի մէջ՝ կաշեգործութիւնը, ու շատ ընտիր ու ազնիւ կաշի ձեռքնոցներ կը յօրինուին հոս ալ, ինչպէս նաև Նէապոլիս, Գենուա, Լուքքա ու Հռոմ ալ։ Այնպէս եւ չուխայագործութիւնը, խաղախորդութիւնը, թղթագործութիւնը, երկաթագործութիւնը մանաւանդ զէնք շինելը՝ քանի մը տեղեր, մանաւանդ Միլան, Պերկամոյ, Պրեշիա, Դուրին, Գենուա, Նիցցա, Հռոմ, Լուքքա, Պոլոնիա, եւ այլն, մասնաւոր ջանքով կը մշակուին։ Առանձինն Միլանի պղինձ թափելու գործատունը յիշատակի արժանի կը սեպենք, որն որ բոլոր Եւրոպայի մէջ փարիզի մէկ երկու գործատուններէն ետքը՝ ամենէն մեծն է։ Տոսկանայի, Նէապոլսոյ, Գենուայի, Նիցցայի ու Դուրինի մէջ շատ ընտիր յարդէ գլխարկներ կը շինուին. առանձինն՝ Փլորենտիա շինուածները շատ ազնիւ, յարդի ու հռչակուած են։ Իսկ արծաթեգործ ու ոսկեգործ յօրինուածները, ինչպէս նաև ակնագործութիւնը, միւսխոնէ ու բուստէ (մէրճան) զարդերու ճարտարութիւնը շատ մեծ քաղաքներու մէջ մեծ փութով յառաջ կը տարուի։ Վենետական գաւառներու մէջ մանաւորապէս ապակեգործութիւնը, թափծու մարգարիտ ինչպէս նաև ոսկի ու արծաթի բարակ զարդեր ու հայելի յօրինելու ճարտարութիւնը հին ատեններէ ի վեր համբաւաւոր է։ Արեւելեան գլխարկի (ֆէսի) գործատունները՝ առանձինն Գենուայի ու Տոսկանայի Բրադոյ քաղաքին մէջ՝ շատ բանուկ են. միայն Գենուայի մէջ տարին 200,000 հատէն աւելի կը գործուին։ —

Գիտութեանց այլ եւ ճիւղերուն մէջ ընդհանրապէս՝ Իտալացիք թէպէտ եւ յետնեալ չեն, բայց մեծ համբաւ մը չունին. քանի մը մեծ քաղաքներու՝ Փլորեն-

տիայի, Միլանի, Հռոմի, Պատուայի, եւ այլն, մէջ ուսմունք աղէկ կը մշակուին ու յառաջադէմ կ'ըլլան, սակայն բոլոր երկրին մէջ չեն տարածուած ու հասարակաց կրթութիւնն ալ այնչափ մշակելու փոյթ չ'երեւար. միայն Լոմպարտեան=Վենետիկի, Տոսկանայի ու Բարմայի սահմաններուն մէջ ասոր վրայ աւելի խնամ կը տարուի: Ի վերայ այսր ամենայնի կրնայ ըսուիլ հաստատութեամբ՝ որ ինչպէս անցած դարերու մէջ՝ նոյնպէս հիմայ ալ գեղեցիկ արուեստները (նկարչութիւն, անդրիագործութիւն, երաժշտութիւն,) Իտալիայի մէջ ուրիշ տեղերէն աւելի յառաջադէմ են, որոնց համար Իտալացիք առ հասարակ ամէն ազգերէն աւելի մեծ սէր ու յաջողակութիւն ունին: Նոյնը կ'ըսենք նաեւ ճարտարապետութեան համար: —

Իտալացիք առ հասարակ կաթողիկէ-հռոմէական կրօնն ունին. միայն Սարդինիայի տէրութեան Բիէմոնդ նահանգին ձորերուն մէջ կը բնակին Վալտենձեան կամ Վալդոսեան ըսուած աղանդաւորները, որոնց սկզբնահայր եղաւ երկոտասաներորդ դարուն մէջ Վալդոս անունով Գաղղիայի Լիոն քաղաքին հարուստ քաղաքացիներուն մէկը: Ասոնք կաթողիկէ եկեղեցիէն զատուեցան, իրենց ըմբռնմանը համաձայն միայն սուրբ գիրքին ու Քրիստոսի սկզբնական եկեղեցւոյն հետեւելու եռանդ ու ջանք ցուցընելով, որով եւ բողոքականաց գրեթէ յառաջընթացները ու կարապետները եղան, եւ հիմայ իբր անոնց մէկ ճիւղը կը սեպուին: Իսկզբանէ հետէ եկեղեցիէն դատապարտուելէն ու ամէն տեղերէն հալածուելէն ետքը, վերջապէս միայն Բիէմոնդի մէջ հաստատուն մնացին, ուր եւ 1848ին Սարդինիայի տէրութենէ հրաման ընդունեցան իրենց կարգերը ազատութեամբ բանեցընելու եւ ամէն բանի մէջ կաթողիկէականաց հետ հաւասար իրաւունք ունենալու:

# Ա.

## Ի սկզբանէ մինչեւ Հռոմէական-Արեւմտեան Պետութեան կատարածը։

### Իբր 1500 Քր. Առ. մինչեւ 476 Քր. Ետ.

ԻՏԱԼԻԱՅԻ հին կամ սկզբնական անցից պատմութիւնք հոն գաղթող այլ եւ այլ ազգերու կամ ցեղերու մթին ու շփոթ յիշատակներէն ետքը (զորոնք նախընթաց Տեսութեան մէջ յիշատակեցինք,) Հռոմայեցւոց պատմութենէն կը սկսի, զորն որ հոս համառօտիւ կ'աւանդենք։

Սիկուղացիներէն ու անոնց յաղթող կաքերէն կամ Աբորիգինացիներէն (այդրէնածիններէն) յառաջ եկած Լատին ցեղին հետ՝ ըստ զրուցաց՝ ետքէն (Քրիստոսէ 1193 տարի առաջ) եկան խառնուեցան Տրովադացի փախստականք, որոնց գլուխն էր Ենէաս, որն որ հոս Լատիոնի Լատինոս թագաւորին Լաւինիա դստեր հետ կարգուեցաւ ու ետքէն իր աներոջը գահն ելաւ։ Ենէասայ ցեղը որդւոց որդի Լատիոնի մէջ տիրեց։ Իրենց գլխաւոր արքայանիստ քաղաքն էր Ալպա Լոնկա, զորն որ Ենէասայ որդին Ասկանիոս հիմնեց։ Այս ենէական-լատինական ցեղին թագաւորներէն հնգետասաներորդ թագաւորին Նումիտորին Ռէա Սիլուիա դստերէն ծնան Հռոմայեցւոց անուամբ հռչակուած ժողովրդեան սկզբնահարքը կամ նահապետները Հռոմուլոս ու Հռեմոս։ Եւ որովհետեւ Նումիտոր իր Ամուլիոս եղբօրը հնարքներումն իր աթոռէն վար ձգուած էր, իր թոռները Հռոմուլոս ու Հռեմոս մեծնալէն ետքը զինքը նորէն իր գահը նստեցուցին։ Նումիտոր ասոր փոխարէն անոնց

հրաման տուաւ որ Լատիոնի երկրին մէջ իրենց համար աւազակային քաղաք մը շինեն. որուն շինութեան չէ թէ միայն միջոցներ մատակարարեց, հապա Նա եւ Ալպա Լոնկային բնակչաց մէկ մասը տուաւ, որպէս զի այն նորաշէն քաղաքը շուտով բնակիչներ ունենայ ու ծաղկի։ Աս կերպով Քրիստոսէ 753 տարի առաջ՝ Տիբերիս գետին ձախակողմեան եզերքը Պաղատինեան բլրոյն, կամ յառակապէս եօթը բլուրներու վրայ հիմնեցաւ այն աշխարհահռչակ քաղաքը, որն իր իր հիմնադրին (Հռոմուլոսին) անուամբը Հռոմ՝ անուանեցաւ, ուսկից ալ այն ժողովուրդը, որն որ կամաց կամաց բոլոր Իտալիայի տէր եղաւ, իր Հռոմայեցի անունն առած է։

Այսպէս աս համբաւեալ քաղաքը հիմնուելէն ետքը, գլխաւոր հիմնիչը Հռոմուլոս անոր քիչ ատենուան մէջ բնակիչներ գտնելու համար, զանիկայ ամէն յանցաւորներու պատսպարան ու ապաստանելու տեղի ըրաւ։ Եւ յիրաւի շուտ մը մօտիկ ու հեռաւոր տեղերէն փախըստականներ, հովիւներ, աւազակներ ու հաստատուն տեղ չունեցողներ կու գային հոն կը ժողվէին։ Ասանկով օրէ օր այն՝ ի սկզբան պզտիկ ու անշուք գեղի նման բաց ու անպարիսպ՝ քաղքին բնակիչքը շատնալով, սահմանը կ'ընդարձակէր եւ ուժը կ'աւելնար։ Ինչպէս ինք Հռոմուլոս, նոյնպէս իր յաջորդներն ալ մէկ կամ մէկալ պատճառներէ շարժելով՝ դրացի ու մօտաւոր ժողովուրդներու հետ կը կռուէին, անոնց կը յաղթէին, իրենց իշխանութիւնն ու սահմանները կ'աւելցրնէին կը տարածէին։ Հռոմուլոս իր ժողովրդեան պատերազմական հոգի մը տուած էր ու անոնք իբր թէ միայն պատերազմելու, սապատակելու կրթած էր, որոնց օգնութեամբը ասդին անդին աւարելով, գերելով ու նոր տեղեր առնելով՝ իր իշխանութիւնը հաստատեց։ Ամենէն առաջ Սաբինացւոց

մէկ մասը Հռոմուլոսի հպատակաց հետ կռուելէն ետքը՝ անոնց հետ միաբանեցաւ ու անոր իշխանութեան տակ մտաւ։

Հռոմուլոսին՝ իր նոր տէրութեան համար ըրած օգտակար ու իմաստուն կարգադրութեանց մէջ գրեթէ ամենէն երեւելին էր այն հռչակեալ խորհրդանոցը կամ խորհրդոյ ատեանը հաստատելը, որն որ ծերակոյտ (Senatus) ըսուեցաւ, որուն պաշտօնն ու պարտքն էր՝ կառավարութեան գործքերուն մէջ խորհրդով թագաւորին օգնել. ինչպէս նա եւ թագաւորին մեռնելէն ետքը՝ մինչեւ նոր թագաւորի մը ընտրութեան ատենը՝ տէրութիւնը կառավարել։ Ասոր անդամ ըլլալու համար՝ ինք Հռոմուլոս ընտրեց ամէն ազնուականներուն մէջէն մէկը, որն որ թագաւորին Հռոմայի սահմաններէն հեռու գըտնուած կամ պատերազմի գացած ատենը՝ քաղքին վրայ պիտ՚որ հսկէր. ասոր եւ ասիկայ անուանեցաւ Քաղաքապետ կամ Ոստիկան քաղաքի (Praefectus Urbis)։ Ետքը հրաման տուաւ որ ամէն մէկ ցեղ (tribus) իր մէջը գըտնուող իմաստուն ու ընտիր ազնուականներէն հարիւրական հոգի նոյն ժողովին համար անդամ ընտրէ։ Եւ որովհետեւ ան ատենները Հռոմայի տէրութեան մէջ ու Հռոմայեցւոց իրաւունք ունեցող երեք ցեղ կային, այսինքն Ա. Լատինական (բուն Հռոմէական) ցեղը (Ramnes). Բ. Սաբինեան ցեղը (Tities) ու Գ. Եդրուսկական ցեղը (Luceres), անոր համար բոլոր ծերակուտին անդամներուն թիւը՝ քաղաքապետն ալ մէկ տեղ՝ 300 եղաւ։ Կը կարծուի՝ որ աս խորհրդանոցին Ծերակոյտ, այսինքն ծերերու ժողով ըսուելուն պատճառը՝ չէ թէ իր ամէն անդամներուն ծեր ըլլալն էր, հապա ծանրաբարոյ, իմաստուն ու փորձ մարդիկ ըլլալը։ —

Հռոմուլոսին անմիջական յաջորդը կամ Հռոմայի

երկրորդ թագաւորը Նումա Պոմպիլիոս՝ Հռոմայեցւոց կրօնական կարգերուն հիմնադիրն ու յօրինիչն եղաւ, ու աւելի ջանք ցըցուց իր ունեցած տեղերուն մէջ քաղաքային ու կրօնական բարեկարգութիւններ ընելու քան թէ երկրին սահմանները ընդարձակելու: — Անոր յաջորդը Տուղղոս Հոստիլիոս գոռ պատերազմող ըլլալով, իր ժողովուրդը միշտ նոր պատերազմներու կը զբաղեցընէր: Ինք՝ Հռոմի հիմնուելուն պատճառ կամ յառաջացուցիչ ըլլող Ալպա Լոնկա քաղաքը կործանեց ու բնակիչքը Հռոմ բերաւ բնակեցուց: — Անոր յաջորդեց Անկոս Մարտիոս, որն որ տէրութեան սահմանները նոր աշխարհակալութիւններով ընդարձակեց. Տիբերիս գետին բերաններուն մօտ ըլլող Ոստիա քաղաքն առաւ, բաց այլոց՝ նոր շինեց. Լատինի գլխաւոր քաղաքները նուաճեց ու անոնց բնակիչները Հռոմ բնակեցուց: — Իր յաջորդին՝ Տարկուինիոս Պրիսկոսին ջանքովը Հռոմի ուժն ու անունը շատ մեծցաւ. Ինք Լատինացւոց, Սաբինացւոց ու Տուսկիացւոց յաղթելով, անոնց երկիրներն ալ նուաճեց: — Տարկուինոսին յաջորդեց Սերուիոս Տուղլիոս, որն որ յաճախ պատերազմներով այլ եւ այլ տեղեր առնելով՝ անոնցմէ հանած մարդիկներով Հռոմայի դեռ անբնակ մնացած մասերը շէնցուց: Բոլոր Հռոմայի բնակչաց մէջ նոր կարգ ու բաժանումներ խոթելով եւ ուրիշ օգտակար նորոգութիւններ ընելով ժողովրդեան շատ սիրելի եղաւ: Բայց իր դուստրը Տուղլիա ու իր փեսան Տարկուինիոս Սուպերբոս (բռնաւոր, ամբարտաւան) իրեն թշնամի ըլլալով զինքը սպաննել տուին, ու թագաւորութիւնը նոյն Տարկուինիոս առաւ: Անիկայ քաջ պատերազմող ըլլալով՝ Իտալիայի հին ժողովուրդներէն շատերը, առանձինն Վոլսկեան ու Հեռնիկեան ըսուածները ստիպեց Հռոմի լուծին տակ խոնարհելու. Ետքէն նա եւ ուրիշ

քաղաքներ ու ժողովուրդներ ալ նուաճեց։ Երբոր Ռուտուլեանց գլխաւոր քաղաքը Արդէա պատերազմաւ առնելու վրայ էր, լսեց իր Սեքստոս տղուն Հռոմ ըրած խայտառակ գործքին համար Հռոմայեցւոց մէջ ելած խռովութիւնը։ Շուտ մը պատերազմը թողուց քաղաք դարձաւ, բայց թէ ստորին ժողովուրդն ու թէ ազնուականք արդէն իր վրայ գոհ չըլլալով եւ իր որդւոյն անօրէն գործքին պատճառաւ ալ սաստիկ կատղած ըլլալով, զինքը չընդունեցան ու փախչելու ստիպեցին. եւ անկից ետքը ալ թագաւոր չունեցին. Հապա (Ք. Ա. 510. Հռոմի շինութենէն 244 տարի ետքը) Հասարակապետութիւն մը հաստատեցին, որն որ ընտրեալ երկու Պրետորներու՝ ետքէն երկու Հիւպատոսներու գլխաւորութեամբ կը կառավարուէր, որոնց իշխանութիւնը միայն մէկ տարեկան էր ու իրենք միշտ ծերակուտէն կ'ընտրուէին։ Անկից ետքը Հռոմ իր մերժած Տարկուինիոս Թագաւորին դրդռելովը իր վրայ խառնուած թշնամիներուն հետ կռուելու սկսաւ։ Նախ Տուսկիայի Վէյի քաղքին բնակիչները կամ Վէյացիք, որոնք սկզբանէ հետէ Հռոմայեցւոց ոխերիմ թշնամիքն էին, իրենց վրայ պատերազմի ելան. բայց Հռոմայեցիք սաստիկ պատերազմելէն ու մեծ կոտորած կրելէն ետքը վերջապէս անոնց յաղթեցին։ Ետքը նոյն Տարկուինիոսէն դրդռուած ուրիշ ահաւոր թշնամի մը՝ այսինքն Տուսկիացւոց Կլուզիոն երկրին ու քաղքին թագաւորը Պորսեննա պատերազմի ելաւ ու մինչեւ Հռոմ քաղքին մօտերը հասաւ, անոր՝ Տիբեր գետին միւս կողմն ըլլող՝ տասը թաղերուն տիրեց, ու բոլոր Հռոմ առած ու նուաճած կ'ըլլար, թէ որ Լատինք Հռոմայեցւոց օգնութեան չհասնէին ու ան հզօր թշնամին իր երկիրը չվռնտէին։ Անկից ետքը (496 Ք. Ա.) Հռոմայեցիք նորէն զօրանալով, սկսան Իտալիայի

ուրիշ ժողովուրդներուն հետ պատերազմիլ. ասոր Սաբինացւոց՝ իրենց սկզբնական թշնամեաց՝ հետ կռուի ելան, որուն վերջ եղաւ երեւելի Սաբինացւոյ մը՝ (Ատտոս Կղաւզոս) Ապպիոս Կղաւդիոսի 5000 Սաբինացիներով Հռոմայեցւոց կողմն անցնելովը, որով քաղաքին ու տէրութեան շատ մեծ օգուտ եղաւ։ Աս Կղաւդիոսին ցեղը Հռոմի մէջ շատ մեծցաւ, ինքն եղաւ այն Կղաւդեան տոհմին սկզբնահայրը, որմէ շատ մեծ անձինք ու կայսրներ ելան, որ եւ Կղաւդիոս կայսեր Բրիտաննիկոս որդւոյն մահուամբը վերջացաւ։ Քիչ մը ատեն՝ բոլոր Լատինի քաղաքներն ու ժողովուրդները՝ Պրենեստէ քաղաքէն զատ՝ զՀռոմայեցիք մեծ պատերազմ մը գրգռեցին։ Երկու դիհաց սաստիկ կատաղութեամբ կռուելէն ետքը, թէպէտ յաղթութիւնն անորոշ մնաց, բայց Լատինք վհատելով ետ քաշուեցան ու իրենց երկիրը դարձան։ Ասոնցմէ ետքը քանի մը ուրիշ Իտալիայի ժողովուրդներուն, Վոլսկեանց, Եկուացւոց, Տուսկիացւոց եւ ուրիշներուն հետ կռիւներ եղան. որոնցմէ Հռոմայեցիք ուրիշ շահ մը չէին ունենար, բայց եթէ ամառուան քանի մը ամիսները պատերազմելով անցընելէն ու թշնամեաց արտերն ու պարտէզներն աւըրշտըկելէն ետքը քիչ աւարով իրենց տեղը դառնալ։ Մանաւանդ թէ աս պզտիկ պատերազմները Հռոմայի վնասակար հետեւութիւններ ունեցան, ինչու որ սորին ժողովուրդն իրենց արտերն անխնամ թող տալով պատերազմ երթալու կը ստիպուէին, ու անկից դարձած ատենները չէ թէ միայն վաստակ մը ունեցած չէին ըլլար, հապա իրենց արտերուն բերքերէն ալ զուրկ մնալով՝ ապրուստնին ճարելու մեծ դժուարութիւն կը կրէին։ Ասոր համար ալ ռամկականաց ու ազնուականաց մէջ՝ (աս ետքինները բոլոր պատերազմին աւարները վայելելնուն պատճառաւ) խռովութիւն ու

կռիւներ անպակաս կ'ըլլային։ Աս երկու կարգաց մէջ հաշտութիւն ու խաղաղութիւն պահելու համար ցրի-քուենք (ցեղապետք) ժողովրդեան անուամբ պաշտօնատէր-ներ ընտրուեցան, որոնք ի սկզբան երկու, ետքէն հինգ, վերջապէս տասը հատ էին։ Ասոնց անձերն անբռնաբարելի էին ու իրենք չէ թէ միայն ազնուականաց հապա նաեւ ծերակուտին ու անոր որոշմանը դէմ ժողովրդեան իրաւունքը կը պաշտպանէին. սակայն ժողովուրդը չէ թէ միայն իր ունեցած իրաւունքները պահելու կարող եղաւ, հապա շատ աւելի իրաւունքներ ալ ստացաւ։

Աս ատենները Հռոմայի մօտ ու հեռու Իտալիոյի շատ քաղաքները, ինչպէս Վէյի, որն որ Հռոմէն միայն վեց մղոն հեռու էր, եւ ուրիշ քանի մը հատ ալ, աղէկ ամրացած ու բազմաթիւ բնակիչներով զօրացած ըլլալով, իրենք իրենց գլխուն տէր էին ու մէկը մէկալին հպատակ ըլլալ չէր ուզեր եւ միշտ իրենց անկախութիւնը պաշտպանելու համար գրեթէ անդադար զէնքերնին ձեռքերնին կռուելու պատրաստ էին։ Հռոմայեցիք ասոնց հետ ատեն ատեն պատերազմ ելլելու կը ստիպէին, ու շատ հեղ բան մը չկրնալով գլուխ հանել՝ կամ յաղթուած կամ պզտիկ յաղթութեամբ մը ետ կը դառնային։ Մանաւանդ Վէյացւոց հետ քանի մը մեծ ու պզտիկ պատերազմներ տալէն ետքը, երկայն ատեն չկրցան անոնց բուն քաղքին վրայ յարձակիլ ու ինչպէս կը բաղձային անիկայ կործանել ու ջնջել։ Բայց ամէն հնարքը բանեցընելով՝ իրենց Փուրիոս Կամիղղոս անյաղթ զօրապետին հրամանատարութեան տակ տասը տարի պատերազմելէն ու պաշարելէն ետքը, վերջապէս (396 Ք. Ա.) նոյն գլխաւոր քաղաքը Վէյի առին ու իրենց իշխանութեան տակ ձգեցին։ — Այսպէս անդադար պատերազմելով մէյ մը Իտալիոյի մէկ ժողովրդեան ու ալ քաղ-

քին ու մէկ մը մէկալին հետ, այսինքն, Սամնիտացւոց, Կամպանիացւոց, Ցուսկիացւոց, Սաբինացւոց, Հեռնիկացւոց, Վոլսկացւոց, Եկուացւոց, Ռուտուլացւոց ու Սիկիլիացւոց հետ, Հռոմայի շինութենէն գրեթէ 500 տարի ետքը (իբր 250 Ք. Ա.) բոլոր Իտալիա նուաճեցին ու իրենց իշխանութեան տակ առին։

Հռոմայեցիք՝ ինչպէս այս միջոցներուն մէջ Գաղղիացւոց ու Կարքեդոնացւոց հետ թէ Հռոմայի մօտերը ու թէ Իտալիայի ուրիշ կողմերը մեծ մեծ պատերազմներ ունեցան, նոյնպէս անկից ետքն ալ տարուէ տարի զօրանալով, դուրս երկիրներու մէջ ալ այլ եւ այլ ազգերու ու տէրութիւններու հետ պատերազմներ ընելով ու գրեթէ ամէն դի յաղթող ըլլալով՝ այն ընդարձակածաւալ ու մեծահռչակ Հռոմէական Պետութիւնը հաստատեցին։ Աս աշխարհակալ պետութեան զարգանալուն, ետքէն կամաց կամաց տկարանալուն, անշքանալուն, Հասարակապետութենէ կայսրութեան դառնալուն, վերջապէս Մեծին Կոստանդիանոսի՝ իբրեւ ինքնակալ Հռոմէական գահը ելլելովն ու Քրիստոնէութիւնը իր բոլոր պետութեանը՝ առանձինն Իտալիայի մէջ՝ տիրող կրօնք ընելովը, նոյն պետութեան նոր կերպարանքի մէջ մտնելուն պատմութիւնը մեր նպատակին սահմանէն դուրս ըլլալուն՝ զանց կ՚առնենք, ու բուն մեր սահմանին մէջ մնալով՝ Իտալիայի անցից յաջորդութեան պատմութիւնը յառաջ կը տանինք։ —

Կոստանդիանոսի յաջորդներէն վեցերորդը՝ այսինքն Մեծն Թէոդոս (369—395) իր մահուընէ առաջ բոլոր Հռոմէական պետութիւնն իր երկու անչափահաս որդւոցը՝ Արկադիոսին ու Ոնորիոսին բաժնեց, առաջինին տուաւ Արեւելքի տէրութիւնը, իսկ երկրորդին՝ Արեւմուտքի տէրութիւնը, ուստի եւ բոլոր Իտալիա աս ետ-

քննին ինկաւ: Արկադիոսին վրայ՝ Ռուփինոս գաղղիացի պալատապետը, իսկ Ոնորիոսին վրայ՝ Ստիլիքոն վանդալ զօրապետը խնամակալու կարգուած էին, որոնք եւ Թէոդոսի մահուընէ ետքը (395) իբրեւ խնամակալներ տէրութեան՝ իւրաքանչիւր իր սանին անուամբը՝ սկսան անոնց երկիրները կառավարել: Բայց սա երկու պաշտօնատարաց իրարու հետ միաբան չըլլալը պետութեան թըշնամիներուն դիւրութիւն տուին ոտք ելլելու եւ անոր սահմանները կոխելու: Երբոր բարբարոս ազգերը սկսան Հռովմէական պետութեան երկիրները խուժել, Ռուփինոս, որն որ չարաբարոյ ու խռովասէր մարդ մըն էր, այնպէս ճամբայ ու հնարքներ բանեցուց, որ թշնամիները իրենց արշաւանքն ու ասպատակութիւնը դէպ Իտալիա յառաջ վարելու տեղերն, որով Արեւելք կամ Ռուփինոսի կառավարած գաւառներն անոնց ձեռքերէն ու ասպատակութենէն ազատ մնան, եւ միանգամայն Ստիլիքոն միշտ թշնամեաց հետ կռուելու պարտաւորի: Ստիլիքոն՝ որ իր խնամակալութեան տակ ըլլող երկիրները շատ իմաստութեամբ կը կառավարէր, երբոր Արեւմտեան Գոթք իրենց Ալարիկոս թագաւորին առաջնորդութեամբը Իտալիա խուժեցին, կայսերական զօրքերով անոնց դէմ գնաց ու Վերոնայի մօտերը զիրենք զարկաւ ու վանեց: Բայց քանի մը տարի ետքը (400) Ալարիկոս երկրորդ անգամ աւելի եւս բազմութեամբ Իտալիա մտաւ, երկայն ատեն մէյ մը Իտալիա, մէյ մը Իլիւրիկէ կը քալէր, կ'ասպատակէր, մինչեւ վերջապէս (409—410) եկաւ Հռոմ քաղաքն առաւ, որն որ 600 տարիէ ի վեր իր մօտերը թշնամի չէր տեսած, եւ ուր 800 տարիէ ի վեր թշնամի մ'ալ չէր մտած: Ալարիկոսի զօրքը քաղաքին մէկ մասն երեցին, մէկն մասն ալ կողոպտեցին ու աւրըշտըկեցին:

Նոյնպէս տկար Ոնորիոսին բոլոր կայսրութեան ատենը Արեւմուտք՝ ասոր եւ Իտալիա թշնամեաց կամ բարբարոս ազգերու ոյժէն ու ասպատակութենէն կը նեղուէր ու կը տկարանար։ Երբոր Ոնորիոս յամի 423ին անորդի մեռաւ, իր Յովհաննէս ատենադպիրը յանդգնեցաւ կայսրութեան պատիւն իրեն յափշտակել, բայց երկու տարի ետքը Փոքր Թէոդոսին զօրքէն յաղթուելով՝ անարգական մահուամբ սպաննուեցաւ, ու Վաղենտինիանոս Գ. Ոնորիոսին քեռորդին Արեւմուտքի կայսր եղաւ (425—455)։ Ասոր ատենները Վանտալներն իրենց Գենսերիկոս թագաւորին առաջնորդութեամբ Ափրիկէէն ի զատ նաեւ Իտալիոյ մէջ Սարդինիա ու Գորսիկա կղզիներն առին ու հոն հաստատեցան։ Անկից ետքը (450) Ատտիլա Հոնաց թագաւորը, որն որ զինքն "Աստուծոյ խարազանը" կ'անուանէր, Լոնգոբարդացւոց, Աւարներուն, Արեւելեան Գոթերուն եւ ուրիշ բարբարոս ազգաց գլուխն անցած՝ անհնարին ուժով ու շուտութեամբ յառաջ քալելով, արեւմտեան կայսրութեան շատ գաւառները ասպատակելէն ետքը, յամի 451ին եկաւ Իտալիա մտաւ։ Հոս Ագուիլէա, Բատուա, Վիչենցա ու Վերոնա քաղաքները կործանեց, Միլան ու Բաւիա քաղաքները աւարեց անշքացուց ու յառաջ քալեց մինչեւ Հռոմայ մօտերը հասաւ։ Բայց Լեւոն Ա. քահանայապետն իր զօրաւոր խօսքերովը ու աղաչանքովը զինքը համոզեց՝ միայն ուզած դրամը կամ տուգանութեան գինն ընդունել ու Հռոմ քաղքին վնաս մը չընելով ետ դառնալ։ Քիչ մը ատենէն ետքը (453) Ատտիլա մեռնելով՝ Իտալիա իր սա ահաւոր թշնամիէն ազատեցաւ։ Յամի 455ին Վաղենտինիանոս Գ. իր անձնապահ զօրքէն սպաննուելով՝ նոյն զօրաց գլուխը Պետրոնիոս Մաքսիմոս կայսր ընտրուեցաւ, որն որ թէպէտ եւ ու-

ղեց Վաղենտինիանոսի այրին բռնութեամբ իրեն կին առնուլ, բայց անիկայ չուզելով՝ զԳենսերիկոս Վանտալներուն թագաւորը դաղտուկ Հռոմ կանչեց, որն որ շատ զօրքով եկաւ քաղաքը պաշարեց, որ առեն Մաքսիմոս սպաննուեցաւ ու քաղաքը յաղթող Գենսերիկոսին առջեւն իր դռները բացաւ։ Վանտալք ներս մտան ու 14 օր՝ գիշեր ու ցորեկ բոլոր քաղաքն աւրեցին, աւարեցին ու կողոպտեցին, միայն Լեւոն Ա. քահանայապետին աղաչանացը զիջանելով Գենսերիկոս իր զօրացը թող չտուաւ քաղաքն երելու եւ անզէն ու անվնաս մարդիկը մեռցընելու։ Հռոմէն ի զատ բոլոր իր շրջակայ տեղերը, առանձինն Կամպանիա աւեր անապատ դարձաւ, Կապուա քաղաքը բոլորովին կործանեցաւ։

Ասկից ետքը Իտալիա շատ ժամանակ հանգիստ ու խաղաղութիւն չունեցաւ։ Վաղենտինիանոս Գ.ին սպաննուելէն ետքը մինչեւ արեւմտեան կայսրութեան կատարեալ կործանումն ու վերջանալը՝ այսինքն քսան տարիի չափ ամէն դէպքերը յայտնի կը ցուցընէին՝ որ պետութիւնն իր կատարածին ու բոլորովին վերջանալուն կը մօտենայ։ Ամէն դի նորէ նոր ապստամբութիւններ կ՚ելլէին, զօրաւոր ըլլողը իր կողմնակցաց օգնութեամբը կայսր կ՚ըլլար. զօրաւորագոյն մը զանիկայ յաղթելով՝ կայսրութիւնն ինքը կ՚առնէր։ Յամի 457ին Ռվրեատէս զօրավարը՝ Յուլիոս Նեպոս կայսրը գահէն վար առնելէն ետքը՝ թէպէտ զօրքը կ՚ուզէր որ ինք կայսր ըլլայ, բայց ինք յանձն չառաւ, հապա իր Ռոմուլոս Աւգոստուլոս որդին գահը նստեցուց։ Բայց անիկայ անփորձ ու տիրելու անյաջող երիտասարդ մը ըլլալով, տարի մը ետքը իր իշխանութիւնը թողուց ելաւ, կամ Օդոակեր իշխանը, զորն որ Յուլիոս Նեպոս Պատրիկ անուանած ու Իտալիոյ կառավարիչ կամ կուսակալ դրած էր, զԱւգոստուլոս գա-

հէն վար առաւ, եւ ուրիշ կայսր չըլլաւ, հապա ինքը սկսաւ իբրեւ պատրիկ՝ Հռոմայեցւոց վրայ, եւ իբրեւ թագաւոր՝ Գերմանացւոց վրայ, կամ քան այլոց՝ իբրեւ Իտալիոյ թագաւոր իշխանութիւնը վարել։ Այսպէսով վերջացաւ Արեւմտեան-Հռոմէական պետութիւնն ու անով բուն Հռոմէական կայսրութիւնը, որն որ իր սկիզբէն կամ առաջին կայսրէն (Ոկտաւիանոս Աւգոստոսէն) մինչեւ իր աս վերջին կործանումը՝ 510 տարի տեւեց. որ է Հռոմայի շինութենէն 1234 տարի։

## Բ.

### Հռոմէական-Արեւմտեան պետութեան վերջանալէն մինչեւ Արեւմտեան կայսրութեան սկիզբը։

### 476—776.

Ասկից ետքը Իտալիոյ անցից պատմութեան համար մասնաւոր Շրջաններ կը սկսին։ Առաջին Շրջանը կը բովանդակէ՝ Հին Արեւմտեան-Հռոմէական պետութեան վերջանալու ժամանակէն մինչեւ Նոր Արեւմտեան կայսրութեան հիմնուելուն ժամանակը, որ է յամէ Տեառն 476 մինչեւ ցամ Տեառն 774։ — Ոդոակէր՝ որ իբրեւ պարզ թագաւոր եւ ոչ իբրեւ կայսր Հռոմ ու Իտալիա կը կառավարէր, երկայն ատեն չկրցաւ իր իշխանութիւնը վարել։ Ինչու որ իբր տասը տարի անցնելէն ետքը՝ Արեւելեան Գոթաց Թէոդորիկ Մեծ թագաւորը յամի 493ին Իտալիա մտնելով ու Ոդոակերին հետ պատերազմելով անոր յաղթեց ու սկսաւ բոլոր Իտալիոյ վրայ, Ալպեան լեռներէն սկսած մինչեւ Սիկիլիա, իբրեւ անկախ թագաւոր տիրել։ Ասոր հիմնած թագաւորութիւնը թէպէտ ի սկզբան աղէկ յառաջ կ'երթար, բայց քիչ ատենուան

մէջ ներքին ապականութեանց պատճառաւ տկարանալու սկսելով, Բիւզանդեան պետութեան քաջ զօրապետներուն՝ Բելիսարիոսին ու Հայկազն Ներսեսին՝ Գոթաց վրայ ըրած յաղթութիւնները նոյն ազգութեան վերջը բերին, ու Իտալիա նորէն Բիւզանդեան կայսերաց իշխանութեան տակ ինկաւ, որն որ Ռաւեննա քաղաքին մէջ դրած կուսակալի մը ձեռքով անիկայ կառավարել կու տար: Բայց շատ չանցաւ Լոնգոբարդացիք իրենց Գերմանական յաղթող գնդերովը հոն մտան ու յամի 568ին իրենց Ալպոյն կամ Ալպոյին զօրապետին տակ՝ գրեթէ բոլոր վերին Իտալիայի, Միջինին մէկ մասին ու Ստորինին ալ մեծ մասին վրայ տիրեցին: Այսպէս Լոնգոբարդացւոց իրենց պետութիւնն ու տեղերը հաստատած ատենը՝ Իտալիայի ուրիշ կողմերը, ինչպէս Ռոմանեա ըսուած մասը, (որ հիմայ Ռավեննայի ու Ֆորլիի կուսակալութիւնները կը բովանդակէ,) ան ժամանակները Պենտապոլիս անունով նշանակուած հինգ ծովեզերեայ քաղաքները, Ռիմինի, Բեզարօյ, Ֆանոյ, Սինիկալիա ու Անգոնա, դարձեալ՝ Ստորին Իտալիայի ծովեզերեայ մէկ մասը, (ուր Ամալֆի ու Կաէդա քաղաքներն առանձին յոյն դուքսերու իշխանութեան տակ էին,) ինչպէս նաև Սիկիլիա ու Հռոմ քաղաքն իր շրջակայ տեղերովը՝ Բիւզանդեան կայսերաց տկարացեալ իշխանութեան տակ մնացին: Ուրիշ կողմանէ ալ՝ Եւրոպայի մէջ ասդին անդին մտնող տարածուող Հիւսիսային ազգերէն փախչողները բազմութեամբ եկան Ադրիական ծովուն ծովալճերուն վրայ Վենետիկի հասարակապետութեան հիմը դրին: Ութերորդ դարուն սկիզբները՝ երբոր Լեւոն Իսաւրացի պատկերամարտ կայսրը իր պաշտօնէից ձեռքովը պատկերաց պաշտաման պատճառաւ Իտալացւոց սիրտը դառնացուց, Իտալիայի շատ քաղաքները կայսերական պաշտօնեաները վռնտե-

ցին ու իրենք իրենց վրայ հիւպատոսներ ու ծերակոյտ դնելով՝ հին Հռոմայեցւոց պէս սկսան իրենք զիրենք կառավարել։ Նոյն ատենները Հռոմ քաղաքը իր քահանայապետներուն վրայ աշխարհական կառավարութիւն մը չէր ճանչնար, բայց անոնց հայրական իշխանութիւնը աշխարհական գործքերու մէջ ալ սկսաւ գործածել տալ։ Սակայն շատ չանցաւ քահանայապետները Լոնգոպարտացւոց հետ գժտելու սկսան, առաւելապէս ասոքիններուն արխոսեան աղանդը պաշտպանելուն համար։ Եւ որովհետեւ Փրանկաց (հին Գաղղիացւոց) թագաւորները Հռոմայի քահանայապետներուն վրայ մեծ սէր ունէին, անոր համար ասոնք ալ անոնցմէ Լոնգոպարտացւոց դէմ օգնութիւն ու պաշտպանութիւն խնդրեցին։ Ասոնց մէջէն Բեբինոս կամ Բիբինոս Փոքր կամ Կարճ, զորն որ Ստեփանոս Բ. (Գ.) քահանայապետը Փրանկաց թագաւոր օծելէն ետքը՝ նա եւ Հռոմէական Պատրիկ ու գերագոյն պաշտպան քահանայապետական գահին անուանած էր, Լոնգոպարտացւոց դէմ պատերազմի ելաւ ու Ռաւեննայի մարզպանութեան երկիրն անոնցմէ առաւ եւ քահանայապետին պարգեւեց։ Ասով Հռոմայի Քահանայապետաց երկրի տէր ըլլալու եւ աշխարհական իշխանութիւն ունենալու սկիզբը եղաւ։ Անկից ետքը Բեբինոսին որդին Մեծն Կարոլոս Իտալիայի մէջ Լոնգոպարտացւոց տէրութիւնը բոլորովին ջնջեց, ու յամի 774ին անիկայ Փրանկաց տէրութեան հետ միացուց. որով եւ յառակապէս *Արեւմտեան կայսրութեան* հիմք դրուեցաւ ու սկզբնաւորութիւնն եղաւ։

## Դ.

### Կարոլինկեանց իշխանութեան ու աւատային տիրապետութեան ժամանակը։

### 774—961.

Այս 774 տարիէն կը սկսի Իտալիայի պատմութեան կամ դէպքերուն Երկրորդ շրջանը, որն որ մինչեւ 961 կ'երթայ, եւ կը բովանդակէ Կարոլինկեանց իշխանութեան ու անոր ետեւէն եկող միջանկեալ իշխանութեան ժամանակը, որ է աւատային տիրապետութեան խիստ զօրաւոր եղած ատենը։ Իտալիայի իշխանութեան՝ Փրանկաց թագաւորներուն անցնելը մանաւորապէս անոր համար նշանաւոր եղաւ, որ անով Հռոմէական կայսրութիւնն Արեւմուտքի մէջ նորոգուեցաւ, կամ անով նոր Հռոմէական-արեւմտեան կայսրութիւնը սկսաւ, որով եւ Հռոմայի քահանայապետաց աշխարհական իշխանութեան հիմք դրուելէն զատ՝ միանգամայն նա եւ հաստատուեցաւ։ Բայց Մեծն Կարոլոս թէպէտ եւ Հռոմայեցւոց կայսր կամ ինքնակալ օծուեցաւ, սակայն չկրցաւ բոլոր Իտալիայի վրայ տիրել։ Իր ամէն ջանքն ու պատերազմները՝ զոր Բենեւենտի դքսութեան ու Ստորին Իտալիայի հասարակապետութեանց դէմ ըրաւ, պարապի ելան։

Լուդովիկոս Ա. Հեզ (Débonnaire), Մեծին Կարոլոսի որդին, որն որ յամի 814ին անոր ընդհանուր կայսրութիւնը ժառանգեց ու մինչեւ 843 տիրեց, յամի 817ին իր ընդարձակածաւալ տէրութիւնն իր երեք որդւոց մէջ բաժնելու ատենը՝ Իտալիայի տէրութիւնը իր Լոթարիոս որդւոյն տուաւ։ Իր Բեռնարդոս եղբօրորդին, որ Իտալիայի թագաւոր էր, ինք զինք աս բաժանման մէջ իբր երեսէ ձգուած կամ արհամարհուած սեպելով, կայ-

սեր դէմ ապստամբական շարժումներ ընելու սկսաւ։ Լուդովիկոս զինքը հնարքով մը ձեռք ձգեց ու աչուները կուրցուց։ Կը կարծուի որ աս բռնաւորական գործքին համար խիղճը զինքը չարչարելով՝ իբր ըրած անիրաւութեան դէմ հատուցում մ'ընելու համար՝ հոգեւոր պարգեւաբաշխութիւն մը մտածեց։ Եւ այս պարգեւաբաշխութիւնն ան եղաւ՝ որ նոյն (817) տարին հրովարտակ մը հրատարակեց, որուն նիւթն է՝ Հռոմ քաղաքն իր շրջակայ սահմաններովը ու քանի մը գաւառներովը իբրեւ մշտնջենաւոր ժառանգութիւն Ս. Պետրոսի՝ այսինքն անոր յաջորդաց կամ Հռոմայ քահանայապետաց պարգեւել ու զանոնք նոյն տեղերուն վրայ տէր ու իշխան ընել։ Հրովարտակին ան ատենուան Պասկալիս (Յարութիւն) Ա. քահանայապետին ուղղուած է, զորն որ հոս քաղելով կը դնենք։

“Ես, Լուդովիկոս կայսր, աս մեր հաստատութեան թղթով կը սահմանեմ եւ կու տամ քեզի, Առաքելոց իշխանին Պետրոսի եւ քեզի համար քու տեղակալիդ, քահանայապետին (պապին) եւ իր յաջորդացը՝ ի մշտընջենաւոր ժամանակս՝ Հռոմ քաղաքը, անոր դքսութեան (երկրին), իր սահմաններուն ու բոլոր անոնց կալուածներուն ու գեղերուն հետ մէկտեղ, ամէն ծովեզերքն ու նաւահանգիստները, ամէն քաղաքները, ամրոցները, աւաններն ու գեղերը . . . . . . ., ինչպէս որ Դուք զանոնք Ձեր նախորդներուն ատենէն մինչեւ հիմայ Ձեր իշխանութեան ու վերագոյն տէրութեան տակ ժառանգեցիք ու կառավարեցիք։

“Աս ամէն գաւառները, եւ այլն, ինչպէս նա եւ քու եկեղեցւոյդ ժառանգութեան բաժինը կը հաստատենք քեզի, Սուրբ առաքեալդ Պետրոս, ու քու միջնորդութեամբդ քու տեղակալիդ, մեր հոգեւոր Հօրը, քան

հանդյապետոսին ու իր յաջորդներուն մինչեւ ցկատարած աշխարհի, որպէս զի ամէնքն ալ անոր իրաւանց, իշխանական տէրութեան ու հրամանին տակ մնան . . . ։ Եւ Մեր կողմանէ ալ Մեր հաստատութեան վճռովը կը սահմանենք՝ որ ոչ Մենք ու ոչ Մեր որդւոց ու յաջորդաց մէկը հնարքով ու պատճառով մը Ձեր իշխանութեան որպիսի եւ իցէ մասը տկարացընելու, պակասեցընելու կամ Ձեզմէ ու Ձեր յաջորդներէն վերը յիշուած սահմաններուն, քաղաքներուն, եւ այլն, մէկը եւս առնելու կարող ըլլանք, եւ եթէ մէկն առնել ուզէ՝ հաւանինք, հապա կը խոստանանք որ սուրբ Պետրոս առաքելոյն եւ անոր գահին վրայ մինչեւ ցվախճան աշխարհի յաջորդողներուն Եկեղեցւոյն ամէն գաւառները, քաղաքները, եւ այլն, մեր կրցածին չափ պաշտպանել . . .„ ։ —

Լուդովիկոս Ա. կայսրն ալ կարգաւորութիւններն ըրած ատենը՝ Ստորին Իտալիայի մէջ քանի մը ազատ քաղաքներ կամ հասարակապետութիւններ, առանձինն Նէապոլիս, Ամալֆի ու Կաէդա իրենց նաւագնացութիւններովն ու առուտուրովը մեծ հարստութեան տէր կ'ըլլային, միանգամայն Հռոմէն զատ՝ ուրիշ քանի մը ազատ քաղաքներու հետ ամէն հնարքը կը բանեցընէին Բիւզանդեան կայսրութեան հետ հաստատ միացած մնալու, որով ալ կայսրութեան ուժը Ստորին Իտալիայի մէջ նորէն աւելցաւ ։ Իսկ Իտալիայի մնացած մասերը՝ Փրանկաց տէրութեան հպատակ երկիրներն ու մասերն եղան, եւ ասիկայ տեւեց մինչեւ 843, որ տարին Վերտէօն քաղաքն ըլլող դաշանց զօրութեամբ՝ Լուդովիկոս Ա. կայսեր 817ին ըրած կարգաւորութիւններն ի գործ դրուելու սկսելով, նա եւ Իտալիա՝ կայսերական իշխանութեան ու Լոթարինկիայի երկրին հետ մէկտեղ՝ Մեծին Կարոլոսի թոռան՝ Լոթարիոս Ա.ին տրուեցաւ ։ Յամի 850ին Լո-

Թարլոս Ա. Իտալիայի տէրութիւնն ու կառավարութիւնը իր որդւոյն Լուդովիկոս Բ.ին տուաւ, որուն՝ 875ին մեռնելէն ետքը՝ Իտալիա Կարոլինկեան ցեղին մէջ երկպառակութիւններու եւ կռիւներու ասպարէզ եղաւ, մինչեւ որ 880ին Կարոլոս Ցյր (Գէր) անոր վրայ տիրեց, բայց միայն քանի մը տարի կրցաւ իր տէրութիւնը բռնել: Յամի 887ին իր իշխանութիւնը կորսնցուց, ու անկից ետքն ալ սկսաւ Իտալիայի մէջ ամէն անկարգութեանց ու ներքին կամ քաղաքային կռիւներու դժբախտ ժամանակը: Բերենգար Փրիուլի դուքսը, Գուիդոն Սպոլետոյի դուքսն ու Իվրէայի սահմանակալ կոմսը Իտալիայի թագին վրայ իրարու հետ կռուեցան, մինչեւ 888ին Գուիդոն Իտալիայի թագաւոր եւ 891ին կայսր ընտրուեցաւ, որուն մահուընէ ետքը 894ին իր որդին Լամբերդոս իշխանութիւնն առաւ: Անիկայ 898ին մեռաւ. իր մահուընէ առաջ 896էն սկսեալ՝ Կարոլինկեան ցեղէն Առնուլփոս Գերմանացւոց թագաւորը՝ Իտալիայի թագաւորութեան ու կայսրութեան վրայ ունեցած իրաւունքը բանեցընելու կ՚աշխատէր. բայց չկրցաւ երկայն ատեն իր իշխանութեան մէջ մնալ: Ասոր՝ 899ին մեռնելէն ետքը՝ Իտալիայի տէրութեան վրայ կռուեցան Փրիուլի Բերենգար Ա. դուքսը, որն որ յամի 994ին արդէն Իտալիայի թագաւոր պսակուած էր, Ստորին Բուրգունտիայի Լուդովիկոս թագաւորը, զորն որ Բենեդիկտոս Դ. քահանայապետը յամի 901ին Իտալիայի կայսր պսակած էր, ու վերին Բուրգունտիայի Հռուդոլփոս Ա. թագաւորը: Երկայն կռիւներէ ետքը վերջապէս Բերենգար Ա. զանիկայ ընդունեցաւ ու յամի 915ին իբրեւ կայսր պսակուեցաւ: Բայց տէրութիւնը ներքուստ ապականած ու տկարացած ըլլալուն՝ 890էն ի վեր Իտալիայի վրայ աւարառութեամբ արշաւող Սարակինոսներուն եւ 899էն

ետքը եկող Հունգարացիներուն դէմ իր երկիրը չկըրցաւ պաշտպանել։ Յամի 924ին Բերենկար Ա. սպանուելէն ետքը՝ Վերին Բուրգունդիայի Հռուդոլփոս Բ. Թագաւորը մինչեւ 930 իր Իտալիայի վրայ ունեցած իրաւունքը բանեցուց. բայց նոյն տարին Բրովանսի Հուկոն կոմսէն՝ Արելատեան տէրութիւնն ընդունելով՝ Իտալիայի վրայ ունեցած իրաւունքն անոր տուաւ։ Հուկոն ջանացաւ արիւնհեղութիւններով ու բռնաւորութեամբ իր դողդողացող գահը հաստատել, սակայն իր Բերենգար Բ. եղբօրորդին Իվրէայի սահմանակալ կոմսը, որն որ իր հօրեղբօրը կերպ կերպ դաւադրութիւններէն ազատ ըլլալու համար յամի 940ին Գերմանիայի Օթոն Ա. կամ Մեծ կայսեր քովն ապաւինած էր, շատ մը փախստականներ գլուխը ժողված՝ Իտալիա դարձաւ ու յամի 945ին իր Հուկոն հօրեղբայրը գահէն վար ձգեց։ Ասոր ետեւէն գահ նստաւ իր որդին Լոթարիոս, որ իր հօրը վարմանց չհետեւելուն՝ ժողովրդեան սիրելի եղաւ, եւ իր Բերենգար հօրեղբօրորդին ալ իրեն խորհրդական տուաւ։ Յամի 950ին Լոթար՝ ըստ ոմանց Բերենգարէն թունաւորուելով՝ մեռաւ, ու Բերենգար ուզեց անոր Ադելհայդէ այրին, որուն գեղեցկութիւնը հռչակեալ էր, իր որդւոյն Ադելբերտին հետ ամուսնացընել, եւ որովհետեւ Ադելհայդէ աս բանս ոչինչ կերպով յանձն կ՚առնէր, անոր համար Բերենգար զինքը շատ չարչարելէն ետքը բանտ դրաւ. բայց յաջողակ տիկինը հնարք գտնելով՝ բանտէն փախաւ ու Մոտենայի դքսութեան Ռէճճիոյ քաղքին մօտ Գանոսսայի ամուր բերդին մէջ պահուեցաւ։ Բերենգար բանն իմանալով՝ եկաւ բերդը պաշարեց. իսկ Ադելհայդէ ծածուկ դեսպանաց ձեռքով Օթոն Ա. կայսրէն օգնութիւն խնդրեց։ Օթոն իր զօրքովն Ալպեան լեռներէն անցաւ եկաւ տի-

կինը ազատեց, 951ին Բաւիա առաւ ու Լոնգոբարդացւոց թագաւոր պսակուեցաւ։ Բերենգարին ճամբը հատնելով՝ ինք զինք Օթոնին իշխանութեան տակ ձգեց, ու Իտալիայի տէրութեան բալլիկը՝ Փրիուլի սահմանակալ կոմսութիւնն անոր տուաւ, զորն որ Օթոն իր եղբօրը Հենրիկոսին պարգեւեց, եւ զԲերենգար իբրեւ իրեն հարկատու իշխան կամ աւատատու՝ Իտալիայի ուրիշ կողմերուն կառավարութեան մէջ թողուց։ Բայց երբ որ քանի մը տարիէն ետքը Իտալիայի մեծամեծները Բերենգարի դէմ ծանր ամբաստանութիւններով Օթոնին դիմեցին, 961ին եկաւ զանիկայ իշխանութենէն վար ձգեց, եւ ինք զինք Իտալիայի թագաւոր ու 962ին կայսր անուանեց ու կայսերական թագը դրաւ։ Այս ատենները ու բոլոր աս շրջանին մէջ Ստորին Իտալիայի հասարակապետութիւնները՝ Նէապոլիս, Կաէտա ու Ամալփի իրենց անկախութիւնը Լոմբարտիայի Բենեւենտ դքսութեան ջանիցը ու հնարքներուն դէմ կը պաշտպանէին ու կը պահէին։ Աս բանիս մէջ նոյն հասարակապետութեանց մեծ օգնութիւն ու շահ կ՚ըլլար Բենեւենտի ներքին շփոթութիւնները, եւ մանաւանդ թէ Բենեւենտի դքսութիւնն ու թէ յիշեալ հասարակապետութիւնները Իտալիայի հասարակաց թշնամիներուն՝ Սարակինոսներուն դէմ պատերազմի մէջ էին, զորոնք իրենք շատ տարիներէ յառաջ (830) Սիկիլիայէն կանչած էին՝ իբրեւ օգնական ու վարձկան զօրք իրարու դէմ գործածելու համար, որոնք եւ Նէապոլսոյ արեւելեան մասին վրայ Ադրիական ծովուն քովերը Ապուլիա նահանգին մէջ իրենց հաստատուն կայան ու բնակարան դրած մնացած էին։ Եւ թէպէտ Լուդովիկոս Բ. կայսրն ու բիւզանդեան կայսրը Բասիլիոս (Վասիլ հայկազն) իրարու օգնելով 866ին Սարակինոսաց ուժն ու իշխանութիւնը տկա-

բացուցած էին, ի վերայ այսր ամենայնի Լուդովիկոս չկրցաւ Ստորին Իտալիայի մէջ իր իշխանութիւնը բանեցընել։ Բայց Բիւզանդեանք կամ Յոյները աւելի եւս յաջողակ գտնուելով՝ Ստորին Իտալիայի մէջ հաստատուեցան մնացին, Սարակինոսներէն առած տեղերնին մասնաւոր նահանգ մը կազմեցին, որն որ Լոմպարդեան Թեմ քաւեցաւ, ու Ապուլիայի Պարի բերդաքաղաքը նստող ընդհանուր կուսակալի (կատապանի) մը ձեռքով հարիւր տարիէն աւելի անիկայ կառավարեցին ու անոր տէրութիւնը պահեցին։ Ոթոն Ա. կայսրը շատ աշխատեցաւ զատոնք Իտալիայէն բոլորովին հեռացընելու եւ բոլոր Ստորին Իտալիա իր իշխանութեան տակ առնելու, բայց չկրցաւ ուզածը կատարեալ գլուխ հանել։

## Դ.

### Գերմանական կայսերական իշխանութեան ժամանակը։

### 961—1056.

Ոթոն Ա.ին կայսերական թագն ընդունելովը՝ կայսերական պատիւը կամ կայսրութիւնը Գերմանացւոց թագաւորներուն անցաւ. ուսկից Իտալիայի պատմութեան Երրորդ Շրջանը կը սկսի, որ Գերմանական կայսերաց պետութեան ամենէն նշանաւոր ժամանակն է, թէպէտ եւ նոյն ժամանակին մէջ այլ եւ այլ հարկատու կամ աւատաւոր իշխաններ ու քաղաքներ զօրանալու սկսան, սակայն միշտ կայսերական զօրութենէն ճնշուելով ու յաղթուելով։ Աս շրջանը կը բովանդակէ բոլոր Սաքսոնեան ցեղէն նստող կայսերաց ու Փրանկեան ցեղէն կայսրներէն ալ մինչեւ Հենրիկոս Գ.ին մահն անցնող ժամանակը. այսինքն 961էն մինչեւ 1056։ Ոթոն Ա. Ի-

տալիայի հարկատու կամ աւատաւոր իշխանաց երկիրները Գերմանացւոց տուաւ, եւ Իտալիայի քաղաքներուն քանի մը արտօնութիւն շնորհեց, որոնցմով անոնց ապագայ ազատ սահմանադրութեանց, ինքնօրինութեանց կամ անկախութեան ու զօրութեան հիմը դրուեցաւ, եւ երկրին մէջ տիրող անկարգութեանց ու անիշխանութեան օգնութեամբը չէ թէ միայն հաստատուեցաւ հապա շուտով ալ յաջողելու ճամբայ բռնեց: Օթոն Ա. շատ աշխատութիւն կրեց առանձինն Հռոմայի մէջ ըլլող անկարգութիւններն ու ապստամբութիւնը զսպելու: Ասոնք հանդարտելէն ետքը՝ Հռոմայի մէջ Տուսկուլոնի կոմսերը կայսեր հեռու եղած ատենը անոր անուամբը կարեւոր կարգաւորութիւններ ընելու կը ջանային: Ասոնց դէմ 980ին Հռոմայեցի ազնուականներէն Կրեսկենտիոս բդեշխը ոտք ելաւ ու փորձ փորձեց՝ Հռոմայի հին ազատութեան գոնեայ մէկ մասը նորոգել: Օթոն Բ. Օթոն Ա.ին որդին (973—983) Ստորին Իտալիայի մէջ նոր աշխարհակալութիւններու զբաղած ըլլալով, (որոնք իրեն բաղձանաց համեմատ չյաջողեցան,) Կրեսկենտիոսին ջանքն ու յառաջադիմութիւնն արգելելու ժամանակ կամ հոգ չունեցաւ: Բայց Օթոն Գ. (983—1002) Կրեսկենտիոսին հնարքներուն ու ապստամբութեան յաղթեց վերջ ըրաւ ու Հռոմայեցիները զսպելու եւ հանդարտ պահելու հնարքը գտաւ: Ասոր (1002ին) մեռնելէն ետքը Իտալացիք համարելով որ Գերմանական կայսրութեան հետ ունեցած կապերնին ու կապակցութիւննին ալ բոլորովին լուծուած է, Իվրէայի Հարտուին սահմանակալ կոմսը Իտալիայի թագաւոր ընտրեցին, որն որ Բաւիա քաղքին մէջ իր թագադրութեան հանդէսը կատարեց: Մի եւ նոյն ժամանակուան մէջ ուրիշ կողմնակցութիւն մը՝ Գերմանացւոց Հենրիկոս Բ. Թագաւորը Իտալիայի

Թագաւոր անուանեց։ Այսր հետեւութիւնն եղաւ Իտալիայի մէջ ներքին կամ քաղաքային պատերազմ մը, որուն մէջ ամէն տեղերէն աւելի Բաւիայի ու Միլանի ժողովուրդները իրարու դէմ սաստկութեամբ կը կռուէին. վերջապէս Հենրիկոս Բ. յաղթող ըլլալով՝ Իտալիայի թագաւորութիւնն ու կայսրութիւնը վարեց (1002—1024)։ Իր թագաւորութեան ու կայսրութեան յաջորդը Փրանկեան ցեղէն Կոնրատ Բ. (1026—1039) շատ ջանաց ապստամբ ու խռովարար աւատաւոր իշխաններուն եւ քաղաքներուն՝ մանաւանդ ամենէն աւելի Միլանի՝ յաղթելով, խաղաղութիւնն ու բարեկարգութիւնը Իտալիայի մէջ ամենայն հնարիւք հաստատել։ Սակայն իր ամէն ջանքն ու բանեցուցած միջոցներն ու զօրութիւնը գրեթէ ամենեւին օգուտ մը չունեցան։ Քաղաքներն ու եկեղեցական մեծերն օրէ օր աւելի զօրանալով՝ Ազնուականաց դէմ, ասոնք ալ իրենց հպատակներուն դէմ անդադար ու անհանգիստ կը կռուէին։ Հռոմայի հասարակապետականները Կրեսկենտիոսի ցեղէն քանի մը անձանց առաջնորդութեամբը թէ Հենրիկոս Բ.ին, թէ Կոնրատոս Բ.ին ու թէ քահանայապետներուն իրենց դէմ բանեցուցած ամէն միջոցները պարապի հանեցին։ Հենրիկոս Գ. (1039—1056) Կոնրատոս Բ.ին որդին ու յաջորդը 1046ին Իտալիա եկաւ ու այլ եւ այլ հնարքներով ու հաստատուն միջոցներով ամէն ապստամբութեանց յաղթեց ու մինչեւ իր մահը Իտալիայի վրայ ունեցած իշխանութիւնը Օթոն Ա.ին պէս չէ թէ միայն հաստատութեամբ պահեց, հապա նա եւ յաջողակութեամբ բանեցուց։

# Ե.

## Գերմանական առանձինն Հոհենշդաուֆեան ազգատոհմին կայսրութեան ու իտալական ազատ քաղաքներուն իշխանութեան ժամանակը։

## 1056—1259.

Հենրիկոս Դ.ին մահուամբը կը սկսի Իտալիայի պատմութեան Չորրորդ Շրջանը, որ է 1056էն մինչեւ 1259։ Աս շրջանը կը բովանդակէ բոլոր այն ժամանակը, որուն մէջ կայսերք Հռոմայի քահանայապետներուն հետ՝ գերագոյն իշխանութեան համար, իսկ իտալական քաղաքներուն հետ՝ Իտալիայի ազատութեան համար կռուեցան. ընդհանրապէս աս շրջանին մէջ կ'երեւայ Հռոմէական–իտալական սկզբունքին՝ տեւտոնական–գերմանական սկզբանց դէմ յաղթող ըլլալու կամ վերանորոգելու ջանից ժամանակը։ Հենրիկոս Դ. կայսեր (1056—1106) բոլոր անչափահասութեան ատենը (1056—1065) Հռոմայի քահանայապետներուն յաջողեցաւ իրենց աշխարհական իշխանութիւնը հաստատել ու զօրացընել։ Աս բանիս շատ մեծ օգուտ ու օգնութիւն եղաւ Նորմաններուն ան ատենները Ստորին Իտալիայի մէջ իրենց հաստատուն բնակութիւն դնելը. ինչու որ ասոնք քահանայապետներուն՝ կայսերական իշխանութեան դէմ ըրած պատերազմներուն մէջ շատ օգնեցին։ Այսպէս հարաւային Իտալիայի մէջ պզտիկ պզտիկ տէրութիւնները կամ վիճակները մեծ տէրութիւն մ'ըլլալու ճամբայ բռնած ատենը՝ հիւսիսային Իտալիայի մէջ եղող թագաւորութիւնը քայքայելու եւ պզտիկ տէրութիւններու կամ վիճակներու բաժնուելու վրայ էր։ Աս միջոցիս մէջ Լոմբարտիայի քաղաքները՝ Փրիոլ, Մանդուա, Սուզա, եւ այլն, անկախ դքսութիւններ ու սահմանակալ կոմսու-

թիւններ եղան։ Վենետիկ, Գենուա ու Պիզա արդէն մեծ, զօրաւոր ու ծաղկեալ հասարակապետութիւններ եղած էին։ Հենրիկոս Դ. շատ շփոթութիւններէ, կռիւներէ ու պատերազմներէ ետքը հազիւ կրցաւ (1093) իր Կոնրատոս երէց որդւոյն Իտալիոյ թագաւոր ընել. բայց երբոր անիկայ (1101ին) մեռաւ՝ իր Հենրիկոս եղբայրը իրենց հայրը Հենրիկոս Դ. կայսրը կայսերական իշխանութենէն վար ձգելէն, ու անոր մահուընէ ետեւ (1106) Հենրիկոս Ե. անուամբ կայսերական գահն ելլելէն ետեւ՝ քանի մը տարի Հռոմայի քահանայապետաց ու իտալական իշխանաց հետ բարեկամութեամբ գնաց, որպէս զի խաղաղական ճամբով Իտալիոյ մէջ իր թագաւորական իշխանութիւնն ընդունել տայ ու բանեցընէ։ Բայց երբ որ սա ճամբով չկրցաւ գլուխ ելլել, զօրաւոր բանակով մը Իտալիա մտաւ (1110), եւ Վերին Իտալիոյ քաղաքներն իրեն հնազանդեցընելէն ետքը՝ մինչեւ Սուտրի յառաջ գնաց, ու այլ եւ այլ բանակցութիւններէն ետքը Հռոմ առաւ, ուր քանի մը ամիսէն ետքը (1111, Ապր. 9) Պասկալիս (Յարութիւն) Բ. քահանայապետը զինքը կայսերական թագով պսակեց։ Ասկից ետքը Գերմանիա դարձաւ. բայց իր հօրը կենդանութեան ատենէն սկսած Թոսկանայի այրի սահմանակալ կոմսուհւոյն Մաթիլտէին՝ Հռոմայի քահանայապետաց (1079) պարգեւած երկիրներուն համար եղած կռիւներն ու պահանջմունքները՝ նոյն Մաթիլտէին (1115) մեռած ատենը՝ զինքը (Հենրիկոս Ե.) ստիպեցին նորէն Իտալիա մտնելու (1116), նոյն երկիրներն իր իշխանութեան տակ առնելու կամ ժառանգելու համար։ Սակայն խել մը նոր խռովութիւններէ ու կռիւներէ ետքը՝ դեռ ուզածը չկատարած՝ Գերմանիայի մէջ իրեն դէմ ըլլող ջանքերէն ստիպուելով՝ Իտալիայէն ելաւ (1119) ու տճապարեց

Գերմանիա դարձաւ, ուր քանի մը տարի ետքը (1125) մեռաւ. բայց Մաթիլտէին պարգեւած երկիրներուն ժառանգութեան կռիւները դեռ շատ տարիներ շարունակուեցան: Աս միջոցիս՝ 1060էն սկսած՝ Հարաւային Իտալիայի մէջ Նորման կամ Նորմանդիացի մեծանուն Դանկրետին տասնուերկու քաջ որդիներէն երկուքը՝ Ռոժեր Ա. ու Ռոբերդոս Գուիսկարդ իրենց աշխարհակալութիւններովը երկու Սիկիլիայի թագաւորութեան հիմը դրին: Առանձինն Ռոժեր Ա. որ Սիկիլիայի կոմս էր, իր եղբօրը Ռոբերդոսին մահուընէ ետքը, որ Գալաբրիայի վրայ կը տիրէր, բոլոր Նորմաններուն գլուխն անցած (1085) Իտալիայի մէջ յառաջ գնաց. նա եւ Մալդա կղզին իր իշխանութեան տակն առաւ: Իր մահուընէ ետքը (1101) երբ որ իր որդին Ռոժեր Բ. Ապուլիան ու Գալաբրիան ալ (1127) իր իշխանութեան տակ առաւ, Սիկիլիայի կոմս անունը՝ Սիկիլիայի Թագաւորի փոխեց. ու յամի 1130ին Բալերմոյի մէջ թագաւոր օծուեցաւ ու պսակուեցաւ: Ասանկով՝ Իտալիայի քանի մը ազատ քաղաքներէն, տեղ մը Յունաց կայսրութեան վերաբերող երկիրներէն ու Լոմբարդեան թագաւորութեան մասերէն աս Սիկիլիայի նոր թագաւորութիւնը յօրինեցաւ: Այսպէս Հարաւային (Ստորին) Իտալիայի մէջ նոր թագաւորութիւն մը կամաց կամաց հիմնուելու ատեն՝ Հիւսիսային (Վերին) Իտալիայի մէջ գտնուող պզտիկ պզտիկ ազատ տէրութիւնները կամ իրարմէ անկախ վիճակներն այլ եւ այլ պատճառներէ գրգռուելով՝ իրարու հետ կը կռուէին ու կը պատերազմէին: Աս կռիւներուն հետեւութեանց մէջ յիշատակելու արժանի են՝ յամի 1111ին Լոտի ազատ քաղքին Միլանցիներուն զէնուքը բոլորովին կործանիլը ու Լոմբարտիայի ամէն քաղաքներուն զօրաց Գոմոյ քաղաքը տասը տարի (1118—1128)

պաշարելն ու վերջապէս առնելը։ Այս քաղաքին նուաճումը զՄիլան բոլոր Լոմբարտիայի մէջ առաջին ու ամենէն հզօր քաղաքն ու վիճակն ըրաւ, որուն հետ սահմանակից քաղաքներուն շատերը դաշնակցեցան ու միացան. իսկ մէկ քանին ալ Միլանի ոսոխն ըլլող Բաւիայի հետ միացած՝ զատ դաշնակցութիւն մը կազմեցին։ Ետքէն Միլանի ու Գրեմոնայի մէջ ծագած կռիւները նոյն երկու դաշնակցութիւնները (1129ին) իրարու դէմ առաջին պատերազմը բանալու ստիպեցին։ Այս պատերազմին շարունակած ատենը՝ Կոնրատոս Գ.ին, որն որ Գերմանիայի Հոհենշտաուֆեան ազգատոհմէն առաջին կայսրն եղաւ (1138—1152) ու Լոթարիոս Բ.ին մէջ կայսերական իշխանութեան ու թագին համար ելած կռիւները Իտալացւոց իրողութիւններուն ուրիշ ուղղութիւն կամ ընթացք մը տուին։ Այս ժամանակներէն սկսելով՝ այն երկու կողմնակցութիւնները, որոնք Կուէլֆեանց ու Կիպելլեանց անուամբ շատ հռչակուած են, Իտալիա եւ ուրիշ տեղեր եղած թշնամութիւններուն ու կռիւներուն սաստկանալուն ու նոր խռովութիւններ ելլելուն պատճառ, գլուխ ու յառաջացուցիչ եղան։

Այս Կուէլֆեան (Վէլֆեան) ու Կիպելլեան անուններուն սկզբնաւորութեան վրայ այլ եւ այլ կարծիքներ կան, որոնք հոս մանրամասն աւանդելը մեր վախճանէն դուրս ըլլալուն՝ զանց կ՚առնենք ու միայն իրենց Իտալիայի նկատմամբ ու Իտալիայի մէջ գործածներուն վրայ՝ կարեւոր եղած տեղերը՝ յիշատակութիւն կ՚ընենք։ Հոս հարկ կը սեպենք ծանուցանել որ աս երկու կողմնակցութեանց ծագելուն եւ զօրանալուն պատճառ տուին Կոնրատ Գ. կայսեր ու անոր հակառակորդներուն մէջ եղած պատերազմները։ Կիպելլեանները՝ կայսեր կողմնակիցներուն, իսկ Կուէլֆեանները՝ անոր հակառակորդներուն մէկ

մասն էին, ու իրարու դէմ սաստիկ պատերազմներ կ՚ընէին։ Պաւիերայի Կուելփոս կամ (ըստ բուն հնչման) Վէլֆ Զ. դուքսը, որ իր հօրը Իտալիայի մէջ ունեցած ժառանգական երկիրներուն պատճառաւ՝ հոն իշխանական իրաւունք ունէր, յամի 1154ին՝ իր անձնական զօրացն ու կողմնակիցներուն գլխուն անցած՝ Փրիդերիկոս Ա. (Պարպարոսսա) կայսեր առաջին հեղ հզօր բանակով մը Իտալիա արշաւելու ատենը՝ անոր ընկերացաւ ու Իտալիա մնաց։

Այս ատենները Իտալիայի ազատ քաղաքներուն կամ պզտիկ վիճակներուն շատը իրարու հետ անդադար պատերազմելով ու մէկը մէկալէն ճնշուելով, կը տեսնէին որ այսպիսի ազատութեան տեղ՝ աւելի աղէկ ու օգտակար է կայսերական իշխանութեան տակ մնալ ու անոր զօրաւոր պաշտպանութեամբն իրենց շահը յառաջ տանիլ։ Փրիդերիկոս Ա. կայսրն Իտալացւոց աս զգածումներուն եւ խորհուրդներուն տեղեակ ըլլալով, միանգամայն միտքը դրած ըլլալով Իտալիայի մէջ կամաց կամաց անչքացած կայսերական զօրութիւնն ու իշխանութիւնը նորոգել, սկսաւ ահեղ բանակ մը պատրաստել Իտալիայի վրայ երթալու եւ անիկայ նուաճելու համար։ Ինք աս պատրաստութեան մէջ եղած ատեն՝ Լոտի ազատ քաղաքին գլխաւորները, զորն որ՝ ինչպէս ըսինք՝ Միլանցիք իրենց դաշնակիցներովը կործանած էին, կայսեր եկան եւ զՄիլանցիներն աս թշնամութեան համար ամբաստանեցին։ Կայսրը Միլանցոց հրովարտակ մը խաւրեց՝ որ Լոտիցիներուն դէմ ըրած բռնութիւններնին ու անիրաւութիւններնին դադրեցընեն եւ անոնց հատուցում ընեն։ Բայց հպարտ ու յանդուգն Միլանցոց գլխաւորները կամ բդեշխները չէ թէ միայն կայսեր հրամանին չհնազանդեցան, հապա անոր հրովարտակն արհամար-

հանօք պատռեցին նետեցին։ Ասոր վրայ Փրիդերիկոս Ա. իր պատրաստ բանակաւը՝ ինչպէս ըսինք՝ 1154ին Ալպեան լեռներն անցաւ Իտալիա մտաւ ու Լոմբարտիայի մէջ Ռոնգալեա աւանը մեծ աւագաժողով մ'ըրաւ, ուր եկան Միլանցոց պատգամաւորներն ալ՝ խոնարհած ու ամէն բան ընդունելու պատրաստութեամբ, եւ կայսեր վճռած պատժոյն ամենայն հպատակութեամբ գլուխ ծռեցին։ Անկից ետքը կայսրը միւս ապստամբ վիճակներուն դէմ յառաջ երթալով, Սարդինիայի երկրին մէջ Ասդի ու Դորդոնա քաղաքներն առաւ, եւ ուրիշ ամէն ապստամբ վիճակներն ու քաղաքներն ահաբեկ ընելու համար՝ նոյն Դորդոնա քաղաքն այրեց մոխիր դարձուց։ Այսպէս յաջողութեամբ յառաջ երթալով՝ նոյն տարի Բաւիա քաղաքին մէջ Լոմբարտիայի թագով իբրեւ Իտալիայի թագաւոր պսակուեցաւ։ Տարի մը ետքը Յունիսի 18ին Հռոմայի մէջ Ադրիանոս Դ. քահանայապետին ձեռքէն ընդունեցաւ կայսերական թագը։

Երբ որ կայսրը Իտալիայի ապստամբները նուաճելէն ետքը Գերմանիա դարձաւ, Իտալացիք մանաւանդ Լոմբարտական քաղաքները առանձինն Միլան քաղաքը շատ չանցաւ սկսան նորէն ապստամբութեան դրօշը կանգնել ու կայսեր տուած խոստումներնուն դէմ՝ իրենց ուզածին պէս կառավարութիւն ընել։ Աս նոր ապստամբութեննէն ստիպելով Փրիդերիկոս Ա. յամի 1158ին նոր բանակով մը Իտալիա մտաւ ու ապստամբած վիճակներուն ու քաղաքներուն հետ պատերազմելու սկսաւ։ Ամենէն առաջ Պրեշիա քաղաքը յաղթուեցաւ. անկից ետքը Միլան երկայն պաշարմանէ ու սովէ ստիպելով՝ դռները յաղթող կայսեր բացաւ, եւ չէ թէ միայն նուաճած Գոմոյ ու Լոտի քաղաքներուն ազատութիւն տալու, հապա նաեւ կայսեր հաւատարմութեան երդում

ընելու եւ ժողովրդէն ընտրուած բդեշխները կայսրմէ հաստատել տալու բռնադատեցաւ։ Աս յաղթութիւններէն ետքը կայսրը նորէն Լոմբարտական աւագաժողով մը գումարեց Ռոնգալեայի մէջ, որուն Իտալիայի ամէն մեծ աւատառու իշխաններն ու ամէն մէկ քաղաքէն երկ' երկու բդեշխ իբր պատգամաւոր գալու պարտաւորեցան։ Աս մեծ աւագաժողովին մէջ, որուն անդամները միայն Իտալացիք ու անոնց պատգամաւորներն էին, կայսրը չորս Պոլոնիացի անուանի իրաւագէտներուն՝ իր կայսերական իրաւունքները, ինչպէս նաեւ Իտալիայի քաղաքաց ու աւատառու իշխանաց իրաւունքները քննել տուաւ, եւ նոր գործածուելու սկսուած Յուստինիանեան իրաւանց սահմաններուն համաձայն որոշեց, որ անկից ետքը ամէն մաքսերն ու հարկերը կայսեր կ'իյնան, թէ պէտք է որ ազատ կամ ինքնօրէն քաղաքներուն վարչութիւնը կայսրմէ դրուած քաղաքապետի կամ դատաւորի (Podestà) մը ձեռքն ըլլայ, եւ թէ անկից ետքը քաղաքներուն եւ վիճակներուն իրարու դէմ ունեցած վէճերն ու կռիւները դադրին։ Այսպիսի խիստ վճիռներուն քանի մը ազատ քաղաքներ հնազանդիլ չուզելով, սկսան զէնքով իրենց ազատութիւնը պաշտպանել. բայց մէկ քանին կայսեր հզօրագոյն զէնքերէն յաղթուելով՝ պատիժնին ընդունեցան, ինչպէս Գրեմա քաղաքը, զոր որ կայսրը երկայն պաշարմանէ ետքը 1160ին նուաճելով՝ Դորդոնա քաղաքին ըրածին պէս այրեց մոխիր դարձուց։ Իսկ քանի մը քաղաքներն ալ, ինչպէս Միլան, զինուց յաջողութեամբ իրենք զիրենք երկայն ատեն կայսեր դէմ պաշտպանեցին։

Կայսրը Գերմանիայի գործքերէն ստիպելով՝ նոյն տարի Իտալիայէն հեռացաւ. բայց հետեւեալ տարին 100,000ի նոր բանակով մ'եկաւ ու ամէն բանէն առաջ

Միլան պաշարելու փութաց։ Գրեթէ երկու տարի սաստիկ պաշարման ու ամէն նեղութեանց հաստատութեամբ դիմանալէն ետքը, վերջապէս սովէն չկրնալով դիմանալ, անյաղթելի համարուած քաղաքը 1162ին խոնարհեցաւ ու անձնատուր եղաւ։ Կայսրը Միլանցւոց իրեն դէմ ըրած այսչափ յամառ թշնամութեան վրէժն առնելու համար՝ անոնց քաղաքը հիմնայատակ ընել տուաւ, եւ թէպէտ բնակչաց կեանքը խնայեց՝ զիրենք սրէ անցընել չտուաւ, բայց հրաման հանեց որ իրենց երկրին չորս տեղը բնակութեան համար չորս աւաններ շինեն։ Ասո յաղթութենէն ետքը՝ ալ կայսրն ինք զինքը կամ իր իշխանութիւնը Իտալիոյ մէջ ապահովցած կը համարէր։ Բայց Գերմանիա դառնալու ատենը՝ խստաբարոյ Ռայնոլդոս արքեպիսկոպոսը Իտալիոյ կուսակալ կամ կայսերական փոխանորդ եւ կամ փոխարքայ դրաւ, որուն հրամանին տակ մասնաւոր դատաւորներ կարգեց։ Ասոնք բնակչաց հետ արտաքոյ կարգի խստութեամբ կը վարուէին, անոնց վրայ ծանր ծանր տուրքեր կը դնէին ու երկիրը սաստիկ կը նեղէին։

Բնական բան մըն էր որ կրակոտ Իտալացիներն այսչափ ու այսպիսի նեղութիւններուն, տառապանաց ու բռնութեանց երկայն ատեն լռութեամբ ու հանդարտութեամբ պիտ՚որ չկարենային գլուխ ծռել, ինչպէս իրօք ալ յայտնի ըրին։ Յամի 1167ին շատ քաղաքներ մէկ եղած՝ Նոր Լոմբարտական դաշնակցութիւն մը կազմեցին՝ իրենց իրաւունքները պաշտպանելու համար, կործանած Միլան քաղաքը նորէն շինելու սկսան, Լոտի քաղաքն ալ իրենց դաշնակցութեան մէջ մտնելու ստիպեցին ու Բիւզանդեան կայսեր հետ բարեկամութեան դաշինք դրին։ Այս ամենայն զՖրիդերիկոս Ա. ստիպեց չորրորդ անգամ զօրաւոր բանակով մը Իտալիա մտնելու։ Թէպէտ

եւ աս արշաւանքին սկիզբը իր հակառակորդներուն յաղթելով՝ ամէն բան կարգի դնելու կը փութար. բայց սաստիկ ժանտամահ մը իր զօրացը մէջ սոսկալի ջարդ ընելու սկսելուն՝ հարկադրեցաւ սկսածն անկատար թողուլ ու աճապարել Գերմանիա դառնալ, մեծ դժուարութեամբ իր թշնամիներուն դարաններէն ու հնարքներէն անվնաս ազատելով։ Սակայն քանի մը տարի ետքը՝ Գերմանիայի կարեւոր գործքերը կարգի դնելէն ետեւ՝ 1174ին հինգերորդ անգամ բազմաթիւ զօրքով Իտալիա մտաւ։ Աս հեղ իր կռիւները Իտալացւոց հետ երկու տարիի մօտ՝ կէս մը յաջողութեամբ կէս մը անյաջողութեամբ յառաջ տանելէն ետքը, երբ որ վերջին որոշիչ պատերազմ մը տալու վրայ էր, հեռուն իբրեւ օգնական եկող Հենրիկոս Առիւծ Պաւիէրայի ու Սաքսոնեայի Կուելփեան դուքսը իր սեպհական զօրքովը զկայսրը թողուց ու չուզեց իրեն օգնել։ Ասով նոյն պատերազմը կայսեր համար շատ դժբախտ ելք ունեցաւ. յամի 1176ին Մայ. 29ին Միլանի մօտ Լէնեանոյի քով եղած կռուոյն մէջ Լոմբարտացւոց մեծագոյն զօրութեան դէմ բաւական զօրութիւն չունենալով՝ յաղթուեցաւ, եւ ստիպեցաւ ապստամբած քաղաքներուն հետ վեց տարուան զինադադարի դաշն դնել, նաեւ անոնց դաշնակցութեան իր հաւանութիւնը տալ։ Ասկից ետքը Գերմանիա դարձաւ, ուր եւ իրեն անհաւատարիմ ու իր պարտութեան պատճառ ըլլող Կուէլփեան Հենրիկոս դուքսը պատժելով, Գերմանիայի մէջ Կուէլփեանց կողմնակցութիւնը կամ իշխանութիւնը ջնջեց։

Վերը յիշուած վերջին պատերազմէն ետքը Իտալիա քանի մը տարի խաղաղութեան մէջ մնաց։ Կայսրը թէ ազատ քաղաքներուն հետ եւ թէ Հռոմայի քահանայապետաց՝ մանաւանդ Ուրբանոս Գ.ին հետ (1185—

1187) չէ թէ միայն խոստացած խաղաղութիւնը հաստատ նաեւ բարեկամական յարաբերութիւնը պահեց։ Մանաւանդ թէ վեց տարեկան զինադադարին ժամանակը լրանալէն ետքը՝ յամի 1183ին Կոստանդիա (Գոստանց) քաղաքին մէջ Լոմբարտական քաղաքներուն հետ հաշտութեան դաշն դրաւ, որուն զօրութեամբը թէպէտ եւ անոնց ազատութիւն ու իշխանութիւն կը տրուէր՝ իրենց գլխաւորներն ուզածնուն պէս ընտրելու եւ իրարու հետ նոր դաշնադրութիւններ ընելու, բայց եւ իրենց վրայ պարտք ալ կը դրուէր՝ կայսեր վերին իշխանութիւնն ու քանի մը տուրքեր գնելու համար ունեցած իրաւունքը ճանչնալու եւ հաստատ պահելու։ Ասոնք հաստատուելէն ետքը կայսրը 1184ին վեցերորդ անգամ Իտալիա անցաւ, բայց աս հեղ իբրեւ բարեկամ եւ ոչ իբրեւ թշնամի, ուստի եւ առանց զէնքի ու զօրքի։ Աս գալուն գլխաւոր պատճառն էր իր Հենրիկոս որդին Հռոմայի քահանայապետին ձեռօքը Իտալիայի թագաւոր օծել տալ եւ Ապուլիայի ու Սիկիլիայի Ռոգերոս Նորման թագաւորին մէկհատիկ Կոստանդիա աղջկան ու թագաւորութեան ժառանգին հետ ամուսնացընել։ Լոմբարտիայի ամէն քաղաքները զինքը մեծ պատուով եւ ուրախութեամբ ընդունեցան։ Թէպէտ եւ կայսեր մտածած ամուսնութիւնը յաջողեցաւ ու կատարուեցաւ, բայց թագաւոր օծուիլը չյաջողեցաւ, որովհետեւ քահանայապետը Փրիդերիկոսին դիտաւորութեանց վրայ տարակոյսներ ունենալով ու վստահ չըլլալով, միանգամայն անոր որդւոյն՝ Սիկիլիայի ժառանգուհւոյն հետ ամուսնանալուն վրայ տժգոհ ըլլալով, չուզեց զՀենրիկոս թագաւոր օծել։ Ի վերայ այսր ամենայնի կայսրը միայն աս ամուսնութեամբ ալ գոհ եղաւ, որովհետեւ ամենայն ապահովութեամբ կը յուսար՝ որ անով իր տէրութիւնն ու իշ-

խանութիւնը Իտալիոյ մէջ հաստատելու խորհուրդն ու փափաքը անշուշտ կը կատարուի։ Բայց յաջորդ դիպուածները ցուցուցին որ աս ամուսնութեամբ իր որդւոյն ստացած իրաւունքը՝ չէ թէ միայն բոլոր Իտալիոյ վրայ, հապա նոյն իսկ Սիկիլիոյի գահին վրայ ալ՝ ոչ հաստատուն ու ոչ ապահով էին։

Փրիդերիկոս Ա. մեռնելէն ետքը յամի 1190ին իր որդին՝ Հենրիկոս Զ. անուամբ իրեն յաջորդեց, կայսր եղաւ, ու երբ որ հետեւեալ տարին Սիկիլիոյի թագաւորին մահուամբը նոյն տեղաց թագաւորական գահը առանց յաջորդի մնաց, կայսրը իր կնոջը Կոստանդիային միջնորդութեամբը նոյնին վրայ ունեցած յաջորդութեան իրաւունքը բանեցընելու եւ Սիկիլիոյի թագաւորութիւնը վարելու կը պատրաստուէր։ Մէյ մ՚ալ ինք դեռ Գերմանիա եղած ատեն՝ լուր տուաւ որ Սիկիլիոյի կարգաժողովը նոյն գահը նստեցուցեր է Լեքքայի Դանկրէտ կոմսը, որն որ Կոստանդիային եղբօրն անհարազատ որդին էր։ Աճապարեց Իտալիա անցաւ, ուր իր իմաստուն վարմունքովը Լոմբարտեան ազատ քաղաքներն իր կողմը շահեցաւ, ինչպէս նաեւ Հռոմայեցիներուն սիրտն ալ իրեն քաշեց, եւ Կեղեստինոս Գ. քահանայապետին ձեռքէն կայսերական թագն ընդունեցաւ։ Անկից ետքը գնաց Ապուլիա ու Նէապոլսոյ թագաւորութիւնը նուաճեց. միայն Նէապոլիս քաղաքն իրեն դէմ կեցաւ. եւ որովհետեւ նոյն ատենները ան կողմերը սաստիկ ժանտամահ մը մեծ կոտորած կ՚ընէր, անոր համար կայսրը ստիպեցաւ սկսած գործքն անկատար թողուլ ու Գերմանիա դառնալ։ Ասանկով Դանկրէտ մինչեւ 1194 Սիկիլիոյի գահին վրայ իբրեւ թագաւոր մնաց. բայց երբ որ նոյն տարին ինք մեռնելով՝ իր որդին Գուլիելմոս Գ. իբրեւ անոր յաջորդը իր մօրը խնամակալութեան տակ

տիրել սկսաւ, կայսրն աճապարեց Իտալիա մտաւ։ Աս անգամ Նէապոլիս իր դուները բացաւ զինքն ընդունեցաւ, եւ ուրիշ քաղաքներն ու Սիկիլիա կղզին ալ իրենք զիրենք հպատակելու պատրաստ ցուցընելով, կայսրը նոյն (1194) տարին Նոյեմբերի 30ին յաղթանակաւ Բալերմօ մտաւ։ Եւ թէպէտ Գուլիելմոս եւ իր մայրն իրենց իրաւունքէն հրաժարեցան՝ այսու թէութեամբ որ կայսրը Լեքքա ու Դարենդ քաղաքներն իրենց իշխանութեան տակ թողու. բայց կայսրն աս խնդիրքը չկատարելէն զատ՝ զիրենք պատժեց, բոլոր իրենց կողմնակիցներն ալ սպաննել տուաւ, եւ այսպէս իր իշխանութիւնը Սիկիլիայի տէրութեան մէջ ապահովցընելէն ետքը Գերմանիա դարձաւ։ Ետքէն Սիկիլիայի մէջ եղած ապստամբութիւնը Գերմանիայի քանի մը իշխանաց օգնութեամբը զսպեց, Կապուա ու Նէապոլիս քաղաքներուն պարիսպները կործանել ու երկրին մեծամեծներէն շատերը սպաննել տալով՝ խաղաղութիւնը հաստատեց։ Բայց յամի 1197ին Սիկիլիայի Մեսսինա քաղաքը գտնուած ատենը՝ ըստ հասարակ կարծեաց թունաւորուելով՝ մեռաւ ու Բալերմօ քաղաքը թաղուեցաւ։

Հենրիկոս Զ.ին իշխանութեան ժամանակը կարճ ըլլալուն ու Սիկիլիայի տէրութեան շփոթութիւնները զինքը բոլորովին զբաղեցընելուն, իր մտադրութիւնն ու հոգը Իտալիայի մնացած կողմերուն վրայ տարածելու ատեն չունեցաւ։ Ասոր համար Վերին Իտալիայի մէջ անիշխանութիւնն ու Կուէլփեան եւ Կիպելլեան կողմնակցութիւնները քանի մը մեծամեծաց առաջնորդութեամբը յառաջ կ՚երթային ու նորանոր խռովութիւններ կը հանէին։ Հենրիկոս Զ.ին որդւոյն ու յաջորդին, այսինքն Փրիդերիկոս Բ.ին (1209—1250) անչափահասութեան ատենը՝ Իննովկենտիոս Գ. (1198—1216) անոր խնա-

մնկալութիւնն ընելով, առիթ ունեցաւ Հռոմայի գահին՝ Բիբինոսէն սկսած մինչեւ Մաթիլտէ դքսուհւոյն պարգեւած երկիրներուն վրայ քահանայապետաց ստացած աշխարհական տէրութեան իրաւունքը հաստատելու եւ ապահովցընելու։ Իսկ Դոսկանայի ու առանձինն Փլորենտիայի մէջ այն երկու կողմնակցութեանց կռիւները այնչափ սաստկացան ու տարածեցան, որ Իտալիայի ուրիշ ամէն ազատ քաղաքներն ալ մէկ կամ մէկալ կողման հետ միաբանելով, խռովութիւններն ու կռիւները օրէ օր աւելի եւս կը բորբոքէին ու կը զայրանային, եւ շատ տարիներ Իտալիայի շատ կողմերը տակնուվրայ կ՚ընէին։ Աս միջոցներուն՝ Փրիդերիկոս Բ., իր հակառակորդին՝ Ոթոն (Դ.) կայսեր մեռնելովը, Գերմանիայի մէջ ապահովցած ու Գերմանիայի եւ Սիկիլիայի թագերն ու իշխանութիւններն իր վրայ ունենալով, բոլոր Իտալիա իր իշխանութեան տակն առնելու խորհուրդը մտքին մէջ հաստատելէն ետքը, Գոլոնիայի Ենգելբերտ Ա. արքեպիսկոպոսը Գերմանիայի մէջ իրեն փոխանորդն անուանեց, ու ինք յամի 1220ին Իտալիա գնաց։

Ի սկզբան Լոմբարտացիք իրեն գլուխ չծռեցին, չուզեցին Լոմբարտիայի թագաւորութեան Երկաթէ Պսակն իրեն տալ։ Փրիդերիկոս ատիկայ մեծ բանի մը տեղ չդնելով, շիտակ Հռոմ գնաց, ուր Ոնորիոս Գ. քահանայապետէն կայսրութեան թագով պսակուեցաւ. եւ շուտ մը իր ժառանգական թագաւորութեան երկիրը՝ Սիկիլիա անցաւ, անտեղաց գործքերը կարգի դնելու համար, ուր եւ նոր օրինաց գիրք մը յօրինել տուաւ ու (1224ին) Նէապոլսոյ մէջ համալսարան մը կանգնեց։ Ասկից ետքը Լոմբարտացիներուն իր կայսերական իշխանութիւնն ընդունել տալու համար հրաման հանեց՝ որ Գրեմոնա քաղաքն աւագաժողով մը գումարուի, ուր

Միլանցիներն ալ առանձինն հրաւիրեց: Բայց ասոնք չէ թէ միայն չհնազանդեցան ու ժողովի չեկան, հապա նա եւ (1226ին) Իտալիոյ ուրիշ քանի մը ազատ քաղաքներուն հետ յառաջուան Լոմբարտական դաշնակցութիւնը նորէն հաստատեցին, եւ կայսեր գերմանական զօրաց յառաջ քալելուն եւ անոր հետ միանալուն զէնքով կ'ընդդիմանային: Փրիդերիկոս ասոնց դէմ պատերազմի պատրաստուած ատենը՝ Հռոմայ քահանայապետին հրամանէն ստիպելով՝ հարկադրեցաւ Իտալիա թողուլ ու խաչակրաց գլուխն անցնելով (1229ին) Արեւելք ու Երուսաղէմ երթալ: Հոն քիչ ատենուան մէջ քանի մը յաղթութիւններ ու նոր կարգաւորութիւններ ընելէն ետքը, արտորնօք Իտալիա դարձաւ. իր հեռաւորութեան ատենը Սիկիլիոյ տէրութեան մէջ ելած խռովութիւնները զսպեց ու երկիրը հանդարտեցուց: Միայն Լոմբարտական դաշնակցութեան քաղաքները, մանաւանդ Միլան, Վենետիկ ու Պրեշիա, չէին ուզեր խաղաղիլ ու կայսեր հետ հաշտուիլ, մանաւանդ թէ անոր դէմ իրենց զէնքը գործածելով, անոր Հենրիկոս որդւոյն՝ Ռաւեննա քաղաքը կայսեր հրամանաւը գումարուած աւագաժողովին երթալու ճամբաները կը գոցէին: Ասոր վրայ Փրիդերիկոս զայրանալով՝ յամի 1234ին պատրաստեցաւ աս ապստամբ քաղաքներուն դէմ իր զօրութիւնը ցուցընել, բայց իր նոյն Հենրիկոս որդւոյն իրեն դէմ բռնած ընթացքովը մտադրութիւնն ու զօրութիւնը Գերմանիոյ վրայ դարձընելու ստիպելով, Իտալիոյ պատերազմն առ ժամն թողուց Գերմանիա գնաց, եւ զնոյն Հենրիկոս պատժելէն ետքը՝ զԿոնրատ երկրորդ որդին Հռոմայ թագաւոր անուանեց:

Ասոնք կատարելէն ետքը յամի 1236ին զօրաւոր բանակով մը Իտալիա մտաւ, ուր իրեն դաշնակից ըլլող

Կիպելլեան կողմնակցութեան զօրքն ալ իր զօրացը հետ միացընելով՝ ապստամբաց դէմ պատերազմի սկսաւ, եւ հետեւեալ տարին Նոյեմբերի 26—27ին Օլեոյ գետին քովերը Գորդէնուովայի մօտ փառաւոր յաղթութիւն մը տարաւ. որուն վրայ ամէն Լոմբարտական քաղաքները, Միլանէն, Պոլոնեայէն, Բիաչենցայէն ու Պրեշիայէն զատ, իրեն գլուխ ծռեցին ու հպատակեցան: Աս չորս քաղաքներն ալ ուզեցին կայսեր իշխանութիւնը ճանչնալ, բայց այնպիսի թէութիւններով, զորոնք կայսրը չուզելով ընդունել՝ անոնց դէմ պատերազմը շարունակեց: Երկայն ատեն այս յիշեալ քաղաքներուն ինչպէս նաեւ Բարմայի եւ Վերին Իտալիայի ուրիշ քանի մը քաղաքներուն դէմ սաստիկ պատերազմելով ու մէյ մը մէկ դին մէյ մը մէկալ դին յաջողութիւն ունենալով, թշնամութիւնները մինչեւ 1250 տեւեցին: Նոյն տարին կայսեր զէնքերը յաջողութիւն գտնելով, կ՚երեւար թէ վերջապէս պիտ՚որ յաղթէ. բայց Ֆիորենդինոյ քաղաքին մէջ կարճ հիւանդութենէ ետքը (Դեկտ. 13) մեռնելով, իր որդին Կոնրատոս Դ. իբրեւ կայսր ու Հռոմայի թագաւոր իրեն յաջորդեց (1250—1254): Ասիկայ Իտալիայի մէջ ծնած ըլլալով՝ նոյն երկրին մէջ իր հօրն ու պապերուն սկսած գործքը, այսինքն անոր վրայ կայսերական ու թագաւորական իշխանութիւնը բանեցընելու խորհուրդն ի գործ դնելու համար ամէն հնարք բանեցուց: Յամի 1251ին Իտալիա մտաւ, Սիկիլիայի տէրութեան մէջ Ապուլիա ու Նէապոլիս, որոնք նորէն ապստամբած էին, նուաճեց ու հանդարտեցուց (1253ին), բայց իր եկեղեցական ու աշխարհական թշնամիները Իտալիայի մէջ շատցած ու զօրացած ըլլալով, իր ու իրեն նախորդներուն խորհուրդը կատարելու համար երեք տարի ի զուր աշխատելէն ետքը՝ (1254ին) մեռաւ:

Ինչպէս մինչեւ նոյն ատեն՝ նոյնպէս անկից ետքն ալ մինչեւ 1259, Իտալիոյ այլ եւ այլ ազատ քաղաքներուն կամ պզտիկ հանրապետութիւններուն գլուխը՝ այլ եւ այլ իշխաններ անցնելով, առանձինն Կիպելլեանց ու Կուէլփեանց իրարու դէմ ըլլող թշնամութիւնները ամէն կերպ բռնութեանց նիւթ տալով, նոյն քաղաքներուն ազատութիւնն օրէ օր աւելի կը ճնշուէր ու կը կապուէր։ Ամէն դի բռնաւորներ գլուխ կը վերցընէին ու ժողովուրդները եւ հանրապետութիւններն իրենց կը ծառայեցընէին։ Նոյն իսկ յոխորտ ու անխոնարհելի Միլան քաղաքը՝ Լոմբարտիոյ մէկ մեծ մասովը՝ Տելլա Դորրէ (Դոռռան Եւ Դուռիանի) ազգատոհմին ժառանգական բաժինն եղաւ։ Միայն ծովեզերեայ հանրապետութիւնները (Գենուա, Վենետիկ,) ինչպէս նաեւ Փլորենտիա իրենց ազատութիւնը կրցան պահել։

Ըսածներնէս կը տեսնուի՝ որ Կոնրատոս Դ.ին մահուամբը Հոհենշդաուֆեան Գերմանական կայսրութեան վերջանալովը՝ նոյն ազգատոհմէն ըլլող կայսերաց Իտալիոյ տէրութիւնը ձեռք ձգելու համար ցուցըրած երկու հարիւր տարեկան (1056—1254) ջանքն առանց մնայուն հետեւութիւն մը ունենալու՝ Իտալիոյ համար բոլորովին դադրեցաւ, որով եւ Իտալիոյ անցից պատմութեան չորրորդ շրջանն ալ (1056—1059) կը գոցուի։

## Գ.

### Հոհենշտաուֆեան կայսերական ազգատոհմին իշխանութեան վերջանալէն մինչեւ Իտալիայի նոր տէրութեանց կազմուիլը ։

### 1259—1539.

Իտալիայի պատմութեան Հինգերորդ Շրջանին սկիզբը նշանաւոր է Հոհենշտաուֆեան ցեղէն Կոնրատոս Դ.ին որդւոյն Կոնրատինին (Կոնրատինոս) կամ Կոնրատոս Ե.ին Մանֆրետ հօրեղբօրը իր աս եղբօրորդւին Սիկիլիայի գահը նստեցնելու ջանքը։ Կոնրատոս Դ.ին մահուընէ ետքը Հռոմայի քահանայապետը իբրեւ աւատատէր վերին իշխան Սիկիլիայի թագաւորութեան՝ չուզելով որ Հոհենշտաուֆեան ազգատոհմն իր իշխանութիւնը նոյն գահին վրայ շարունակէ, ամենայն կերպիւ ջանաց Գաղղիայի Ս. Լուդովիկոս թագաւորին եղբայրը Անժուի Կարոլոս իշխանը հաւանեցընել որ նոյն գահը թագաւոր նստի։ Կարոլոս՝ իր եղբօրը Ս. Լուդովիկոսին կամացը դէմ, որն որ աս նոր իշխանութիւնն իր եղբօրն ու իր տան համար շատ պատուաւոր բարձրութիւն մը չէր սեպեր, իրեն մատուցուած թագն ընդունեցաւ. յամի 1265ին մեծ բազմութեամբ Գաղղիացւոց Իտալիա անցաւ ու շիտակ Հռոմ գնաց։ Հոն քահանայապետին առջեւը՝ աւատաւոր իշխանի մը սովորական ըլլող հաւատարմութեան երդումն ընելէն ետքը՝ Սիկիլիայի ու Ապուլիայի աւատային իշխանութիւնն ու թագն ընդունեցաւ, խոստանալով որ տարուէ տարի՝ իբր աւատական տուրք՝ քահանայապետին 800 ունկի ոսկի վճարէ։ Նոյն ատեն Իտալիայի մէջ Կուէլփեանց ու Կիպելլեանց կողմնակցութիւնները նորէն գլուխ վերցուցին, առջինները Կարոլոսին ու Գաղղիացւոց

կողմը կը բանէին, իսկ եպքինները՝ անոնց հակառակորդ-
ներն էին։ Մանֆրէտ իշխանը իր Կոնրատին եղբօրորդւոյն
իրաւունքը պաշտպանելու համար Կարոլոսին դէմ զէնք
առաւ, բայց Սպանիայէն յուսացած զօրքն ատենին չհաս-
նելով ու փոփոխամիտ Իտալացիք ալ՝ որոնք ի սկզբան
իր կողմը կը բանէին, զէնքը մինակ թող տալով, յաղ-
թուեցաւ ու պատերազմի դաշտին վրայ ինկաւ․ ուստի եւ
Կարոլոս ալ կողմանէ ազատելով, ընդունած նոր գահն
եղաւ իրր Սիկիլիայի ու Ապուլիայի թագաւոր։ Բայց իր
Գաղղիացիներուն խորհրդովը ու գործակցութեամբն
այնպիսի խիստ ու բռնաւորական կառավարութիւն մը
սկսաւ ընել, որ իր վրայ եղած դժգոհութիւնը քիչ ա-
տենէն բոլոր երկրին մէջ ընդհանուր տարածուեցաւ։
Վերջապէս բաներն ան աստիճանի հասան՝ որ ամէն հպա-
տակները կը փափագէին նորէն Գերմանացւոց կայսեր
իշխանութեան տակ մտնել, եւ որովհետեւ կայսերական
կողմն ըլլող Գիպելլեանց կողմնակցութիւնը բաւական զօ-
րութիւն ունէր, անոր համար Կոնրատինին գաղտուկ
դեսպաններ խաւրեցին՝ որ գայ իր հօրը գահը նորէն
ժառանգէ, որուն համար իրենց կողմանէ ամէն կերպ օգ-
նութիւն կը խոստանային։ Խեղճ Կոնրատին փութաց
ալ հրաւերին հետեւելու․ շուտ մը 10,000 զօրքով
1267ին Իտալիա անցաւ։ Իրեն ընկերացաւ իր մտերիմ
բարեկամը Փրիդերիկոս Պատենի իշխանը, եւ յաջողու-
թեամբ մտան Նէապոլսոյ երկիրը։ Հոն Կարոլոս թա-
գաւորն իր զօրքովը անոնց դէմ պատերազմի ելաւ ու ի-
րենց յաղթեց։ Կոնրատին իր քանի մը երեւելի բարե-
կամներովը հազիւ կրցաւ թշնամւոյն ձեռքէն փախչիլ ու
ասդին անդին պահուըտելով՝ կը ջանար Գերմանիա անց-
նիլ։ Բայց մատնութեամբ ինքն ալ Փրիդերիկոս իշխանն
ալ անգութ Կարոլոսին ձեռքն ինկան, որն որ ոչ ազգաց

իրաւանց ու ոչ մեծամեծներուն աղաչանացը նկատում ընելով, երկուքին գլուխն ալ կտրել տուաւ։

Կարոլոս ու իր Գաղղիացիները անկէց ետքն ալ իրենց բռնաւորական ընթացքը չփոխեցին. որով եւ Սիկիլիացիները երթալով աւելի եւս անոնց դէմ կը կատղէին։ Քիչ ատենուան մէջ թշնամութիւնն այն աստիճանի հասաւ, որ բոլոր Սիկիլիայի ժողովուրդն իրենց բռնաւորներէն վրէժ առնելու խորհուրդներ մտածել սկսան, որ եւ վերջապէս սոսկալի կոտորածով մը կատարեցաւ։ Յամի 1282ին զատկի իրիկունը Բալերմոյ քաղաքին ժողովուրդը երեկոյեան ժամին ատենը զբօսանաց համար քաղքին դրան առջեւը ժողովեցան, որոնց հետ Գաղղիացիք ալ խառնուած ըլլալով, առանձնական դէպքէ մը կռիւ փրթաւ։ Մէկ քանի հոգի լիրբ Գաղղիացւոյ մը մէկ անկարգ գործքէն գրգռելով, զէնքը զարկին մեռցուցին։ Նոյն վայրկենին հազարաւոր Սիկիլիացիք իրենց դաշոյններովը Գաղղիացւոց վրայ թափեցան ու անխնայ կը սպաննէին. անանկ որ անոնց մէջէն ոչ կին մը եւ ոչ տղայ մը աս կոտորածէն կրցաւ ազատիլ։ Չէ թէ միայն Բալերմոյ, հապա բոլոր Սիկիլիա կղզւոյն այլ եւ այլ քաղաքները՝ ուր աս կոտորածին լուրը կը հասնէր, ամէն Գաղղիացիք Սիկիլիացի դաշոյններուն ու սրերուն կը հանդիպէին. միայն Գադանա քաղաքին մէջ՝ 8000, իսկ Մեսսինայի մէջ 3000 Գաղղիացիք՝ ինչպէս նաեւ փոխարքան ալ սպաննուեցան։ Աս սոսկալի կոտորածը Պատմութեանց մէջ Սիկիլիոյ երեկոյեան պաշտօն (Vêpres Siciliennes) անուամբ նշանաւոր եղած է։ Կարոլոս թագաւորը Սիկիլիացիներէն վրէժ առնելու համար իր զօրքովը Մեսսինա քաղաքը պաշարեց։ Բայց Արակոնիայի Պետրոս թագաւորը, որն որ Սիկիլիացի փախստական ազնուականի մը օգնութեամբը Սիկիլիայի գահը ժառան-

գելու մտօք նոյն ատենները իր նաւերովը ու զօրքովը այն կողմերը կը գտնուէր, Մեսսինացւոց օգնութեան աճապարեց: Կարոլոս չկրնալով այնչափ թշնամեաց դէմ դնել, արտորնօք Նէապոլիս դարձաւ, եւ իր իշխանութիւնը միայն Նէապոլսոյ տէրութեան վրայ կրցաւ պահել. իսկ Սիկիլիա կղզւոյն վրայ Արագոնիայի տիրող ցեղէն Թագաւոր նստեցաւ, եւ Հռոմայ քահանայապետներն ալ քանի մը տարի աս բանիս հակառակելէն ետքը՝ վերջապէս լռեցին: — Աս խռովութիւններն ու պատերազմները Ստորին Իտալիոյ, այսինքն Նէապոլսոյ ու Սիկիլիոյ մէջ, Գաղղիացւոց ու Արագոնացւոց մէջ երկայն ատեն շարունակելէն զատ, նաեւ բուն Գաղղիոյ ու Սպանիոյ տէրութիւններն ալ դեռեցիկ երկիրներուն իշխանութիւնն իրենց ձեռքը բերելու համար, նորանոր կռիւներ, վէճեր ու պատերազմներ կը յարուցանէին:

Միջին Իտալիոյ մէջ Հռոմայ քահանայապետաց աշխարհական իշխանութիւնն օրէ օր աւելի մեծ հակառակութիւններու կը հանդիպէր: Աս մասին՝ բայց առաւելապէս Վերին Իտալիոյ մէջ, գերմանական կայսերաց ուժը կոտրելէն ետքը՝ զանազան կողմեր հետզհետէ պզտիկ պզտիկ Հասարակապետութիւններ կազմուած էին: Ասոնցմէ մէկ քանին, մանաւանդ Գենուա, Վենետիկ ու Բիզա իրենց վաճառականութեամբը շատ հարստացան ու զօրացան: Ամենէն աւելի Գենուայի հասարակապետութիւնն իր ուժն ու ծովու վրայ ունեցած յաջողակութիւնը կը ցուցընէր, եւ առանձինն իբրեւ միւս երկու հասարակապետութեանց նախանձորդն ու հակառակորդը՝ ամէն առթի մէջ անոնց զօրութիւնն ու ազդեցութիւնը նուազեցընելու կը ջանար: Աս պատճառաւ յամի 1261ին՝ երբոր Միքայէլ Ը. Պալէոլոկ բիւզանդեան կայսրը՝ Կոստանդնուպոլիս Վենետացւոց ձեռքէն առ-

նելու համար պատերազմի կը պատրաստուէր, Գենուա-ցիք իրենց նաւերովն ու զօրքովը անոր օգնութեան հասնին, Վենետացւոց յաղթեցին, մայրաքաղաքն առին, կայսեր յանձնեցին։ Ասկից ետքը յամի 1284ին նոյն Գենուացիք Բիզայի հասարակապետութեան ծովային զօրութիւնը բոլորովին խորտակելով, ու 1298ին Վե-նետկոյ հասարակապետութեան նաւերուն ու զօրաց վրայ մեծ յաղթութիւն մ'ալ ընելով, բոլոր Միջերկրական ծովուն վրայ գրեթէ միակ տիրող եղան։ — Փլորենտի-այի հասարակապետութիւնը յամի 1282ին ազնուակա-նաց դէմ մեծ յաղթութիւն մը ընելով, ռամկապետա-կան իշխանութիւնը հաստատեց, եւ նոյն ատեն հոն Կուելփեանց կողմնակցութիւնը թէպէտ եւ քանի մը բարեկարգութիւններ ընելով՝ օրէ օր աւելի կը զօրանար ու կը հաստատուէր, բայց իր մէջը նոր երկպառակու-թիւններ ելլելով՝ բոլոր կողմնակցութիւնը երկու կու-սակցութեան բաժնուեցաւ. աս կուսակցութեանց մէկը՝ Սեւ, մէկալը՝ Ճերմակ անուանեցաւ. որոնց վէճերն ու կռիւները խել մը ատեն զայրանալէն ետքը՝ վերջապէս Ճերմակներուն յաղթուելովն ու հալածուելովը հանդար-տութիւն եղաւ։

Լոմբարտիայի մէջ գրեթէ քայլ առ քայլ իսպառ շիջանելու մօտիկցող ազատութիւնը հեղ մ'ալ իր գլու-խը վերցընելու պէս կ'երեւար։ Յամի 1302—6 Լոմ-բարտական քաղաքներուն շատին ժողովուրդները՝ իրենց գլուխ ելլող բռնաւորներուն իրարու դէմ ըրած անվեր-ջանալի պատերազմներէն ձանձրանալով՝ ոտք ելան ու զանոնք վռնտեցին։ Հազիւ թէ ասոնք պակսեցան՝ մէյ մ'ալ Հենրիկոս Է. Գերմանիայի կայսրը (1308—1313) փորձ փորձել ուզեց, Իտալիայի մէջ խել մը տարիներէ առաջ շիջած կայսերական իշխանութիւնը նորէն հաս-

տանելու։ Թէպէտ եւ իր արշաւանաց սկիզբները քանի մը յաղթութիւններ բրաւ ու իր խորհուրդը կատարելու յաջողութիւն գտնելու պէս կ'երեւար, որովհետեւ Լոմբարտիայի քաղաքները նուաճելէն ետքը՝ յամի 1311ին Լոմբարտական երկաթի թագով պսակուեցաւ, եւ յաջորդ տարին ալ Հռոմ գնաց՝ քահանայապետին ձեռքէն կայսերական օծութիւնն ու թագն ընդունեցաւ. ի վերայ այսր ամենայնի իր յաղթութիւնները կարծածին եւ յուսացածին պէս յառաջ չգացին։ Բոլոր Իտալիայի թագաւորութիւնը ձեռք ձգելու խորհուրդը պարապի հանելու ամենէն աւելի Փլորենտիայի հասարակապետութեան հաստատուն ջանքն օգնեց։ Աս քաղաքը նոյն ատենները Իտալիայի մէջ ան զօրութիւնն ու ազդեցութիւնն ունէր, զորն որ քանի մը տարի առաջ Միլան ունեցեր էր. եւ իր հասարակապետական կարգաւորեալ միութեամբն ու իշխանութեամբը մասնաւոր զօրութիւն մը բանեցընելով, (Վերին Իտալիայի ազատ քաղաքները իրենց բռնաւոր գլուխներուն լծոյն տակ ընկճած ատեննին,) նոյն հասարակապետութիւնն ամէն հնարքներով կ'աշխատէր որ Իտալիայի եւ ո՛չ մէկ մասին մէջ միապետական իշխանութիւն հաստատուի։

Վերին Իտալիայի ազատ քաղաքներուն կամ վիճակներուն մէջ՝ ինչպէս ըսինք՝ իրենց գլուխ ըլլող բռնաւոր անձանց կամ դերդաստաններու մէջ խռովութիւնք անդադար կը շարունակէին։ Ասոնք մէկը մէկալին իշխանութեան դէմ կռուելով, իրար կը վռնտէին, կը մեռցընէին ու իշխանութիւնը մէկը մէկալէն իրեն ու իր տոհմին կամ դերդաստանին ձեռքը կը ձգէր։ Բիզա քաղաքը, որն որ բոլորովին Կիպելլեանց կողմնակցութեան հետ միացած էր, Հենրիկոս Է. կայսեր մահուընէ ետքը՝ 1314ին Ուկուչչոնէ տելլա Ֆաճճուոլա դերդաստանին

իշխանաց ձեռքն անցաւ. Լուքքա քաղաքին վրայ 1316էն Գասդրուչչօ Գասդրագանի տոհմն իշխել սկսաւ։ Բադուա՝ 1318ին Գարրարա տոհմին ձեռքն ինկաւ. Աղեքսանդրիա, ինչպէս նաեւ 1315ին Դորդոնա ու 1322ին Գրեմոնա քաղաքները, Միլանցի Վիսգոնդի գերդաստանին հպատակեցան։ Մանդուա, ուր 1275էն սկսեալ՝ Պոնաքոսսի տոհմը կ'իշխէր, 1328ին Կոնցակայ գերդաստանին ձեռքն անցաւ։ Ֆերրարայի մէջ Էսդէ գերդաստանը շատ տարիներ մեծամեծ հակառակութիւններ կրելէն ետքը՝ վերջապէս 1317ին գլխաւոր իշխանութիւնը ձեռք անցուց։ Ռաւեննայի մէջ 1273էն սկսեալ՝ Բոլենդա գերդաստանն իր պէսպէս հնարքներովը ստացած իշխանութիւնը ձեռքը կը բռնէր։ Վերոնայի ու անոր մօտ ըլլող քանի մը քաղաքներուն մէջ երեքտասաներորդ դարուն սկիզբէն (1200) վեր Սքալա տոհմը կ'իշխէր. Պոլոնեայի վրայ 1335էն սկսեալ՝ Բեբոլի գերդաստանը կը տիրէր։ Իսկ մնացած ազատ կամ հասարակապետական քաղաքներուն վրայ ուրիշ իշխաններ կը բռնանային, եւ սոնց վիճակն այնչափ աւելի աղէտալի ու անտանելի կ'ըլլար, որչափ որ նոր տիրողներ կամ բռնաւորներ իրարու դէմ գլուխ վերցընելով ու քաղաքացիքը մէկուն կամ մէկալին կողմը խոնարհելու ստիպելով, իրարու հետ կը կռուէին, մէկզմէկ կը ջարդէին։

Այս կողմերը նոյն աղէտալի շփոթութիւնները շարունակած ատենը, Ստորին Իտալիայի մէջ ալ Նէապոլսոյ Ռոբերդոս թագաւորը, զոր որ Հռոմայի քահանայապետն Իտալիայի թագաւորութեան փոխանորդ կամ փոխարքայ անուանած էր, կը ջանար իր իշխանութիւնը տարածել ու մեծցընել։ Բայց չէ թէ միայն վերը յիշուած քաղաքներուն պզտիկ պզտիկ իշխանները Ռոբերդոսին այս ջանքերուն յաջողելուն արգելք ու խափանիչ

կ՚ըլլային. հապա նաեւ ուրիշ դիմաց իրեն դէմ նոր հակառակորդ մ՚ալ ելաւ: Լուդովիկոս Դ. Գերմանական կայսրը (1314—1347) յամի 1327ին յանկարծ Իտալիա մտաւ, Միլանի մէջ Իտալիայի թագաւորութեան թագով պսակուեցաւ, անկից Հռոմ անցաւ՝ Հռոմէական կայսրութեան թագն ընդունեցաւ ու սկսաւ Սիկիլիայի տէրութեան նաւատորմիղովը Փլորենտիայի հասարակապետութեան ու Նէապոլսոյ թագաւորին դէմ պատերազմիլ, միանգամայն Կուէլփեանց ուժը տկարացընելու աշխատիլ: Սակայն ինք աս պատերազմին մէջ գտնուած ատենը՝ Հռոմայի մէջ մեծ ապստամբութիւն մը ելլելով ու Իտալիայի ուրիշ կողմերն իրեն դէմ այլ եւ այլ վտանգաւոր շարժումներ սկսելով, միանգամայն իր զօրաց թիւն ալ մահացու հիւանդութիւններէն քիչցած ըլլալով, ստիպեցաւ սկսած գործքն ու պատերազմը թող տալ, 1330ին Գերմանիա դառնալ: Իր Իտալիա մտնելուն մի միայն օգտակար հետեւութիւնն ան եղաւ՝ որ Կուէլփեանց ու Կիպելլեանց կողմնակցութիւնները հասարակաց ազատութեան շահը յառաջ տանելու համար՝ իրարու քիչ մը մօտեցան, այսինքն իրենց սաստիկ կռիւները դադրեցուցին:

Հազիւ թէ Լուդովիկոս Դ. կայսրն Իտալիայէն ելած էր, նոյն (1330) տարին Պոհեմիացւոց Յովհաննէս թագաւորը, որուն նոյն Լուդովիկոս Իտալիայի թագաւորութեան փոխանորդութիւնը տուած էր, յանկարծակի իր զօրքովն Իտալիա մտաւ: Պրեշիացիք, որոնք զինքը գաղտուկ հրաւիրած էին, անոր մեծ ընդունելութիւն ըրին, սոյնպէս Հռոմայի քահանայապետն անոր գալուն վրայ իր հաճութիւնը յայտնեց. Լուքքացիք ալ զինքն իրենց գլուխ ընտրեցին: Յովհաննէս այսպիսի ընդունելութիւն գտնելով, կը ջանար իբրեւ միջնորդ ու խա-

ղաղաբար՝ երկրին այլ եւ այլ կողմանց խռովութիւնները դադրեցընել, ու անով բոլոր Իտալիոյ թագաւորութիւնն իր ձեռքը անցընել։ Եւ դուցէ իր սա ջանքը կըրնար յաջող ելք ունենալ, թէ որ Փլորենտացիք, Միլանի իշխողներէն Մասդինոյ տելլա Սքալա ու Նէապոլսոյ Ռոբերդոս թագաւորն իրեն դէմ ելլելով իր ամէն ջանքը պարապի չհանէին։ Բայց թէպէտ եւ սա հակառակ կողմանք Յովհաննէս թագաւորին ջանից դէմ իրենց խորհուրդը յաջողցուցին ու զինքը վռընտեցին. սակայն անկէց ետքը նոյն Մասդինոյ՝ որն որ Լոմբարտիոյ ու Լուքքայի կէսին վրայ կը տիրէր, սկսաւ բոլոր Լոմբարտիոյ ազատութիւնք նուաճել ամէն դի բռնանալ։ Փլորենտիա պարտաւորեցաւ քանի մը ազատ քաղաքներ իրեն հետ միացընելով՝ Մասդինոյին դէմ դաշնակցութեան պատերազմ մը սկսիլ. որուն վախճանն ուրիշ բան չեղաւ՝ բայց եթէ ամէն մէկ հասարակապետական քաղաքներուն ազատութիւնն ըստ մասին ապահովցընել։

Սա միջոցին՝ Հռոմայի մէջ խռովութիւններն ու երկպառակութիւնք կը շատնային, մանաւանդ 1347էն սկսեալ՝ Կոլա Ռիէնցի տաքգլուխ իրաւագիտի մը գըրգռելովը, որն որ կը ջանար Հռոմայի մէջ հասարակապետական կառավարութիւն հաստատել։ Թէպէտ եւ սա մարդն իր զօրաւոր խօսքերովը ժողովուրդը ոտք հանեց, ազնուականները Հռոմայէն հալածեց, ու ռամկապետական իշխանութիւնը յառաջ կը տանէր. սակայն քանի մը ամիս ետքը ազնուականները զօրանալով՝ զինքը ստիպեցին Հռոմայէն փախչելու։ Բայց սով ալ սկսած խռովութիւններն ու կռիւները չվերջացան. մանաւանդ որ քանի մը քահանայապետներ Կղեմէս Ե.էն սկսեալ մինչեւ Գրիգոր Թ. եօթանասուն տարիի չափ (1309—1377) իրարու ետեւէ Գաղղիոյ Աւինեոն քաղաքը կը

նաւէին, Հռոմ չէին կրնար երթալ. որով Հռոմայի մեծերն աւելի եւս առիթ կը գտնէին սորին ժողովրդեան հետ գժտելու եւ կռուելու։ —

Ինչպէս ուրիշ քանի մը հասարակապետութիւններու, նոյնպէս առանձինն Գենուայինին մէջ քանի մը Սպինոլեան ու Կուէլֆեան ազգատոհմներու կամ գերդաստաններու իրարու դէմ գլխաւոր իշխանութեան համար հանած ու արծարծած շփոթութիւններն ու կռիւները Գենուացւոց բոլոր հանգիստն ու գործքերուն յառաջադիմութիւնը տակն ու վրայ կ'ընէին։ Մանաւորապէս Սպինոլեան կողմնակցութեան դին ըլլող Սպինոլա ու Տորիա ազգատոհմներուն եւ Կուէլֆեանց կողմն ըլլող Կրիմալտի ու Ֆիէսքի ազգատոհմներուն վէճերն ու կագերը ժողովուրդը վերջին աստիճանի կատաղցընելով, զանիկայ ստիպեցին յամի 1339ին աս գերդաստաններն իրենց երկիրներէն վռնտելու եւ իրենց առաջին Դուքսը (Տոժէ) Սիմոն Պոքքանեկրա՝ հասարակապետութեան գլուխ դնելու. որով եւ Գենուայի դքսական (Տոժի) իշխանութեան սկիզբ եղաւ, որուն դուքսն ի սկզբան բոլոր կենաց համար կ'ընտրուէր, բայց իրր երկու դար ետքը (1528ին) նոր սահմանադրութեամբ մը իր իշխանութեան ժամանակը միայն երկու տարւոյ կոպարաւորեցաւ։

Աս քաղաքային շփոթութեանց պատճառաւ միշտ նեղութեանց ու տառապանաց մէջ գտնուող խեղճ Իտալացւոց ուրիշ աւելի ծանր ու սոսկալի աղէտներ եկան հասան։ 1347էն սկսած արտաքոյ կարգի մեծ սով մը ամէն դի թշուառութիւնը տարածած ատենը՝ յաջորդ 1348 տարիէն սկսեալ աւելի եւս սոսկալի արկած մը, այսինքն Սեւ մահ ըսուած զարհուրելի ժանտախտը բոլոր երկրին մէջ տարածուելով, բնակչաց երեք մասին երկուքը կոտրեց մեռցուց։ Աս աղէտներն ալ բաւական չըլլա-

լով՝ դարձեալ քաղաքային ժանտ մը երկիրը կը տառապեցընէր․ այսինքն՝ այլ եւ այլ կողմնակցութեանց պատերազմները դադրելէն ու քիչ մը ատեն խաղաղութիւն ըլլալէն ետքը՝ մէկ կամ մէկալ ազնուականը, եղած կարգաւորութեանց վրայ գոհ չըլլալով, գլուխը խել մը սրիկաներ՝ իբր վարձկան զօրք կը ժողվէր, ու այլ եւ այլ աւազակաց գնդեր կազմելով՝ ամէն դի աւազակութեամբ կ՚ասպատակէր, կը կողոպտէր, կ՚այրէր, կ՚աւրէր ու բռնական հարկահանութեամբ ակարները կը տառապեցընէր։ Այս աւազակախումբ գնդերուն մէջ նշանաւոր եղան 1348ին Վեռներ կոմսին ձեռաց տակն ըլլող սրիկայից խումբը, ու 1354ին Մոնրէալ ասպետին առաջնորդութեան հպատակող գունդը։

Այսպէս բոլոր Իտալիա, կայսերական իշխանութիւնն իր վրայէն բոլորովին վերցուելէն ետքը, չորեքտասաներորդ ու հնգետասաներորդ դարերուն մէջ տարէ տարի նոր ու մեծ մեծ խռովութեանց ասպարէզ ըլլալով, կ՚անշքանար, կը տկարանար ու կ՚աւրուէր։ Զարմանալին ան է՝ որ բոլոր երկիրն այսպէս ըստ քաղաքային կարգաց քայքայելու եւ այսպիսի անիշխանութեան մէջ ամէն բարոյական կապերն ու կարգերը թուլնալու եւ քակուելու ժամանակը՝ արհեստները, ճարտարութիւնը, գիտութիւններն ու վաճառականութիւնը չէ թէ միայն չէին խափանուեր, հապա կը ծաղկէին ու յառաջադէմ կ՚ըլլային։

Որչափ որ ընդհանուր անիշխանութիւնը կամ քանի մը ազնուական ազգատոհմներու բռնաւորական իշխանութեան անկարգութիւնները բոլոր երկրին մէջ երկպառակութիւնն ընդհանուր տարածած էին․ ի վերայ այսր ամենայնի այլ եւ այլ կողմնակցութեանց մէջ հինգ գլխաւոր ու իբր հաստատուն միջակէտեր կամ ամուր

դաշնակցութիւններ կային, որոնց մէկուն կամ մէկալին առաջնորդութեան տակ ուրիշ կողմնակցութիւնները կերպով մը կը կառավարուէին։ Այս հինգ գլխաւոր կետերն էին՝ Սաւոյին Իտալիա, քահանայապետին երկիրը, Տոսկանայի երկիրը կամ Փլորենտիայի հասարակապետութիւնը, Միլան՝ Վիսգոնդի ազդատոհմին տակ ու Վենետիկ, որոնց ամէն մէկն իր ջանից ու նպատակներուն համեմատ նոր ու սեպհական կարգերով կամ հնարքներով իր իշխանութեան տակ ունեցած երկիրները պահելու եւ կառավարելու կ'աշխատէր։

Ասոնց այսպէս Իտալիայի այլեւայլ կողմանց վրայ իշխած ատենը՝ Կարոլոս Դ. Գերմանիայի կայսրը (1346—1378) վերը յիշուած Պոհեմիայի Յովհաննէս թագաւորին որդին՝ Լուդովիկոս Դ. կայսեր նոյն Յովհաննեսին տուած Իտալիայի փոխարքայութեան իրաւանց համեմատ գործելու ձեռք զարնելով, սկսաւ փորձ փորձել՝ կայսերական իշխանութիւնը Իտալիայի մէջ նորոգելու եւ հաստատելու։ Յամի 1354ին զօրքով Իտալիա մտաւ, յառաջ գնաց ու քիչ ժամանակուան մէջ բոլոր Տոսկանայի երկիրը նուաճեց։ Բայց իր այս յաղթութեան արդիւնքը երկարատեւ չեղաւ, որովհետեւ նոյն երկրին Սիէնա ու Բիզա քաղաքներուն բնակչաց՝ իրենց ազատութեան համար ցուցըցած ջանքովը՝ կայսեր ամէն ըրածները քիչ մը ետքը պարապի ելան ոչնչացան։ Յաջորդ տարին՝ Վիսգոնդի գերդաստանին Լոմբարտիայի մէջ գրաւած իշխանութիւնը կամայ կամ ակամայ հաստատելէն ետքը՝ Միլանի մէջ Լոմբարտիայի թագաւորութեան երկաթի թագովը, ետքն ալ Հռոմայի մէջ (իրմէ խնդրուած երդումներն ընելէն վերջը) կայսերական թագով (քահանայապետին փոխանորդութիւնն ընող Պերդրանտ կարդինալէն) պսակուեցաւ։ Սակայն մէկ կողմանէ ինք Իտա-

լացուց ըրած խոստմանց վրայ հաստատ չկենալուն՝ անոնց ատելի ըլլալով, միւս կողմանէ ալ Կուէլփեանց ու Կիպելլեանց թշնամութիւններէն սպառուելով՝ հազիւ իր կենաց դէմ դրուած դարաններէն պրծաւ ու 1356ին Գերմանիա դարձաւ։ Բայց Վիսգոնդի գերդաստանին իշխաններուն Իտալիայի մէջ ըրած բռնաւորութիւններն ու առանձինն եկեղեցւոյ դէմ բանեցուցած սոսկալի եղեռնագործութիւնները քանի մը տարի ետքը պարտաւորեցին Ուրբանոս Դ. քահանայապետը (որուն նախորդին Իննովկենտիոս Զ.ին ատենը բոլոր եկեղեցւոյ կամ քահանայապետին երկիրները բռնաւորներուն ու ապստամբներուն ձեռքէն ազատած էին) նոյն կայսեր դիմել ու անոր աղաչել որ Իտալիա մտնէ ու նոյն բռնաւորները զսպէ։ Կարոլոս Դ. սա աղաչանքն ընդունելով՝ յամի 1368ին առաջուընէ աւելի զօրաւոր բանակով մը երկրորդ անգամ Իտալիա արշաւեց։ Վիսգոնդի իշխանները կայսեր զօրութենէն վախնալով՝ իրեն աղաչեցին որ խաղաղութիւն ընէ, խոստանալով որ տուգանքի համար իրենցմէ պահանջած ստակը կը վճարեն։ Կայսրն անոնց աղաչանաց զիջաւ, եւ չէ թէ միայն անոնցմէ առած ստակով, հապա նաեւ Իտալիայի ուրիշ տեղերէն՝ կէս մը իբրեւ ըրած ապստամբութիւններնուն տոյժն ու կէս մը իբրեւ պարգեւ՝ ժողված գանձով հարուստցած՝ Գերմանիա դարձաւ։ Բայց Իտալիայէն ելլելէն առաջ՝ Հռոմ իր չորրորդ ամուսինն ալ իբրեւ կայսրուհի Հռոմայեցւոց պսակել տուաւ։

Թէպէտ եւ կայսեր Իտալիա գալովը՝ Հռոմայի իշխանութեան երկիրները հանդարտած էին, բայց անոր Գերմանիա դառնալէն ետքը՝ նոյն երկրին այլեւայլ գաւառներուն ու քաղաքներուն կուսակալաց (Legati) ըրած խիստ կառավարութեան ու բանեցուցած խրտեցուցիչ

միջոցներուն պատճառաւ շատ քաղաքներու բնակիչքը յոգիս ապստամբած՝ նորէն ապստամբեցան, եւ Փլորենտիայի Հասարակապետութենէն օգնութիւն գտնելով՝ յամի 1370ին ամէնքն ալ քահանայապետաց իշխանութենէն իրենք զիրենք ազատ ըրին, որով եւ շատ ատեն իրենց կամ մանաւանդ իրենց վրայ տիրող պզտիկ իշխաններուն իշխանութիւնն անկախ յառաջ գնաց։

Աս տեղերէն աւելի՝ Վերին Իտալիայի մէջ Վիսգոնդի գերդաստանին իշխաններուն նոր նոր վիճակներու եւ քաղաքներու վրայ բռնանալու եւ նոր տեղեր իրենց ձեռքն անցընելու ջանքն ու աս վախճանաւ ըրած պատերազմներն ու պատճառած կոտորածները՝ գրեթէ բոլոր Իտալիայի բնակիչները կը գրգռէին ամենայն զօրութեամբ անոնց դէմ կռուելու եւ անոնց լծէն ազատ ըլլալու։ Արդէն 1353ին Գենուայի Հասարակապետութիւնը քանի մը փորձերէն ետքը զՅովհ. Վիսգոնդի իրեն գլուխ ճանչնալու պարտաւորուած էր։ Բայց նոյն բռնաւորին Տոսկանայի երկիրը ձեռք ձգելու համար ցուցըցած ամէն ջանքերը՝ նոյն երկրին քանի մը Հասարակապետութեանց միաբան ու հաստատութեամբ իրեն դէմ ելլելովը՝ պարապի ելան։ Նոյն Յ. Վիսգոնդիին դէմ Վենետիկցիք Լոմբարտիայի քանի մը պզտիկ տիրապետներուն հետ միացած՝ յամի 1354ին դաշնակցութիւն մը կազմեցին, եւ շատ տարիներ շատ ու արիւնահեղ պատերազմներ ընելէն ետքը, երբ որ ոչ մէկ կողմն ու ոչ մէկալ կողմը կատարեալ յաղթութիւն մը կրցաւ տանիլ եւ թշնամւոյն զօրութիւնը կոտրել, իրարու դէմ պատերազմելէն ետ կեցան. սկսան Վենետիկցիք եւ իրենց դաշնակից ըլլող Լոմբարտացիք ալ Վիսգոնդիներուն պէս իրենց իշխանութեան սահմանները նոր տեղեր նուաճելով ընդարձակել։

Յամի 1395ին Ճանկալէցցոյ Վիսգոնդի Վենկեսլաւոս կայսրէն (1378—1400), 100,000 ոսկի դրամ վճարելով՝ Միլանի վրայ աւատային դուքս դրուեցաւ. եւ կամաց կամաց զօրանալով՝ 1399ին Սիէնայի հասարակապետութիւնը, իսկ 1400ին Բերուճիա ու Պոլոնեա նուաճեց, իր իշխանութեան տակ առաւ. միայն Փլորենտիա շատ մեծ դժուարութիւններու յաղթելով՝ կարող եղաւ նոյն բռնաւորին ջանից դէմ կենալ ու իր ազատութիւնը պահել: Ճանկալէցցոյ 1402ին մեռնելէն ետքը՝ իր որդւոյն անչափահասութեան ատենը իր նուաճած ու գրաւած երկիրներուն մեծ մասն իր իշխանութեան տակէն ելաւ:

Նոյն ատենները Նէապոլսոյ Լատիսլաւոս կամ Լանսըլոյ թագաւորը՝ Հռոմայի քահանայապետաց իշխանութեան նկատմամբ քանի մը տարիէ ի վեր (1378—1417) տիրող շփոթութիւնները, որոնք Մեծ հերձուած անուամբ պատմութեանց մէջ հռչակուած են, ինչպէս նաեւ Հռոմայի մէջ զայրացող Կուէլփեանց ու Կիպելլեանց վէճերն իրեն յարմար առիթ գտնելով, 1407ին յանկարծ հասաւ ու Հռոմ մտաւ. քանի մը տարի կռուելէն ետքն ալ 1409ին բոլոր Հռոմայի տէրութեան երկիրները գրաւեց: Ասոր դէմ ալ միայն Փլորենտիայի հասարակապետութիւնը կարող եղաւ իր զօրութիւնը բանեցընել եւ անոր լուծին տակ չմտնել: Սակայն Լատիսլաւոսի աշխարհակալութիւնը երկայն տեւողութիւն չունեցաւ. ինչու որ Վիսգոնդի իշխանները հոն ալ հասան, ու 1414ին Լատիսլաւոս թունաւորուելով՝ մեռնելէն ետքը, իրենք սկսան չէ թէ միայն ան կողմերն ալ իրենց ոտնկոխ փնտռել եւ իշխանութիւննին բանեցընել, հապա՝ Փիլիպպոս Մարիամ Վիսգոնդի դուքսը չորս տարիի չափ (1416—1420) ամէն հնարքներն ի գործ դնելով

Լոմբարտիայի մէջ իր ունեցած գաւառները նորէն ձեռք առնցուց. ասկից զատ 1421ին նաեւ Գենուայի հասարակապետութիւնն իրեն հնազանդեցուց: Սակայն Փլորենտիայի ու Վենետիկի հասարակապետութիւններն իրարու հետ միաբանելով ու դաշնակցելով՝ միացեալ զօրութեամբ անոր դէմ ելան, եւ բոլոր մինչեւ Ատտա գետն ըլլող երկիրներն անոր ձեռքէն առին, եւ 1428ին Բերգամա քաղաքն ըլլող դաշնադրութեան զօրութեամբ հաստատուն պահեցին: Նոյն տարիները (1416 մինչեւ 1430) երկու տեղ ալ մեծամեծ շփոթութիւններ ելան. Պրաչչիօ տա Մոնդոնէ իշխանը Բերուճիայի ազատ քաղաքին վրայ տիրելէն ի զատ՝ նաեւ բոլոր Ումբրիա ինչպէս նաեւ քիչ մը ատեն Հռոմ ալ իր իշխանութեան տակ առաւ: Բեդրուչչի գերդաստանէն իշխան մ՚ալ Սիէնայի հասարակապետութիւնը նուաճեց ու անոր վրայ իշխող տէր եղաւ:

Թէպէտ եւ Փլորենտացւոց ու Վենետացւոց դաշնակցութեամբ Միլանի Փիլ. Վիսգոնդի դքսին ուժը կոտրելով, եւ ուրիշ դիհաց ալ Անժու եւ Արագոնեան ազգատոհմներուն՝ իրարու զօրութեան յառաջ երթալը Նէապոլսոյ ու Սիկիլիայի մէջ զսպելովը՝ Իտալիայի մէջ ալ վտանգաւոր ընդհանուր իշխանութիւն կամ տիրապետութիւն մը չէր մնացեր. ի վերայ այսր ամենայնի երկիրը ամէն խռովութիւններէն ու կռիւներէն ազատ չէր: Առանձինն երկու իշխաններ կամ բռնաւորներ, այսինքն վերը յիշուած Պրաչչիօ տա Մոնդոնէ ու Ադդենտոլօ Սֆորցա, իւրաքանչիւր մէյ մէկ կողմնակցութիւն կազմելով ու ամէն մէկը վարձկան զօրքեր պահելով, որոնք իրենց անուամբը Պռաչչեսքի ու Սֆորցեսքի կ՚անուանէին, սկսան Լոմբարտիայի մէջ եւ ուրիշ կողմեր նորանոր խռովութիւններ ու պատերազմներ յարուցանել:

Սֆորցա անուամբ մեծ համբաւ ունեցող ազգատոհմին գլուխը կամ նախահայրն եղաւ Մուցիոյ Ադդենտոլյ անունով՝ Ռոմանեայի Գոդինեոլա գեղէն գեղացի մը, որն որ իր սուր միտքին ու քաջասրտութեամբը Իտալիայի մէջ խիստ զօրաւոր տիրապետող ըլլալու չափ յառաջ գնաց ու բարձրացաւ։ Ինք իսկ իր գեղջկական վիճակին մէջ կարծես թէ ներքուստ համոզուած ըլլալով՝ որ ինք իր բնաւորութեամբն ու ձիրքերովը նոյն վիճակին մէջ մնալու յարմար չէ, հապա բարձրագոյն աստիճաններու ելլելու կարողութիւն ունի, ըստ այնմ սկսաւ գործել։ Աս խորհրդով գլուխը խել մը աստահակ ու զօրաւոր մարդիկ ժողվեց, եւ անոնց առաջնորդ (condottiere) ըլլալով, Իտալիայի քանի մը իշխաններուն կամ բռնաւորներուն տակ ծառայելէն ետքը, վերջապէս Նէապոլսոյ թագաւորին ծառայութեան մէջ մնաց։ Քիչ ատենուան մէջ նոյն տէրութեան իր քաջութեամբն ու յաջողակութեամբը այնպիսի օգտակար ծառայութիւններ ըրաւ, որ նոյն գահուն նեցուկն ու միակ յոյսը կը սեպուէր։ Ալպերիկոյ Պարպիանոյ կոմսը, որն որ Իտալիայի մէջ վարձկան զօրքերուն առաջնորդ (condottiere) ըլլողներուն սկզբնաւորիչը կամ պարագլուխն եղաւ, աս քաջ Ադդենտոլյին Սֆորցա մականունն տուաւ, որն որ բռնադատիչ կամ յաղթահարող կը նշանակէ։ Աս Ադդենտոլյ Սֆորցային որդին էր Փրանկիսկոս Սֆորցա (ծն. 1401), որն որ հօրը պէս քաջ ու յաջողակ էր, եւ անոր առաջնորդած վարձկան զօրաց առաջնորդութիւնը յառաջ տանելով՝ Իտալիայի ամէն վիճակները կը դողացընէր, բայց միանգամայն իր ձիրքերովը կառավարելու կարողութիւն ունենալն ալ յայտնի կը ցուցընէր։ Վիսգոնդի ազգատոհմին հետ խնամացաւ, նոյն ազգատոհմին Փիլիպպոս վերջին դուքսին դուստրը հետ կարգուելով. եւ որովհետեւ իր

յաջողակութեամբն ու քաջութեամբը Միլանի, Վենետկոյ ու Փլորենտիայի հասարակապետութեանց շատ օգտակար ծառայութիւններ ըրած էր, անոր համար բոլոր Իտալիայի մէջ մեծ համբաւ ստացաւ ու սիրելի եղաւ։ Եւ երբ որ վերը յիշուած Փիլիպպոս դուքսը 1447ին առանց արու զաւկի մեռաւ ու անով Վիսգոնդի ազգատոհմին արական յաջորդութիւնը վերջացաւ, Փրանկ. Սֆորցա ամէն հնարքը բանեցընելով՝ յամի 1450ին Միլանի տէրութիւնն իր ձեռքն անցուց։ Իրեն դէմ Վենետացիք քանի մը ուրիշ Իտալացի իշխաններու հետ դաշնակցելով, սկսան իր նոր ստացած իշխանութիւնն իրմէ հանելու ջանալ։ Փ. Սֆորցա ասոնց ջանքը յաղթելու համար Փլորենտիայի հասարակապետութեան հետ դաշնակից եղաւ, որուն մէջ ան ատենները Մետիչի (Մեդիկեան) ազգատոհմն իմաստութեամբ ու հարստութեամբ անուանի ըլլալու սկսած էր, եւ անանկով նոյն իշխանութիւնը չէ թէ միայն անկորուստ պահեց, հապա իր մեռնելէն ետքն ալ իր ազգատոհմը նոյնին մէջ շատ տարիներ իրեն յաջորդութիւնը շարունակեց։

Ինչպէս ըսինք, աս հնգետասաներորդ դարուն մէջ առաւելապէս Փլորենտիայի՝ բայց եւ բոլոր Իտալիայի մէջ մեծ համբաւ հանելու սկսաւ Մեդիկեան կամ Մետիչի ազգատոհմը, որուն վրայ հոս քանի մը խօսք գրելը կարեւոր կ'երեւայ։ Աս ազգատոհմին անունը Փլորենտիայի պատմութեան մէջ արդէն երեքտասաներորդ դարուն սկիզբները կը յիշուի։ Նոյն ատեններն իսկ իբրեւ շատ հարուստ ու նշանաւոր գերդաստան մը ծանուցուած էր, բայց այնպէս՝ որ յաջողակ վաճառականութեամբ դեռ նոր հարուստացած՝ երեւելի ըլլալու սկիզբ ըրած ըլլալը յայտնի կ'իմացուի։ Անկից ետքը սկսաւ կամաց կամաց Փլորենտիայի մէջ քաղաքային ու ազգային իրողու-

թեանց նկատմամբ նշանաւորութիւն ու մեծ անուն ստանալ. եւ իր գլխաւոր անդամոց իմաստուն վարմունքովը ան գերդաստաններուն կարգն անցաւ, որոնք Փլորէնտիայի քաղաքացւոց Սակաւապետութեան (Oligarchie) խումբը կը կազմէին։ Մանաւորապէս 1342էն ետքը սկսան Մետիկեանք իրենց յաջողակութիւնը քաղաքային գործոց մէջ ցուցընել։ Այսպէս տարւէ տարի իրենց ազդեցութիւնն ու առաւելութիւնը Փլորէնտիայի Հասարակապետութեան մէջ ամէն կերպով յայտնի ընելով, եւ իրենցմէ մէկ քանին ծերակուտին (Սինեօրիա) անդամ (Կոնֆալոնիէրէ) ըլլալով՝ համբաւնին երթալով կը մեծնար ու կ՚աւելնար, մինչեւ եկաւ հասաւ նոյնին խիստ նշանաւոր ժամանակը, որն որ կը սկսի Կոզմաս Ա.էն։ Ասիկայ յամի 1416ին նոյն ծերակուտին անդամ եղաւ. իսկ քանի մը տարի ետքը Հասարակապետութեան կամ Փլորէնտիայի տէրութեան գլուխ դրուեցաւ. եւ իր անբաւ հարստութիւնն ազնուական ու իմաստուն առատաձեռնութեամբ ժողովրդեան մէջ բարի ու օգտակար գործքերու համար գործածելով, զամէնքն իր կողմը կը շահէր, եւ անով նոյն տէրութեան մէջ գտնուող այլեւայլ վնասակար կողմնակցութիւնները կը տկարացընէր։ Ամենեւին իր անձնական կամ ընտանեկան փառաւորութեան համար մեծ ծախքեր չընելով, իր հարստութեան գանձը բացած՝ Փլորէնտիայի մէջ հասարակաց օգտին համար մեծամեծ շէնքեր ու հրապարակական տեղեր շինելու կու տար, վարպետ արհեստաւորներն ու գիտնական անձինքն առատ վարձքով յառաջ կը քաշէր, եւ ասանկով իր տէրութիւնն ու Փլորէնտիա ամէն կերպով կը ծաղկեցընէր։ Նաեւ արտաքուստ, այսինքն օտար տէրութեանց, մանաւանդ Վենետիկոյ, Միլանի ու Նէապոլսոյ հետ իր իմաստութեամբը խաղաղութիւնը կը պահէր,

որուն շատ նպաստ կ'ըլլային իր ամէն դի տարածուած առեւտուրի գործքերն ու ամէն տեղ ունեցած մեծ ու հաստատուն վարկը կամ բարի անունը (Crédit)։ — Կոսմաէն ետքը աս Մետիչի գերդաստանին իշխաններէն անուանի ու առանձին յիշատակի արժանի է Լորենցոյ Մ., որն որ 1469էն սկսած՝ Փլորենտիայի հասարակապետութեան գլուխ եղաւ։ Աս ալ Փլորենտիա հոյակապ շէնքերով զարդարեց, եւ իր առատաձեռնութեամբը բարակ արհեստներու եւ գիտութեանց աւելի եւս պայծառանալուն եւ յառաջադիմութեան պատճառ եղաւ։ — Աս Մետիչի գերդաստանին Եւրոպայի մէջ մեծ անուն ու համարում ունենալուն մէկ ապացոյցն ալ աս է, որ իր տիկիններէն քանի մը տէրութեանց թագուհիներ տուաւ. ինչպէս Գաղղիայի Հենրիկոս Բ. թագաւորին ամուսինը Կատարինէ, ու Հենրիկոս Դ. թագաւորին ամուսինը Մարիամ աս Մետիչի ազգատոհմէն էին։

Դառնանք ընդհանուր Իտալիայի պատմութեան։ Հնգետասաներորդ դարուն կէսէն ետքը Միլան՝ ուր Սփորցա ազգատոհմն իր իշխանութիւնն օրէ օր աւելի կը հաստատէր, Վենետիկի հասարակապետութիւնը՝ որն որ Լոմբարտիայի կէս մասին վրայ կ'իշխէր, Փլորենտիայի հասարակապետութիւնը՝ որուն Լորենցոյ Մետիչի իշխանն իմաստութեամբ կ'առաջնորդէր, Հռոմայի երկիրը՝ որն որ ըստ մեծի մասին քահանայապետաց իշխանութեան տակ հանդարտած ու հնազանդած էր, եւ Նէապոլսոյ տէրութիւնը՝ որն որ թէպէտ հանդարտած էր, բայց բաւական ուժ չունէր դրացի տէրութիւններուն վրայ յարձակելու եւ զանոնք անհանգիստ ընելու, աս ամէն տէրութիւնները բոլոր Իտալիայի իշխանութեանց մէջ հաւասարակշռութիւնն ըստ կարի հաստատ պահելու օգնեցին։ Անանկ որ՝ թէպէտ եւ աս տէրութիւններն ատեն ատեն

*իրարու դէմ թշնամութիւններ կ՚ընէին, բայց եւ ոչ մէկը միւսին անկախութեան վտանգ ու վնաս մը կրնար հասցընել: Այս հաւասարակշռութեան մէջ Իտալիայի տէրութիւնները յառաջ գացած ատենը յամի 1494ին Գաղղիայի Կարոլոս Ը. թագաւորը՝ ատեն մը Անժու գերդաստանին վերաբերող Նէապոլսոյ ու Սիկիլիայի տէրութիւնները նորէն նուաճելու համար բանակով մը Իտալիա մտաւ ու թէպէտ քիչ ատենուան մէջ Նէապոլիս իր զինուց զօրութեամբն առաւ. բայց աս իր յաղթութիւնը շատ ատեն չկրցաւ վայելել, որովհետեւ Արագոնիայի Ալփոնսոս Բ. թագաւորը նոյն երկիրը նորէն ետ առաւ: Սոյնպէս եւ Կարոլոս Ը.ին յաջորդը Լուդովիկոս ԺԲ. Նէապոլիս նուաճեց, բայց ատոր ձեռքէն ալ յամի 1504ին Արագոնիայի Փերդինանդոս կաթողիկեան թագաւորը ղանիկայ առաւ: Աւելի բախտաւոր եղաւ նոյն Լուդովիկոս ԺԲ. Միլանի դէմ բացած կռուոյն մէջ, զորն որ նուաճեց ու իրեն հնազանդեցուց, իր ամուսնոյն միջնորդութեամբը նոյնին վրայ ունեցած ժառանգական իրաւանց վրայ հաստատուն կենալով:*

*Վեշտասաներորդ դարուն սկիզբները Յուլիոս Բ. քահանայապետը* (1503—1513) *Հռոմայի տէրութեան քանի մը երկիրները, որոնք օտարի ձեռք անցած էին, նորէն ստանալէն ետքը՝ յամի* 1508*ին Մաքսիմիլիանոս Ա. կայսեր, Փերդինանդոս կաթողիկեանին ու Լուդովիկոս ԺԳ.ին հետ Գամպրէի հռչակաւոր նիզակակցութեան դաշնը* (Ligue) *հաստատեց՝ Վենետիկի հասարակապետութեան Իտալիայի մէջ նոր աշխարհակալութիւններ ընելու ջանքը պարապի հանելու համար: Բայց Վենետացիք իրենց խորագիտութեամբն ու հնարքներովն աս զօրաւոր ու մեծ վնասներ սպառնացող դաշնակցութիւնը շուտով քակեցին ու քայքայեցին: Քահանայա-*

պետն աս աւելի նիզակակցութենէն Իտալիոյ համար մեծ օգուտ մը չտեսնելէն ետքը՝ 1509ին Վենետացւոց, Սպանիացւոց ու Հելուետիացւոց հետ՝ Գաղղիացիներն Իտալիայէն վռնտելու հանելու վախճանաւ՝ Սուրբ նիզակակցութիւն ըսուած դաշնագրութիւնն ըրաւ. բայց սա նիզակակցութիւնն ալ նոյն ատեն իր նպատակին չհասաւ ու օգուտ մը չըրցուց, եւ Գաղղիացիք երկայն ատեն Իտալիոյ մէջ մնացին. որոնց դէմ ի սկզբան Սֆորցա գերդաստանին իշխանները եւ ետքէն Կարոլոս Ե. կայսրը Միլանի տէրութեան վրայ միօրինակ կռուեցան, մինչեւ վերջապէս յամի 1525ին Գաղղիոյ Փրանկիսկոս Ա. թագաւորին Բաւիայի մօտ կրած կոտորածովն ու պարտութեամբը՝ Միլանի իշխանութիւնը նորէն Փրանկ. Սֆորցա իշխանին անցաւ. կայսրն ալ բոլոր Իտալիոյ վրայ մեծ զօրութիւն ու իշխանութիւն ստացաւ։ Նոյն կայսրը քանի մը տարի Լեւոն Ժ. (1513—1521) ու Կղեմէս Է. (1525—34) Հռոմայի քահանայապետաց հետ գժտելով, որոնք Մետիչի ազգատոհմէն ըլլալով՝ նոյնին ազդեցութիւնն ու զօրութիւնը Իտալիոյ մէջ աւելցընելու կ'աշխատէին, յամի 1527ին զօրքով Հռոմ մտաւ ու շատ վնաս հասցուց. բայց ետքէն Կղեմէս Է. քահանայապետին հետ հաշտուելով՝ (1530ին) Մետիչի ազգատոհմին իշխանական պատիւ ու տիտղոս շնորհեց։ Փլորենտիայի հասարակապետութիւնը քանի մը տարիներէ ի վեր իր ներքին անկարգութիւններուն պատճառաւը ազատութեան սէրն ու եռանդը կորսնցուցած ու իրօք Մետիչի իշխաններուն բացարձակ կառավարութեան տակ մնացած էր, որ եւ նոյն ազգատոհմին Աղեքսանդր Ա. իշխանին ատենը հասարակապետութիւն ըլլալէն բոլորովին դադրեցաւ ու բացարձակ իշխանապետութիւն կամ իշխանական արձակապետութիւն եղաւ։

# Է.

## Իտալիայի մէջ բուն Իտալացի իշխաններուն տկարանալէն ու օտար իշխաններ հոն տիրելու սկսելէն մինչեւ Գաղղիայի մեծ Յեղափոխութեան ժամանակը։

**1539—1789.**

Իտալիայի պատմութեան վեցերորդ Շրջանը կը բովանդակէ՝ գրեթէ 250 տարւոյ միջոցին մէջ՝ չէ թէ միայն բուն իտալական ազատ հասարակապետական կառավարութեանց բոլորովին տկարանալուն ու Իտալացի իշխանաց պակսելուն ու տիրելէն դադրելուն, հապա նաեւ օտար իշխանաց Իտալիայի այլեւայլ մասանց վրայ իշխելուն կամ տիրող ըլլալուն ժամանակը։ Մոնֆերրայի իշխանական կամ սահմանակալ կոմսական տան արու յաջորդները լմննալով՝ Կարոլոս Ե. կայսրը աս տեղւոյ իշխանութիւնը 1536ին Մանդուայի Կոնցակա իշխանին պարգեւեց։ Բարմայի ու Բիաչէնցայի երկիրներն ալ նոյն կայսրը յամի 1556ին իբրեւ աւատական կալուած Ոկտաւիոս Ֆառնեզէին տուաւ։ Նոյնպէս եւ Միլանի ու Նէապոլսոյ տէրութիւնները նոյն կայսրը յամի 1553ին իր որդւոյն՝ Սպանիայի Փիլիպպոս Բ. թագաւորին տուաւ. որով եւ գրեթէ մէկ ու կէս դար բոլոր Իտալիայի վրայ աւստրիական-սպանիական ազդեցութիւնը զօրացաւ։ Յամի 1631ին Փերդինանդոս Բ. կայսրը Մանդուայի ու Մոնֆերրայի երկիրներուն իշխանութիւնը՝ Գաղղիայի պաշտպանութեան տակ ըլլող՝ Կարոլոս Ռեւէր իշխանին իբրեւ աւատային կալուած տուաւ։ Յամի 1706ին Աւստրիա իր իշխանութեան տակ առաւ Միլան, Մանդուա ու Մոնֆերրա, որոնց առաջին երկուքն իրեն պահեց, իսկ երրորդը՝ այսինքն Մոնֆերրա Սաւոյայի իշխանին տուաւ։ Յամի 1714ին Ուդրեխտի խաղաղութեան դաշանց զօ-

բութեամբ Սարդինիա կղզին ու Նէապոլիս Աւստրիայի ինկաւ. իսկ Սիկիլիա կղզին՝ Սաւոյայի իշխանին տրուեցաւ, զորն որ նոյն իշխանը ետքէն Աւստրիայի տուաւ, անոր տեղ անկէց Սարդինիա կղզին ընդունելով։ Երբ որ 1731ին Փառնէզէ ազգատոհմին արու յաջորդութիւնը լմընցաւ, նոյն տեղաց իշխանութիւնը Սպանիայի Կարոլոս իշխանին (ինֆանդ) անցաւ։ Յամի 1733ին Սաւոյայի Կարոլոս Էմմանուէլ իշխանը պատերազմաւ Միլան առաւ, բայց յամի 1738ին Վիէննա ըլլող խաղաղութեան դաշինս զօրութեամբ զանիկայ նորէն Աւստրիայի ետ տուաւ, միայն անոր երկու քաղաքները՝ Նովարա ու Դորդոնա՝ իրենց սահմաններովն իրեն մնացին։ Երբ որ Բարմայի Կարոլոս դուքսը Նէապոլսոյ ու Սիկիլիայի կամ երկու Սիկիլիայի վրայ թագաւոր եղաւ, Բարմա ու Բիաչենցա Աւստրիայի իշխանութեան տակ մնաց։ Յամի 1737 Մետիչի ազգատոհմին արու յաջորդները լմըննալով՝ Լոթարինկիայի (Լորենայի) Փրանկ. Ստեփան դուքսը՝ Վիէննայի խաղաղութեան դաշանց զօրութեամբ Տոսկանայի տէրութիւնը կամ Մեծ դքսութիւնն ընդունեցաւ. ու երբ որ ինք 1745ին Աւստրիայի կայսր եղաւ, Տոսկանայի երկրին իշխանութիւնը Աւստրիական-Լոթարինկեան կայսերական ազգատոհմին երկրորդ արու զաւակին ժառանգական կալուած ըրաւ։ Յամի 1745ին Սպանիացիք պատերազմաւ Միլան առին, բայց Սաւոյայի Կար. Էմմանուէլ իշխանը զիրենք վռընտեց ու Միլան անոնց ձեռքէն ազատեց, որուն շնորհակալութեան համար Մարիամ Թերեզիա կայսրուհին Լոմբարտիայի երկրէն քանի մը տեղ պարգեւեց։ Մասսայի ու Գարրարայի երկիրներուն տէրութիւնը 1743ին ժառանգութեամբ ընդունեցաւ Մոտենայի իշխանը, որն որ Լոթարինկեան ցեղէն էր։ Սպանիայի Փիլիպպոս իշխանը (ինֆանդ) Բարմայի ու Բիա-

չենցայի երկիրները պատերազմաւ նուաճեց. զորն որ թէպէտ եւ քիչ մը ետքը ետ տալու ստիպեցաւ, բայց յամի 1748ին Ագուիսգրանայի (Ախէնի) խաղաղութեան դաշանց զօրութեամբ իբրեւ ժառանգական դքսութիւն նորէն ընդունեցաւ։ Այսպէս բոլոր ութեւտասներորդ դարուն մէջ Լօթարինկիայի, Պուրպոնի ու Սաւոյայի ազգատոհմները՝ Իտալիայի այլեւայլ տէրութեանց ու հասարակապետութեանց երկիրները, բաց ի Հռոմայի, Մոտենայի ու քանի մը կանգուն մնացող հասարակապետութեանց երկիրներէն, իրենց մէջը բաժնեցին, իրենց ցեղերէն նոյն թերակղզւոյն այլեւայլ տեղերուն իշխողները կարգելով։

## Ը.

*Իտալիայի մէջ՝ գաղղիական մեծ յեղափոխութեան ատենէն սկսեալ՝ պատահած դէպքերը, նոր կառավարութիւններն ու 1848ին յեղափոխութիւնն իր հետեւանքովը։*

**1789—1850.**

---

## Ա· ՄԻՋՈՑ

**1789—1815.**

Իտալիայի Պատմութեան Եօթներորդ Շրջանը կը բովանդակէ՝ Գաղղիայի մեծ Յեղափոխութենէն (1789) մինչեւ 1850 անցած ժամանակը, որուն մէջ Իտալացիք ու Իտալիա ի սկզբան Գաղղիական նոր հասարակապետութեան զէնքերէն շատ վնաս կրեցին։ Քանի մը տարի շարունակող պատերազմներէն եւ առանձինն Նաբոլէոն Պոնաբարդէին սպարապետութեամբը մեծ յաղթութիւններ կատարուելէն ետքը, Իտալիայի մէջ այլեւայլ (առ երեւոյթս՝ անկախ) հասարակապետական կառավարութիւններ հիմնուեցան։ Ասոնցմով Իտալացւոց մտաց մէջ հին ատենուան Իտալիայի ազատութեան գաղափար-

ները սկսան արթըննալ, որոնցմով տոգորուած ու լցուած՝ նոր անկախութիւն ու նոր ազգային կենդանութիւն մը ստանալու համար պարապ տեղ այլեւայլ փորձեր ըրին. ինչպէս բոլոր աս շրջանին պատմութեան մէջ պիտի տեսնենք:

Գաղղիական նոր հասարակապետութեան զօրացը արտաքին տէրութեանց դէմ պատերազմելու սկսած 1792 տարին՝ առաջին տեղերուն մէկը, ուր իրենց զէնքերը հասուցին ու մտան, եղաւ իրենց բնական դրացին Սաւոյա, ինչպէս նաեւ ծովեզերեայ քաղաքը Նիսա (Նիցցա), որոնք Սարդինիայի թագաւորին իշխանութեան տակ էին: Աս թագաւորին դէմ Գաղղիացւոց թշնամանալու սկզբնաբար պատճառ տուած կրնայ սեպուիլ՝ Գաղղիացի փախստականաց (émigrés) շատերուն, մանաւանդ քանի մը երեւելի անձանց Դուրինի մէջ ժողվիլն ու անկից Եւրոպայի տէրութիւնները գրգռելը՝ որ Գաղղիայի մէջ յեղափոխութիւնը ճնշելու եւ վերջացընելու համար զէնքով միջամուխ ըլլան: Ասկից ի զատ աս ալ կայ՝ որ Սարդինիայի թագաւորը (Վիկտոր Ամադէոս Գ.), ինչպէս նաեւ Իտալիայի ուրիշ իշխողները, Հռոմայի քահանայապետը (Պիոս Զ.), Տոսկանայի մեծ դուքսը, եւ այլն, մեծ տէրութեանց, Աւստրիայի, Անգղիայի ու Պրուշի դաշնակցութեան մէջ մտնելով, Յեղափոխականաց դէմ կամ յայտնապէս թշնամութիւն ընելու եւ կամ չէզոք կենալու ճամբայ կը բռնէին:

Ամենէն առաջ Սարդինիայի թագաւորը Վիկտոր Ամադէոս Գ. յամի 1792ին Աւստրիայի հետ նիզակակցութեան դաշն դրաւ Գաղղիացւոց դէմ միաբան գործելու: Անոր համար Գաղղիացիք մէկ անգամ Սաւոյա առնելէն ու քիչ մը ետքը կորսընցընելէն ետեւ, նորէն եկան նոյն գաւառն առին ու Բիէմոնդի մէջ յառաջ գա-

ցին։ Այսպէս Գաղղիացւոց զօրքերն Իտալիայի մէջ Աւստրիայի եւ ուրիշ իտալական տէրութեանց զօրքերուն դէմ կարճ կամ երկայն միջահատութեամբ՝ պատերազմը կը շարունակէին։ — Նոյն 1792 տարւոյն վերջերը Գաղղիայի նաւատորմիղին այլեւայլ նաւերը բոլոր Միջերկրական ծովուն մէջ տարածուած էին. մէկ քանին Գենուայի առջեւը, մէկ քանին ալ Նէապոլսոյ առջեւը հասնելով, կը ջանային Գաղղիայի նոր հասարակապետութիւնն ամէն տեղ իբրեւ օրինաւոր տէրութիւն ընդունել տալ։ Եւ իրօք ալ Նէապոլսոյ տէրութիւնը քիչ մը ատեն ընդդիմանալէն ետքը՝ Գաղղիացւոց թնդանօթներուն ազդեցութիւնը չկրնալով տկարացընել, նոյն հասարակապետութիւնն իբրեւ օրինաւոր տէրութիւն ճանչցաւ, ու անոր հետ բարեկամական յարաբերութեան մէջ մտաւ։ — 1793 տարւոյն մէջերը Գաղղիայի զօրաց ու զինուորական գործողութեանց համար Իտալիայի՝ առանձինն Բիէմոնդի մէջ ու Նիսայի մօտերը մեծ մեծ դժուարութիւններ սկսան երեւալ։ Չէ թէ միայն նոյն զօրաց թիւը քիչ ու իրենց վիճակը զգեստուց եւ ուտելեաց կողմանէ գէշ էր. հապա նաեւ Սարդինիայի զօրաց՝ ցամաքի կողմանէ, իսկ Անգղիացւոց նաւատորմիղին, (որն որ 37 մեծ նաւերով Հուտ ծովապետին հրամանին տակ Միջերկրական ծովուն մէջ ու Իտալիայի եզերքը կը քալէր,) ծովու կողմանէ զիրենք պաշարելովը, բոլորովին կորսուելու եւ առած տեղերնին կորսնցընելու վտանգի մէջ էին։ Բայց Գելլերման զօրապետը Գաղղիացւոց տկարացած գնդերուն նոր զօրքով օգնութեան հասնելով, Սարդինիայէն առնուած տեղերը կրցան պահել։ Յամի 1794ին Սարդինիացւոց 40 հազար զօրաց հետ Աւստրիայի ութը հազարի չափ օգնական զօրքը միացած՝ պատերազմը Բիէմոնդի մէջ կը շարունակէին։

Իսկ Իտալիոյ միւս տէրութիւնները թէպէտ եւ ըստ իմիք կամ ներքուստ մեծ տէրութեանց դաշնակցութեան մէջ էին, բայց դեռ չէին համարձակեր Գաղղիացւոց դէմ յայտնապէս թշնամութեան դրօշը կանգնել, հապա կը ջանային չէզոքութիւն պահել, թէ եւ ասով ալ հանգիստ ու ապահովութիւն չէին գտներ։ Տոսկանայի մեծ դուքսն ամենէն առաջ հասարակապետութեան հետ բարեկամական յարաբերութիւնները դադրեցընելու սկիզբ ըրաւ, Փլորենտիա նստող Գաղղիայի դեսպանին անցագիրը տալով ու անոր հետ պաշտօնական հաղորդակցութիւնը կտրելով։ Նէապոլսոյ թագաւորը՝ որն որ Գաղղիացւոց նաւատորմիղին թնդանօթներէն սարսելով, ինչպէս վերը ըսինք, հասարակապետութիւնը ճանչցած ու ընդունած էր, Անգղիացւոց նաւերն իր երկրին ծովեզերաց մօտ երեւնալու սկսելէն ետքը՝ Գաղղիայի դէմ թշնամական լեզու բանեցընելու ճամբայ բռնեց, եւ Սարդինիայի տէրութեան տասն՚ութը հազար հոգի օգնական զօրք խաւրելու խօսք տուաւ։ Հռոմայի տէրութիւնն իր զօրաց քիչութեան ու իր զօրութեան տկարութեան նայելով՝ անգործութեան մէջ կը կենար ու չէր կրնար յայտնի թշնամութեան ցոյց մը տալ։ Վենետիկոյ ազնուապետական հասարակապետութիւնը՝ թէպէտ եւ Գաղղիայի նոր ռամկապետական հասարակապետութեան բռնած ընթացքին վրայ այնչափ հաճեալ չէր, սակայն չէր ուզեր անոր դէմ յայտնապէս թշնամութեան ու կռուոյ մէջ մտնել. ու իր հեռաւորութեամբը զինքն անոր զէնքերէն ապահով սեպելով՝ կը յուսար ու կը ջանար չէզոքութիւն պահել։ Գորսիկա կղզին, որն որ շատոնցուընէ Գաղղիայի հետ միացած ու անոր իշխանութեան տակ էր, յեղափոխութեան սկսելէն ետքը գլուխ վերցուցած, հասարակապետութեան դէմ

կը դառնար ու Բաւոլի զօրապետին օգնութեամբը (1794, Յունիս.) գրեթէ բոլորովին Անգղիացւոց իշխանութեան տակ մնած էր, եւ միայն Պաստիա ու Գալվի քաղաքները Գաղղիացւոց հաւատարիմ մնացին։

Հասարակապետութիւնն ուրիշ ղրեր իր զօրքը մաս մաս Սպանիացւոց, Անգղիացւոց, Բրուսիացւոց ու Աւստրիացւոց զօրքերուն դէմ ըլլող պատերազմին համար բաժնած ըլլալով, Իտալիայի բանակը չէր կրնար այնպէս շուտով զօրացընել ու ընտիր զօրապետներու յանձնել։ Վերջապէս աս բանակին գործողութիւնները յաջողցընելու համար գտնուեցաւ ու որոշուեցաւ այնպիսի զօրապետ մը, որն որ իր յաջողակութիւնն ու զինուորական տաղանդները դեռ նոր մէկ քանի երեւելի առիթներու մէջ ցուցըցած ու իր ապագայ յառաջադիմութեան ու մեծութեան նշանները տալու սկսած էր։ Ասիկայ էր Գորսիկացի Նաբոլէոն Պոնաբարդէ, (ծն. Գորսիկայի Այաչչիօյ քաղաքը յամի 1769. Օգոստ. 15.) որն որ իր զինուորական յաջողակութեամբը Թուլոն քաղաքն Անգղիացւոց ձեռքէն ազատեց ու անոր վարձ ընդհանուր զօրապետ անուանեցաւ։ Քիչ մը ետքը՝ 1794ին Ապր. 6ին Իտալիա գտնուող զօրաց մէկ բաժնին վրայ հրամանատար գրուելով, ուրիշ քանի մը զօրապետներու հետ 14 հազար նոր զօրքով Ալպեան լեռներն անցաւ եւ Սարդինիացւոց ու Աւստրիացւոց միացեալ զօրքերուն վրայ մէկ ամսուան մէջ քանի մը յաղթութիւններ ընելով, Գաղղիացւոց մինչեւ ան ատեն Սարդինիայի տէրութենէն առած երկիրներն ու ծովու կողմանէ իրենց նաւերուն երթեւեկը՝ մանաւանդ զօրաց պաշարի ու պիտոյից համար ապահովցուց։

Աս յաղթութիւններէն ետքը քանի մը ամիս Գաղղիայի զօրքը թէ Իտալիայի մէջ ու թէ անոր սահ-

մանները Ալպեան լերանց վրայ անգործութեան մէջ մնաց. մինչեւ Հոկտեմբեր ամսոյն մէջ՝ Աւստրիայի ու Անգղիայի զօրքը յառաջ քալելով, փորձ մը փորձեցին Սաւոյայի վրայ յարձակիլ, եւ միանգամայն Գաղղիացւոց Գենուայի հետ ունեցած հաղորդակցութիւնը կտրել, որովհետեւ Գենուայի հասարակապետութիւնն ու ատենները չէզոքութիւն պահելով՝ Գաղղիայի զօրաց ծովու կողմանէ հարկաւոր եղած պաշարն ընդունելու մեծապէս օգնական կ՚ըլլար։ Աւստրիայի զօրաց Գոլորետոյ հրամանատարը իբր տասը հազար զօրքով յառաջ կը քալէր, բայց այնպիսի դանդաղութեամբ, որ Գաղղիացիք բաւական ժամանակ ունեցան՝ իրենք զիրենք անոր յարձակման դէմ պաշտպանելու համար՝ հարկաւոր պատրաստութիւնները տեսնել։ Այսպէս պատրաստուելէն ետքը՝ նոյն Պոնաբարդէին հրամանատարութեամբն Ալպեան լերանց մէջերը Աւստրիայի զօրաց վրայ յարձակեցան, որոնք ութ հարիւր հոգի կորսնցընելէն ետքը՝ ամօթով ետ քաշուեցան, Անգղիացիներուն վրայ տրտունջ ընելով՝ որ ատենին օգնութեան չհասան, ինչպէս որ Անգղիացիք ալ իրենց կողմանէ Աւստրիացւոց անյարմար ատեն Գաղղիացւոց հետ կռուոյ բռնուելուն վրայ կը տրտնջէին։ Այսպէսով Գաղղիացիք իրենց Գենուայի հետ ունեցած հաղորդակցութիւնը պահեցին ու իրենց զօրքը մինչեւ ան ատեն բռնած տեղերուն մէջ հաստատ մնաց։

Հասարակապետութեան թշնամի ըլլող քանի մը տէրութիւնները խել մը ատեն պատերազմին անոր զօրաց հետ երբեմն յաջողութեամբ ու երբեմն ձախողութեամբ շարունակելէն ետքը, 1795ին առանձինն ու մէկտեղ այլ եւ այլ ամիսներ ու մէջ զինադադարի ու խաղաղութեան դաշինք դնելու ստիպեցան։ Աս խաղաղութեան՝ ամենէն աւելի Իտալիայի այլեւայլ տէրութիւնները կը բաղձային,

մանաւանդ անոնք՝ որոնք տկար ըլլալով, Գաղղիացւոց դէմ միշտ թշնամութեան մէջ մնացած ատեննին՝ եաքէն գլուխնին գալու չարիքն ու կրելու վնասնին յառաջուընէ կրնային գուշակել: Սարդինիայի տէրութիւնը մինչեւ ան ատեն խել մը տեղ կորսնցուցած ու իր առջի զօրութենէն ալ ինկած ըլլալով, չէր ուզեր ու չէր համարձակեր նորէն զէնք առնուլ ու կռուոյ մէջ մտնել: Տոսկանայի մեծ դուքսը, որն որ Անգղիացւոց նաւատորմղին սպառնալիքէն ստիպեալ՝ ակամայ իր չէզոքութիւնը թող տուած ու Գաղղիացւոց դէմ յայտնի թշնամանալու սկսած էր, միշտ կը բաղձար ու կը ջանար իր առաջուան չէզոքութեան վիճակը դառնալ, մանաւանդ Գաղղիացւոց Գենուայի մօտ հաստատուն դիրք մը բռնելէն ետքը: Ասոր համար սկսաւ հասարակապետութեան հետ բանակցութեան մէջ մտնել ու վերջապէս (1795. փետր. 9.) երկու տէրութեանց մէջ խաղաղութեան ու բարեկամութեան դաշինք հաստատուեցաւ. որուն զօրութեամբ Տոսկանա Գաղղիացւոց ետ տուաւ այն ամէն ցորենեղէնը, զորն որ թշնամութիւններ սկսելէն ետքը՝ անոնց համար իր նաւահանգիստները մտնող նաւերէն առած էր: — Վենետիկոյ հասարակապետութիւնը, որն որ իր դեսպանը Գաղղիայէն ետ կանչած էր, փութաց ծանուցանել՝ որ անոր տեղ ուրիշ մը անուանած է եւ քիչ ատենուան մէջ Փարիզ պիտ'որ խաւրէ՝ բարեկամական յարաբերութիւնները նորէն յառաջ տանելու համար: Եւ իրօք Ապրիլի մէջ թէ Վենետիկոյ ու թէ Տոսկանայի նոր դեսպանները Փարիզ հասան ու դաշնաժողովոյն գահերէցին ներկայացան: — Սոյնպէս եւ Հռոմայի դահլիճը իր երկրին մէջ Գաղղիացւոց դէմ եղած թշնամական դէպքերուն վրայ իր տհաճութիւնը յայտնեց: Միայն Նէապոլսոյ տէրութիւնը, որուն թագու-

հին մանաւոր թշնամութեան հոգի մը ստացած էր Գաղղիացւոց դէմ, Անգղիացւոց յորդորանքին ու հնարքներուն հետեւելով՝ չէր ուզեր ամենեւին խաղաղութեան վրայ խօսիլ, ու կը խոստանար մեծ տէրութեանց Գաղղիայի դէմ ըրած դաշնակցութեան ու նիզակակցութեան կրցածին չափ օգնութիւն ընել:

Թէպէտ եւ մէկ կողմանէ Իտալիայի քանի մը տէրութիւնները, ինչպէս նաեւ անկից դուրս ուրիշ մէկ քանի տէրութիւններ ալ հասարակապետութեան հետ բարեկամական յարաբերութեան մէջ կը մտնէին, սակայն ուրիշ կողմանէ թէ պաշարի պակասութեան ու թէ դասալիք զինուորներուն թիւն օրէ օր շատնալուն պատճառաւ, դաղղիական զօրաց՝ մանաւանդ Իտալիայի մէջ ու անոր սահմանները Ալպեան լերանց վրայ գտնուող երկու բանակներուն՝ վիճակը միշտ տկարանալու եւ գէշնալու վրայ էր: Աս երկու բանակներուն վրայ Գելլերման զօրապետը հրամանատար դրուած էր, ու հասարակապետութիւնը նոյն բանակներուն տկարացած վիճակին ամենեւին նկատում չընելով, յանդգնական որոշում մ'ըրած էր յանկարծ Հռոմայի երկրին վրայ յարձակիլ, պատճառ բերելով՝ որ հոն Գաղղիայի հպատակ մը անծանօթ մարդէ մը սպաննուած էր: Աս խորհրդով Դուլոն կեցող նաւատորմղին մէկ մասին վրայ տասը հազար զինուոր դնել տուաւ ու կ'ուզէր զանոնք Տիբերիս գետին բերանը խարել, ուսկից զօրքը ցամաք ելլելով՝ յանկարծ պիտ'որ երթար Հռոմայէն այն անիրաւութեան համար տուգանք պիտ'որ պահանջէր ու նորէն իր նաւերը պիտ'որ դառնար: Բայց նոյն զօրքը ծովու վրայ Անգղիացւոց նաւերուն հանդիպելով ու ծովային պատերազմէ մը մեծ վնաս կրելով, դեռ Հռոմայի երկրին ծովեզերքը չհասած՝ ստիպեցաւ ետ դառնալ: — Նոյն տարին հարկ եղաւ Իտա-

լիայի ու Ալպեան բանակներուն մէկ բաժինն ուրիշ տեղ խաւրել, որով եւ Գաղղիայի զօրութիւնը Իտալիայի մէջ տկարացաւ, իսկ Աւստրիացւոց բանակը տասը հազար նոր զօրք ընդունելով՝ շատ զօրացաւ։ Գելլերման զօրապետն աս մեծագոյն զօրութեան դէմ կենալու բաւական ուժ չունենալով, ստիպեցաւ ետ քաշուիլ, եւ միայն Ալպեան լերանց կողմերն իր զօրութիւնը ժողվելով՝ դէպ ի Գենուա բռնած տեղերը թողուց. որով եւ Գենուայի կողմանէ ծովով զօրաց պաշար ընդունելու յոյսը կը կորսուէր, թէ որ թշնամին յառաջ երթար ու նոյն տեղերը բռնէր։ Աս բանիս ճար մ'ընելու համար Նոյեմբեր ամսոյն մէջ բաժին մը ընտիր զօրք Օժըրոյ զօրապետին հրամանին տակ եկաւ Գելլերմանին զօրաց թողուցած տեղերը յառաջ քալեց։ Աս օգնութեամբ Իտալիայի գաղղիական բանակը զօրանալով, եւ Գելլերման զօրապետին տեղ Շերէր յաջողակ ու քաջ զօրապետը զօրաց հրամանատարութիւնն առնելով, Նոյեմբեր ամսոյն 23ին իր 36 հազար զօրքովը յանկարծակի Աւստրիայի ու Սարդինիայի միացեալ բանակին, այսինքն 45 հազար զօրաց վրայ յարձակեցաւ. ի սկզբան Սարդինիացիք մեծ քաջութեամբ Գաղղիացւոց յարձակման դէմ դնելով, անոնց ամէն ջանքը պարապի հանեցին. բայց երկրորդ օրը Շերէր ամէն հնարքը բանեցընելով, եւ թէ թշնամեաց միացեալ զօրութեան ու թէ օդոյն խառնակութեան ու փոթորկին դէմ իր զօրքը յառաջ վարելով՝ ցանկացած յաղթութիւնը ստացաւ։ Աս յաղթութիւնը, որն որ Գաղղիայի զինուց փառքն աւելցուց, Լօանոյ քաղաքին սահմաններուն վրայ կատարուած ըլլալուն, Լօանոյի պատերազմ ու յաղթութիւն կ'անուանի։ Ասոր վրայ չէ թէ միայն Սարդինիայի տէրութիւնը, հապա բոլոր Իտալիա զարհուրած՝ ինք զինքը բոլորովին Գաղղիացւոց իշխանու-

թեան տակ ինկած կը սեպէր։ Եւ թէպէտ եղանակին անյարմարութիւնն ու օդին խառնակութիւնը թող չտուաին որ Գաղղիացիք աս յաղթութենէն ետքը Իտալիայի մէջ յառաջ քալեն, սակայն ինչպէս Թիէր կ՚ըսէ՝ աս յաղթութեամբ Իտալիայի դռները Գաղղիայի առջեւը բացուեցան, որ եւ անկից ետքը ալ քիչ աշխատութեամբ անոր մէջ իր զինուքը կրնար յառաջանալ։ Ի վերայ այսր ամենայնի նոյն յաղթութենէն ետքը զօրքը՝ թշնամիէն առած աւարովը միայն իր ուտելեաց պաշարը կրցաւ ճարել, իսկ զգեստուց եւ առանձինն կօշկաց պակասութեան պատճառաւ, եւ հասարակապետութիւնը դրամոց նեղութիւն ունենալով՝ աս պիտոյից համար հարկաւոր ստակը հոգալ չկրնալուն, Իտալիայի բանակը շատ աղէկ վիճակի մէջ չէր գտնուեր, ուստի եւ ինչպէս նոյն Թիէր կ՚ըսէ, յիշեալ յաղթութիւնն աս նկատմամբ անօգուտ եղաւ։ Աս պատճառին համար Շէրէր զօրապետը Վերակացուաց ժողովոյն (Directoire) աչքէն իյնալով, իբր թէ նոյն յաղթութենէն յուսացուած օգուտը ձեռք բերելու անհոգ եղած էր, որոշուեցաւ որ զինքը հրամանատարութենէ հանեն ու իր տեղն աւելի յաջողակ ու համարձակ զօրապետ մը դնեն։ Աս ատենները Նաբոլէոն Պոնաբարդէին անունն ու յաջողակութիւնը՝ թէ Իտալիայի մէջ եւ թէ ուրիշ տեղեր կատարած երեւելի գործքերովը՝ ծանուցուած էր եւ նոյն հասարակապետութեան ներքին զօրաց հրամանատարութիւնն ունէր։ Ուստի ժողովը զինքը յարմար գտաւ Իտալիայի բանակին վերին հրամանատար կարգել ու անմիջապէս Շէրէրին տեղը խաւրել։ Պոնաբարդէ աս հրամանն ընդունածին պէս՝ առանց ժամանակ կորսնցընելու եւ մեծ հաճութեամբ Գաղղիայէն ելաւ Իտալիա անցաւ ու շիտակ Նիսա գնաց (1796. Մարտ. 26)։

Պոնաբարդէ Իտալիա եկած ու հոն ըլլող Գաղղիայի բանակին հրամանատարութիւնն առած ատենը՝ ուրիշ բան չգտաւ, բայց եթէ 30 հազարի չափ սոված, մերկ ու ամէն կարեւոր պարենէ զուրկ զինուորներ. ինչպէս նաեւ առանց ձիու ձիաւորներ: Աս կարօտութիւնները ըստ կարի շուտով լեցընելու համար՝ հասարակապետութիւնը նոր հրամանատարին քիչ մը պատրաստ ստակ ու մէկ միլիոն Փրանգի ստակ փոխ առնելու համար ալ թղթեր տուած էր: Յաջողակ ու եռանդուն երիտասարդը շուտ մը այսչափ նեղութեանց ճար մը ընելու համար՝ Գենուայի հասարակապետութեան հետ մասնաւոր դաշինք ըրաւ՝ զօրաց կարեւոր ըլլող պարէնը տալու. նաեւ Գաղղիացւոց մէկ նաւուն, նոյն հասարակապետութենէն՝ բռնած չէզոքութեան հակառակ՝ տրուած վնասին դէմ, պահանջեց որ Կաւի բերդը Գաղղիացւոց յանձնուի, որն որ Գենուայէն Միլան երթալու ճամբուն պաշտպանութեան ու ապահովութեան համար հարկաւոր էր:

Պոնաբարդէ իր ձեռքը տրուած զօրքին անչափ կարօտութեան մէջ լքած ու տկարացած հոգին զարթուցանելու եւ յօժարութեամբ նոր պատերազմներու սրտապնդելու համար, անոնց առջի կարօտութեանց դարման ընելէն ետքը՝ զօրաւոր խօսակցութեամբ մը եռանդնին ալ վառեց: Ետքը իր հրամանին տակ ըլլող քանի մը զօրապետներուն, որ էին Մասենա, Օժըրօ, Լահարբ, Պերթիէ, եւ այլն, 43 հազարի զօրաց այլեւայլ բաժինները յանձնելով՝ տրուելու պատերազմին յատակագիծը շինեց ու կարգերն որոշեց: Սարդինիացւոց զօրաց թիւը ան ատենները իբր 22 հազարի կը հասնէր Գոլլի զօրապետին հրամանատարութեան տակ. իսկ Աւստրիայի զօրաց թիւն էր՝ 36 հազար, որոնց հրամանատար էր Եօ-

թանասունուերկու տարեան քաջ ու հմուտ Պոլիեօ զօրապետը։ Թէպէտ աս երկու բանակներուն զօրաց թիւը Գաղղիացւոց զօրքէն աւելի էր, բայց երկու հրամանատարներն իրարու հետ միաբան չէին իրենց բռնելու դիրքին վրայ. Գոլլի կ'ուզէր այնպիսի դրից մէջ կենալ՝ որ Բիէմոնդէի երկիրը կարող ըլլայ պաշտպանել. իսկ Պոլիեօ կ'ուզէր անանկ դիրք մ'ունենալ, որ Գենուայի ու Անգղիացւոց (նաւատորմիղին) հետ հաղորդակցութեան մէջ մնայ։ Ի՛նչ եւ իցէ երկու դիաց կարեւոր պատրաստութիւններն ըլլալէն ետքը, Ապրիլի 11ին երկու թշնամի բանակները Գենուայի մօտերը ծովու քով իրարու դիմաց ելան. Պոլիեօ՝ Լահարբին հրամանին տակ դէպ ի Գենուա յառաջացող Գաղղիացւոց զօրաց բաժնին դէմ շարժելով՝ զանոնք ետ վռընտեց։ Օժըրոյ զօրապետը՝ որ Գաղղիացւոց բանակին կենդրոնին հրամանատար էր, Աւստրիացւոց բանակին դէմ խաւրեց Ռանբոն հազարապետը, որն որ Մոնդէնոդդէի քով այնպիսի հաստատութեամբ նոյն բանակին վրայ յարձակեցաւ, որ Աւստրիացիք վայրկեան մը տեղի տալու պէս կ'ըլլային, բայց նորէն յառաջ քալելով՝ Ռանբոնին գունդը մեծ նեղութեան մէջ ձգեցին, որուն անհնարին քաջութեամբ ու յուսահատութեամբ կռուած ատենը՝ Պոնաբարդէ իր զօրաց աս բաժնին ասանկ վտանգի մէջ գտնուիլն իմանալով, շուտ մը օգնութեան հասաւ ու ամէն հնարքը բանեցընելով՝ ցանկացած յաղթութիւնը ստացաւ։ Բայց ասով գոհ չեղաւ, հապա ուզեց Աւստրիացւոց զօրքը Սարդինիացիներէն բոլորովին զատել, զորն որ երկրորդօրը (Ապր. 13.) Բիէմոնդէի Միլլեզիմոյ աւանին մօտերը յաջողցուց։ Այսպէս երկու դաշնակից բանակներն իրարմէ բաժնուելէն ետքը՝ Պոլիեօ զօրապետն իր Աւստրիացիներովը Լոմբարտիա քաշուեցաւ։ Ասոր վրայ Պո-

նաբարդէ իր բոլոր ուժը Սարդինիացւոց դէմ դարձուց, որոնց վրայ (Ապր. 20. 21.) Չեւա ու Մոնտովի քաղաքներուն մօտ փառաւոր յաղթութիւն մ՚ընելէն ետքը՝ մտաւ Քերասգոյ քաղաքը, որն որ միայն տասը մղոնով Դուրինէն հեռու է։

Սարդինիայի Վիկտոր Ամադէոս թագաւորն այս ամենայն լսելով ու թշնամւոյն այսպէս իր թագաւորանիստ քաղաքին մօտ ըլլալը տեսնելով, մեծ անձկութեան մէջ էր։ Անգղիայի ու Աւստրիայի դեսպաններն իրեն խորհուրդ կու տային որ Դուրինի մէջ աղէկ մը ամրանալէն ետքը՝ մնացած զօրքը Բոյին միւս կողմն անցընէ, եւ չըլլայ որ Գաղղիացւոց հետ բարեկամանալով՝ իր առջի դաշնակիցներէն զատուի, վասն զի Գաղղիացիք իրենց յեղափոխական հնարքները Բիէմոնդէի մէջ բանեցընելով՝ բոլոր երկիրն ապստամբեցընելու եւ թագաւորին դէմ գլուխ վերցընել տալու պիտ՚որ աշխատին, կ՚ըսէին։ Նաեւ խորհուրդ կու տային՝ որ Դորդոնայի, Աղէքսանդրիայի ու Վալէնցիայի բերդերը Պոլիեօյին յանձնէ, որ անոնց մէջ ամրանալով՝ բոլոր երկիրը կարող ըլլայ պաշտպանել։ Թագաւորն աս խորհուրդներուն անսալու չէր յօժարեր, մանաւանդ ետքի խորհուրդին, որով կը կարծէր որ Աւստրիայի կայսրը՝ Լոմբարտիայի մէջ աւելի եւս զօրանալով՝ իրեն վնասակար ըլլայ։ Ինք ասանկ մտքի վրայ եղած ատեն՝ Գոստա կարդինալը Գաղղիացւոց զօրութիւնն ու Պոնաբարդէին քաջութիւնն ու յաղթող բանակով մը ամէն վայրկեան թագաւորական քաղաքին վրայ հասնելը յիշեցընելով, զինքը համոզեց որ իր առջի դաշնակիցներէն զատուի ու Գաղղիացւոց հետ խաղաղութիւն ու բարեկամութիւն ընէ։ Թագաւորն աս խորհուրդին հետեւելով, Գոլլի զօրապետին հրաման ու լիակատար իշխանութիւն տուաւ Պոնաբարդէին հետ խաղա-

ղութեան դաշինք դնելու։ Հրամանատարը Վերակացուաց ժողովքէն խաղաղութիւն դաշինք դնելու իշխանութիւն չունենալով, որովհետեւ ժողովը կ'ուզէր որ բոլոր Բիէ-մոնդէի երկիրն առնուի ու Գաղղիայի հետ միանայ, յանձն առաւ միայն առ ժամն զինադադարի դաշն դնել, որն որ (Ապր. 28.) կատարուեցաւ քանի մը պայմաններով, որոնք չէ թէ միայն Սարդինիայի տէրութեան նախատական ու վնասակար էին, հապա նաեւ Գաղղիացւոց Իտալիայի առ մօտին մէջ ազատ գործելու եւ Աւստրիայի զօրաց դէմ դիւրաւ պատերազմելու շատ նպաստաւոր էին։ Քիչ մը ետքը (Մայ. 15.) Հասարակապետութիւնը Սարդինիայի թագաւորին հետ բուն խաղաղութեան դաշն հաստատեց, այն պայմաններով՝ որ Սաւոյա ու Նիսա բոլորովին Գաղղիացւոց տրուին, Սարդինիայի վեց ամրոցները Գաղղիացւոց զօրապետին ձեռքը մնան, ու Սարդինիայի թագաւորը Գաղղիացւոց իբր պատերազմի ծախք մեծ տուգանք վճարելէն ի զատ, անոնց զօրաց իր երկիրներէն անցնելու թոյլ տայ, նաեւ անոնց հարկաւոր պարէնը հոգայ եւ Գաղղիայի թշնամեաց հետ չդաշնակցի։

Պոնաբարդէի յաղթութեան ձայնը բոլոր Իտալիայի մէջ տարածուելով, ահն ու դողը ամէն դի տիրեց. Ինքն ալ այս բանիս վրայ ապահով, քանի մը օր հանգչելէն ետքը՝ իր գործողութիւնները շարունակելու փութաց։ Ամէն բանէն առաջ իր զօրքն ու զէնքերը նորէն Աւստրիայի զօրաց դէմ դարձնելով՝ սկսաւ դէպ ի Լոմբարդիա յառաջ երթալ։ Երբ որ Սարդինիայի երկրէն ելաւ ու Բարմայի դքսին երկիրը մտաւ, դուքսն իրեն լիակատար իշխանութեամբ պատգամաւորներ խաւրեց, աղաչելու համար որ իրեն հետ ու իր երկրին մէջ խնայելով վարուի։ Պոնաբարդէ անոր խնդիրքը յանձն առաւ կատարել, բայց հետեւեալ պայմաններով, որ դուքսը Գաղ-

ղիացւոց բանակին երկու միլիոն ֆիորին, 1600 ձի, շատ մը ցորեն ու վարսակ տալ, նոյն զօրաց իր երկրին մէջէն ազատութեամբ անցնելուն չհակառակելէն զատ, երկրին այլեւայլ տեղերը հիւանդանոցներ որոշէ ու անոնց մէջ իր ծախքովը Գաղղիացւոց վիրաւորեալ ու հիւանդ զինուորները խնամէ: Անոնցմէ ի զատ Պոնաբարդէ ուրիշ ծանր պահանջում մ՚ալ ըրաւ ու ընդունեցաւ. այսինքն Իտալիայի վարպետ նկարչաց հռչակաւոր նկարներէն քանի հատ՝ առանձինն գործակալներու ձեռքով ընտրեց ու առաւ Փարիզ խաւրեց *:

Անկից ետքը Պոնաբարդէ իր զօրքը յառաջ քալեցընելով, Մայիսի 6ին Բօ գետին քովերը հասաւ, ուր Աւստրիացւոց Պոլիէօ սպարապետն իր բանակովն անոր կը սպասէր: Հոն թշնամւոյն բանակին դիմացը գետէն անցնիլը խոհեմութիւն չսեպելով, զօրացը մէկ մասը գետին քովերէն առաջ տարաւ ու երկրորդ օրը Բիաչենցա հասաւ. Ճամբուն վրայ իր ձիաւորները գետին եզերքը որչափ որ նաւակ գտան յառաջ վարեցին մինչեւ Բիաչենցա: Աս քաղաքին քովը Գաղղիացւոց զօրքը Բօյին ձախ դին անցաւ ու սկսաւ Աւստրիացւոց բանակին իրեն դէմ քալող մասն ետ վռընտել: Ուրիշ քանի մը կռիւներէ ետքը Պոնաբարդէ (Մայ. 9.) իր զօրքը Լոտի քաղաքին քովը Ատտա գետին վրայէն անցուց, գնաց Գրեմոնա, Բաւիա ու Գասանա առաւ. Հոն տեղերն իր զօրաց մէկ մասը թող տալով՝ մնացածովը սկսաւ դէպ ի Միլան առաջ երթալ: Ինք հոն մօտեցած ատենը՝ Աւստրիացիք

* Պատգամաւորները Պոնաբարդէին աղաչեցին որ Ս. Ցերոնիմոսի մէկ պատկերին համար, որն որ այն որոշուած քանի նկարներուն մէջն էր, մէկ միլիոն ֆիորին վճարեն ու զանիկայ չտան: Բայց Պոնաբարդէ, թէպէտ եւ իր բանակը նոյն ատեններն աս դրամին կարօտութիւն ունէր, չուզեց զանիկայ ընդունել, հապա իր առջի պահանջման վրայ հաստատ կենալով՝ նոյն նկարն առաւ ու մէկալնոնց հետ Փարիզ խաւրեց:

քաղաքը թողուցին ու բնակչաց մէկ մասին հետ դէպ ի Տիրոլ սկսան հեռանալ: Իսկ քաղաքին երեւելիները, որոնք Գաղղիացւոց վրայ առանձին սէր ունէին, անոնց գալուն իրենց հին ազատութեան յոյսը սրտերնուն մէջ վառուելով՝ Պոնափարդէին պատգամաւորներ խաւրեցին ու զինքն իր յաղթող զօրքովն ընդունելու եւ իրեն հպատակելու պատրաստութիւննին յայտնեցին: Ասանկով Պոնափարդէ Մայիսի 15ին մեծ փառքով Թագաւորի մը պէս՝ իրեն համար կանգնուած յաղթութեան կամարին տակէն անցնելով՝ Միլան մտաւ: Բայց երիտասարդ զօրավարին միտքը հոն մնալ չէր, հապա Լոմբարտիայի ալլեւայլ տեղերուն վրայ առժամանակեայ կարգաւորութիւններ ընելէն ետքը՝ յառաջ երթալ, մինչեւ Տիրոլ ու Ալպեան լեռներէն անդին անցնիլ, Աւստրիայի սահմաններուն մէջ մտնել էր: Միլանցոց հետ թէպէտ եւ անուշութեամբ վարուեցաւ ու իրենց հայրենասիրութիւնն աւելի գրգռելու համար ազատութեան յոյսերնին պարապի հանել չուզեց. սակայն իրենց ցուցուց որ դեռ անկախ չէին կրնար ըլլալ, հապա այն անկախութիւնը ստանալու համար պէտք է որ ամէն հնարքով Գաղղիացւոց օգնեն՝ որ Իտալիա ի մշտնջենաւորս Աւստրիացւոց ձեռքէն բոլորովին հանուի:

Նոյնպիսի խօսքերով Միլանցոց սիրտն ըստ մասին շահելէն ետքը՝ սկսաւ իր բանակին պիտոյքը հոգալու միջոցներուն ձեռք զարնել: Աս վախճանին համար Լոմբարտացւոց վրայ պարտք դրաւ 20 միլիոն փրանք՝ իբրեւ զօրաց թոշակի կամ պահպանութեան օգնութիւն մը վճարել. որով թէպէտ եւ բնակչաց վրայ մեծ ծանրութիւն մը աւելցաւ, բայց անոնք իրենց ապագայ ազատութեան յոյսէն յորդորուելով՝ աս ծանրութիւնն առանց յայտնի հակառակութեան յանձն առին: Մտե-

նայի դուքսը, որն որ Գաղղիացւոց Իտալիա մտած ու իր երկիրներուն մօտենալու սկսած ատենը՝ երկրին վրայ իր տեղը փոխանորդներ դնելով՝ ինք իր գանձերովը Վենետիկ քաշուած էր, ուզեց Պոնաբարդէին հետ խաղաղութեան դաշն դնել՝ անոր պահանջմունքները կատարելով: Պոնաբարդէ՝ ինչպէս ըսինք՝ Վերակացուաց ժողովէն խաղաղութեան դաշինք դնելու իշխանութիւն չունենալով, միայն զինադադար ընելը յանձն առաւ, զորն որ վերոգրեալ դքսին հետ հաստատեց, անկից 10 միլիոն ֆրանք, բանակին հարկաւոր ըլլող այլեւայլ պիտոյքը, նաեւ շատ մը ձի ու քանի մը ընտիր ու թանկագին նկարներ ընդունելով:

Պոնաբարդէ աս կարգադրութիւններն ընելէն ետքը՝ իր բանակովը Միլանէն ելաւ (Մայ. 21.) ու Իտալիայի ուրիշ պզտիկ տէրութեանց վրայ հոգ չընելով, Լոմպարտիայի մէջ սկսաւ Աւստրիացւոց զօրաց դէմ իր ընթացքը շարունակել: Բայց հազիւ թէ (Մայ. 23.) Լոտի քաղաքը հասած էր, լսեց որ թէ Միլանի մէջ ու թէ Բաւիայի եւ Լոմպարտիայի ուրիշ շատ գեղերուն մէջ գեղացիք ու Աւստրիացւոց կողմն ըլլող ժողովուրդները՝ Գաղղիացւոց դէմ գլուխ վերցուցեր, զէնք առեր՝ ասդին անդին մնացած զօրքերուն դէմ կը պատերազմին: Առանց ժամանակ կորսընցընելու՝ իր զօրաց մէկ մասովը Լոտիէն ելաւ, ապստամբած տեղերուն վրայ սկսաւ քալել, քանի մը տեղ ապստամբներուն շուտով յաղթեց, բայց Բաւիայի քով զօրաւոր հակառակութիւն գտնելով՝ մեծ դժուարութեամբ հոն ալ բանը յաջողակի լմնցուց: Աս միջանկեալ արշաւանքէն ետքը նորէն ճամբայ ելաւ, իր բանակը դարձաւ, որն որ արդէն Օլեոյ գետին քովը հասած էր, եւ Վենետիկոյ հասարակապետութեան երկիրը մտնելու կը պատրաստուէր: Վենետիկոյ ծերակոյտը

Գաղղիացւոց բանակին՝ այն յաղթող զօրավարին Հրամանին տակ՝ իր երկիրը մօտենալուն գոյժն առածին պէս՝ խորհրդի նստաւ։ Ի սկզբան մեծերէն ոմանք խորհուրդ տուին որ Աւստրիացւոց հետ միանան, Հասարակապետութիւնն Աւստրիայի տէրութեան յանձնեն։ Իսկ ծերակոյտին ուրիշ անդամները խորհուրդ կու տային՝ որ բոլոր երկիրը զէնք առնու եւ ամէն զօրութեամբ Գաղղիացւոց դէմ պատերազմի, զանոնք մերժէ։ Բայց քանի մը ծանրագլուխ խորհրդականներ վտանգին մեծութիւնն ու մերձաւորութիւնը մտածելով, խորհուրդ տուին որ Գաղղիացւոց հետ բարեկամութեան դաշն դնեն։ Սակայն ծերակոյտը միջին ճամբայ մը բռնել ուզելով՝ որոշեց որ Պոնաբարդէին առաջարկուի որ Վենետիկի երկիրները իրբեւ չէզոք տէրութիւն սեպուին ու Գաղղիացիք ան Հասարակապետութեան դէմ թշնամութիւն ու պատերազմ չընեն։ Աս խորհուրդն ընդունելի ըլլալով, անոր համեմատ երկրին մէջ ծանուցում եղաւ ու Պոնաբարդէին պատգամաւորներ խաւրուեցան, որն որ առաջարկութիւնն ընդունեցաւ, որովհետեւ ինքն ալ արդէն աս Հասարակապետութեան դէմ թշնամանալն առ այժմ Իտալիայի մէջ Գաղղիայի զինուց յաջողութեան վնասակար սեպելով, կը խորհէր երկրին վնաս չտալով՝ անոր մէջէն անցնիլ ու Աւստրիացւոց վրայ քալել։ Աս միջոցիս Աւստրիացւոց Պոլիեօ սպարապետը հնարքով մը Վենետիկի երկրին մէջ Մինչիոյ գետին վրայ ըլլող Բեսքիերա բերդաքաղաքը մտած բռնած էր։ Պոնաբարդէ իր զօրքն այլեւայլ զօրապետներու հրամանին տակ մաս մաս Մինչիոյ գետէն անցընել տուաւ, Աւստրիացւոց բանակին այլեւայլ մասերուն յաղթեց ու Բեսքիերայի մօտեցաւ. հոնկից ալ զՊոլիեօ վռնտելով՝ քաղաքն առաւ։ Եւ թէպէտ Վենետիկցոց խոստացած էր իրենցմէ

տեղ մը չառնել չբռնել․ բայց Բեսքիէրա՝ իբրեւ Աւստրիացւոց ձեռքէն առնուած բերդ մը՝ պահելէն ու հոն պահապան զօրք դնելէն ի զատ, սկսաւ իրենցմէ ուրիշ պահանջմունքներ ընել, պատճառ բերելով որ իրենք Աւստրիացւոց թոյլ տուած էին՝ Բեսքիէրա մտնելու եւ հոնկից Գաղղիացւոց զօրքին յառաջ քալելն արգելելու։ Թէպէտ եւ Ծերակոյտն ինք զինքն արդարացընելու ջանաց․ բայց Պոնաբարդէ չզիջանելով՝ ընթացքը յառաջ վարեց ու Վերոնա քաղաքն ու բերդն առաւ։ Ծերակոյտը հոն իրեն նորէն պատգամաւորներ խաւրեց, զինքը հաշտեցընելու եւ հասարակապետութեան երկիրներուն խնայել տալու համար։ Պոնաբարդէ Բեսքիէրայէն ի զատ՝ Վերոնա առնելով՝ իր վախճանին հասած էր, այսինքն աս երկու բերդերը ձեռքն ունենալով՝ Ատիճէ (Էջ) գետին եզերացը վրայ ազատ եղած էր ու Աւստրիացւոց դէմ դիւրութեամբ իր զօրքերը կրնար քալեցընել եւ յաջողութեամբ պատերազմիլ։ Ուստի եւ աս հեղ պատգամաւորներուն խնդիրքին զիջաւ ու հասարակապետութեան վրայ զօրաց պարէնը հոգալու պարտք դնելէն ետքը՝ յանձն առաւ որ առ այժմ Վենետիկ իր չէզոքութեան մէջ թողու եւ ետքն ալ անոր հետ բարեկամութեան կամ նիզակակցութեան դաշն դնէ։ — Աս ատենները (1797. Յուլ.) Անգղիացիք ալ Գաղղիացւոց Իտալիայի մէջ զօրանալը տեսնելով, ստիպեցան Գորսիկա կղզին թողուլ ելլել ու Էլպա կղզին քաշուիլ։

Այսպիսի յաջողութեամբ Գաղղիացւոց զէնքերը Իտալիայի մէջ յաղթանակներ կանգնելով ու Աւստրիացւոց զօրքը տկարացընելով եւ Ատիճէ գետէն անդին վռնտելով, դէպ ի Տիրոլ յառաջ կը քշէին։ Միայն Մանդուայի զօրաւոր բերդը Աւստրիացւոց ձեռքը մնացած էր։ Պոնաբարդէ ասոր պաշարումը յաջողցընելու

Համար՝ ուղեց յառաջագոյն ուրիշ տեղերն առնելէն ետքը՝ անոր վրայ քալել. բայց եւ կը փութար որ Աւստրիացիք նոր ու զօրաւոր բանակով մը Իտալիա գալէն առաջ նոյն հզօր բերդն ալ առնու։ Ուստի իր զօրաց մէկ մեծ մասը (Յունիս. 3.) խաւրեց՝ անիկայ պաշարելու սկիզբ ընել տալու։ Քանի մը կռիւներով ու փորձերով խել մը ատեն անցնելէն ետքը՝ Աւստրիացւոց Վուրմսէր ծերունի ու քաջ զօրապետը նոր բանակով մը Իտալիա մտաւ, բայց ինք աս բանակը մաս մաս բաժնելով՝ Տիրոլի լեռանց կիրճերէն Իտալիա խոթելու ատենը, տեղ տեղ՝ ինչպէս Լոնադոյի ու Գասդիլեոնէի քովերը (Օգ. 3—5.) Աւստրիացիք յաղթուելով՝ դէպ ի Տիրոլի լեռները ետ քաշուեցան։ Ի վերայ այսր ամենայնի ծերունի զօրապետը չվհատելով՝ քանի մը հեղ ալ իր զօրքովն ետ դարձաւ, եւ թէպէտ Գաղղիացիք երկու հեղ անոր վրայ զօրացան, բայց վերջապէս Վուրմսէր Պասսանոյի քով յաղթուելէն ետքը Լոմբարտիայի մէջէն իր բոլոր զօրքովն անցաւ ու գնաց Մանդուա մտաւ։ Ասոր վրայ Պոնաբարդէ նոյն բերդին պաշարումն Իտալիայի մէջ իր գլխաւոր գործքն ըրաւ, Աւստրիայի կողմանէ ալ ամէն ջանքն ի գործ դրուեցաւ աս զօրաւոր պատսպարանը ձեռքէ չհանելու։ Պաշարման ատենը շատ մը նոր աւստրիացի զօրք Ալվինցի զօրապետին հրամանին տակ Իտալիա մտան, ու քանի մը արիւնալից կռիւներ եղան՝ թէ աս նոր բանակին ու թէ Վուրմսէրի զօրացը հետ Ռովերեդոյ, Պասսանոյ ու Գալտերոյ քաղաքներուն մօտ, որոնց մէջ Գաղղիացիք այնչափ յաջողութիւն չունեցան։ Բայց քիչ մը ետքը Արքոլէի քով տրուած երեքօրեայ (Նոյ. 15. 16. 17.) մեծ պատերազմին մէջ Պոնաբարդէ շատ զօրք կորսնցընելէն ետեւ՝ նշանաւոր յաղթութիւն մ'ընելով, ստիպեց զԱլվինցի իր զօրքովը Պրենդայի ետեւը քաշուիլ։ Հոն Ալ-

վերցի քիչ ատենուան մէջ նաեւ իր զօրութիւնն աւելցընելով, Մանդուայի օգնութեան եկաւ։ Սակայն Աւստրիացիք իրենց ամէն ջանքերն ու քաջութեամբը չկրցան Պոնաբարդէին ու անոր զօրաց հաստատութեան յաղթել ու Մանդուա պաշարմանէ ազատել։ Յամի 1797 Յունու. 16ին Ռիվոլի քաղաքին քով ըլլող մեծ ճակատին մէջ Պոնաբարդէ արտաքոյ կարգի հնարքներ բանեցընելով՝ կատարեալ յաղթութիւն տարաւ։ Աւստրիայի բանակին մէկ մասը, որն որ մինչեւ Մանդուայի բերդին մօտերը հասած էր, Գաղղիացւոց ձեռքը գերի ինկաւ. որուն վրայ Վուրմսէր ալ բերդին պաշտպանութիւնն անկարելի տեսնելով, որովհետեւ բերդապահաց զօրաց պաշարը բոլորովին սպառած ու սովը զանոնք ջարդելու սկսած էր, որոշեց պատուաւոր դաշինքով մը յաղթողին անձնատուր ըլլալ ու բերդն անոր թողուլ։ Եւ այսպէս ամէն բան կարգի դրուելէն ետքը (Փետր. 2) նոյն ծերունի զօրավարը իր զօրքովը ու վեց թնդանօթով բերդէն ելաւ Տիրոլ գնաց։ Մանդուայի բերդը Գաղղիացւոց ձեռքն իյնալով՝ գրեթէ բոլոր Իտալիա իրենց ձեռքը կը սեպուէր, որով եւ իրենց բանակին ու անոր զօրավարին (Պոնաբարդէին) ալ արշաւանքը Իտալիայի երկու գլխաւոր տէրութեանց՝ Սարդինիայի ու Աւստրիայի՝ վրայ ստացած կատարեալ յաղթութեամբը հիմակու հիմայ լմընցած էր։

Հոս մտադրութիւննիս քիչ մ'ալ Իտալիայի ուրիշ կողմերը դարձընենք, ուր Գաղղիացւոց զօրքն ու զէնքը, կամ ճիշդ խօսելով Պոնաբարդէին յաջողակութիւնն ալ միջոցիս մէջ քանի մը նշանաւոր գործքեր կատարեց։ Վերակացուաց ժողովը քանի մը ամիսէ ի վեր Պոնաբարդէէն ամէն ճշդութեամբ ու խստութեամբ կը պահանջէր՝ որ Գաղղիայի հասարակապետութեան զօրու-

թիւնը Հռոմայի քահանայապետութին ու Նէապոլսոյ թագաւորին զգալի ընէ։ Պոնաբարդէ՝ ինչպէս ըսինք՝ քանի մը կռիւներէ ետքը՝ մեծ դժուարութիւններու յաղթելով, Վերին Իտալիոյ մէջ Ադիճէ գետին եզերքը կամ գիծը 20 հազար զօրքով բռնած ապահովցուցած ըլլալով, իր գլխաւոր զօրութիւնն անկից հեռացընել չէր ուզեր։ Բայց աս կողմանէ ապահով ըլլալէն ետքը, միանգամայն Մանդուայի պաշարման եւ Միլանի պահպանութեան համար որոշուած 15 հազար զօրքն ալ չտկարացընելով, ուզեց միայն Բօյ գետին միւս կամ աջ կողման երկրին վրայ քանի մը գունդ զօրք տարածել ու բոլոր Իտալիոյ թերակղզին ահու դողու մէջ ձգել ու Գաղղիացւոց գլուխ ծռել տալ. առանձինն Հռոմայի քահանայապետն ու Նէապոլսոյ թագաւորը կամ մանաւանդ թագուհին, որն որ Գաղղիացւոց դէմ արտաքոյ կարգի մեծ ատելութիւն ունէր, հասարակապետութեան կամաց ու պահանջմանց խոնարհեցընել։ Ուստի (1796) Յունիս ամսոյն մէջ Օժըրոյ զօրավարին հրամանին տակ զօրաց բաժին մը Բօյ գետն անցնիլ ու քահանայապետին երկրին մէջ Պոլոնիա քաղքին վրայ քալել տուաւ. նաեւ Վոպուա զօրավարին հրամանին տակ հինգ հազար զօրք ալ դէպ ի Մոտենայի երկիրը քալեցուց։ Աս զօրքերուն այսպէս յառաջ քալելուն լուրը Նէապոլսոյ տէրութիւնը մեծ վախի մէջ խոթեց. ուստի եւ շուտ մը Պոնաբարդէին պատգամաւորներ խաւրեց բարեկամութեան դաշինք խնդրելու համար։ Պոնաբարդէ մտածելով որ իր ունեցած զօրքովն առ այժմ Նէապոլսոյ վրայ քալելը խոհեմութեան գործ չէ, միանգամայն վախնալով ալ որ Աւստրիացիք իրենց զօրքն Իտալիոյ միւս կողմերը շատցընելով, զինքը Ստորին Իտալիոյ մէջ ազատ գործելու չթողուն, յօժարութեամբ յանձն ա-

ռաւ Նէապոլսոյ հետ զինադադարի դաշն դնել. որուն համար առանց դրամական պահանջում մ'ընելու, ինչպէս ուրիշ պզտիկ տէրութեանց ըրած էր, միայն թէու-թիւն դրաւ՝ որ Նէապոլսոյ նաւահանգիստները Գաղղիայի նաւերուն բաց ու ազատ ըլլան, Անգղիայի օգնութեան համար խաւրած նաւերը ետ առնուին ու Աւստրիացւոց բանակին համար տրուած 2400 ձիաւոր զօրքը ետ կանչուի եւ Գաղղիացւոց դիտողութեան տակ մնայ, որ թշնամութեան գործ մ'ընելու կամ պատերազմելու ըլլայ՝ անոնց գերի ինկած սեպուի։ Պոնաբարդէ աս դաշինքը ստորագրելէն ու հաստատելէն ետքը, ատեն չանցուցած՝ իր զօրքովը Բօյ գետն անցաւ, Օժըրոյի ու Վոպոայի զօրացը հետ միանալու եւ քահանայապետին երկրին մէջ յառաջ երթալու համար։ Յունիսի 19ին Մոտենա հասաւ, որ օրն որ Օժըրոյ ալ իր զօրքովը Պոլոնիա մտած էր. եւ որովհետեւ Մոտենայի դքսին հետ՝ ինչպէս վերը պատմեցինք՝ զինադադարի դաշն դրած էր, անոր համար անոր երկրին ու իշխանութեան վնաս մը չհասցընելով, ճամբայ ելաւ Պոլոնիա երթալու։ Քահանայապետին երկրին մէջ ամէն տեղերէն առաջ Ուրպինոյ ամրոցին պահապանները ստիպեց անձնատուր ըլլալու եւ ամրոցն իրեն յանձնելու. մէջի 60 հատ մեծ թնդանօթներն անմիջապէս Մանդուա պաշարող զօրաց խաւրեց։ Երբ որ Պոլոնիա հասաւ, բնակիչքը քահանայապետէն ապստամբելու պատրաստութիւննին իրեն յայտնեցին ու մի եւ նոյն ատեն թէ Պոլոնիայի ու թէ Ֆերրարայի կուսակալութեանց պատգամաւորներն իր առջին գալով՝ խնդրեցին որ իրենց երկիրները Գաղղիացւոց պաշտպանութեան տակ ազատ հրատարակէ։ Պոնաբարդէ քահանայապետին իրաւանց ամէնեւին նկատում չընելով՝ ապստամբաց խնդիրը կատարեց ու իրենց առժա-

մանակէտյ անկախութիւն տուաւ, խոստանալով որ խաղաղութեան դաշինք դրուելու ատեն՝ նոյնը քահանայապետին հաստատել կու տայ։ Անոնց աւելի ապահովութիւն մ'ալ տալու համար Այսրպադոսեան (Բոյ գետին ասդիի կողման) անուամբ հասարակապետութիւն մը հաստատեց, որուն մասերը պիտի սեպուէին Պոլոնեա ու Ֆէրրարա գաւառներէն զատ՝ Մոտենա ու Ռեճճիոյ ալ։ Նոյն ատեն նաեւ Անդրպադոսեան (Բոյ գետին անդիի կողման) անուամբ ուրիշ հասարակապետութիւն մ'ալ հրատարակեց, որուն մէջ էին Լոմպարտիայի քանի մը գաւառները, ինչպէս նաեւ Վենետիկոյ երկրին քանի մը մասերը։

Աս դէպքերն ու Գաղղիացւոց զօրաց յառաջ քալելը Հռոմայի մէջ մեծ շփոթութիւն պատճառեցին. ծերունի քահանայապետը Պիոս Զ. Գաղղիացւոց ու մանաւանդ անոնց զօրապետին դիտումն աղէկ ճանչնալով ու եկեղեցւոյ ստացուածներուն բոլորովին թշնամեաց ձեռքն իյնալու վտանգի մէջ գտնուիլը յայտնի տեսնելով, փութաց իր կարդինալներուն հետ խորհուրդ ընելու ու Հռոմ նստող Սպանիայի Ազարա դեսպանը՝ որն որ Գաղղիացւոց բարեկամ էր, իբրեւ միջնորդ՝ Պոնաբարդէին պատգամաւոր խաւրեց։ Ազարա զՊոնաբարդէ Պոլոնեա գտաւ ու Պիոս Զ.ին խաղաղական միտքն անոր յայտնելով, խնդրեց որ Գաղղիայի զօրքերը Հռոմայի երկրին մէջ թշնամութեան գործքերէն ետ կենան ու քահանայապետին իշխանութեան վնաս բերելու հնարքներ չբանեցընեն։ Պոնաբարդէ, որն որ Իտալիայի աս կողմերուն գործքերը շուտով լմնցընել ու Աւստրիացւոց դէմ անձամբ գործելու համար Վերին Իտալիա ու Մանդուա դառնալ կը փութար, Ազարայի միջնորդութիւնն ընդունեցաւ ու քահանայապետին դէմ պատերազմ չընել

խստացաւ. բայց պահանջեց որ նախ, Պոլոնեայի ու Ֆեր-րարայի կուսակալութիւններն ազատ ու անկախ մնան. երկրորդ, Անգոնա Գաղղիացի պահապան դրուի. երրորդ, քահանայապետը Գաղղիացւոց քսան ու մէկ միլիոն ֆրանք տուգանք վճարէ. ու չորրորդ, բանակին պիտոյից համար ցորեն կամ արմտիք ու եղ կամ միս տայ. ասկէց ի զատ նա եւ հարիւր հատ ընտիր նկարներ կամ արձան-ներ Գաղղիայի պարգեւէ: Պատգամաւորը յանուն քահա-նայապետութեան աս պայմաններն ընդունեցաւ ու Պոնաբարդէ (Յունիս. 26) Հռովմայի երկրէն ելաւ Տոսկանա անցաւ: Եւ որովհետեւ հոնատեղաց մեծ դուքսին հետ Գաղղիա-ցիք ան ատեն թշնամութիւն չունէին, անոր համար հոն բարեկամութեամբ վարուեցաւ, բայց այնպէսով ալ Լիվոռ-նոյ քաղաքը պահապան զօրք թողուց, որովհետեւ աս քաղքին կուսակալը Գաղղիացւոց դէմ քանի մը թշնա-մութեան գործքեր ըրած էր. միանգամայն քանի մը գաղղիացի գործակալներ անուանեց, որ Լիվոռնոյ գըտ-նուող այն ամէն ստացուածներն ու վաճառքը՝ որոնք Անգղիայի, Աւստրիայի ու Ռուսիայի տէրութեանց կամ հպատակաց կը վերաբերէին, ժողվեն առնեն: Այսպէս քանի մը օրուան մէջ ու քանի մը հազար զօրք Բոյի ալ կողմն անցընելով, Պոնաբարդէ Ստորին Իտալիայի մէջ այս ամէն գործքերը կատարելէն ետքը՝ աճապարեց Ման-դուա դարձաւ, ուր ինչպէս նաեւ Ատիճէ գետին գծին վրայ, Յուլիսի վերջերը բոլոր իր զօրաց թիւը (ըստ Թիէ-րի) քառասուներկու հազարի չափ ըլլալով, վերը պատմուած պատերազմներն ըրաւ ու վերջապէս Ման-դուա առաւ, որն որ ինչպէս գրեցինք, 1797ին սկիզբ-ներն եղաւ:

Պոնաբարդէ Մանդուայի քով պատերազմը լմըն-ցընելէն, Վուրմզէրին հետ ըլլալու բանակցութեան ու

անոր պատուաւոր կերպով բերդէն ելլելուն եւ Աւստրիայոյ երկիրն անցնելուն պայմաններն որոշելէն ետքը, անոնց գործադրութիւնը Սերիւրիէ զօրավարին յանձնեց ու ինք աճապարեց նորէն քահանայապետին երկրին վրայ քալեց. որովհետեւ յառջի անգամ (1796. Յունիս.) ան կողմերն ըրած կարգադրութիւնները հաստատ պահուած չէին։ Վերակացուաց ժողովը թէպէտ եւ կը բաղձար աս անգամ Հռոմայի քահանայապետին հետ ա-ռանց նկատման վարուիլ եւ անոր աշխարհական իշխանութեան վերջ տալ, բայց Պոնաբարդէին վրայ աս բանիս համար ստիպիչ պարտք չդրաւ, հապա իրեն ազատութեան թողուց ըստ պարագայից ու իր խոհեմութեան պատշաճ երեւցածին համեմատ գործելու։ Պոնաբարդէ իր կողմանէ կ'ուզէր աս հեղ ալ նոյն կողման գործքերը շուտով լմնցընել, միայն քահանայապետին երկիրներէն քանի մը գաւառ ալ գրաւելով՝ զանիկայ իր աշխարհական իշխանութենէն բոլորովին զրկելու չաշխատիլ։ Ինչու որ նախ՝ չէր ուզեր Վերին Իտալիայէն երկայն ատեն դուրս մնալ, որովհետեւ Աւստրիացւոցմէ միշտ վախ ունէր եւ միանգամայն կ'ուզէր հոնկից Աւստրիայի երկիրը մտնել ու դէպ ի Վիէննա առաջ քալել։ Երկրորդ, չէր ուզեր քահանայապետին իշխանութեան դէմ շիտակ շիտակ գործելով՝ կրօնական պատերազմ մը պատճառել ու բոլոր հռոմէական եկեղեցւոյ հպատակ ըլլող տէրութիւնները Գաղղիայի դէմ թշնամի ընել. մանաւանդ Նէապոլսոյ տէրութիւնը, որ թէպէտ Գաղղիայի հետ քիչ մը առաջ բարեկամութեան դաշն դրած էր, բայց միշտ պատրաստ էր անոր թշնամի դառնալու։ Այս ամենայն մտածելով խորագէտ Պոնաբարդէ շիտակ Պոլոնիա գնաց, եւ հոն Գաղղիացի զօրաց ինչպէս նաեւ Իտալիայի մէջ ժողված զօրքերուն գլուխն անցած՝ սկսաւ դէպ ի Հռոմ

յառաջ քալել։ Քահանայապետական կառավարութիւնն աս գոյժն առածին պէս՝ սկսաւ բռնի կերպի պատերազմի պատրաստութիւն տեսնել, Նէապոլսոյ թագաւորէն եւ ուրիշներէն կաթուղիկէ եկեղեցւոյն անուամբ օգնութիւն խնդրեց, եկեղեցականաց ձեռքով ժողովուրդն ու գեղացիները յորդորելով՝ Եկեղեցւոյ տէրութեան դէմ պատերազմի եկողները վռնտելու համար զէնք առնել տուաւ։ Ասանկով քանի մը (7—8) հազար կանոնաւոր զօրք ու շատ մ՚ալ զէնքով ու գաւազաններով պատրաստուած գեղացիք Գոլլի զօրապետին հրամանին տակ Գաղղիացւոց յառաջ քալող զօրացը դէմ սկսան երթալ։ Պոնաբարդէ (1797. փետր. 4.) իր զօրաց մէկ մասը յառաջ քալեցուց. Սանիոյ գետին քովերը քահանայապետական զօրաց մէկ մասին յաղթելով՝ նոյն գետն անցաւ, Ֆաէնցա քաղաքն առաւ, եւ բոլոր երկրին մէջ ծանուցում ըրաւ որ Գաղղիացւոց միտքը՝ գիւղացիները ջարդել, կրօնի ու քահանայապետին դէմ պատերազմիլ չէ, հապա անոր քովն ըլլող չարամիտ խորհրդականները հեռացընել ու իրեն հետ եւ իր երկրին մէջ բարեկամութեամբ վարուիլ։ Աս ծանուցումէն ետքը Ֆաէնցայէն ելաւ, առանց հակառակութիւն կրելու՝ յառաջ գնաց, Ֆորլի, Չեզենա, Ռիմինի, Բեսարոյ ու Սենեկալիա քաղաքներն առաւ։ Աս միջոցիս Գոլլի զօրապետն իր ձեռացը տակ մնացած երեք հազար քահանայապետական կանոնաւոր զօրքով Անգոնայի քով աղէկ դիրք մը բռնած, թշնամեաց գալուն կը սպասէր։ Պոնաբարդէ հասաւ, աս զօրքը շրջապատեց, մեծ մասը գերի ըրաւ, բայց ամենուն ալ ազատութիւն տուաւ՝ իրենցմէ խոստում առնելով որ Գաղղիացւոց դէմ թշնամութիւն չընեն չպատերազմին։ Ասկից ետքը յառաջ քալեց, Լորեդդոյ քաղաքը մտաւ, ուր է Ս. Աստուածածնայ համ-

թաւաւոր տունը, որուն գանձերը քահանայապետին հրամանաւ ըստ մեծի մասին ուրիշ տեղեր փոխադրուած էին. ուստի Պոնաբարդէ մէկ միլիոն ֆրանգի չափ արծաթ ու ոսկի գտնելով՝ կողոպտեց առաւ ու Ս. Աստուածածնայ արձանն ալ Փարիզ խաւրեց։ Անկէց ելաւ ու դէպ ի ներս ցամաքը յառաջելով՝ (Փետր. 13.) Դոլենդինոյ քաղաքը հասաւ, ուր քանի մը օր մնաց դիտելու եւ իմանալու համար որ իր ասանկ յաղթութեամբ շուտ շուտ դէպ ի Հռոմ յառաջ քալելն ու ամէն տեղ բռնած գերիներուն ազատութիւն տալը հոն ինչ ազդեցութիւն կ'ընէ, ինչ հետեւութիւն կ'ունենայ։ Նոյն ատեն նաեւ ան քաղաքն ըլլող Կամալդուլեան աբեղաներուն ընդհանուր առաջնորդը, զորն որ Պիոս Զ. շատ կը սիրէր ու կը յարգէր, իբրեւ պատգամաւոր Հռոմ խաւրեց, որ քահանայապետին իր բարեկամական դիտումն ու պատուաւոր խաղաղութիւն մ'ընելու փափագը յայտնէ։ Աս պատգամաւորը Հռոմ հասած օրն արդէն քահանայապետը պատրաստուած էր կառք նստելու եւ Հռոմայէն ելլելու, որպէս զի Գաղղիացիք Հռոմ հասնելէն առաջ՝ իր երկրին հեռաւոր մէկ քաղաքին մէջ ապահովութիւն գտնէ։ Պատգաւորը Պոնաբարդէին կամքն ու առաջարկութիւնը քահանայապետին յայտնելէն ետքը զինքը համոզեց որ Հռոմ մնայ։ Պիոս Զ. Պոնաբարդէին շուտ մը պատգամաւորներ խաւրեց Դոլենդինոյ, իրենց լիակատար իշխանութիւն տալով որ անոր հետ խաղաղութեան դաշն դնեն, բաւական որ կրօնի դէմ բան չպահանջէ։ Եւ որովհետեւ Պոնաբարդէ նոյն ժամանակ ամենեւին ասանկ պահանջմունք չէր ըներ, անոր համար խաղաղութեան դաշինքը (Փետր. 19) հետեւեալ պայմաններով հաստատուեցաւ. Ա. Քահանայապետը մինչեւ ան ատեն Գաղղիայի դէմ ուրիշ տէրութեանց հետ ըրած դաշնա-

կցութիւններէն ետ կը կենայ, Գաղղիական Հասարակապետութիւնը կը ճանչնայ ու անոր հետ խաղաղութիւն ու բարեկամութիւն պահել կը խոստանայ։ Բ. Հին սահմաններէ վեր Գաղղիայի մէջ Վընեսէնի ու Աւինեոնի վրայ ունեցած իրաւունքէն կը հրաժարի *։ Գ. Պոլոնեայի ու Ֆերրարայի կուսակալութեան երկիրները, ինչպէս նաեւ Ռոմանեա գաւառը, Այսրպադոսեան Հասարակապետութեան կը թողու։ Դ. Անգոնա քաղաքն ու բերդը Գաղղիացւոց ձեռքը կը մնան մինչեւ ընդհանուր խաղաղութիւն հաստատուելու ժամանակը։ Ե.

* Վընեսէն ու Աւինեոն միասին հիմայ Գաղղիայի Վոգլիւզ նահանգը կը կազմեն։ Վընեսէն ի սկզբան զատ կոմսութիւն մըն էր. իսկ Աւինեոն մասնաւոր քաղաք մըն էր՝ իր շրջակայ պզտիկ սահմանովը. երկուքը միասին Թուլուզի կոմսերուն ժառանգութիւնն էին, որոնցմէ Բրովանսի կոմսերուն անցան։ Ասոնցմէ՝ Աւինեոն ժառանգութեամբ Անժու ազգատոհմին անցաւ, եւ Նէապոլսոյ Յովհաննա Ա. իշխանուհին, որն որ նոյն ազգատոհմէն էր, յամի 1348ին Աւինեոն քաղաքն իր սահմանովը Հռոմայի քահանայապետին 80,000 ոսկի գահերկանով ծախեց։ Վընեսէն դքսութիւնն անկէց իբր եօթանասուն տարի առաջ քահանայապետաց ժառանգութիւնն եղած էր. որովհետեւ Փիլիպպոս Գ. Գաղղիայի թագաւորը, որն որ ժառանգութեամբ նոյնին տէրութիւնն առած էր, զանիկայ (1273ին) Գրիգոր Ժ. քահանայապետին տուաւ։ Յամի 1305ին, երբ որ դեռ Աւինեոն քահանայապետաց ստացուածը չէր եղած, Կղեմէս Ե. Հռոմայի մէջ ըլլող խռովութիւններէն ստիպելով՝ իր աթոռը նոյն քաղաքը հաստատեց, ուր եւ իրմէ ետքը 70 տարիի չափ իր յաջորդները նստեցան (Տես Էջ 94.), եւ բոլոր աս ատենները Գաղղիայի թագաւորներուն ազդեցութեան տակ մնացին։ Երբ որ քահանայապետները խել մը տարիներէ ի վեր Աւինեոն նստելէն դադրեր էին ու Հռոմ կը նստէին. նոյն թագաւորները երեք հեղ, 1622ին, 1688ին ու 1768ին Աւինեոն ու Վընեսէն իրենց իշխանութեան տակ առին, այլեւայլ թշնամութեանց պատճառներով քահանայապետներէն վրէժ առնելու համար. բայց հաշտութիւն ըլլալէն ետքը՝ նորէն իրենց օրինաւոր տէրանց թողուցին։ Վերջապէս Գաղղիայի վերջին մեծ յեղափոխութեան սկիզբները յեղափոխականք (1791ին) առանց պատճառի ու մասնաւոր ազդարարութեան՝ նոյն երկիրներն առին եւ Գաղղիայի ուրիշ մասանց հետ միացուցին։ Ասիկայ անփոփոխ պահելու համար՝ Պոնաբարդէ Դոլէնդինոյի դաշանց պայմաններուն մէկն ըրաւ, քահանայապետն՝ Աւինեոնի ու Վընեսէնի վրայ ունեցած հին իրաւունքէն հրաժարել տալ։

Ուրպինոյ ու Մաչերադա դքսութեանց երկիրները, զորոնք Գաղղիացիք բռնած էին, քահանայապետին ետ կը տրուէին. բայց ինքն ալ ասոր դէմ Գաղղիացւոց 15 միլիոն ֆրանք կը վճարէ: Զ. Քանի մը ամիս առաջ Պոլոնեայի մէջ եղած զինադադարին ատենը խոստացուած գումարը՝ որն որ դեռ վճարուած չէր, անյապաղ կը վճարուէր ու նոյն ատեն որոշուած ճարտարարուեստ գործուածներն ու հին ընտիր ձեռագիրները շուտ մը Փարիզ կը խաւրուէին: Աս գումարներուն երեք մասին երկուքը միայն՝ պարզ դրամով կը վճարուէր, իսկ մնացած մէկ մասն ադամանդով կամ պատուական քարերով: Ասոնցմէ ի զատ քահանայապետին վրայ պարտք կը դրուէր՝ Գաղղիացւոց ձիաւորներուն համար 800 ձի, բեռ կրելու եւ կառք քաշելու համար ալ 800 ձի տալ. ինչպէս նաեւ շատ մը դոմէշ եւ ուրիշ՝ զօրաց հարկաւոր ըլլող պաշարներ մատակարարել. դարձեալ, Պասվիլ դեսպանական քարտուղարին Հռոմայի մէջ սպաննուելուն համար՝ անոր ժառանգներուն եւ նոյն պատճառով վնաս կրողներուն 300,000 ֆրանք տուգանք վճարել: Աս դաշինքը հաստատելէն ետքը Պոնաբարդէ Վերին Իտալիա դարձաւ ու սկսաւ կարեւոր պատրաստութիւնները տեսնել դէպ ի Ալպեան լեռները քալելու, որ անոնց վրայէն անցնելով՝ Աւստրիայի մայրաքաղաքին վրայ երթալու ճամբան բռնէ: Բայց զԻտալիա իր կռնակը թող տալէն ու անկից դուրս ելլելէն առաջ՝ հոն ըրած յաղթութիւններուն պտուղը չկորսնցընելու համար՝ քանի մը հարկաւոր զգուշութիւններ ի գործ դնելու փութաց:

Պոնաբարդէ գիտէր կամ կրնար հաստատութեամբ մտածել՝ որ ինք Գաղղիայի զօրաց մեծ մասովն Իտալիայէն Գերմանիա անցածին պէս՝ Իտալիայի տէրութիւնները, Գենուայի ու Վենետիկոյ հասարակապե-

տութիւնները, Տոսկանա, Նէապոլիս, Սարդինիա եւ Հռոմայի տէրութիւնք իրենց մօտն ու սահմաններուն վրայ Գաղղիացւոց ազդեցութեամբը երկու նոր հասարակապետութիւններ, այսինքն Այսրպադոսեան ու Անդրպադոսեան ռամկապետական իշխանութիւններ կանգնուելովն իրենց երկիրներուն մէջ գրգռուած յեղափոխական շարժմունքը խափանելու համար՝ ամէն մէկը զատ զատ կամ իրարու հետ միաբանելով՝ Գաղղիացւոց դէմ գլուխ վերցընելու եւ անոնց հետ թշնամութեամբ վարուելու պիտ՚ որ սկսին։ Աս բանիս ըստ կարի արգելք դնելու համար յառաջատես զօրապետը յիշեալ տէրութիւնները նոր դաշինքով Գաղղիայի հետ կապելու աշխատեցաւ։ Սարդինիայի Կարոլոս Էմմանուէլ Դ. Թագաւորին հետ (որուն հայրը Վիկտոր Ամադէոս 1796. Հոկտ. 16ին մեռած էր,) դաշն դրաւ Գաղղիայի նիզակակից ըլլալու՝ թէ իրար պաշտպանելու եւ թէ որպիսի եւ իցէ թշնամւոյ դէմ պատերազմելու համար։ — Նէապոլսոյ տէրութեան ակարութիւնը ճանչնալով՝ անոր միայն սպառնալիք ըրաւ՝ որ եթէ Գաղղիացւոց հետ գրած բարեկամութեան դաշինքը խախտելու փորձ մ՚ընէ, հասարակապետութիւնն իրեն հետ ամէն խստութեամբ վարուելու միջոցներ կը գտնէ։ — Վենետիկի հասարակապետութիւնն ալ այլեւայլ հնարքներով ու խոստմունքներով հաւանեցընելու աշխատեցաւ, որ ա՛լ Գաղղիայի նկատմամբ չէզոքութեան մէջ չկենայ, հապա մասնաւոր նիզակակցութեան ու բարեկամութեան դաշն դնէ։ Աս առաջարկութիւնն ընելն անոր համար աւելի հարկաւոր սեպեց, որ Վենետիկի տէրութիւնը քանի մը ամսէ վեր ներքին խռովութիւններէն զանազան վախեր ունենալով՝ մեծ պատրաստութիւններ կը տեսնէր ու նոր զօրք կը ժողվէր։ Բայց հոս իր ամէն ջանքը պարապ եղաւ. Վենետացիք

իրենց չէզոքութեան մէջ հաստատ մնացին։ — Քահանայապետին երկրին մէջ Պօնաբարդէին հրամանաւը քիչ մը Գաղղիացի զօրք մնաց Վիկտոր զօրավարին տակ՝ մինչեւ որ Դոլենդինոյի դաշին համեմատ որոշուած գումարը վճարուի եւ ուրիշ խոստմունքն ամբողջ կատարուին։ Այսպէս Դոսկանայի ու Բարմայի հետ ալ եղած կարգաւորութիւնները նորոգելով ու ամրացընելով, առանց ատեն կորսընցընելու՝ զօրքը յառաջ քալեցուց դէպ ի Աւստրիայի սահմանը, ուր Մարտի սկիզբները սկսաւ Կարոլոս արքիդքսին հրամանին տակ ըլլող Աւստրիացւոց բանակին դէմ պատերազմելու։

Հազիւ թէ Պօնաբարդէ Իտալիայի մէջ ըլլող Գաղղիական զօրաց մեծ մասովը նոյն երկրէն դուրս ելած էր, Վենետիկի հասարակապետութեան տակ գտնուող ցամաք երկրին այլեւայլ քաղաքներուն մէջ շատոնցուընէ վեր վախցուած յեղափոխական շարժումները յայտնուելու եւ զայրանալու սկսան։ Աս խռովութիւններուն Գաղղիայի յեղափոխականաց գրգռութեամբը շուտ կամ ուշ ծագելիքին վրայ ծերակոյտը տարակոյս չունենալով՝ ինչպէս յառաջագոյն ըսինք՝ իր պատրաստութիւնները ատենին տեսնելու սկսած էր։ Արդ՝ Վենետիկի տէրութեան տակ գտնուող Պերկամոյ, Պրեշիա, Սալոյ ու Գրեմա քաղաքներուն մէջ շատ ազնուական ու հարուստ գերդաստաններ կային որոնց, ինչպէս նաեւ քաղաքացւոց կարգէն շատ երեւելի գերդաստաններու եւ անձինքներու, ծերակուտին հին ազնուապետական խիստ օրէնքներն ու կարգերը օրէ օր աւելի դառն ու անտանելի կ'երեւային։ Ամենէն աւելի Պերկամոյի ու Պրեշիայի մէջ գրգռութիւնը զայրացած էր, առաւելապէս Միլանի մէջ Պօնաբարդէին ձեռքով իտալական ազատութեան յոյսերուն հաստատուիլն իմանալով։ Պերկամոյցիք ամենէն

*տուաւ ապստամբութեան դրօշը բացին* (1797. *Մարտ.* 12.), *ծերակուտէն դրուած քաղաքապետը վռնտեցին, շուտ մը Միլան պատգամաւորներ խաւրեցին ու Լոմպարտացիներէն իրենց ազատութեան յաջողելուն համար օգնութիւն խնդրեցին: Հոն բորբոքած ապստամբութեան հրդեհը արտաքոյ կարգի շուտութեամբ տարածուելով՝ Պրեշիա եւ ուրիշ մօտաւոր քաղաքները հասաւ: Պրեշիայի քաղաքապետը չկրնալով ապստամբութիւնը զսպել, քաղաքը թողուց ելաւ. նոյնպէս ուրիշ քաղաքներէն ալ ծերակուտէն դրուած պաշտօնատարներն ելան հեռացան:*

*Աս քաղաքներուն մէկ քանիին մէջ Պոնափարդէն դրուած Գաղղիացի պահապան զօրքերը թէպէտ չէզոք կը կենային, եւ ոչ մէկ կողման կ'օգնէին, սակայն ապստամբք անոնց անգործութիւնն ու անհոգութիւնը տեսնելով՝ յոյսերնին կ'աւելնար ու աւելի համարձակութեամբ իրենց խորհուրդները յառաջ կը տանէին: Իսկ ծերակոյտը ապստամբութեան մասնակից չըլլող գեղացիներն ու լեռնաբնակները իր պաշտօնատարաց ու եկեղեցականաց ձեռքովը յորդորելով ու զինելով, ապստամբաց դէմ կը խաւրէր. եւ որովհետեւ Պոնափարդէին նոյն ատենները Աւստրիացւոց հետ Ալպեան լեռանց միւս կողմը սաստիկ կռուոյ մէջ ըլլալը յայտնի էր, անոր համար ծերակոյտն անկէց վախ չունենալով՝ իր զինուորներուն հրաման տուաւ որ չէ թէ միայն ապստամբաց դէմ, այլ եւ պէտք եղած տեղ նաեւ Վենետիկի երկրին մէջ գտնուող Գաղղիացւոց դէմ իրենց զէնքերը բանեցընեն: Ասկից ի զատ նաեւ իր կանոնաւոր զօրքը դէպ ի Մինչիոյի քովերն ըլլող քաղաքներն երթալու եւ զանոնք ապստամբաց դէմ պահպանելու ճամբայ հանեց: Ասոր վրայ Պոնափարդէին Իտալիա ձգած Գիլմէն զօրապետը՝ ծերակուտին զօրաց դէմ իր պատրաստութիւնները տես-*

նելէն ետեւ՝ շուտ մը ապստամբութեան ու ծերակուտին բռնած ընթացքին վրայ Պոնաբարդէին տեղեկութիւններ խաւրեց. միանգամայն քահանայապետին երկիրները գտնուող Վիկտոր զօրավարին ալ Հռոմին խաւրեց որ իր զօրքովը փութայ Մինչիոյի քովերը գայ։ Մի եւ նոյն ատեն ծերակոյտը Գաղղիոյի վերակացուաց ժողովոյն կարծիքը Վենետիկ նստող դեսպանին ձեռքովն իմանալ ուզեց՝ թէ այս ապստամբութեան նկատմամբ Գաղղիա ինչ ընթացք պիտի՛ որ բռնէ։ Դեսպանը նոյն ժողովէն ընդունած հրահանգին համեմատ՝ պատասխանեց որ Գաղղիա իր խոստմանն համեմատ պատրաստ է Վենետիկի հասարակապետութեան՝ արտաքին թշնամեաց դէմ օգնելու, բայց անոր բուն հպատակաց պահանջմունքէն կամ ապստամբութենէն զինքը պաշտպանելու համար խոստում չէ ըրած, հապա խորհուրդ տուած է ու կու տայ՝ որ հին խիստ կարգերուն մէջ փոփոխութիւններ ընելով ու նոր սահմանադրութիւն մը հաստատելով՝ զանոնք զսպէ ու հանդարտեցընէ, որուն մէջ Գաղղիա իրեն կ՚օգնէ։ Ծերակոյտը այս պատասխանն ընդունելէն ետքը խորհուրդի ժողվուեցաւ, որուն մէջ խորհրդականներուն մեծագոյն մասին կարծիքն եղաւ հին սահմանադրութեան մէջ շատոնցուընէ հարկաւոր երեւցող փոփոխութիւններն ընել։ Ասոր վրայ հաստատուն որոշում մը չեղած՝ ծերակոյտը Պոնաբարդէին պատգամաւորներ խաւրեց՝ անոր միտքը Վենետիկի երկրին մէջ եղած դէպքերուն վրայ իմանալու եւ անոր օգնութիւնը խնդրելու համար։

Նոյն ժամանակ Պոնաբարդէ այլեւայլ յաղթութիւններով յառաջ գացած, Աւստրիոյի երկիրներուն մէջ Կորինցիա հասած էր ու Թրիէստի յանձնուելուն եւ Գաղղիացւոց տրուելուն գործքին կը զբաղէր։ Մի եւ նոյն

ատեն հասան իրեն՝ թէ Գիլձէն զօրապետին խաւրած տեղեկութիւններն ու թէ ծերակուտին պատգամաւորները, զորոնք եւ (Մարտ. 25.) պատուով ընդունեցաւ ու իրենց հասկըցուց՝ որ եթէ ծերակոյտն իր հին սահմանադրութիւնը կը փոխէ ու Գաղղիայի պէս իր հպատակացը քանի մը ազատական կարգեր ու նոր սահմանադրութիւն մը կու տայ, ան ատեն ինքն ալ պատրաստ է երկրին մէջ ելած խռովութիւնները դադրեցընելու համար կարեւոր նպաստները տալու։ Պատգամաւորներն աս խորհուրդին չհաւանեցան, մանաւանդ թէ Պոնաբարդէին յայտնի ցուցուցին՝ որ ծերակուտին անկէց պահանջած գլխաւոր օգնութիւնն ան է՝ որ Պերկամոյի, Պրեշիայի ու Վերոնայի ամրոցներուն մէջ զգուշութեան համար դրած գաղղիացի զօրքը ետ կանչէ ու գեղացիներուն եւ հաւատարիմ մնացող ժողովուրդին՝ ապստամբներուն դէմ զէնքով գործելը չարգելու։ Նաեւ աս ալ իմացուցին՝ որ Իտալիա գտնուող գաղղիացի զօրաց համար մինչեւ ան ատեն տուած պարէններին՝ ա՛լ չեն կրնար տալ։ Աս խօսքերն ու պահանջմունքները Պոնաբարդէին բարկութիւնը սաստիկ գրգռեցին. ուստի եւ պատգամաւորներուն հասկըցուց՝ որ ինք ծերակուտին բռնած ընթացքին ու Գաղղիացւոց դէմ Վենետիկի երկրին մէջ ըրած թշնամական գործքերուն վրայ կարեւոր տեղեկութիւններն ընդունած է, եւ կրնայ՝ ինք Իտալիայէն դուրս գտնուելով ալ՝ Լոմբարտիայի մէջ ունեցած զօրքովը ան երկրին մէջ Գաղղիայի զէնքերուն ուժը միշտ բանեցընել։ Ասկից ետքը Պոնաբարդէ ուրիշ հեղ մ՚ալ նոյն պատգամաւորներուն հետ տեսնուելով՝ երբ որ տեսաւ որ անոնք իրենց պահանջմանց ու թշնամական խօսքերուն վրայ հաստատ կեցած են, զիրենք ծանր սպառնալիքներով արձակեց։

*Այս միջոցիս Վենետիկի երկրին մէջ ապստամբութիւնը շուտ շուտ կը յառաջանար ու քաղաքէ քաղաք կը հաղորդէր. Պերկամոյէն, Պրեշիայէն ու Սալոյէն ետքը (Մարտ. 28) Գրեմոյի մէջ սաստկութեամբ սկսաւ։ Նոյն օրերը Գաղղիացւոց զօրաց մէկ մասը հոն մտաւ, առանց ապստամբներուն դէմ թշնամութեան ցոյց մ'ընելու, որոնք անով աւելի համարձակութիւն ստանալով, ծերակուտէն դրուած քաղաքապետը վռնտեցին։ Ծերակուտին գործակալացը ձեռքով զինեալ լեռնականներն ու գեղացիք սկսան ապստամբած քաղաքներուն վրայ քալել։ Գիլմէն ասոնց դէմ քանի մը գնդեր խաւրեց ու քանի մը կռիւներ եղան, քանի մը գեղեր այրեցան։ Գեղացիք աւելի եւս կատղելով՝ կը սպառնային Գաղղիացոցմէ վրէժ առնուլ, եւ իրօք տեղ տեղ շատ Գաղղիացիներ ալ սպաննեցին։ Վերոյիշեալ քաղաքներն իրարու օգնելով եւ Լոմբարտիայէն եկող Իտալացի ու փախստական Լեհերու գնդերէն օգնութիւն գտնելով, լեռնականներն ու գեղացիները հեռացընելու կ'աշխատէին։ Բայց ծերակուտին զօրքն ու կողմնակիցները անոնցմէ շատերը սպաննեցին, շատերն ալ, ինչպէս նաեւ ամէն Գաղղիացւոց կողմնակիցները գերի բռնելով՝ Վենետիկ խաւրեցին, որոնցմէ ոմանք գաղտնի մահուամբ պատժուեցան, ոմանք ալ բանտ դրուեցան։ Ծերակոյտն աս թշնամական գործքերն ըրած ատենը՝ Պոնաբարդէին բարկութենէն միշտ վախ ունենալով, զանիկայ խաբելու եւ սիրտը շահելու համար անոր պահանջած մէկ միլիոն ֆրանգն ամէն ամիս վճարելու յանձն առաւ։ Սակայն նոյն միջոցին նաեւ Գիլմէն զօրապետը՝ ծերակուտին հրամանաւն ու թոյլտուութեամբը Գաղղիացւոց ու անոնց կողմնակցաց դէմ եղած թշնամութեան լուրը՝ Պոնաբարդէին հասուցած ըլլալով, ասիկայ ծերակուտին*

սպառնալեաց թուղթ մը խաւրեց, որուն մէջ կը պահանջէր՝ որ լեռնականները զէնքերը թողուն, բռնուած գերիներն ազատուին ու մինչեւ նոյն ատեն եղած պահանջմունքները շուտ մը կատարուին։ Վենետիկ նստող Գաղղիայի դեսպանին ալ հրաման խաւրեց, որ եթէ ծերակոյտն աս պահանջմունքները կատարելու դանդաղի, ինք հոնկից դուրս ելլէ՝ յայտնելով որ Գաղղիա Վենետկոյ դէմ պատերազմ հրատարակած է։

Իտալիայի մէջ ու անոր նկատմամբ աս դէպքերն եղած ատենը՝ Պոնաբարդէ Կարինդիայի ու Ստիրիայի մէջ իր յաղթութիւնները յառաջ տանելով, Լէոպէն քաղաքին մէջ Աւստրիայի տէրութեան հետ խաղաղութեան դաշանց նախակարգ կամ յառաջընթաց գլխաւոր պայմանները հաստատելու կը զբաղէր, որոնք եւ Ապրիլ 18ին երկու դիաց ստորագրուեցան։ Աս պայմաններուն մէկ քանին Իտալիայի հանգամանաց վրայ էին. Ա. Աւստրիա մինչեւ ան ատեն իր իշխանութեան տակ ըլլող Բելգիայի երկրէն ու Լոմբարտիայի մէկ մասէն կամ Օլիոյ գետէն անդին ըլլող տեղերէն հրաժարելուն համար՝ Իտալիայի մէջ կ'ընդունի՝ ցամաք երկրին վրայ Վենետիկի ունեցած տեղերէն Օլիոյ ու Բոյ գետերուն եւ Ադրիական ծովուն մէջտեղն ըլլող երկիրները, Իստրիայով ու Լիւրիկէի մէկ մասովը, կամ դրեթէ բոլոր Վենետիկի ցամաք երկիրը։ Բ. Վենետիկի հասարակապետութիւնն իր անկախութիւնը կը պահէ. նաեւ Յոնիական կղզիներն իր տակը կը մնան, միանգամայն իր կորսնցուցած տեղերուն հատուցման համար Իտալիայի մէջ Գաղղիայի տիրապետութեան տակ ըլլող գաւառներէն քանի մը տեղերը (Պոլոնեա, Ֆէրրարա ու Ռոմանեա) կ'ընդունի։ Սակայն ինքն ալ իր հին խիստ ազնուապետական սահմանադրութեան մէջ քանի մը փոփոխութիւններ ու չա-

փաւորութիւններ պիտ՚որ ընէ։ Գ. Աւստրիայի կայսրն Իտալիայի մէջ հաստատուած կամ հաստատուելու հասարակապետութիւնները կ՚ընդունի։ Դ. Վենետիկի նկատմամբ ըլլալու ուրիշ ամէն կարգաւորութիւնները Գաղղիայի ու Աւստրիայի տէրութեանց միաբան հաւանութեամբը կ՚որոշուին ու կը հաստատուին։ Ե. Բուն խաղաղութեան դաշինքը հաստատուելէն ետքը՝ Մանդուայի բերդն ու երկիրը, ինչպէս նաեւ Բալմանովայի ու Բեսքիէրայի բերդերն Աւստրիայի իշխանութեան տակ կը մնան։

Պոնաբարդէ Աւստրիայի հետ խաղաղութեան դաշանց նախակարգ պայմաններուն վրայ խօսած ատենը՝ Վենետիկի երկրին մէջ ծերակուտին կողմնակցաց ու զօրաց եւ ապստամբներուն ու Գաղղիացւոց մէջ կռիւները կը շարունակէին։ Ծերակոյտն Իտալիայի սահմանագլուխներուն վրայ ըլլող Գաղղիայի զօրաց Աւստրիայի զօրքերէն վռնտուելով դէպ ի Վերոնայի ու Բալմանովայի բերդերը քաշուելնին, ինչպէս նաեւ Պոնաբարդէին զօրաց տկարանալուն վրայ խառն կամ սուտ լուր լսելով, աւելի համարձակութիւն կը ստանար Գաղղիացւոց դէմ թշնամութեան ցոյցերը յառաջ տանելու։ Եւ թէպէտ Վենետիկ նստող Գաղղիայի դեսպանը կը ջանար ծերակուտին ցուցընել՝ որ Գաղղիացւոց զօրաց մէկ մասին ետ քաշուիլն աննշան բան մըն է ու Պոնաբարդէին զօրաց տկարանալուն վրայ տարածուած լուրը սուտ են, սակայն ծերակոյտն աս ազդարարութիւններուն ականջ չէր կախեր, եւ Վենետիկի երկրին մէջ Գաղղիացւոց թշնամի ըլլող կողմն օրէ օր աւելի կը զօրանար ու գլուխ կը վերցընէր։ Աս թշնամական կողմնակցութիւնն ամէն տեղէն աւելի Վերոնայի մէջ ու մօտերը սաստկութեամբ առաջ կ՚երթար, ուր եւ թէ հասարակապետութեան կա-

նոնաւոր Խալալցի եւ Սլաւ զօրքը եւ թէ իր կողմ զինեալ լեռնականներն ու գեղացիները մէկանց քան հազարի չափ եղած՝ սա տեղս Գաղղիացւոց ձեռքէն ազատելու համար ամէն ճիգն ի գործ կը դնէին։ Գաղղիացւոց բերդապահ զօրապետը Պոլան այսչափ զօրութեան դէմ բերդէն դուրս ելլելն ու պատերազմելը խոհեմութիւն չսեպելով, Վերոնա գտնուող զօրաց մեծ մասը բերդին մէջ ժողվեց։ Ծերակուտին կողմնակիցներն ամէն կողմ բռնելով՝ նոր Գաղղիացի գնդերուն հոն մօտենալու թող չէին տար։ Քաղաքին մէջ ալ ամէն դի տարածուելով՝ չէ թէ միայն ասդին անդին պահապան դրուած գաղղիացի զինուորները, հապա նաեւ դիմացնին ելող զինեալ ու անզէն Գաղղիացիներն անխնայ կը սպաննէին։ Բերդին մէջ երթալ ապահովեալ չկրցող Գաղղիացիները քաղաքին գլխաւորին պաշտօնարանը կը փախչէին. եւ ծերակուտին պաշտօնատէրները զանոնք կատաղեալ բազմութեան սրերէն կը պաշտպանէին, որով կ'ուզէին յայտնի ընել թէ իրենք ու ծերակոյտն այդ ապստամբութեանց հաւանեալ ու մասնակից չեն։ Ասկից ի զատ սա պաշտօնատէրները բերդապահ զօրապետին հետ բանակցութեան մէջ մտնելով՝ կատղած բազմութեան ու Գաղղիացւոց մէջ հաշտութիւն ընել եւ արիւնհեղութիւնը դադրեցընել կը ջանային. մանաւանդ որ նոյն զօրապետը քաղաքը գնդակոծել կը սպառնար։ Բայց քաղաքապետին ու պաշտօնատեարց ջանքը պարապի ելլելով ու բանագնացութիւնն ալ արդիւնք մը չունենալով՝ գնդակոծութիւնը (Ապր. 18.) սկսաւ, ու քաղաքին մէկ քանի կողմը հրդեհ ելաւ. Նոյն ատեն լեռնականք ու գեղացիք ալ իրենց սպանութիւնները կը շարունակէին. Ջարդն ու կոտորածը քաղաքին մէջ ու մօտերը կը տարածէր։

Վերջապէս այսչափ խռովութեանց լուրը Գիլմէն զօրավարին հասաւ, որն որ շուտ մը այլեւայլ գնդերուն հրաման խաւրեց դէպ ի Վերոնա քալելու, որոնք ծերակուտին զօրացը հետ քանի մը հեղ սաստիկ զարնուելէն ետքը՝ եկան քաղաքը պաշարեցին: Ապրիլի 20էն մինչեւ 24 քաղաքին մէջ ըլլող Իտալացիք քանի մը փորձեր ալ ընելէն ետքը՝ վերջապէս անձնատուր եղան: Գիլմէն ջանաց քաղաքը զինուորաց աւարառութենէն ազատ պահել, բայց չկրցաւ. ինք միայն ձեռքերնին զէնքով բռնուած Իտալացիները ազատնել տուաւ. քաղաքին վրայ ալ զօրաց պահպանութեան համար քիչ մը տուրք դրաւ. քաղաքին մօտերն ըլլող զինեալ գեղացիները վանտելու եւ ցրուելու համար իր ձիաւոր զօրքը խաւրեց, եւ կարգն ու հանդարտութիւնը քաղաքին մէջ հաստատելու համար կարեւոր հրամանները տալէն ետքը, Պոնաբարդէին ամէն դէպքերուն վրայ ճիշդ տեղեկութիւններ խաւրեց: — Որովհետեւ վերը յիշուած ապանութիւնները Վերոնայի մէջ զատկի տօնին երկրորդ օրը սկսան, անոր համար նոյն խռովութիւններն ու արիւնհեղութիւնները Իտալիայի պատմութեան մէջ Վերոնային Զատիկ կ'անուանին:

Ծերակոյտը մի եւ նոյն ժամանակ՝ թէ Վերոնայի մէջ եղած արիւնհեղութեանց, թէ նոյն քաղաքին բոլորտիքին Գաղղիացւոց ձեռքն իյնալուն եւ թէ Պոնաբարդէին իր յաղթութիւններէն ետքը Աւստրիայի հետ խաղաղութեան նախակարգ պայմաններուն վրայ դաշն դնելուն լուրերը առաւ: Աս ետքի գործը բոլոր Վենետիկի հասարակապետութիւնը մանաւանդ ծերակոյտն ահ ու դողու մէջ խոթեց. որովհետեւ չէին կրնար տարակուսիլ՝ որ յաղթող Պոնաբարդէ իրենց երկրին մէջ ու գրեթէ իրենց կամօքն ու գիտութեամբը Գաղղիա-

ցւոց դէմ ցուցուած թշնամութեան ու անոնց եղած կոտորածին համար մեծ խստութեամբ վրէժ առնելու պիտի՛ որ աշխատի։ Ուստի շուտ մը երկու պատգամաւորներ խաւրեցին իրեն, ցուցընելու համար որ եղածները՝ տէրութենէ ապստամբողներուն դէմ էր, եւ Գաղղիացւոց կոտորածը, ինչպէս նաեւ Լիտոյի առջեւ (Ապր. 23.) Գաղղիայի նաւերուն դէմ հասարակապետութեան թընդանօթներէն պատճառուած վնասը, ծերակուտին գիտութեամբն ու հրամանաւը եղած չեն։ Այս պատգամաւորները (Ապր. 25.) զՊոնաբարդէ Ստիրիայի Կրաց քաղաքը գտան։ Պոնաբարդէ իսկզբան իր բարկութիւնը յայտնի չընելով՝ զիրենք բարեկամաբար ընդունեցաւ. ու անոնց ջատագովութեան խօսքերը հանդարտութեամբ մտիկ ընելէն ետքը, մէկանց սկսաւ իրենց հասկըցընել որ ինք ամէն եղածներուն ստոյգ լուրերն առած է. անկից ետեւ ալ Վենետիկի հետ քաղցրութեամբ ու բարեկամական կերպով վարուելու ատենն անցած է։ Ծերակոյտը մինչեւ այն ատեն իր (Պոնաբարդէին) բարեկամական խորհուրդներուն մտիկ չըրաւ, իր հին խիստ կարգերուն կամ սահմանադրութեան մէջ՝ առաջարկուած կարեւոր փոփոխութիւններն ընել չուզեց, որով եւ այնպիսի ապստամբութիւն ելլելու եւ այնչափ արիւնհեղութեանց պատճառ տուաւ։ Ինք այնուհետեւ զօրաւոր բանակով Վենետիկի երկիրը գալով՝ այն հին խիստ կարգերը վերցընել պիտի՛ որ տայ. ծերակուտին հետ դաշնադրութիւն ընելու պիտի չաշխատի, հապա անոր հրամաններ՝ ու օրէնքներ պիտի՛ որ տայ։ Պատգամաւորները ջանացին այլեւայլ խոստմունքով Պոնաբարդէին բարկութիւնը հանդարտեցընել ու միտքը դրածէն ետ դարձընել. բայց հնար չեղաւ։ Ուստի եւ (Մայիս 2.) զիրենք խիստ խօսքերով արձակելէն ետքը՝ Վենետիկի հասարակապետ-

տութեան դէմ յայտարարութիւն մը հրատարակեց, ուրով յայտնի կ՚ընէր որ անկից ետքը Գաղղիայի ու Վենետիկի մէջ թշնամութիւնն ու պատերազմը սկսած է։ Նոյն ատեն նաեւ Վենետիկ նստող Գաղղիայի դեսպանին ալ գրեց որ հոնկից ելլէ։ Անմիջապէս հրաման խաւրեց Իտալիա ըլլող Գիլմէն հրամանատարին որ զօրաց մէկ մասը Վենետիկի վրայ խաւրէ։ Աս ատենները Վենետիկ թէպէտ եւ արտաքուստ թէ ծովու եւ թէ ցամաքի կողմանէ աղէկ ամրացած ու պաշտպանուած էր․ սակայն ներքուստ՝ ազնուապետական կարգերու խիստ նախանձախնդրութիւնն ու ազնուականաց, քաղաքացւոց եւ հասարակ ժողովրդեան (արհեստաւորաց ու նաւաստեաց) մէջ եղած այլեւայլ զգածմունքն ու գժտութիւնները վերջի աստիճանի բորբոքած ըլլալով, իրենք զիրենք միաբանութեամբ արտաքին թշնամիներէն պաշտպանելու ոչ զօրութիւն ու ոչ եռանդ ունէին։

Իրերն աս վիճակին մէջ գտնուելով ու Պոնաբարդէ ալ արդէն Իտալիա անցած ու իր զօրքովը Վենետիկի մօտերը հասած ըլլալով, տէրութեան գահերէցը (դոժէն), ծերակոյտն ու ամէն խորհրդականք յուսահատած՝ սկսան խորհուրդ խորհրդի վրայ ընել ու աս դժուարին ճգնաժամուն մէջ իմաստուն ու օգտակար որոշում մը փնտռել։ Վերջապէս տէրութեան մեծ խորհուրդը ժողվուելով՝ գահերէցին առաջարկութեան համեմատ որոշուեցաւ՝ Պոնաբարդէին երկու պատգամաւոր խաւրել ու իրեն հետ հաշտութեան վրայ բանակցութիւն ընել, ծանուցանելով որ ծերակոյտը սահմանադրութեան մէջ քանի մը կարեւոր փոփոխութիւններ ընելու պատրաստ է։ — Պատգամաւորներն առանց ատեն կորսնցընելու ճամբայ ելան եւ զՊոնաբարդէ Վենետիկի ծովալճերուն վրայ ըլլող Մալկերա բերդին մօ-

տերը դառան, ուր իր զօրքերն արդէն սկսած էին՝ բերդին թնդանօթներուն դէմ իրենց թնդանօթները բանեցընել։ Երբ որ իրենց յանձնուած առաջարկութիւնը Պոնաբարդէին բերին, շուտ մը հարցուց թէ Ձեզմէ առաջ ինծի եկող ծերակուտին պատգամաւորներուն տուած հրամանները կատարեցա՞ն, եւ առանձինն հաստատապետութեան երեք գլխաւոր քննիչներն ու Լիոտյի հրամանատարը մահուամբ պատժուեցա՞ն թէ չէ. մինչեւ որ աս եւ ասոր նման հրամանները ի գործ չեն դրուիր, ծերակուտին հետ խաղաղութեան վրայ խօսք մ'ալ չեմ ուզեր խօսիլ։ Պատգամաւորները հազիւ մեծ աշխատութեամբ իրմէ վեց օրուան զինադադարի ու մտածելու ժամանակ ընդունեցան, եւ հրաման առին աս միջոցին մէջ ամէն իր առաջարկութեանց ընդունուելուն լուրը բերելու։ Պոնաբարդէ Վենետիկ ասանկ վախցընելն առ ժամն բաւական սեպեց եւ չուզեց իրօք պատերազմելով՝ խնդիրը դժուարցընել կամ Աւստրիայի հետ նորէն դժտելու պատճառ ըլլալ, որովհետեւ խաղաղութեան նախակարգ պայմաններէն մէկուն համաձայն՝ Վենետիկի նկատմամբ ըլլալու ամէն կարգաւորութիւնները Գաղղիայի ու Աւստրիայի միաբան հաւանութեամբը պիտի սահմանուէին։ Աւստրի պատգամաւորներուն իր հաստատուն կամքը յայտնելէն ետքը՝ ինք ելաւ Մանդուա, հոնկից ալ Միլան գնաց, աղէկ գիտնալով որ Վենետիկի գլխաւորները ա՛լ չեն կրնար իրեն դէմ դառնալ ու իր կամացը կը խոնարհին։

Երկու պատգամաւորները դարձան ու Պոնաբարդէին կամքը ծերակուտին յայտնեցին. դահերէցը նորէն (Մայ. 4.) մեծ խորհրդեան ժողովը գումարեց ու աս հեղ ամէն բան աղէկ մը մտածուելէն եւ ժողովրդեան ազնուականաց դէմ ունեցած վտանգաւոր խորհուրդներն

ալ այլեկ մը կշռելէն ետքը, սահմանուեցաւ որ Պոնա-բարդէին՝ լիակատար իշխանութեամբ գործակալներ խաւ-րուին, որոնք անոր հետ՝ ասոնց ամենուն պայման մը դնելու՝ խաղաղութիւնը հաստատեն, եւ նոյն ատեն նաեւ երեք յանցաւոր քննիչներուն ու Լիտայի հրամա-նատարին դատաստանը սկսի։

Երբ որ հին սահմանադրութեան փոխուելու խոր-հուրդը յայտնի եղաւ, Վենետիկի մէջ ազնուականք՝ որոնք աս փոփոխութիւնը կ'ուզէին, սկսան իրենց ու-րախութիւնը յայտնի ցուցընել. իսկ ստորին ժողովուրդը՝ որ կառավարութեան կողմն էր, գիտնալով որ աս փո-փոխութեամբ իրենց օգուտ մը չ'ըլլար, սկսան ազնուա-կանաց դէմ կատղիլ ու ոտք ելլելու նշաններ տալ։ Նաեւ Դաղմատիայէն բերուած վարձկան Սլաւոն զօրքն իմա-նալով որ աս փոփոխութեամբ իրենք Վենետիկի մէջ իրենց գործքն ու վարձքը պիտի կորսնցընեն, վախ կու-տային ժողովրդեան հետ միանալով՝ արիւնհեղութեանց ձեռնտու ըլլալու։ Գահերէցն ու խորհրդականք առա-ջիկայ վտանգին մեծութիւնը տեսնելով՝ Գաղղիայի զօ-րաց հրամանատարին խորհրդովը Սլաւոն զօրքին վարձքը վճարելով՝ զանոնք նաւերը դրին Դաղմատիա խաւրելու համար։ Անկից ետքը (Մայ. 12.) մեծ խորհուրդը ժող-վուելով՝ որոշուեցաւ որ հին սահմանադրութիւնը կամ ազնուապետական կառավարութիւնը դադրի, գերագոյն իշխանութիւնը Վենետական ազգին տրուի, քաղաքային կամ քաղաքականաց խորհրդանոց մը ու Վենետիկի ա-մէն վիճակներուն կամ գաւառներուն պատգամաւորնե-րէն կազմուած առժամանակեայ կառավարութիւն մը դրուի։ Ուրիշ քանի մը որոշումներէն զատ՝ սահմանուե-ցաւ որ Գաղղիայի զօրքը Վենետիկ մտնէ պահպանէ։ Աս որոշումները հրատարակուածին պէս՝ ժողովրդեան մէկ

մասը սկսաւ իր կատաղութեան ցոյցերը տալ. քանի մը երեւելի ազնուականաց տները կողոպտուեցան, ամէն դի շփոթութիւնն ան աստիճանի հասաւ՝ որ սոսկալի արիւնհեղութեանց մօտ ըլլալը յայտնի կը տեսնուէր։ Բայց բնակչաց մէկ մասը գալու չարեաց առջեւն առնելու համար միլղացի զօրապետի մը առաջնորդութեամբ զինած՝ խռովարարներուն վրայ յարձակեցան ու կարճ կռուէ մը ետքը, հանդարտութիւն եղաւ. եւ նոյն ատեն 4000 գաղղիացի զօրք ալ առանց հակառակութիւն կրելու Վենետիկ քաղաքը մտնելով՝ (Մայ. 16.) ամէն կողմ խաղաղացաւ։

Ասոնք Վենետիկի մէջ եղած ատեն՝ ծերակուտին պատգամաւորները կամ գործակալները Միլան Պոնաբարդէին առջեւն ելլելով՝ իրենց առած լիակատար իշխանութեան համաձայն՝ անոր հետ վերը յիշուած որոշումներուն համեմատ դաշինքը հաստատեցին։ Աս դաշանց մէջ քանի մը գաղտուկ հատուածներ ալ դրուեցան. Ա. Վենետիկ իր գաւառներէն մէկ քանին պիտի թողու եւ անոնց տեղ իրեն ուրիշ երկիրներ պիտ՚որ առնուին. (ինչպէս որ Լէոպէնի դաշանց մէջ որոշուած էր.) Բ. Գաղղիացւոց երեք միլիոն ֆրանք ստակ պիտ՚որ վճարէ. Գ. Երեք միլիոն ֆրանքի արժէքով ծովային պաշար պիտ՚որ տայ. Դ. Չորս մեծ պատերազմական նաւ ու երկու ալ կրկնայարկ նաւ պիտի տայ։ Ահաւասիկ աս պատճառներով ու այսպիսի որոշմանց ու նոր դաշանց զօրութեամբ՝ Վենետիկի հին ու անուանի ազնուապետական հասարակապետութիւնը՝ ըստ իր գլխաւոր հիմանցը բոլորովին խախտեցաւ կամ ռամկապետական կառավարութեան փոխուեցաւ, ու միայն առերեւոյթ տկար անկախութիւն մը պահեց, զորն որ քիչ ատենէն բոլորովին պիտի կորսնցընէր։

Պոնաբարդէ վերջագրեալ կերպով ու երկրին մէջ եղած ապստամբութեան օգնելով՝ աս հզօր հասարակապետութիւնը տկարացընելէն ու խոնարհեցընելէն ետքը, (զոր որ քիչ մը ետքը Եւրոպայի անկախ տէրութեանց կարգէն բոլորովին ջնջելու խորհուրդը միտքը հաստատած էր,) Լէօպէնի դաշանց մէջ որոշուած պայմանները չնկատելով, շուտ մը Գաղղիայէն քանի մը նաւ բերել տուաւ, եւ Վենետիկի նաւերուն հետ միացընելով խաւրեց՝ Յոնիական կղզիները (Գորֆու, Զանդա, Քեֆալոնիա, Ս. Մաւրա, Չերիկօ, Բաքսոս ու Թէաքի), որոնք Վենետիկի իշխանութեան տակն էին, Գաղղիայի համար գրաւել տուաւ: Նաեւ Վենետիկի մէջ իր սովորական աւարառութեան կարգը պահելով՝ չէ թէ միայն քաղաքին զինարանին մէջ գտնուող զէնքերն առաւ Գաղղիայի զօրաց բաժնեց, հապա նաեւ եկեղեցիներուն շատին գանձերն ու զարդերը կողոպտեց, ու թանգարաններուն մէջէն ճարտարարուեստ գործուածներն առաւ:

Ու այժմ թողունք աս դժբախտ հասարակապետութիւնը: Իտալիայի ուրիշ կողմերն ալ՝ Գաղղիացւոց ու առանձինն Պոնաբարդէին ազդեցութեան տակ ու անոնց օգնութեան յուսովը՝ յեղափոխութիւնը գաղտնի ու յայտնի իր ընթացքը կը շարունակէր ու գրեթէ ստոյգ կ'երեւար որ բոլոր Վերին Իտալիա Գաղղիայի նոր հասարակապետութեան նման ռամկապետական հասարակապետութեան մը պիտի դառնայ: — Գենուայի ազնուապետական հասարակապետութիւնը՝ թէպէտ եւ Վենետիկի պէս անկարգ ու տկար չէր, բայց ինքն ալ անոր չափ յամառ էր հին կարգերն ու առաւելութիւնները պահելու ջանքին մէջ: Գաղղիացիք, ինչպէս վերը գրեցինք, յառաջագոյն ատոր վրայ քիչ մը իրենց ազդեցութիւնը ցուցըցած էին, քանի մը պահանջմունքներ ընելով ու ընդունելով: Հոն

ալ ռամկապետական գաղափարներով ու փափագներով լցուած խումբ մը տաքգլուխ մարդիկ՝ Մորանտի անունով մէկու մը առաջնորդութեամբ զօրաւոր կողմնակցութիւն մը կազմելով, դաւհերեցին (ռոձէ) աղէրսագիր մը տուին՝ որ ծերակոյտը երկրին հին սահմանադրութեան մէջ քանի մը փոփոխութիւններ ընէ։ Ծերակոյտը դեռ որոշում մը չըրած՝ Գենուայի բնակչաց մէկ մասն ու խումբ մը երիտասարդներ իրենց մէջ այլեւայլ խորհուրդներ ընելով՝ կը պատրաստուէին զէնք առնուլ եւ ազնուականաց վրայ յարձակիլ։ Աս եղբիններն ալ եկեղեցականաց օգնութեամբ տորին ժողովրդեան ու գործավարաց մէկ մասը զինելով, մէկալներուն դէմ պատրաստ կը կենային։ Գաղղիայի Գենուա նստող դեսպանը ոչ մէկ կողման եւ ոչ միւս կողման աջակարարութիւն մը կ'ընէր խաղաղութիւնը չխռովելու։ Երբ որ (Մայ. 22.) ամէն դիծանուցուեցաւ Գաղղիացւոց աղդեցութեամբ Վենետիկի հասարակապետութեան մէջ անցածները, Մորանտեանք ու հասարակ զինուորած՝ դուրս յարձակեցան ու կ'ուզէին քաղաքին գլխաւոր տեղերը բռնել։ Իրենց հակառակորդները կամ տորին ժողովրդեան մեծ մասը վրանին հասան, իրենց աղէկ կառորած մ'ըրին. եւ որովհետեւ Գաղղիացւոց անոնց օգնական ըլլալը գիտէին՝ անոնցմէ ալ շատ անձինք զարկին մեռցուցին, նոյն իսկ Գաղղիայի դեսպանը միայն դաւհերեցին պահապաններուն պաշտպանութեամբը ժողովրդեան կատաղութենէն կրցաւ ազատ մնալ։

Պոնափարդէ աս դէպքերուն լուրն առածին պէս՝ շուտ մը իր օգնական զօրապետը հոն խաւրեց ու սաստկութեամբ պահանջեց՝ որ բռնուած Գաղղիացիներն ազատ թողուին, իրենց եղած անիրաւութեան համար հատուցում ըլլայ, ու ժողովրդեան ձեռքը զէնք տուող երեք գլխաւոր պաշտօնեայք բանտարկուին։ Ասով Մորան-

տեանք եւ ուրիշ ապստամբները սիրտ առնելով, նորէն մէկ եղան զօրացան ու ծերակուտէն բռնութեամբ պահանջեցին՝ որ Վենետիկի ծերակուտին ըրածին պէս՝ բոլորովին լուծուի, այսինքն ազնուապետական կառավարութիւնը քակուի վերջանայ։ Աս ըլլալէն ետքը՝ առժամանակեայ նոր կառավարութիւն մը դրուեցաւ ու անմիջապէս Պոնաբարդէին պատգամաւորներ խաւրուեցան՝ որ անոր հետ Գենուայի հասարակապետութեան տրուելու նոր ազատական սահմանադրութեան վրայ խորհուրդ ու որոշում ընեն։

Աս միջոցին Պոնաբարդէ Միլան նստած, չէ թէ միայն սաստիկ Իտալիայի մասնաւոր տէրութեանց ու հասարակապետութիւններուն յեղափոխութեան կ՚օգնէր եւ զանոնք ուզածին պէս կը կարգադրէր, հապա նաեւ ընդհանուր Իտալիայի կարգերը բոլորովին կերպարանափոխ ընելով՝ նոր կառավարութիւն մը հաստատելու խորհուրդներ ու հնարքներ կը մտածէր։ Իտալացւոց ազատութեան փափագը ճանչնալով ու աս վախճանաւ այլեւայլ տեղեր եղած յեղափոխութիւնները հաճութեամբ տեսնելով, իր գլխաւոր հոգը չէ թէ միայն անոնց նպաստել, հապա նաեւ մասնաւոր կարգաւորութեամբ մը Իտալիայի կառավարութիւնը Գաղղիայի նոր կառավարութեան այսինքն հասարակապետական յօրինուածութեան փոխել էր. բայց միշտ Գաղղիայի ու մանաւանդ իր (Պոնաբարդէին) ազդեցութեան տակ պահելու ջանքով։ Աս խորհուրդը մտքին մէջ հաստատելէն ետքը, Վենետիկի հասարակապետութիւնը, որն որ արդէն կերպարանափոխ եղած, իր երկիրներուն մեծ մասը՝ ուստի եւ իր զօրութիւնն ու վտանգաւորութիւնը բոլորովին կորսնցուցած էր, առ այժմ իր անկախութեան մէջ թողուց, այնպէս եւ Գենուայի կերպարանափոխ եղած

հասարակապետութիւնն ալ՝ նոր ազատական սահմանադրութիւն մը տալէն ետքը՝ ազատ ձգեց։ Իսկ ատոնցմէ դուրս Վերին ու Միջին Իտալիոյ՝ մանաւանդ Լոմբարտիոյ ու Վենետիկի ցամաք երկրին, ինչպէս նաեւ Հռոմայ քահանայապետին մասէն առնուած՝ գաւառներէն ամբողջ հասարակապետական կառավարութիւն մը յօրինելու որոշեց։ Ուստի ան առնուած Լոմբարտիայէն, Մոտենայի ու Ռեճիոյ դքսութիւններէն, Պօլոնեայի ու Ռաւեննայի կուսակալութիւններէն, Ռոմանեա նահանգէն, ու Պերկամոյի, Պրեշիայի եւ Մանդուայի վիճակներէն, մինչեւ Ատիճէի եզերքը, որոնց մէջ շատ ընտիր ամրոցներ, նաւահանգիստներ ու երեք միլիոն վեց հարիւր հազար բնակիչք կային, առանձին եւ ուրիշ Իտալական տէրութիւններէ բաժնուած Հասարակապետութիւն մը կազմեց, Այսրալպեան անուամբ, որուն բոլոր երկիրը 11 բաժին կամ նահանգ կը բաժնուէր ու գլխաւոր քաղաքն էր Լոմբարտիոյ Միլան քաղաքը։ Պոնաբարդէ կ'ուզէր աս Այսրալպեան Հասարակապետութեան համար բոլորովին նոր սահմանադրութիւն մը յօրինել. բայց փարիզի Վերակացուաց ժողովէն ստիպելով՝ Գաղղիոյ նոր սահմանադրութիւնն աս Իտալական հասարակապետութեան ալ յարմարցուց։ Աս սահմանադրութեան համեմատ Իտալացւոց ազգը Գաղղիացւոց պէս իրենց հասարակապետութեան հինգ վերակացուներ (directeur) պիտի ընտրէր. բայց Պոնաբարդէ հոս ալ իր անձնական իշխանութիւնը բանեցընելով՝ աս առջի հեղ միայն՝ նոյն հինգ վերակացուներն ինք ընտրեց. նոյնպէս եւ երկու սենեակներուն այսինքն Ա. 80 Ծերոց ու Բ. 160 Երիտասարդաց խորհրդոյ ատեաններուն անդամներն ինք որոշեց ու անուանեց։ Ասանք աւանկ հաստատուելէն ետքը՝ Իտալացիք Պոնաբարդէին ազդեցութեան տակ, մա-

նուանդ իր ու Գաղղիայի իտալական բանակին հոն գըտնուած ատենը, օրէ օր աւելի պատերազմական ոգի առանալ եւ պատերազմական արուեստին մէջ ըստ պատշաճի կրթուիլ կը ջանային: — Աս Այսրալպեան Հասարակապետութեան հաստատութիւնն ու կարգաւորութիւնը եղաւ 1797. Յուլիս ամսոյն մէջ ու Սեպտեմբեր ամսոյն մէջ Գաղղիայի Վերակացուաց ժողովը զանիկայ ընդունեցաւ ու հաստատեց, ինչպէս նաեւ Աւստրիա ալ Լէոպէնի դաշանց նախակարգ պայմաններուն համեմատ անոր իր հաւանութիւնը տուաւ:

Նոյն ատենները Պոնաբարդէ նաեւ Գենուայի Հասարակապետութեան համար ալ քանի մը կարգաւորութիւններ ըրաւ: Առջի խռովութիւններուն վրայ (որոնք Մայիս ամսոյն մէջ եղած էին) քանի մը ամիս անցնելէն ետքը, ուրիշ աւելի մեծ խռովութիւն մ'ալ ելաւ, որն որ բոլոր հասարակապետութեան կործանման պատճառ պիտ'որ ըլլար: Բայց մօտերն ըլլող Գաղղիայի զօրքը մէջ մտնելով՝ խաղաղութիւնը հաստատեցին. որուն վրայ Պոնաբարդէ նոյն իսկ Գենուացւոց խնդրելովն իրենց նոր սահմանադրութեան մէջ քանի մը փոփոխութիւններ ըրաւ, ազնուականաց ու եկեղեցականաց քանի մը մասնաւոր իրաւունքներ թող տալով, որպէս զի գոհ ըլլան ու նոր (ռամկապետական) հասարակապետութեան հաստատուելը չարգելեն: Ասանկով Պոնաբարդէին ազդեցութեամբը Գենուա նոր սահմանադրութեամբ իր հասարակապետական կարգաց մէջ հաստատելով՝ նոր անուամբ Լիգուրեան Հասարակապետութիւն անուանեցաւ:

Մինչեւ հիմայ Իտալիայի համար Պոնաբարդէին ըրածներն ըստ մասին Լէոպէնի դաշանց նախակարգ պայմաններուն համեմատ, ըստ մասին ալ անոնցմէ դուրս էին: Ուստի երբ որ (1797) Սեպտեմբեր ամսոյն սկիզբ-

ները Փրիուլի Ուտինէ քաղաքին մէջ Պօնաբարդէ եւ Աւստրիայի կայսեր դեսպանները՝ Գաղղիայի եւ Աւստրիայի մէջ դրուելու խաղաղութեան դաշանց համար ժողվուեցան, ու երկայն խորհուրդներէն ետքը վերջապէս (Հոկտ. 17.) դաշինք հաստատեցաւ, Իտալիայի նկատմամբ ալ հետեւեալ յօդուածները կամ որոշմունքները դրուեցան։ Ա. Աւստրիայի կայսրը թէ Իտալիայի մէջ ու թէ անկից դուրս Գաղղիայի թողուցած երկիրներուն տեղը կ՚ընդունի Վենետիկի կղզին, իր ուրիշ փոքր կղզիներովը, ինչպէս նաեւ նոյն հասարակապետութեան տակ ըլլող Իտալիայի ցամաքը մինչեւ Մանդուա ու Ատիճէ, (Նաեւ՝ Դալմատիա իր կղզիներովը, Իստրիա, Փրիուլ ու Պոգգա տի Գադարրօյ)։ Բ. Նոյն կայսրը կը ճանչնայ ու կ՚ընդունի Այսրալպեան հասարակապետութիւնը, որն որ կը բովանդակէ բաց ի վերը (158) յիշուած տեղերէն՝ նաեւ Վէլդլինի կամ Վալդըլինի նահանգը։ Գ. Նոյն կայսրը կը խոստանայ Մոտենայի դքսին Իտալիայի մէջ կորսնցուցած դքսութեան երկիրներուն տեղը Գերմանիայի Պրայզկաւնահանգը տալ։ Դ. Վենետիկի հասարակապետութենէն առնուած Յոնիական կղզիները Գաղղիայի իշխանութեան տակ կը մնան։ Աս խաղաղութեան դաշինքը, որն որ Ուտինէ քաղաքին մէջ դրուեցաւ ու անկից քիչ մը հեռու ըլլող Վենետիկի վերջին դահերեցին Բասսերիանոյ ըսուած պալատին մէջ, ուր Պօնաբարդէ կը բնակէր, ստորագրուեցաւ, պատմութեանց մէջ Գամբոյ Ֆորմիոյի խաղաղութեան դաշինք կ՚անուանի։ Գամբոյ Ֆորմիոյ Ուտինէ քաղաքէն իբր մէկ մղոն հեռու գեղ մըն է. եւ ան ատեն Գաղղիացւոց ու Աւստրիացւոց բանակներուն ըստ ամենայնի մէջտեղն իյնալուն՝ աս երկու տէրութեանց մէջ դրուող առաջին գլխաւոր դաշինքին նոյն գեղին անունը տրուեցաւ։

Գաղղիայի Վերակացուաց ժողովն ալ խաղաղութեան դաշինքը, զորն որ Պոնաբարդէ իր առանձին իշխանութեամբը հաստատած էր, վաւերացընելէն ետքը, զնոյն Պոնաբարդէ Անգղիայի դէմ խաւրելու բանակին ընդհանուր սպարապետ անուանեց ու Իտալիայէն Գաղղիա կանչեց: Պոնաբարդէ զԻտալիա չթողուցած՝ քանի մը կարգաւորութիւններ ալ ըրաւ: Նոր կանգնուած Այսրալպեան հասարակապետութեան վրայ հսկելու համար մնայուն պայմաններով 30 հազար Գաղղիացի զօրք թողուց Պերթիէ զօրապետին հրամանին տակ: Վենետիկի մէջ գտնուող գաղղիացի զօրքը հանեց ու անիկայ Աւստրիացւոց աւանդեց: Վենետացւոց ան մասին, որոնք իրենց հասարակապետական անկախ տէրութեան իր ձեռքովն իյնալուն վրայ արտաքոյ կարգի տրտմած ու զայրացած էին, մխիթարութիւն ու իբր հատուցում տալու համար հրաման տուաւ, որ Այսրալպեան հասարակապետութեան երկիրն երթան, ու Աւստրիայի տէրութեան ալ միջնորդ եղաւ՝ որ ատոնց թող տայ իրենց կալուածները ծախելու եւ անոնց գինը հետերնին տանելու: Ասոնցմէ զատ ուրիշ քանի մը կարգաւորութիւններ ալ ընելով՝ Նոյեմբեր ամսոյն մէջ մեծ փառքով Իտալիայէն ելաւ ու Հելուետիայի վրայէն Փարիզ դարձաւ:

Պոնաբարդէին դեռ Իտալիա եղած ատենն ալ, բայց աւելի եւս անոր հեռանալէն ետքը՝ (1797 Սեպտ. Դեկտ.) երկրին հին ու նոր տէրութեանց ու կառավարութեանց մէջ շփոթութիւններն ու յեղափոխութեան անկարգութիւնները պակաս չէին ըլլար: Գենուայի Լիգուրեան հասարակապետութիւնը թէպէտ արտաքուստ աղէկ ու հանդարտ կ'երեւար, բայց ներքուստ եւ ի ծածուկ ազնուականաց ու առօրին ժողովրդեան կամ ռամկապետականաց. իրարու դէմ ունեցած չափազանց պա-

հանձնումքը՝ կառավարութեան յաջողութեամբ առաջ երթալուն արգելք կ՚ըլլային: — Այրարատեան Հասարակապետութեան մէջ անկարգութիւններն ու շփոթութիւնները շատ աւելի սաստիկ էին. որոնց գլխաւոր դըրդռիչները չափազանց ռամկապետականք Գաղղիայի զօրաց ռամկապետական հոգւոյն ու ազդեցութեան հետեւելով ու անոր ապաւինելով՝ իրենց ուզածը յառաջ տանելու կ՚աշխատէին ու միշտ նորէ նոր շփոթութիւններ կը հանէին: Գաղղիայի Հասարակապետութիւնն իր աս նոր Հասարակապետութեան իբրեւ անկախ տէրութեան հետ ունենալու յարաբերութիւններն որոշել ուզելով, բարեկամութեան դաշնագիր մը յօրինեց ու նոյն Հասարակապետութեան ծերոց սենեակը խաւրեց որ զանիկայ ընդունելով՝ երկու տէրութեանց յարաբերական կապն ու կարգը հաստատուի: Աս դաշնագրին բովանդակութիւնն էր. երկու Հասարակապետութիւնները՝ Գաղղիականն ու Այրարատեանը՝ իրարու հետ կը դաշնակցին զիրար պաշտպանելու եւ իրարու համար պատերազմելու պայմանաւ: Քանի որ Այրարատեան Հասարակապետութիւնը կարգաւորեալ զօրք ու բանակ չունի, Գաղղիա անոր 25 հազար զօրաց բանակ մը կու տայ հետեւեալ թէութիւններով՝ որ Այրարատեան Հասարակապետութիւնն ան զօրաց պատշաճական զօրանոցներ, մթերանոցներ, հիւանդանոցներ եւ թօշակի ու պարենի համար տարին տասը միլիոն ֆրանք տալու պարտաւորի: Պատերազմի ատեն նոյն Հասարակապետութիւնը կը պարտաւորի արտաքոյ կարգի դրամական օգնութիւն մ՚ալ տալ: Գաղղիա կը թողու նոյն Հասարակապետութեան մինչեւ ան ատեն թշնամիներէն առնուած թնդանօթները, որպէս զի իր ամրոցները զօրացընէ: Ծերոց ժողովոյն մէջ շատերն աս պայմանները իբրեւ չափազանց պահանջ-

մունքըներ սեպելով՝ նոյն դաշնագիրը չընդունեցան ու չհաստատեցին։ Ասոր վրայ Պերթիէ զօրապետը նոյն ժողովոյն աւելի յամառ անդամները դուրս հանեց, անոնց տեղ չափաւոր (Գաղղիայի բարեկամ) անդամներ ընտրեց, ու նորէն նոյն դաշնագիրը ժողովոյն ներկայացուց, որն որ զանիկայ առանց հակառակութեան ընդունեցաւ ու հաստատեց։ Այս գործողութիւնն ամէն դի՛ մանաւանդ Աւստրիայի տէրութեան մէջ Գաղղիայի դէմ օրինաւոր տրտունջներ պատճառեց. որովհետեւ ասով՝ Կամբոյ Ֆորմիոյի դաշանց դէմ՝ այս նոր հասարակապետութեան բոլորովին անկախ տէրութիւն չըլլալը, հապա իբր Գաղղիայի նահանգ մը սեպուիլը կը տեսնուէր։

Սարդինիա՝ որուն հետ Գաղղիայի հասարակապետութիւնը դաշնակցած էր, ամէն կողմանէ հասարակապետական կառավարութիւններէ, այսինքն Սավոյայէն, (որն որ Գաղղիայի հետ միացած էր,) Այսրալպեան ու Լիգուրեան հասարակապետութիւններէն, իր միապետական կառավարութեամբը շատ նեղութիւններ կը քաշէր։ Նոյնպէս եւ Բարմայի ու Տոսկանայի տէրութիւններն այն երկու սահմանակից Իտալական հասարակապետութեանց օրինակովն իրենց ժողովրդոց մէջ այլեւայլ յեղափոխական շարժմանց ծագելէն ապահով չէին։ Նոյն հանգամանքը նաեւ Նէապոլսոյ ու Հռոմայ տէրութիւններն անհանգիստ կ'ընէին։ Նէապոլսոյ տէրութիւնը Գաղղիացւոց ազդեցութիւնն իր տէրութեան մէջ խափանելու համար ամէն կերպ խիստ միջոցները կը բանեցընէր. մինչեւ նոյն իսկ Գաղղիայի դեսպանին հետ խստութեամբ կը վարուէր. բայց, (եթէ Թիէրին ըսածին հաւատալ կ'ուզենք,) Գաղղիա՝ Իտալիայի մէջ նոր պատերազմ մը մկսիլ չուզելով՝ իր դեսպանին կ'ապսպրէր որ զգուշ կենայ ու յեղափոխականաց ձեռնտու չըլլայ։

Հռոմայի տէրութեան մէջ, ուր Պիոս Թ. քահանայապետն իր խորին ծերութեան ատեն Իտալիոյ ամէն կողմերը հանդիպած անհաճոյ դէպքերուն լուրերն առնելով՝ իր օրերը տառապանօք կ'անցընէր, մեծամեծ շփոթութեանց ու մեծ յեղափոխութեան նշանները քանի մը ատենէ ի վեր երեւնալու սկսած էին։ Ամէն տեղերէն առաջ Անգոնայի մարզին կամ սահմանին (Marca) մէջ Այսրալպեան հասարակապետութեան գրգռելովն ու Գաղղիացւոց ազդեցութեամբը յեղափոխութիւնը փրթաւ ու իր նպատակին հասաւ, ուր եւ նոր կառավարութիւն մը կազմուեցաւ, Անգոնական հասարակապետութիւն անուամբ։ Հոնկից սկսան ռամկավարական յեղափոխութեան բոցերը բոլոր Հռոմայի տէրութեան մէջ տարածել։ Ասոնք ամէն դի ժողովրդոց մէջ ընդունելութիւն կը գտնէին, որովհետեւ ամէն դի տէրութեան դէմ տժգոհութիւնը տարածուած էր։ Աս տժգոհութիւնն առաւելապէս կը պատճառէր Թոլէնդինոյի դաշանց համեմատ՝ Գաղղիացւոց վճարուելու 30 միլիոն ֆրանքի տուգանքին պատճառաւ՝ ամէն բնակչաց վրայ դրուած նոր ու ծանր տուրքերէն, ինչպէս նաեւ նոր ելած թղթադրամներէն։ Հռոմայի աշխարհական մեծերն ու հարուստները՝ ամէն դի տիրող նոր յեղափոխական հոգիէն մղուելով, քիչ մ'ալ ութեւտասներորդ դարուն փիլիսոփայական սկըզբունքէն տոգորուած ըլլալով, եկեղեցականաց իշխանութեան վրայ կերպ կերպ տրտունջներ կ'ընէին։ Նաեւ հասարակ քաղաքացեաց ու ստորին ժողովրդեան մէկ մասն այլեւայլ պատճառներէն շարժելով, ոմանք մեծերուն հաճոյ ըլլալու փափագով, ոմանք նոր յոյսերէ յորդորուելով, ուրիշները՝ մեծ կարօտութենէ ու նեղութենէ ազատելու բաղձալով, վերջապէս խել մը մարդիկ ալ ըրած չարիքներնուն պատժէն ազատ մնալ յուսալով,

յեղափոխութեան ձեռնտու կ'ըլլային։ Թէպէտ եւ քահա-նայապետական կառավարութիւնն ալ վտանգաւոր մարդ-կան շատերը բռնեց բանտ դրաւ, բայց Պոնաբարդէին մի-ջնորդութենէն ստիպելով՝ ազատ թողուց։ Անկից զատ՝ Այսրալպեան հասարակապետութիւնն ալ նոյն կառա-վարութեան այլեւայլ նեղութիւններ կը պատճառէր, որովհետեւ ասիկայ չէ թէ միայն նոյն հասարակապետու-թիւնն իբրեւ օրինաւոր չէր ուզեր ճանչնալ ու ընդու-նիլ, հապա նաեւ իր երկիրներէն նոյնին մէջը մտած ա-ղերուն իրաւունքէն հրաժարիլ յանձն չէր առներ։ Նոյն ատեն Պոնաբարդէին Յովսէփ եղբայրը, որն որ իբրեւ Գաղղիայի դեսպան Հռոմ կը նստէր, աս հակառակու-թիւնը, զորն որ հոն գտնուող Գաղղիացիներն օրէ օր աւելի սաստկացընելու կ'աշխատէին, իր շրջահայեցու-թեամբը լռեցուց ու Այսրալպեան հասարակապետու-թեան զօրաց քահանայապետական երկրին մէջ յառաջ երթալն արգելեց։ Ի վերայ այսր ամենայնի ռամկապե-տական գրգռութիւններն այնչափ զօրացած էին՝ որ ա-մէն յեղափոխականք (1797. Դեկտ. 28.) միաբանած ժողվուեցան ու իրենց խորհուրդներն ի գործ դնելու ա-ռաջին փորձին ձեռք զարկին։

Նոյն (Դեկտ. 28) օրը յեղափոխականաց մեծ մա-սը զինեալ դիմեցին Գաղղիայի դեսպանին (Յովս. Պոնա-բարդէին) պալատին մօտերը ու սկսան իրենց ապստամ-բական խորհուրդները յայտնել։ Կառավարութիւնը շուտ մը գունդ մը զօրք խաւրեց ասոնք ցրուելու եւ գլխաւոր-ները բռնելու համար. ասոնք նոյն ապստամբները ցրուած ատեննին՝ դեսպանին պալատէն գաղղիացի Տիւֆոյ զօ-րապետին առաջնորդութեան տակ մեծ բազմութիւն մը ձեռուըննին սուր դուրս վազեց ու պապական զօրքը շրջա-պատեց. եւ կ'ուզէր արգելուլ որ յեղափոխութիւն ու-

ղող Գաղղիայի բարեկամները, ինչպէս նոյն իսկ Գաղղիացի պատմիչք կը գրեն, չարգելան եւ չկարեն: Քահանայապետին զօրքէն տասնապետ մը՝ քանի մը հեղ ազդեցութիւն ընելէն ետքը՝ իր հրացանը կը պարպէ ու Տիւֆոյ զօրապետը կը մեռցընէ: Ասոր վրայ թէ առջի ապստամբներն ու թէ պալատէն ելած բազմութիւնը կը յաղթուին ու կը ցրուին, ու ամէն բան կը լմըննայ ու կը հանդարտի: Բայց Յոսէփ Պոնաբարդէ՝ որուն քենույն (պալ-դըղքին) հետ Տիւֆոյ նոյն օրերը պիտի՛ որ կարգուէր, եղածներուն վրայ սաստիկ զայրանալով, ոչ քանի մը դեսպաններուն աղաչանաց ու ոչ տէրութեան քարտուղար կարդինալին առաջարկութեան ու պատճառներուն մտիկ ընել ու զիջանիլ ուզելով, նոյն գիշերը Հռոմ թողուց ու Տոսկանայի երկիրը գնաց: Ասով Փարիզի վերակացուաց ժողովը պատրուակ մը գտաւ Գոլենտինոյի դաշինքը լուծուած սեպել ու անմիջապէս քահանայապետական կառավարութեան դէմ պատերազմ հրատարակել: Շուտ մը Իտալիա գտնուող գաղղիական զօրաց Պերթիէ հրամանատարին հրաման խաւրեց որ Հռոմայի վրայ քալէ: Պերթիէ թէպէտ եւ սկսաւ Հռոմայի վրայ երթալ, բայց կամաց կամաց կը յառաջէր, չէր ուզեր ահաւոր թշնամիոյ մը պէս Հռոմ մտնել: Վերջապէս (1798. փետր. 10) իր զօրքովը քաղաքին քովերը հասաւ բանակեցաւ: Հռոմայի յեղափոխականք նոյն ատեն Գաղղիացւոց օգնութեան ապաւինելով՝ ազատութեան ծառը Կապիտոլիոնին վրայ տնկեցին ու վեց բդեշխներէ կազմուած առժամանակեայ կառավարութիւն մը հաստատեցին, որուն առաջին գործն եղաւ Գաղղիայի զօրքը ներս հրաւիրել: Ասոր վրայ Պերթիէ իր զօրքովը (փետր. 15.) յաղթանակաւ Հռոմ մտաւ ու յայտարարութիւն մը կարդաց, որով Հռոմայեցւոց ազատութիւն կը խոստացուէր. սա-

կայն ժողովրդեան մեծ մասը հասկընալով որ աս առերեւոյթ ազատութեան տակ՝ Գաղղիացւոց իշխանութիւնը կ'իմացուէր, իրենց լռութեամբն այն յայտարարութեան վրայ գոհ ըլլալնին յայտնեցին։ Անոնց վախցածը շատ օր չանցած եկաւ ելաւ, որովհետեւ Պերթիէ նոյն իսկ առջի օրերը Հռոմ քաղաքին վրայ վեց միլիոն ֆրանք, իսկ բոլոր Հռոմայի երկրին վրայ երեսուն միլիոն ֆրանք պատերազմի ծախք կամ հարկ դրաւ, եւ որոշեց որ Գաղղիացւոց զօրաց պարէնն ու վեց հազար ձի Հռոմայի նոր հասարակապետութիւնը տայ։ Քիչ մը ետքը Գաղղիայի գործակալները սկսան Հռոմայի մէջ ըլլող ամէն Անգղիացւոց ու Գաղղիացի փախստականաց ինչքն ու ստացուածները ժողվել ու Գաղղիայի համար գրաւել։ Նաեւ բոլոր հասարակաց թանգարաններուն մէջ գըտնուած ճարտարարուեստ գործուածքները ինչպէս նաեւ եկեղեցեաց գանձերը՝ իբրեւ պատերազմաւ առնուած յաղթանակներ, գրաւեցին Փարիզ խաւրելու համար։

Հռոմայեցիք աս բռնական գործքերը տեսնելով, միանգամայն Գաղղիայի զօրքին ու զօրավարաց մէջ եղած գժտութիւնն իմանալով, երբ որ Պերթիէին տեղ Մասսենա զօրապետն ու քիչ մը ետքը Ցալըմաներ եկաւ եւ Գաղղիացւոց զօրքին մէկ մասն ալ Հռոմայէն Անգոնա փոխադրուած էր, նորէն ոտք ելան ու նոր խռովութիւններ հանեցին. բայց Գաղղիացի զօրապետները մէջերնին միաբանելով՝ աս նոր խռովարարները ցրուեցին, զէնքերնին առին ու քաղաքը հանդարտեցուցին։ Քանի մը շաբաթ ետքը (Մարտ 20.) Գաղղիայէն որոշուած գործակալները Հռոմայի կամ քահանայապետական աշխարհական տէրութիւնը վերջացուած ու նոր Հռոմէական Հասարակապետութիւն մը հրատարակելէն ետքը, նոյնին համար նոր սահմանադրութիւն մը հաստատեցին ու դուրս

տուփն։ Այս սահմանադրութիւնը Հռոմայեցւոց հին կարգերուն ու պաշտօնէից անուններուն համաձայն կը սահմանէր՝ 32 անդամներէ կազմուած ծերակոյտ մը՝ իբր օրէնսդիր իշխանութիւն, հինգ հիւպատներէ կամ բդեշխներէ միացած գործադիր իշխանութիւն մը, եւ 72 անդամներէ կազմուած ցեղապետական (տրիբունական) իշխանութիւն կամ ատեան մը։ Բայց այս ամէն իշխանութիւններուն տուած օրէնքները՝ Գաղղիայի Հռոմ նստող հրամանատարէն չհաստատուած՝ պիտի չկարենային գործադրուիլ։

Գաղղիայի զօրաց Հռոմ մօտեցած ատենը՝ ծերունի քահանայապետը Պիոս Զ. իր կարդինալներովը Վատիկանի պալատին մէջ գոցուած՝ ահու դողու մէջ, բայց առաքելական հաստատութեամբ կը կենար։ Գաղղիացիք Հռոմ մտնելէն ետքը՝ երբ որ Հռոմէական հասարակապետութիւն մը հաստատելու խորհուրդն որոշուեցաւ, Գաղղիացւոց գլխաւորները գացին իրմէ պահանջեցին որ իր աշխարհական իշխանութենէն հրաժարի։ Իսկ քահանայապետը արիութեամբ ու հաստատութեամբ պատասխանեց որ ինք չիկրնար այնպիսի բանէ մը հրաժարիլ՝ որ իրենը չէր, հապա առաքելական յաջորդութեան իրաւունքն էր, ուստի եւ իբրեւ աւանդ իր ձեռքը տրուած ըլլալով՝ իր ձեռքէն չէր կրնար հանուիլ։ Ասոր վրայ զօրաց հրամանատարները հրամայեցին որ Պիոս Զ. գիշերանց Վատիկանի պալատէն հանուի ու Տոսկանայի երկիրը խաւրուի։ Հոն Փլորենտիայի մօտ Կարթուսեան աբեղայից մէկ վանքին մէջ ծերունի քահանայապետը քիչ մը ատեն խաղաղութեամբ բնակեցաւ։ Բայց նոյն տեղւոյն իր երկրէն բաւական հեռու չըլլալն ու ամէն դիհաց իր նկատմամբ ցուցուած կարեկցութիւնն ու բարեկամական զգածմունքը՝ Փարիզի Վերակացուաց

ժողովոյն կասկածելի երեւալով, զինքն Իտալիայէն դուրս հանել տուին ու Հարաւային Գաղղիոյ Վալանս քաղաքը խաւրեցին։ Կ'ուզէին զինքը հոնկից ալ հանել ու աւելի հեռու Տիժոն քաղաքը խաւրել կամ աքսորել, ինչու որ կը լսէին թէ Վալանս ալ երբեմն ճամբորդները քահանայապետին այցելութիւն կ'ընէին ու զինքը կը մեծարէին. բայց (1799. Օգոս. 29.) խաղաղական մահ մը զատեր ծերունին աշխարհքէս հանելով՝ կրելու նոր ալէկոծերէն ազատեց։ Իր քովն եղած քանի մը արժէք ունեցող ստացուածքները, որոնք իրեն հաւատարիմ մնացող ծառաները պիտի ժառանգէին, կառավարութիւնն իբրեւ Գաղղիացւոց ազգային ժառանգութիւնները յափշտակեց առաւ։ Քահանայապետին մարմինը քանի մը ամիս անթաղ մնաց, մինչեւ Նափոլէան Պոնաբարդէ իբրեւ առաջին հիւպատոս կառավարութեան գլուխ ըլլալէն ետքը, (Դեկտ. 30.) նոյնը պատշաճ կերպով թաղելու հրաման տուաւ։

Սարդինալաց վիճակն ու բախտը քահանայապետին վիճակէն աւելի դէշ եղաւ. ասոնցմէ ոմանք նախ բանտարկուեցան, ետքը զանազան տեղեր աքսորուեցան, ու կարդինալ Պորճիա ցուկանաւի (galère) դատապարտուեցաւ։ Գաղղիոյ հասարակապետութիւնն իր կանգնած Հռոմէական Նոր հասարակապետութեան ձեռքով աս ու ասոնց նման բռնաւորական գործքերը կաթողիկէ եկեղեցւոյն գլխոյն դէմ ու մայրաքաղաքին մէջ անարգել յառաջ վարած ատենը, ուրիշ կաթողիկէական տէրութիւններն ու ժողովուրդներն իրենց առանձնական տառապանքէն ու վախէն ընկճած, կամ ինչպէս իմաստուն պատմիչ մը կ'ըսէ, ժամանակին հոգիէն շփոթած, գրեթէ անտարբեր ու անհոգ կը կենային, եւ այսչափ անիրաւութեանց ու անկարգութեանց դէմ զեկեղեցին ու

անոր գլուխն ու պաշտօնեաները պաշտպանելու ըստ պատշաճի չէին աշխատեր։

Իտալիայի, առանձինն Հռովմայի տէրութեան իրերն աս հանգամանքի մէջ եղած ատեն, Գաղղիացիք Ն. Պոնաբարդէին հրամանատարութեան տակ (1798. Մայ. 19.) դէպ Արեւելք ու մասնաւորապէս Եգիպտոս իրենց հռչակաւոր արշաւանքը սկսան։ Աս ատեն՝ Եւրոպայի մեծ ու պզտիկ տէրութիւններուն շատը Գաղղիացւոց այսչափ տարածուելէն ու ամէն դի հանած շփոթութիւններէն շարժելով, իրարու հետ Նոր (երկրորդ) դաշնակցութիւն մը ըրին, այսինքն (1798 Հոկտ. — 1799. Յունու. 21.) Ռուսիա, բարձրագոյն դուռը, Անգղիա, Աւստրիա, Բորդուկալ ու Իտալիայի տէրութիւններէն Նէապոլիս, Գաղղիական հասարակապետութեան դէմ միացեալ զօրութեամբ պատերազմելու դաշինք դրին։ Նէապոլսոյ կամ երկու Սիկիլիայի տէրութիւնը՝ ինչպէս յառաջ ըսինք, Գաղղիայի հետ (1796ին) ակամայ ու ժամանակին պարագաներէն ստիպած՝ բարեկամութեան դաշն դրած էր։ Բայց քիչ մը ետքը, առաւելապէս Գաղղիացւոց զէնքերուն եւ իշխանութեան բոլոր Իտալիայի մէջ զօրանալն ու Հռոմէական հասարակապետութեան հաստատուիլը տեսնելով՝ իր կործանման վտանգին ալ մօտ ըլլալն իմացած էր։ Փերդինանդոս Ա. Թագաւորը տկար մարդ մ'ըլլալով՝ ժամանակն որսորդութեամբ, ձկնորսութեամբ ու զբօսանքով կ'անցընէր. եւ իր ժողովրդեան Լոծծարոնի ըսուած ստորին մասին հաւատարմութեան վրայ ապաւինած՝ անհոգ կը կենար։ Իսկ ասոր դէմ Մարիամ Կարոլինա Թագուհին, որն որ Գաղղիայի ահակալութեան ատեն սպանուած Մարիամ Անտոնիա Թագուհւոյն քոյրն ըլլալով, Գաղղիայի դէմ ներքին ատելութիւն ու հակառակութիւն ունէր, չէ թէ միայն անոր ըրածներէն

դալու փառքը կը դուշակէր, հապա նաեւ իր սրտատես մտօքն ու արթնութեամբը կ'իմանար՝ որ Նէապոլսոյ Հպատակաց միջին ու վերին կարգերուն մէջ բոլոր Իտալիա տարածուած յեղափոխական հոգին կ'եռայ ու օրէ օր աւելի խմորելու ճամբայ կը բանէ։ Ուստի տէրութեան առաջին պաշտօնէին ձեռքովը, զորն որ բոլորովին իր կողմը շահած ու իր խորհուրդներուն խորհրդակից ըրած էր, ամէն կասկածելի անձինք մանաւանդ ազնուականներն ամէն կերպով կը նեղէր, կը պատժէր ու սանձելու կը կը ջանար։ Վերջապէս երբ որ Անգղիացւոց Նելսըն ծովապետը Եգիպտոս գացող Գաղղիացւոց նաւատորմիղին վրայ (1798. Օգոս.) մեծ յաղթութիւն մ'ընելէն ետքը, հոնկից դարձած ատենը՝ Նէապոլսոյ նաւահանգիստը հասաւ, թագուհին Գաղղիացւոց կրած պարտութեան վրայ անչափ ուրախութիւն ցուցընելէն ի զատ, յաղթող Նելսոնին փառաւոր ընդունելութիւն ըրաւ, որով եւ թէ իրեն ու թէ ժողովրդեան Գաղղիացւոց դէմ ունեցած հակառակութիւնն ու թշնամական զգածմունքը յայտնի եղաւ։ Աս թշնամութեան առաջին ցոյցն եղաւ չէ թէ միայն Նէապոլսոյ տէրութեան միւս տէրութեանց Գաղղիացւոց դէմ ըրած դաշնակցութեան մէջ մտնելը, հապա մանաւանդ ամէնէն առաջ իր բանակը՝ Գաղղիոյ դեսպանին ազդարարութեան դէմ՝ պատերազմական վիճակի մէջ խոթելն ու միանգամայն ժողովուրդն ալ յորդորելը որ ամէն ճգամբ ու դրամով Գաղղիացւոց դէմ տրուելու պատերազմին օգնեն։

Այսպէս պատրաստուելէն ետքը՝ Աւստրիայէն խաւրուած Մաք զօրապետին վերին հրամանատարութեան տակ 60,000ի բանակ մը (Նոյ. 23.) դէպ ի Հռոմայի երկիրը յառաջ քալել սկսաւ, որովհետեւ Նէապոլսոյ թագաւորը յայտարարութիւն մը հանած ու Գաղ-

ղիացւոց ծանուցած էր որ Հռոմէական Հասարակապետութիւնը վերջացընել ու իշխանութիւնը երկրին օրինաւոր տիրոջը՝ քահանայապետին դարձընել կ'ուզէ։ Նէապոլսոյ զօրքը Հռոմ մօտեցած ատենը՝ Գաղղիացւոց Շամպիոնէ զօրավարն իր զօրքովը քաղաքը թողուց ելաւ, որով (Նոյ. 29.) Նէապոլսոյ Թագաւորը յաղթանակաւ Հռոմ մտաւ ու ժողովուրդէն ուրախութեամբ ընդունուեցաւ։ Բայց այս յաղթութիւնը շատ կարճ ատեն քշեց. վասն զի Գաղղիացւոց զօրավարը նոր զօրք ընդունելով՝ ետ դարձաւ Նէապոլսեցւոց զօրքը զարկաւ։ Թագաւորը փութով (Դեկտ. 12.) Հռոմ թողուլ ու իր մայրաքաղաքը դառնալ, եւ բոլոր իր զօրքն ալ Հռոմայ երկրէն արտորնօք ետ դարձան ու Գաղղիացիք (Դեկտ. 15.) նորէն Հռոմ մտան։ Նէապոլսոյ ժողովուրդը զօրաց պարտութեան ու ետ քաշուելուն եւ Թագաւորին այնպէս նախատելի կերպով ետ դառնալուն վրայ կատղելով՝ զէնք առաւ ու սկսաւ ապստամբական կերպով պահանջել որ Գաղղիացւոց դէմ պատերազմը շարունակուի։ Այս խառնակութեանց մէջ Թագաւորն իր անձն ու տունը վտանգի մէջ տեսնելով, շատ մը մեծ պալատներուն ու թանգարաններուն մէջ գտնուած հազուագիւտ ու թանկագին բաները եւ 20 միլիոն ֆրանգի ալ ստակ առած՝ իր ընտանիքովը գիշերանց Անգղիացւոց նաւերովը Նելսոնին հրամանին տակ Սիկիլիա կղզին քաշուեցաւ, նաւահանգիստէն ելած ատենն իր նաւատորմիղին մէկ մասը, զորն որ չէր կրցեր իրեն հետ Սիկիլիա տանիլ, այրել ու ընկղմել տալով։

Ժողովուրդը երբ որ Թագաւորին փախչիլն ու նաւերուն այրիլն իմացաւ՝ անոր իր տեղը փոխանորդ դրած Բինեադելլի իշխանին չէր ուզեր հնազանդիլ ու իր գլխուն ժողովներ ընելով՝ յայտնի ապստամբութիւն կը

ցուցընէր։ Մաք զօրապետն ալ իր ձեռքը մնացած զօրքովը Գաէթայի բերդը քաշուած էր. եւ երբ որ Գաղղիացւոց զօրքը Շամբիոնէ զօրապետին տակ յառաջ գալով՝ բերդն առնելու կը սպառնային, զինադադար խընդրեց։ Շամբիոնէ զինադադարը յանձն առաւ սա պայմաններով՝ որ Նէապոլսոյ տէրութիւնը 14 օրուան մէջ Գաղղիացւոց 11 ու կէս միլիոն ֆրանգ տուգանք վճարէ, Գաէթայի, Աչերրայի ու Պենեւենդի ամրոցներէն զօրքերը հանէ ու Գաղղիայի զօրաց պատշաճական բնակարաններ տայ։ Աս պայմաններն ընդունուելով, (1799. Յունու. 11.) զինադադարը հաստատեցաւ. բայց Նէապոլիս քաղքին ստորին ժողովուրդն ասիկայ մատնութիւն է, կը պոռար. իսկ յեղափոխութիւն ուզողները, որոնք շատոնցուընէ դաղտուկ կը գործէին, սկսան ամէն միջոցները բանեցընել իրենց նպատակին հասնելու համար։ Աս միջոցին երբ որ Գաղղիացւոց գործակալը քաղաքը մտաւ՝ որոշուած տուգանքին մէկ մասն ընդունելու համար, ռամիկը՝ մանաւանդ Լածձարօնիները սկսան գունդ գունդ ասդին անդին աղաղակներով խռովութիւն հանել, զինուորներն ալ ասոնց հետ միացան. Թինեադէլլի ու Մաք հազիւ փախչելով կատաղիներուն ձեռքէն ազատեցան։ Ասոր վրայ Շամբիոնէ իր զօրքը դէպ ի քաղաքը յառաջ քալեցուց, (Յունու. 22.) զանիկայ յարձակմամբ առաւ. բայց Լածձարօնիներուն մէկ մասը քաղքին մէջ քանի մ՚օր ալ Գաղղիացւոց հետ պատերազմեցան. ու իրենցմէ 10,000 հոգի իյնալէն ու միայն Շամբիոնէէն ապահով խոստում առնելէն ետքը՝ որ Ս. Յանուարիոսին (Գենարիոսին) մարմնոյն ամենեւին վնաս մը չիհասնիր, անձնատուր եղան, զէնքերը թողուցին։ Նոյն ատեն յեղափոխականաց կամքն ալ կատարեցաւ, որովհետեւ Շամբիոնէ՝ Գաղղիայի վերակացուաց ժողովոյն հրամանին

համեմատ (Յունու. 24.) հրատարակեց՝ որ Նէապոլսոյ մէջ Թագաւորական իշխանութիւնը դադրած է, ու Պարթենոպեան հասարակապետութեան անուամբ ռամկապետական կառավարութիւն հաստատուած է։ Սակայն աս կարգաւորութիւնն ըլլալէն ետքն ալ Շամբիոնէին թոյլտուութեամբը Գաղղիայի գործակալները յառաջագոյն որոշուած տուգանքը ժողվելու համար հասարակաց ու առանձնական ստացուածոց վրայ կը բռնանային ու զանոնք կը կողոպտէին։ Ասոր համար Շամբիոնէ ժողովըրդեան ատելի եղաւ ու Գաղղիայի կառավարութիւնը հարկադրեցաւ զինքը Նէապոլսէն հանել ու պատժել։

Նէապոլսոյ տէրութեան գործքերուն այսպիսի ձախող ելք ունենալը Սարդինիայի ու Տոսկանայի տէրութեանց համար ալ վնասակար հետեւանք ունեցաւ։ Սարդինիայի Կարոլոս Էմմանուէլ Դ. Թագաւորը՝ Նէապոլսոյ օգնութեան վրայ յոյս ունենալով, սկսած էր զօրքը շատցընել ու Գաղղիացւոց դէմ գործելու գաղտուկ պատրաստուիլ։ Եւ թէպէտ Գաղղիայի տէրութիւնն ասիկայ իմանալով՝ նոյն պատրաստութիւններէն ետ կենալու հրամայած էր, եւ խեղճ Թագաւորը նոյն հրամանին չէր ընդդիմացեր. սակայն եւ այնպէս Գաղղիան երբ որ Նէապոլսական զօրաց յաջողութեամբ Հռոմայ երկիրը մտնելը լսեց, Վերին Իտալիայի մէջ գաղղիացի զօրաց հրամանատար ըլլող Ժուպէր զօրապետին հրաման խաւրեց՝ որ Սարդինիայի Թագաւորը գահէն վար առնէ։ Ժուպէր (1798 Դեկտ. 8.) աս հրամանն ի գործ դրաւ՝ պատրուակ բերելով որ Սարդինիայի ու Նէապոլսոյ տէրութիւններն իրարու հետ միաբանած ու դաշնակցած են։ Թագաւորն աս անիրաւ գործոյն դէմ չկրնալով բան մ՚ընել, ստիպեցաւ գրով իր գահէն հրաժարիլ, իր զօրքը Գաղղիայի յանձնել ու ինքն իր ընտանիքովը Սարդի-

նիա կղզին քաշուեցաւ։ Անկից ետքը Գաղղիա հոս առանձին հասարակապետութիւն մը չկանգնեց, ինչպէս ուրիշ տեղեր ըրած էր, հապա միայն երկրին ազատութիւն աւետելով, ազնուականաց կարգերը վերջացնելով ու Սարդինիայի զօրքը Գաղղիայի զօրաց մէջ խառնելով, զանիկայ իբր Գաղղիայի մէկ մասը կառավարել կու տար։

Տոսկանայի տէրութիւնն ալ Սարդինիային բախտին նման ձախող բախտ ունեցաւ։ Նէապոլսոյ տէրութիւնն ասոր ալ օգնութիւն խոստանալով՝ զինքը Գաղղիայի լծէն դուրս ելլելու յորդորեց։ Աստեղաց մեծ դուքսը Փերդինանդոս Գ. Նէապոլսոյ զօրաց մէկ մասը Լիվոռնոյ բարեկամաբար ընդունած ըլլալով, Գաղղիայի կառավարութիւնն իր ան կողմերն ըլլող զօրաց հրամանատարին հրաման խաւրեց՝ որ նոյն դուքսին իշխանութիւնը դադրած հրատարակէ ու անոր երկիրը Գաղղիայի հասարակապետութեան տակ առնու եւ կառավարել տայ (Մարտ 25.)։

Այսպէս գրեթէ բոլոր Իտալիա, բաց ի Վենետիկի երկրէն ու Լոմբարտիայի մէկ մասէն, որոնք նոյն ատեն (1799. Մարտ.) Աւստրիայի տակ էին. Գաղղիայի իշխանութեան տակ մտածի պէս էր. ու քանի մը հասարակապետութիւններ ալ, Այսրալպեանը, Լիգուրեանն ու Պարթենոպեանը, անոր վերին իշխանութեան ու ազդեցութեան տակ կը գործէին ու կը շարժէին։ Անկից ետքը եկաւ երկրորդ դաշնակցութեան պատերազմները Գաղղիայի դէմ, որոնք նախ առաջին Վերին Իտալիայի ու միեւնոյն ատեն նաեւ Գերմանիայի մէջ կամ Ռենոսի քովերը սկսան։ Իտալիայի մէջ պատերազմին սկիզբ ընելու համար Ռուսաց բանակը Սուվարով զօրապետին հրամանատարութեան տակ յառաջ քալած ատենը՝ Աւստրիայի զօրքը Գրէ (Գրայ) զօրապետին տակ Գաղղիացւոց

Շերեր զօրապետին զօրացը հետ Լոմբարտիայի մէջ զարնուելու ստիպեցան, եւ (Մարտ 26. — Ապր. 5.) Լենեանոյի, Ռոնգոյի, Մանեանոյի ու Վերոնայի քով եղած ճակատներուն մէջ նոյն զօրաց վրայ փառաւոր յաղթութիւններ ըրին։ Անկից ետքը երբ որ նոյն Գրէ զօրապետը Մանդուա պաշարած էր, Սուվարով Ռուսիայի բանակովը Իտալիա մտաւ ու միաբանեալ զօրաց վերին հրամանատարութիւնն առաւ։ Նոյն ատեն Գաղղիայի զօրաց Շերեր հրամանատարն իր պաշտօնէն վար առնուելով՝ իր տեղը Մորօ զօրապետը Գաղղիացւոց իտալական բանակին վրայ հրամանատար եղաւ։ Սուվարով շուտ մը իր ամէն զօրութեամբը Մորօյին վրայ քալելով, Ատտայի եզերաց վրայ Գասսանոյի քով (Ապրիլ 5.) անոր յաղթեց, Ատտայէն անցաւ եւ զթշնամին անդադար յառաջ քշելով (Ապր. 27.) մինչեւ Աղեքսանդրիա ու ետքը Գոնի (Պիէմոնդէի մէջ) փախցուց։ Ասկից ետքը Բեսքիերա, Բիցցիկեդոնէ, Գազալէ, Ֆէրրարա ու Միլան յաղթուելով անձնատուր եղան։ Սուվարով (Ապր. 29.) յաղթանակաւ Միլան մտաւ, ու ինչպէս քանի մը տարի առաջ Պօնաբարդէ Միլանցւոց մէկ մասէն իբրեւ ազատիչ փառաւոր ընդունելութիւն գտած էր, նոյնպէս հիմայ ալ Սուվարով մէկ ուրիշ մեծ մասէն նոյն փառաւորութեամբ ընդունուեցաւ ու գովուեցաւ։ Հոն քանի մը օր կենալէն ու Այսրալպեան հասարակապետութեան վերջացումը հրատարակելէն ետքը՝ իր զօրքովը նոր յաղթութիւններու սկսաւ, քանի մը ամուր տեղեր ալ Գաղղիացւոց ձեռքէն առաւ. զՄորօ իր ամրացած տեղէն քանի մը կռիւներէն ետքը քշեց հանեց ու (Մայ. 29.) Դուրին առաւ։ Այսչափ պարտութիւնները ստիպեցին զՄագտօնալ, որ Շամբիոնէին տեղ Ստորին Իտալիայի մէջ ըլլող գաղղիացի զօրաց հրամանատար եղած էր, Պարթե-

նոպետան հասարակապետութիւնն իր բախտին թողուլ, Վերին Իտալիա փութալ ու իր զօրքն ան տեղաց զօրքին հետ միացընել։ Բայց հազիւ թէ Դրէպլիա գետակին քովերը հասած էր, Սուվարով իր զօրքովն անոր դիմացն ելաւ ու երեքօրեայ սաստիկ պատերազմէ մը ետքը ստիպեց զանիկայ իր զօրաց մնացած մասովը դէպ ի Գենուայի սահմանը փախչիլ ու Մորոյի զօրացը հետ միանալ եւ այսպէս բոլոր Լոմբարտիա (Յունիս 19.) դաշնակցաց ձեռքն անցաւ։ Մանդուայի բերդին մէջ ըլլող Գաղղիացիք ալ չկրնալով զանիկայ պաշտպանել, (Յուլ. 28.) դաշնակցաց յանձնեցին ու դուրս ելան։

Մագտոնալ իր զօրքովը Նէապոլսոյ երկրէն դուրս չելած, արդէն Գալապրիայի մէջ ժողովուրդը՝ որն որ թագաւորին կողմն էր, ոտք ելած ու Նոր հասարակապետութեան դէմ գլուխ վերցուցած էր։ Աս շարժման առաջնորդ եղաւ կարդ. Ռուֆֆոյ, զորն որ թագաւորն իրեն տեղակալ անուանած էր, ու անոր առաջնորդութեամբը նոյն շարժումը Ապուլիա գաւառն ալ անցաւ ու տարածեցաւ։ Իսկ Մագտոնալ Նէապոլսէն ելլելէն ետքը՝ աս ոտք ելած գաւառներուն բնակիչքը Լածծարոնիներուն հետ միանալով՝ մէկանց 25,000ի բանակ մը կազմեցին, ու Անգղիացւոց, Օսմանցոց ու Ռուսաց միացեալ նաւատորմիղներէն օգնութիւն գտնելով՝ սկսան Հասարակապետականաց հետ Նէապոլսոյ մէջ ու քովերը տասն օր (Յունիս 13—22.) անդադար պատերազմիլ։ Հասարակապետականք տեսնելով որ ալ իրենց բանը լմնցած է, կար. Ռուֆֆոյին հետ զինադադարի դաշն դրին (Յունիս 23.) ու զէնքերը թողուցին։ Բայց Փերդինանդոս թագաւորն աս դաշին իր հաւանութիւնը չտալով, իր զօրքն ու կողմնակիցքը նորէն սկսան Նէապոլսոյ մէջ Հասարակապետականները ջարդել ու Անգղիացւոց Նելսըն ծո-

վայրեան ալ իր կողմանէ աս կոտորածին ձեռնտու եղաւ։ Նաեւ Թագաւորը Սիկիլիա կղզիէն (Յուլ. 10.) Նէապոլիս դառնալէն ետքը՝ բոլոր Հասարակապետականաց կողմնակից ու ձեռնտու՝ մանաւանդ գլուխ ըլլողները նոր պաշտօնէից հրամանաւ անխնայ սպաննուեցան։ Այսչափ կռիւներէն ու արիւնհեղութիւններէն ետքը՝ Նէապոլսոյ յեղափոխութեան վերջ եղաւ ու Թագաւորական իշխանութիւնը նորէն հաստատեցաւ։

Իսկ Հռովմայի տէրութեան մէջ՝ Նէապոլսոյ զօրքը յաղթուելէն ու իրենց երկիրը դառնալէն ետքը, ինչպէս վերը պատմեցինք, Հռովմէական Հասարակապետութիւնը քիչ մը ատեն ալ իր կենդանութիւնը պահելու կարող եղաւ. բայց դաշնակցաց միացեալ զօրութիւնն իրեն ալ կործանումն ու վերջը բերին հասուցին։ Ինչու որ Փարիզի վերակացուաց ժողովն Իտալիայի մէջ Գաղղիայի զօրաց ու զինուց յաճախ պարտութիւններով տկարանալը իմացածին պէս, հոն նոր զօրք խաւրեց ու Ժուպէր զօրապետը բոլոր զօրաց վրայ վերին հրամանատար անուանեց։ Ասիկայ Իտալիա մտածին պէս՝ Ն. Պօնաբարդէին օրինակին հետեւելով, անմիջապէս դաշնակցաց զօրաց վրայ յարձակեցաւ ու (1799. Օգոստ. 15.) Լոմբարտիայի Նովի քաղքին մօտ մեծ կռիւ մը սկսաւ, որուն սկիզբներն ինք Ժուպէր մեռնելով՝ Մորօ անոր տեղ հրամանատար դրուեցաւ։ Պատերազմն ինը ժամ արտաքոյ կարգի սաստկութեամբ յառաջ երթալէն ետքը՝ երբ որ դեռ յաղթութիւնը տարակուսելի էր, Սուվարով իր զօրքովն Աւստրիացւոց զօրաց օգնութեան հասնելով՝ Գաղղիացիք 16,000 մեռած, վիրաւորած ու գերի ինկած զօրք կորսնցընելէն ետքը՝ բոլորովին յաղթուեցան։ Աս պարտութիւնն Իտալիայի մէջ ըլլող Գաղղիացի զօրքն ու զօրապետներն անանկ լքուց ու վախցուց, որ Հռովմայի

մէջ Գաղղիացւոց Կառնիրէ զօրապետը, որն որ մինչեւ ան ատեն Հռոմէական տկար ու դողդողացող հասարակապետութիւնը կը պաշտպանէր, շուտ մը դաշնակցաց (Նէապոլսեցւոց ու Անգղիացւոց) զօրաց հետ մասնաւոր դաշնադրութիւն կամ պայմանադրութիւն ընելով՝ Հռոմ ու Չիվիդա Վէքքիա անոնց յանձնեց: Անոր վրայ Պուրքարտ զօրապետը (Սեպտ. 30.) յաղթանակաւ Հռոմ մտաւ: Նոյն ատեն աւստրիացի, ռուս ու օսմանացի զօրքերէն միացած բանակ մը Ֆրէօլիխ զօրապետին հրամանին տակ Անքոնա պաշարեց ու Գաղղիացւոց Մոնիէ զօրապետը զանիկայ քաջութեամբ պաշտպանելէն ետքը՝ վերջապէս (Նոյ. 13.) յաղթուելով անձնատուր եղաւ: Այսանկով Գաղղիացւոց ազդեցութեան տակ ու դրեթէ անոնց զինուց օգնութեամբ քահանայապետին աշխարհական իշխանութիւնը Հռոմայ տէրութեան մէջ քանի մը ամիս իբրեւ դադրած սեպուելէն ու (անուանեալ) Հռոմէական հասարակապետութեան մը անցաւոր իշխանութիւն մը բանեցընելէն ետքը՝ այլեւայլ ազգաց միացեալ զօրաց զէնքերովը նոյն քահանայապետական-աշխարհական իշխանութիւնը նորէն հաստատեցաւ: Բայց որովհետեւ Պիոս Զ. քահանայապետը քանի մը ամիս առաջ մեռած էր, ինչպէս վերը պատմեցինք, ու դեռ իր յաջորդը չէր ընտրուած, անոր համար աշխարհական կառավարութիւնը փոխանորդներու ձեռքը մնաց*: Այսպէս Գաղղիացիք Իտալիայի ուրիշ դիերէն մերժուելով, 1799ին վերջերը միայն Սավոյա ու Նիսա առ ժամն իրենց ձեռքը մնաց, եւ Գենուայի մէջ իրենց զօրքը Մասսենա

* Հազիւ յաջորդ 1800 տարին Մայիս 14. Վենետիկ քաղաքը Աւստրիայի պաշտպանութեան տակ երեսունէն աւելի կարդինալներ մէկտեղ ժողվուելով՝ Քեարամոնդի կարդինալը, որն որ Իմոլայի եպիսկոպոսն էր, քահանայապետ ընտրեցին, որ եւ կոչուեցաւ Պիոս Է. ու իր ընտրութենէն քանի մը ամիս ետքը Հռոմ մտաւ եւ իր գահը նստաւ:

զօրապետին հրամանին տակ քիչ մը ատեն ալ իրենք զիրենք պաշտպանելու կը ջանային։

Նոյն 1799 տարւոյն վերջերը Գաղղիոյ կառավարութեան մէջ երեւելի փոփոխութիւններ եղած էին։ Ն. Պոնապարդ Եգիպտոսէն դարձած ու վերակացուաց ժողովը (directoir) վերջացուելէն ետքը՝ ուրիշ երկու ընկերներով հիւպատոս կամ հասարակապետութեան կառավարիչ եղած էր։ Երկրորդ տարին (1800ին) մեծ տէրութիւններուն շատերը (Ռուսիայէն զատ) դաշնակցած ըլլալով, Գաղղիոյ զօրութեան դէմ միաբան զօրութեամբ գործելու կը պատրաստուէին։ Արդէն, ինչպէս ըսինք, Նէապոլսոյ թագաւորն իր երկիրները բոլորովին ստացած՝ նոյն դաշնակիցներուն զէնքով օգնելու պատրաստ էր. Գաղղիացիք գրեթէ բոլոր Իտալիա կորսընցընելէն ետքը՝ անոր միայն մէկ պզտիկ կտորին մէջ զօրք ունէին. իսկ բոլոր մնացած մասերն Աւստրիայի ձեռքն էին։ Արդ Աւստրիացւոց բանակը, որ 140,000 զինուոր ունէր, Մելաս զօրապետին հրամանին տակ Իտալիոյ մէջ թշնամւոյն հետ զարնուելու պատրաստ կեցած էր։ Աս զօրքը՝ (Ապր. 18.) Մասսենա զօրապետին հրամանին տակ Գենուայի երկիրը գտնուող գաղղիացի զօրաց դէմ յառաջ քալելով՝ Վելդրի քաղքին քովերը զանոնք զարկին ու ստիպեցին զՄասսենա իր զօրաց ձախ թեւովը դէպ ի Գենուա փախչիլ։ Հոն Գաղղիացիք ծովու կողմանէ Անգղիացւոց նաւատորմղէն պաշարուելով, նաեւ իրենց պատերազմի պաշարն ալ նուազած ըլլալով, իրենք զիրենք երկայն ատեն պաշտպանելու եւ հաստատուն մնալու բաւական ոյժ չունէին։ Աւստրիացւոց հրամանատարը Մելաս՝ Օթթ զօրապետին հրամանին տակ զօրաց բաժին մը խաւրեց Գենուա պաշարելու համար, իսկ ինք Գաղղիացւոց բանակին աջ թեւը Բիէմոնդէի մէջէն դէպ ի

Ալպեան լեռներ յառաջ քշելու սկսաւ. (Մայ. 7.) Նիսա ու (Մայ. 11.) Սաւոնա քաղաքներն առաւ։ Գաղղիացիք կամուրջով մը Վար գետէն անցնելով՝ բուն իրենց երկրին սահմանին վրայ հասան, Մելաս նոյն կամուրջն աղէկ պաշտպանուած գտնելով՝ չկրցաւ իրենց ետեւէն յառաջ քալել, բայց զանազան պատրաստութիւններ ընելու սկսաւ ուրիշ կողմանէ նոյն գետին վրայէն անցնելու եւ դէպ ի Գաղղիա յառաջ երթալու համար։

Աս միջոցին Ն. Պոնաբարդէ իբրեւ առաջին հիւպատոս՝ Գաղղիացւոց Իտալիայի մէջ ըրած կորուստներուն դարման ընելու եւ իրեն նոյն երկրին մէջ գաղղիական զինուց զօրութեամբ ստացած փառքը նորէն պայծառացընելու համար, որոշեց զօրաւոր բանակով մը Ալպեան լեռներն անցնիլ ու Իտալիա մտնել։ Եւ երբ որ Աւստրիացւոց բանակին Մելաս զօրապետը դէպ ի Գենուա ու անկից Գաղղիայի երկիրը (Բրովանս) յառաջ քալելու պատրաստութիւններ կը տեսնէր, ինք Պոնաբարդէ իր նոր բանակովը Ս. Բեռնարդոս լեռն անցնելով՝ ետեւի կողմանէ անոր վրայ հասնելու փութաց։ Անհնարին դժուարութիւններու յաղթելով (Մայ. 16—20) նոյն լեռն անցաւ ու սկսաւ Իտալիայի մէջ իր զօրքը յառաջ տանիլ։ Մելաս աս չուին լուրն ընդունելով՝ Վար գետին եզերքը թողուց ու սկսաւ դէպ ի Դուրին յառաջ քալել, համարելով թէ Պոնաբարդէ Ալպեան լեռներն անցածին պէս՝ ընթացքը դէպ ի նոյն քաղաքը կ՚ուղղէ։ Բայց Պոնաբարդէ յառաջատեսութեամբ ամէն բան աղէկ կշռած ըլլալով՝ իր չուն դէպ ի Միլան ուղղած էր, ուր եւ (Յունիս 1.) յաջողութեամբ հասաւ ու անմիջապէս հրատարակեց որ Այսրալպեան հասարակապետութիւնը նորէն հաստատուած է։ Իր աս յանկարծական գալուստն ու այսպիսի հաստատուն ու համարձակ կերպով խօսիլն

ու դործելն իմանալով՝ Գաղղիացւոց կողմը բռնող ամէն Իտալացիք նորէն սիրտ առին ու իրեն օգնելու կը փութային։ Այսանկով քանի մը օրուան մէջ գրեթէ բոլոր Լոմբարտիա Աւստրիացւոց ամէն պատերազմի պաշարներովն ու շտեմարաններովն իր ձեռքն անցան. իսկ Մելաս այսպիսի անակնկալ դէպքերէն ստիպուելով՝ Աղեքսանդրիայի բերդը մտնելն առ ժամս պատշաճ դատեց։ Նոյն օրերը Մասսենա Գաղղիացւոց զօրապետը, որն որ ինչպէս վերը յիշեցինք, Գենուայի մէջ Աւստրիացւոց Օթթ զօրապետին տակ ըլլող զօրքէն պաշարուած էր, ուտելեաց պակասութենէն ստիպուելով, (Յունի. 4.) նոյն տեղը թշնամւոյն յանձնեց ու դուրս ելաւ։ Եւ որովհետեւ նոյն ատեն Օթթ իր վերին հրամանատարէն հրաման ընդունած էր պաշարումը թողուլ, Գենուա առնելէն ետքը իր զօրքովը գնաց գլխաւոր բանակին հետ միանալու համար։ Բայց բանակը հասնելէն առաջ՝ ճամբան Գաղղիացւոց մէկ զօրաբաժնին հանդիպելով, որուն հրամանատար էր Լաննը, (Յունիս 9.) Մոնդէպէլլոյի քով սաստիկ պատերազմ մը բռնուեցաւ ու մեծ կորուստ ընելէն ետքը գլխաւոր բանակին հետ գնաց միացաւ։ Այս միջոցիս Մելաս իր բանակովը բոլոր Լոմբարտիայէն բաժնուած մնալով, միանգամայն գաղղիական զօրաց ուրիշ մէկ մասն ալ Սիւշէ զօրապետին հրամանին տակ ետեւէն իր վրայ հասնելու սպառնալով, որոշեց զօրաւոր կռուով մը իր փակարանէն կամ պաշարմանէն ազատիլ դուրս ելլել ու զօրքը յառաջ քշել։

Պոնաբարդէ արդէն իր բանակովը Սարդինիայի երկիրը հասած էր. ուստի Մելաս իր զօրքը կարգաւորեալ ընթացքով յառաջ տանելով; (Յունիս 14.) Աղեքսանդրիայի ու Դորդոնայի մէջտեղն ըլլող Մարենկոյ գեղին քովի դաշտին վրայ Գաղղիացւոց բանակին վրայ յարձա-

կեցաւ. պատերազմը սկսաւ առաւօտուանց ու քանի մը ժամ քշելէն ետքը՝ Աւստրիացիք գրեթէ յաղթած, Մարենկօ գեղը յարձակմամբ առած, Գաղղիացւոց ճակատը պատռուած անցած էին, անանկ որ Գաղղիացիք ամէն կողմերէն փախչելով՝ արտորնօք ետ կը քաշուէին: Մելաս ութսունամեայ ծերունի հրամանատարն ամէն բան լմնցած ու յաղթութիւնը կատարեալ ստացած սեպելով, ինքն ալ արտաքոյ կարգի յոգնած ու ակարացած ըլլալով, փախչողներուն ետեւէն քալելն ու դեռ պատերազմող քանի մը գաղղիական գնդերը ցրուելն իր երկրորդական հրամանատարին՝ այսինքն Ցախ զօրապետին յանձնեց ու ինք Աղէքսանդրիա գնաց: Բայց հոն հասնելէն քիչ մը ետքը՝ երբ որ յաղթութեան ուրախութիւններովը կը զուարճանար ու նոյնին ուրախական լուրը կայսեր հասցընելու կը պատրաստուէր, պատերազմի դաշտին վրայ իրերն ուրիշ կերպարանքի փոխուեցան: Գաղղիացւոց Տըսէքս քաջ զօրապետը, զորն որ Պոնաբարդ Մարենկօյի ճակատը սկսելէն յառաջ 10,000 զինուորով Գենուայի վրայ խաւրած էր, Աւստրիացւոց յանկարծական յարձակման լուրն առնելով, արտորնօք ընթացքը դարձուց ու իր զօրքը յառաջ քշելով՝ Գաղղիացւոց բանակը հասաւ, երբ որ ամէն բան գրեթէ լմընցած ու Գաղղիացիք ցրուելու վրայ էին: Ինք հասածին պէս՝ կռիւը նորէն սկսաւ, Գաղղիացիք այսպիսի քաջ զօրավարի մը ներկայութեամբն ու օրինակովը սիրտ առնելով՝ սկսան առիւծի պէս թշնամւոյն դէմ վազել: Տըսէքս իր զօրքովն ու Գելլերմանին ձիաւոր զօրաց օգնութեամբը յառաջ քալեց, Ցախ զօրապետին կեցած տեղը հասաւ, զինքն իր հունգարացի քաջ գնդովը պաշարեց գերի ըրաւ. եւ թէպէտ ինք քաջ զօրապետը Տըսէքս պատերազմի խառնուրդին մէջ ինկաւ մեռաւ, բայց Գաղ-

ղիացւոց զօրքը մինչեւ գիշեր պատերազմելով՝ անհնարին կոտորածէն ետքը կատարեալ յաղթութիւն ստացան։

Այս յանկարծական պարտութենէն ետքը Մելաս պատշաճ չհամարեցաւ պատերազմը նորէն սկսիլ. ուստի շուտ մը Գաղղիացւոց բանակը պաշտօնակալ մը խաւրեց՝ զինադադարի առաջարկութիւն ընելու համար։ Պոնաբարդէ աս զինադադարին կարեւորութիւնն իր բանակին համար աղէկ ճանչնալով, զանիկայ յօժարութեամբ ընդունեցաւ եւ (Յունիս 15.) Աղեքսանդրիայի մէջ՝ Լեոպէնի դաշանց պայմաններուն համեմատ որոշուեցաւ որ հիմակու հիմայ՝ Գենուա, Դորդոնա, Աղեքսանդրիա եւ Սարդինիայի ուրիշ ամէն ամրոցները, ինչպէս նաեւ Միլանի ամրոցը տասնուչորս օրուան մէջ Գաղղիայի զօրաց յանձնուին. Աւստրիայի զօրքն Իտալիայի մէջ երեք մաս բաժնուած դէպ ի Մանդուա քաշուին. ու նոյն Մանդուայի ամրոցը, ինչպէս նաեւ Բեսքիերա, Պորկոֆորդէ, Բոյին ձախ եզերքը, Անգոնա, Ֆերրարա ու Տոսկանա իրենց ձեռքը մնան։ Իսկ Քիեզայի ու Մինչիոյի մէջտեղն ըլլող երկիրը չէզոք սեպուի։ Աս զինադադարէն ետքը Պոնաբարդէ Իտալիա թողուց Փարիզ դարձաւ եւ քանի մը ամիս Իտալիայի մէջ պատերազմ չեղաւ։ Բայց Աւստրիայի ու Գաղղիայի մէջ խաղաղութիւնը չկրնալով հաստատուիլ, երկու տէրութեանց մէջ պատերազմը Գերմանիայի մէջ կը շարունակուէր. ու վերջապէս (1800. Դեկտ. 3.) Գաղղիացիք Աւստրիացւոց վրայ մեծ յաղթութիւն մը ընելէն ետքը, զինադադար եղաւ ու տարւոյն վերջերը երկու կողմանք ալ խաղաղութիւն ընել կ'ուզէին։

Գերմանիայի պատերազմները գրգռած ատենը Իտալիայի մէջ ըլլող բանակներն ալ իրարու հետ զարնուելու սկսան. ու Գաղղիացիք Պռիւն զօրապետին հրամանին տակ Մինչիոյ գետէն անդին անցնելով ու Աւստրիա-

ցուց Պելլեկարտ զօրապետին հրամանին տակ պատերազմող զօրաց վրայ նշանաւոր յաղթութիւն մ'ալ ընելով, (1801. Յունու. 16.) առժամանակեայ զինադադարի դաշնադրութեամբ Բեպքիերայի, Վերոնայի, Ֆերրարայի, Անդոնայի ու Մանդուայի ամրոցներն իրենց տրուեցան, Դալեամենդոյ ու Իզոնցոյ գետերն ալ իբրեւ երկու բանակներուն սահմանները դրուեցան։ Անկէ ետեւ թշնամութիւնները դադրելով, Լոթարինկիայի (Լորենայի) Լիւնեւիլ քաղաքը (Փետր. 9.) Գամբոյ Ֆորմիոյ եղած դաշանց հիման վրայ՝ Աւստրիայի ու Գաղղիայի մէջ խաղաղութեան նոր դաշինք դրուեցաւ։ Աս դաշանց զօրութեամբ հաստատեցաւ Գամբոյ Ֆորմիոյի դաշանց մէջ եղած որոշումը՝ որ Աւստրիա Ստորին Նահանգներուն ու Լոմբարտիայի երկիրներէն հրաժարելով՝ Վենետիկի հասարակապետութեան երկիրներուն մինչեւ Ատիճէ գետը տէր կ'ըլլայ, նաեւ Իտալիայի մէջ հաստատուած Լիկուրեան (Գենուայի) ու Այսրալպեան հասարակապետութիւնները կը ճանչնայ։ Տոսկանա՝ որուն մեծ դուքսը մինչեւ ան ատեն Աւստրիայի կայսերական ցեղէն իշխան մըն էր՝ Բարմայի իշխանին կը տրուի. իսկ Տոսկանայի մեծ դուքսն Իտալիայի մէջ կորսնցուցած երկրին տեղ՝ Գերմանիայի մէջ ուրիշ երկիրներ կ'ընդունի։ Այսպէսով՝ Գամբոյ Ֆորմիոյի ու Լիւնեւիլի դաշանց որոշմունքներովը Աւստրիա Գերմանիայի մէջ կորսնցուցած 540 քառ. մղ. իսկ Իտալիայի մէջ կորսնցուցած 140 քառ. մղ. երկիրներուն դէմ՝ ընդունեցաւ Իտալիայի մէջ 500 քռ. մղ. ու Գերմանիայի մէջ 92 քռ. մղ. երկիր. իսկ Տոսկանայի մեծ դուքսն Իտալիայի մէջ կորսնցուցած 410 քռ. մղ. դքսական երկիրներուն տեղ՝ Գերմանիայի մէջ 200 քռ.՝մղ. երկիր (Սալցպուրկ, Պերխդոլսկատէն ու Բասսաւի երկրին մէկ մասն) ընդունեցաւ։

Լիւնեւիլի խաղաղութեան դաշանց մէջ ոչ Նէա-
պոլսոյ ու ոչ Հռոմայի տէրութեան իրողութեանց վրայ
յիշատակ եղած էր: Նէապոլսեցիք (1800. Դեկտ.) քիչ
մը զօրացած ըլլալով, Տոսկանայի երկիրն արշաւելու հա-
մարձակած էին. բայց հոնտեղերն ըլլող Գաղղիացւոց
զօրքը վրանին գալով (1501. Յունու. 14.), Հռոմայի
երկիրը փախչելու եւ ապաւինելու ստիպեցան: Ետքէն
Գաղղիացիք Հռոմայի երկիրն ալ հանելով, Նէապոլ-
սեցիք մեծ նեղութեան մէջ իյնկան ու միայն Ռուսիոյ
միջնորդութեամբը, որն որ նոյն ատեն Գաղղիայի բարե-
կամացած էր, Ֆոլինեոյի մէջ (Փետր. 18.) զինադադարի
դաշինք դրին: Քիչ մը ետքը աս զինադադարին ժամա-
նակը լմննալով, երբ որ Գաղղիացիք զօրաւոր բանակով
մը Նէապոլսոյ սահմանը մտնելու կը պատրաստուէին,
տէրութիւնը փութաց իրեն առաջարկուած պայմանները
յանձն առնելով՝ Գաղղիայի հետ խաղաղութեան դաշն
գնել: Աս դաշնադրութիւնն եղաւ (1801 Մարտ 28.)
Փլորենտիայի մէջ, որուն զօրութեամբ Նէապոլսոյ տէրու-
թիւնը Գաղղիացւոց կը թողուր Էլպա կղզին, Բիոմպի-
նոյի իշխանական երկիրն ու Սդադօյ դէլլի Բրեզիտի ը-
սուած վիճակը, եւ կը խոստանար իր նաւահանգիստներն
Անգղիացւոց ու Օսմանցոց նաւերուն գոց պահել եւ
Ապուլիայի Օդրանդոյ քաղքին մէջ գաղղիացի զօրաց
մնալուն հաւանիլ: Երբ որ Անգղիա (1802. Մարտ 27.)
Գաղղիայի հետ Ամիէնի մէջ խաղաղութեան դաշինք
դրաւ, հաստատուած պայմաններուն մէկն ալ աս էր՝ որ
Գաղղիացիք իրենց զօրքը թէ Նէապոլսոյ եւ թէ Հռո-
մայի տէրութեանց երկիրներէն հանեն: Ասով աս երկու
տէրութիւնները նոյն ատեն Գաղղիայի լուծէն դրեթէ
բոլորովին ազատեցան, թէպէտ եւ Գաղղիայի կամ մա-
նաւանդ առաջին հիւպատոսին՝ այսինքն Պոնաբարդէին

ազդեցութիւնը, ինչպէս Իտալիոյ ուրիշ մասերէն՝ նոյնպէս աս երկու տէրութեանց վրայէն ալ պակաս չեղաւ։

Տոսկանա՝ որն որ Լիւնեւիլի խաղաղութեան դաշանց մէկ պայմանին համեմատ՝ Գաղղիոյ ձեռքը մնացած էր՝ Բարմայի Փերդինանդոս դքսին տրուելու համար, Պոնաբարդէին կարգաւորութեամբը (1801. Մարտ 21.) նոյն դքսին Լուդովիկոս որդւոյն տրուեցաւ՝ Թագաւորութիւն Եթրուրիոյ անուամբ, ուստի նոյն իշխանը (1801. Մայ.) իբրեւ Թագաւոր Եթրուրիոյ՝ իր կառավարութիւնն սկսաւ։ Նոյն ատեն որոշուեցաւ որ Փերդինանդոս դուքսը մեռնելէն ետքը՝ Բարմա ու Բիաչենցա գաւառները Գաղղիոյ իշխանութեան կամ տիրապետութեան տակ մնան։ Բայց աս Եթրուրիոյ թագաւորութեան ու թագաւորի անունը կեղծեալ տիտղոսի մը պէս էր. որովհետեւ Լուդովիկոս թագաւորն իր երկիրը մտնելէն ետքն ալ՝ Գաղղիացւոց զօրքը հոն մնացին ու Եթրուրիա գրեթէ իբրեւ Գաղղիոյ գաւառ մը կը կառավարուէր։

Իսկ Սարդինիոյ տէրութեան վիճակը Իտալիոյ ուրիշ տէրութեանց վիճակէն աւելի խեղճ եղաւ։ Արդէն վերակացուաց ժողովոյն կառավարութեան ատենը Բիէմոնդէի երկիրը Սարդինիոյ տէրութենէն դուրս հանուած ու իբր Գաղղիոյ մէկ գաւառն եղած էր՝ առժամանակեայ առանձին կառավարութեամբ մը. այսպէս մնաց նաեւ Պոնաբարդէի հիւպատոսութեան ժամանակն ալ։ Եւ թէպէտ Ռուսիա առանձին խնամքով միջնորդութիւն կ՚ընէր ու կը ջանար Բիէմոնդէն Սարդինիոյ թագաւորին յանձնել տալու. բայց Պոնաբարդէ խել մը ատեն խնդիրն անորոշ ու առջի վիճակին մէջ թողտալէն ետքը, վերջապէս (1802. Սեպտ. 11.) ճարպկու-

թեամբ մը Ռուսիայի դահլիճը խաբելով՝ զԲիեմոնդէ բոլորովին Գաղղիայի հետ միացուց։ Եւ որովհետեւ Ռուսիա միշտ կը պնդէր ու կը ստիպէր որ գոնէ Բիեմոնդէի տեղ՝ Սարդինիայի Թագաւորին Իտալիայի մէջ ուրիշ երկիրով մը հատուցում ըլլայ, ու նոյն ատենները Բարմայի Ֆերդինանդոս դուքսը մեռնելով՝ իր երկիրը (Բարմա, Բիաչենցա ու Կուաստալլա) Գաղղիայի տրամադրութեան տակ մնացած էր, անոր համար Պոնաբարդէ Ռուսիայի տէրութիւնը նոր հնարքով մը լռեցուց, խոստանալով որ Բարմայի երկիրը Սարդինիայի Թագաւորին տալու կը ջանայ։

Նոյն (1802) տարին Յունուար ամսոյն մէջ Պոնաբարդէ Այսրալպեան հասարակապետութեան հրաման խաւրած էր՝ որ Գաղղիայի Լիոն քաղաքը քանի մը պատգամաւորներ խաւրեն, որպէս զի իրեն հետ իրենց հայրենեաց համար նոր սահմանադրութիւն մը շինելու վրայ խորհուրդ ընեն։ Հոն Պոնաբարդէին առաջնորդութեամբն ու ազդեցութեամբը նոր սահմանադրութիւն մը յօրինուեցաւ, որուն մէջ այլեւայլ հնարքներով հաստատուած որոշմունքներն Իտալիայի հարուստ հողատէրներուն, ուսումնականաց ու վաճառականաց զանազան բաղձանքներուն ու պահանջմունքներուն ըստ կարի համեմատ կ'երեւային։ Ըստ այսմ սահմանադրութեան՝ կառավարութեան գլուխը Գահերէց մը պիտ'որ ըլլար։ Արդ՝ ժողովականք աղաչեցին Պոնաբարդէին, որ հոն ներկայ էր, աս պաշտօնն ինք յանձն առնելու, որովհետեւ Իտալացւոց մէջ այնպէս յարմար ու յաջողակ անձ մը չենք կրնար գտնել, կ'ըսէին, որ աս բարձր պաշտօնը վարելու կարող ըլլայ։ Հիւպատոսը քանի մը ընդհանուր խօսքերով յանձն առաւ նոյն պաշտօնը վարելու՝ առանց Գահերէցի անուան ու տարեկան թո-

շակի*։ Երբ որ Նոր սահմանադրութիւնը բոլոր ժողովականաց առջեւը պիտ՚որ կարդացուէր, ժողովին մէջ ընդհանուր շշնկոց մ՚ելաւ ու շատերը սկսան առաջարկել որ տէրութեան անունը Այսրալպեան Հանրապետութեան տեղ՝ Իտալական Հանրապետութիւն ըլլայ։ Աս առաջարկութիւնը գրեթէ բոլոր Իտալիայի ժողովրդոց փափագը կը սեպուէր, որովհետեւ առհասարակ կ՚ուզուէր որ ամէն Իտալացիք իբր մէկ տէրութեան անդամներ սեպուին։ Պօնաբարդէ աս առաջարկութիւնն իր ներքին խորհուրդներուն ու փափագներուն համեմատ գտնելով՝ նոյնին վրայ իր հաճութիւնը ցուցուց, եւ ժողովն արձակեցաւ։

Ասկից առաջ Պօնաբարդէ Լիգուրեան (Գենուայի) Հանրապետութեան ալ՝ գաղղիական սահմանադրութեան նման նոր սահմանադրութիւն մը տուած էր. ըստ որոյ Հանրապետութեան գլուխը դուքս (տօժ) մը պիտ՚որ ըլլար երկու ընթերականներով կամ խորհրդականներով, դարձեալ՝ ծերակոյտ մը ու օրէնսդիր ժողով մը պիտ՚որ ունենար։ — Այսպէս Պօնաբարդէ՝ իբրեւ առաջին հիւպատոս կամ գլուխ գաղղիական Հանրապետութեան՝ Իտալիայի այլեւայլ մասանց իրողութեանց ու կառավարութեան վրայ ուզածին պէս կը կարգադրէր. ու կրնայ ըսուիլ որ բոլոր երկրին վրայ իբրեւ վերին տիրող կ՚իշխէր. մինչեւ 1804 Մայ. 20.

* Ըստ գաղղիական սահմանադրութեան՝ Պօնաբարդէ չէր կրնար Իտալիայի Հանրապետութեան գահերէց ըլլալ, ինչու որ Գաղղիայի քաղաքացւոյ մը թոյլ տրուած չէր օտար երկրի մը մէջ պաշտօն կամ ծառայութիւն մը վարել։ Բայց ճարպիկ հիւպատոսը գահերիցութիւնը յանձն առաւ չէ թէ իբրեւ պաշտօն կամ ծառայութիւն մը, հապա միայն այնչափ ատեն Իտալիայի մէջ իշխելու կամ իտալական Հանրապետութիւնը կառավարելու՝ մինչեւ որ նոյնն իր քաղաքացիներուն կամ անդամներուն մէջէն մէկը գտնէ, որն որ աս բարձր ու դժուարին պաշտօնը վարելու արժանաւորութիւն ու կարողութիւն ունենայ։

Նափոլէոն Ա. անուամբ Գաղղիայի կայսր անուանելով, աւելի եւս իշխանութեամբ Իտալիայի վրայ իր ազդեցութիւնը բանեցընելու սկսաւ: Նոյն (1804) տարի՝ առանձինն Ռուսիայի տէրութիւնը Նափոլէոնին՝ ինչպէս ուրիշ գործքերուն՝ նոյնպէս Իտալիայի մէջ իբրեւ վերին իշխան ըրած կարգաւորութեանց, մանաւանդ Սարդինիայի թագաւորին Բիէմոնդէի տեղ խոստացուած հատուցումը չկատարելուն եւ Նէապոլսոյ երկիրը գաղղիացի զօրքով բռնելուն վրայ վշտանալով, Գաղղիայի հետ բարեկամական յարաբերութիւնները կտրեց: Ասոր վրայ Աւստրիա ու Ռուսիա (1804. Նոյ. 4.) դաշինք դրին՝ միատեղ 350,000 զօրաց բանակ մը կազմելով, Նափոլէոնին օտար երկիրներու, մանաւանդ Իտալիայի մէջ ինքնիշխան գործելն արգելելու, եւ Սարդինիայի թագաւորը, Տոսկանայի մեծ դուքսն ու Մոտենայի դուքսը նորէն իրենց կորսնցուցած երկիրներուն եւ գահերուն դարձընելու: Նաեւ Անգղիայի տէրութիւնը (1805. Յուն. 14.) Նափոլէոնին յայտարար գրով մը ծանոյց որ ինք ալ չիկրնար Եւրոպայի միւս տէրութեանց միաբանութենէն զատուիլ, եւ անոնց դէմ Գաղղիայի հետ խաղաղութեան ու դաշնակցութեան մէջ մնալ: Նափոլէոն աս ամէն ազդարարութիւններն ու վտանգներն արհամարհելով ու չսեպելով, առաւելապէս Իտալիայի նկատմամբ մեծագոյն համարձակութեամբ սկսաւ գործել: Նոյն տարի (Մարտ 17.) իտալական հասարակապետութեան խորհրդականները Փարիզ կանչելով՝ զինքն Իտալիայի Թագաւոր անուանել տուաւ. ու երկու ամիս ետքը անձամբ Իտալիա գնաց եւ (Մայ. 26.) Միլանի մայր եկեղեցւոյն մէջ Իտալիայի Երկաթէ Թագը գլուխը դրաւ, որով որ հին ատենները Գերմանիայի կայսրները՝ իբրեւ Լոմբարտիայի թագաւոր կը պսակուէին: Նոյն թագը գլուխը դրած ատենն աս

խօսքերն ըսաւ, ‘‘Աստուած այս թագն ինծի տուաւ. վայ անոր մարդուն, որն որ անոր ձեռք դպցընել կ'ուզէ,,. որով կը հասկըցընէր թէ իր այս գործքն Աւստրիայի ու Ռուսիայի կայսրներուն անտարբերութեամբ չընդունելըն աղէկ կը ճանչնար ու գիտէր, բայց վախ չունէր: Թէպէտ եւ Իտալիայի թագաւորութիւնը հաստատուած ատենն որոշուեցաւ որ Գաղղիայի կայսրութիւնն ու Իտալիայի թագաւորութիւնը միեւնոյն իշխողի տակ չըլլան. բայց Նաբոլէոն հոս ալ հնարք մը գտաւ՝ ըսելով որ նոյն ատենները Իտալիայի Գաղղիայէն զատուիլն ու առանձին թագաւոր ունենալը խիստ վտանգաւոր է. ուստի եւ հիմակու հիմայ ինք Իտալիայի ալ թագաւոր կը մնայ, բայց կը ջանայ նոյն թագն ու պատիւը յաջողակ երիտասարդի մը տալ: Եւ իրօք քիչ մը ետքը (Յունիս 7.) իր Ժոզէֆին ամուսնոյն առջի երկանէն ունեցած Եւգինէոս Պոհառնէ որդին իրեն յաջորդ անուանեց եւ Իտալիայի փոխարքայ դրաւ:

Փարիզի մէջ՝ Իտալիայի թագաւորութեան հաստատուիլը հրատարակուած օրը Նաբոլէոն նոր հրովարտակով մը Բիոմպինոյի իշխանական երկիրը, (որն որ Պուոնդոմբանեի ազգատոհմին ժառանգութիւնն էր ու Նէապոլսոյ թագաւորն անոր վերին իշխանութիւնը (1801) խաղաղութեան դաշանց ատենը Գաղղիայի տալու ստիպուած էր,) իր Էլիզա քրոջն իբրեւ ժառանգական կալուած պարգեւեց, սահմանելով որ միշտ Գաղղիայի վերին իշխանութեան տակ մնայ: Այս Էլիզա տիկինը Փելիքս Պաչչիոքքի Իտալացի ազնուականի մը հետ ամուսնացած էր, զորն որ Նաբոլէոն իշխան (prince) անուանեց, ու որոշեց որ անկից ետքը Բիոմպինոյի իշխանները Գաղղիայի կայսրէն իրենց իշխանութեան մէջ հաստատուին ու անոր հաւատարմութեան ու հնազան-

դութեան երդում ընեն: Քանի մը ամիս ետքը (Յունիս 23.) նաեւ Լուքքայի փոքր հանրապետութեան երկիրը նոյն Պաչչիոքքի իշխանին իբրեւ ժառանգական կալուած տրուեցաւ: Իսկ Գենուա, որն որ 1798էն ի վեր Լիգուրեան հանրապետութիւն անուամբ անկախ տէրութիւն մը կը սեպուէր, Նաբոլէոնին հնարքովը իբր իր բնակիչներուն բաղձանացը համաձայն՝ (Յունիս 4.) Գաղղիայի անմիջական կառավարութեան տակ մտաւ ու անոր հետ միացաւ: Նաեւ Բարմայի, Բիաչենցայի ու Կուասդալլայի երկիրները, զորս Նաբոլէոն խոստացած էր Սարդինիայի թագաւորին՝ իբրեւ իրմէն առնուած երկիրներուն հատուցում մը տալու, (Յուլ. 21.) Գաղղիայի հետ միացան:

Երբ որ Իտալիայի թագաւորութեան կանգնուելուն, Նաբոլէոնին՝ Իտալիայի թագաւոր անուանուելուն ու իր ըրած այլեւայլ կարգաւորութիւններուն լուրն Եւրոպայի մէջ տարածուեցաւ, մեծ տէրութիւնք սկսան աւելի եւս խնամքով, իրարու հետ միանալու եւ միացեալ զօրութեամբ անոր այսչափ համարձակութիւնը զսպելու ջանալով, Երրորդ դաշնակցութիւնը (coalition) հաստատեցին: Ամենէն առաջ Անգղիա ու Ռուսիա (1805. Ապր. 11.) իրարու հետ դաշնակցելով՝ որոշեցին ուրիշ տէրութիւններու հետ դաշնակցութիւն ընել ու 500,000 զօրաց բանակ մը կազմելով՝ աշխատիլ որ (ուրիշ կարգաւորութիւններէն զատ) Սարդինիայի թագաւորն իր երկիրն ու գահը դառնայ, եւ Իտալիա Գաղղիացւոց լուծէն բոլորովին ազատուի: Աս դաշնակցութեան մէջ մտան (Օգոս. 9.) Աւստրիա, (Հոկտ. 3.) Շուէտ ու (Նոյ. 3.) Պրուշ: Աւստրիայի 120,000 զօրաց գլխաւոր բանակը Կարոլոս արքիդքսին հրամանին տակ Իտալիայի մէջ Գաղղիացւոց հետ զարնուելու պատրաստ

կեցած էր։ Բայց աս հեղու աս զօրքը Իտալիոյ մէջ թշնամւոյն հետ պատերազմելու առիթ չունեցաւ։ Վասն զի Գաղղիացիք Գերմանիոյ ու Աւստրիոյ քանի մը գաւառներուն մէջ դաշնակցաց բանակներուն յաղթելէն ետքը՝ վերջապէս (Դեկտ. 2.) Մորաւիոյ Աւստերլից գեղին քով Նաբոլէոնին ըրած յաղթութիւնն ամէն թշնամութեանց վերջ տուաւ։ Անկից ետքը Աւստրիոյ կայսրը հարկադրեցաւ նախ զինադադար ընել ու քանի մը օրէն ալ (Դեկտ. 26.) Հունգարիոյ Բրեսպուրկ քաղաքին մէջ Նաբոլէոնին հետ խաղաղութեան դաշինք դնել։ Աս դաշինքով Աւստրիա՝ Նաբոլէոնին Լիւնեւիլի խաղաղութենէ ետքն ըրած ամէն կարգաւորութիւնները մանաւանդ Իտալիոյ նկատմամբ՝ ընդունելէն եւ ուրիշ քանի մը պայմաններ յանձն առնելէն ի զատ, նաեւ Վենետիկի երկիրը կամ թագաւորութիւնը Դալմատիոյին հետ (իբր 500 քառ. մղ. տեղ երկուք ու կէս միլիոն բնակիչով) Նաբոլէոնին կամ Իտալիոյ թագաւորութեան տուաւ եւ զՆաբոլէոն Իտալիոյ թագաւոր ճանչցաւ։

Աս միջոցիս Նէապոլսոյ տէրութեան մէջ ալ մեծ ու նշանաւոր փոփոխութիւն մ'եղաւ։ Վերը յիշուած դէպքերէն քանի մը ամիս առաջ՝ Նաբոլէոն (1805. Սեպտ. 21.) Նէապոլսոյ տէրութեան հետ դաշինք դրաւ, որուն զօրութեամբ բոլոր աս տէրութեան նաւահանգիստները Գաղղիոյ թշնամի ըլլող տէրութեանց նաւերուն գոց պիտ'որ մնային։ Աս դաշինքը հաստատուելէն ետքը՝ Նէապոլսոյ երկրին մէջ գտնուող Գաղղիացւոց բանակն անկից դուրս ելաւ ու Վերին Իտալիա գնաց։ Բայց նոյն տարի Նէապոլսոյ տէրութիւնն ալ Ռէկալ տէրութեանց դաշնակցութեան մէջ մտնելով, Նաբոլէոնին հետ դրած դաշինքն աւրեց։ Ասոր վրայ

(Նոյ. 19.) 32,000 Ռուս-Անգղիացի զօրաց բանակ մը նաւերով Նէապոլսոյ ծովեզերքը եկաւ, ու Նէապոլսոյ թագուհին, որ քիչ մը առենէ ի վեր արտաքուստ իր Գաղղիայի դէմ ունեցած ատելութիւնը թողուցած էր, բայց ներքուստ նոյնը հաստատ կը պահէր, ան զօրքը չէ թէ միայն առանց ընդդիմութեան՝ հապա նաեւ մեծ ուրախութեան ցոյցերով ընդունեցաւ: Աս գործքը Նաբոլէոնին բարկութիւնն արտաքոյ կարգի սաստկութեամբ բորբոքեց: Ուստի Բրեսպուրկի խաղաղութեան դաշանց հաստատուելուն երկրորդ օրը (Դեկտ. 27.) ինք Վիէննայի մօտ Շէօնպրունի կայսերական պալատը գտնուելով, հոնկից հրովարտակ մը հանեց, որուն մէջ ըսելով թէ “Պուրպոնեան ցեղը (ասկից էր ան առենուան Նէապոլսոյ թագաւորը,) նոյն տէրութեան մէջ թագաւորելէն դադրած է„ թագաւորական իշխանութեան վերջանալը հրատարակեց: Երբ որ աս հրովարտակն ու Նաբոլէոնին միտքը հրատարակուեցաւ, Ռուս-Անգղիական զօրքը, որն որ թագաւորին օգնելու համար եկած էին, Նէապոլսէն հեռացան: Անկից ետքը Փերդինանդոս թագաւորն ամէն յոյսը կորսնցընելով, (1806. Յունու. 15.) Նէապոլիս թողուց ու իր գանձերովն ու բարեկամներովը Սիկիլիա կղզին անցաւ. քանի մը շաբաթ ետքն ալ (1806. փետր. 11.) թագուհին Նէապոլսէն ելաւ, տեսնելով որ Նէապոլսոյ ժողովրդեան ու զօրաց հետ Գաղղիացւոց զօրութեան դէմ դնելու համար ի գործ դրած հնարքներն օգուտ մը չըրին ու պիտ'որ չընեն: Քանի մը օր ետքը (փետր. 14.) Գաղղիացիք Նաբոլէոնին Յովսէփ եղբօրը հրամանին տակ եկան Նէապոլիս մտան ու երկիրը գրաւեցին: Միայն Կայետայի ամուր բերդին մէջ Հեսսէն-Ֆիլիբսթալի իշխանը հինգ ամիսի չափ Գաղղիացւոց դէմ պատերազմելով՝ զանիկայ պաշտպա-

նեց: Նաեւ Փերդինանդոս Թագաւորին հաւատարիմ կողմնակիցները Գալապրիայի մէջ երկայն ատեն Անգղիացւոց օգնութեամբ Գաղղիայի զօրաց նոյն գաւառը մտնելու թող չտուին: Սակայն աս ամէն տեղերն ալ վերջապէս Գաղղիացիք առին ու բոլոր Նէապոլսոյ ցամաք երկրին տիրեցին. միայն Սիկիլիա կղզին Փերդինանդոս Թագաւորին իշխանութեան տակ մնաց:

Գաղղիայի զօրաց Նէապոլիս մտնելէն ամիս մը ետքը (Մարտ 30.) Նաբոլէոն նոր հրովարտակով մը իր Յովսէփ եղբայրը Նէապոլսոյ ու Սիկիլիայի Թագաւոր անուանեց, այսու պայմանաւ՝ որ նոյն տէրութեան երկրին մէջ վեց հատ՝ Գաղղիայի կայսեր տրամադրութեան տակ մնալու՝ աւատական իշխանութիւններ կամ կալուածներ որոշուին*. դարձեալ նոյն երկրին եկամուտքէն ամէն տարի մէկ միլիոն ֆրանգ առնուի՝ մեծ արդիւնք ունեցող Գաղղիացի զինուորները վարձատրելու համար: — Յովսէփ Թագաւորն իր նոր գահին վրայ հաստատուելէն ետքը ինք զինք զօսանաց ու զուարճութեանց տուաւ, իսկ երկրին կառավարութիւնն իր երկու պաշտօնեաներուն՝ Սալիչէտդի գորսիգացւոյն ու Ռէօտէրէր գերմանացւոյն ձեռքը թողուց, որոնք հին աւատական կարգերն ու կալուածներու բաժանումները ջնջելով, բոլոր երկիրն այլեւայլ գաւառներու եւ վիճակներու բաժնեցին, վանքերու կալուածները տէրութեան գանձին գրաւեցին եւ նոր կարգաւորութիւններով կը ջանային ժողովրդեան վստահութիւնը Նաբոլէոնեան կամ նոր Թագաւորութեան համար շահելու. բայց ժողովուրդը Թ·է

* Քիչ մը ետքը (Յունիս 5.) աս աւատական կալուածներուն մէկը՝ այսինքն Պենեւենդի իշխանութիւնը Նաբոլէոնին հրամանաւ Գալերան պաշտօնէին, իսկ Բոնդէ Գորվօյի իշխանութիւնը Պեռնատոդ սպարապետին տրուեցաւ:

*թագաւորին ու թէ իր կառավարութեան վրայ մըշ-
տող դողով ու ուշքով կը հսկէր։*

*Նաբոլէոն կայսրն իր Իտալիայ մէջ բռած կարգա-
դրութիւնները հաստատելու մտքով՝* (Մարտ 2.) *Փա-
րիզի խորհրդարանոցին մէջ հրապարակաւ սա խօսքերն
ըսաւ. "Բոլոր Իտալիայ թերակղզին (Գաղղիական) մեծ
կայսրութեան մէկ մասն է ու ես՝ իբրեւ գերագոյն գլուխ՝
այլեւայլ օրէնքներն ու սահմանադրութիւնները, որոնց-
մով Իտալիայ այլեւայլ մասերը կը կառավարուին, իմ
երաշխաւորութեանս տակ առած եմ„։ Այս խօսքերով
Նաբոլէոն յայտնի ցուցուց որ բոլոր Իտալիա իր վերին իշ-
խանութեան տակ կ'անցնէր ու անոր այլեւայլ մասանց
վրայ իշխողներն իր հրամաններուն համեմատ պիտի՛ որ տի-
րէին, եւ ինք ամէն տեղ իշխանները կամ թագաւորները
գահ պիտի՛ որ հանէր, գահէն իջեցընէր եւ ուզածին պէս
զերենք պիտի՛ որ փոխէր։ Այս ընթացքը համեմատ Նաբո-
լէոն քիչ մը ետքը Բորդուկալի երկիրը պատերազմաւ
առնելէն, թագաւորը գահէն վռնտելէն ու բոլոր տէ-
րութիւնը երեք մաս բաժնելէն վերջը,* (1807. *Հոկտ.*
27.) *անոր հիւսիսային մասը, որն որ "Հիւսիսային Լու-
սիտանիայի թագաւորութիւն„ պիտի կոչուէր, Եդրուրի-
այի Կար. Լուդովիկոս Բ. անչափահաս թագաւորին (ո-
րուն հայրը Լուդով. Ա. քանի մը ամիս առաջ մեռած
էր,) տալու որոշեց. որուն դիմացը նոյն Եդրուրիայի թա-
գաւորութեան երկիրը Գաղղիայի կայսեր պիտի՛ որ տրուէր։
Նոյն տարի (Դեկտ.* 10.) *Եդրուրիայի թագուհին (Նա-
բոլէոնին հրամանէն ստիպուելով) իր յիշեալ անչափա-
հաս որդւոյն անուամբը նոյն թագաւորութենէն հրաժա-
րեցաւ ու Գաղղիայի զօրքն եկան զանիկայ գրաւեցին։
Յաջորդ տարին Նաբոլէոն իր Յովսէփ եղբայրը՝ զոր որ
Նէապոլսոյ թագաւոր դրած էր,* (1808. *Յունիս* 6.)

հոնկից հանեց ու Սպանիայի գահը նստեցուց, ուսկից՝ խել մը պատերազմներէն ետքը՝ Փերդինանդոս Է. թագաւորը վար առած ու բոլոր Պուրպոնեան-Սպանիական թագաւորական ցեղը յաջորդութենէ զրկած էր: Իսկ Նէապոլսոյ գահին վրայ (Յուլ. 15.) թագաւոր նստեցուց իր Միւրա քեռայրը, զորն որ յառաջագոյն (1806. Մարտ 15.) Գերմանիայի մէջ Գլեւի ու Պերկի մեծ դուքս ըրած էր:

Նաբոլէոն թէպէտ եւ Իտալիայի ուրիշ տէրութեանց մէջ ուզածին պէս կարգաւորութիւններ ընելով՝ քանի մը վեհապետներ իրենց գահերէն խախտած հանած էր, նաեւ քահանայապետական երկիրներէն առնուած քանի մը մասերն ետ դարձընելու ամենեւին կամք չէր ցուցըներ, ի վերայ այսր ամենայնի Դոլենդինոյի խաղաղութենէն կամ թէ Պիոս Է.ին քահանայապետական գահն ելլելէն ետեւ՝ անոր հետ յայտնի թշնամութիւն կամ պատերազմ չէր ըրած: Վերջապէս զանազան պատճառանքներ գտնելով ու իր սովորական հնարքները բանեցընելով՝ աս եկեղեցական-աշխարհական վեհապետին վրայ ալ իր բռնաւորական ու տիրապետական խորհուրդները, մանաւանդ թէ շատոնցուընէ մտքին մէջ հաստատած գաղափարը (զ.քահանայապետն աշխարհական իշխանութենէ զրկելը) ի գործ դնելու ձեռք զարկաւ: Թէպէտ եւ քահանայապետին հետ ըրած դաշնաւորութեան (concordat) համեմատ՝ Իտալիայի եկեղեցական վիճակներուն կամ թեմերուն համար Նաբոլէոն եպիսկոպոսներ պիտ՚որ չանուանէր. սակայն ինք այս դաշինքը բանի տեղ չդնելով, առանց քահանայապետին հարցընելու՝ նոյն վիճակներուն համար եպիսկոպոսներ կ՚անուանէր եւ ուրիշ ասոնց նման կարգաւորութիւններ կ՚ընէր: Իսկ քահանայապետը, ինչպէս որ իր պարտքն

*ու իրաւունքը կը պահանջէին, աս Նաբոլէոնէն անուանուած եպիսկոպոսներուն ընտրութիւնը չէր հաստատեր։ Նաբոլէոն* (1806—1807) *զանազան պատերազմներու զբաղած ըլլալով, երկու երեք տարի աս խնդիրներն առանց հետեւութեան մնացին. բայց երբ որ Դիլսիդի խաղաղութեան դաշինքէն ետքը* (1807. *Յուլ.* 9.) *Փարիզ դարձաւ, քահանայապետին հետ աս բաներուս վրայ իր վէճերը սկսաւ ու իր հին հնարքները ձեռք առաւ իր զօրութիւնն անոր ցուցընելու համար։ Քանի մը տարէնէ վեր իրեն սովորական խօսք մ՚ըրած էր՝ թէ միայն Ռուսիայի կայսրն ու Անգղիայի թագաւորն իրենց տէրութեանց մէջ բացարձակ տէր են, որովհետեւ իրեն կարծեաց համաձայն՝ աս վեհապետներն իրենց երկիրներուն մէջ ամէն եկեղեցական գործքերուն վրայ ուզածնուն պէս կարգաւորութիւններ կրնային ընել։ Ինքն ալ ասանկ իշխանութիւն մը աւելի եւս ընդարձակութեամբ ձեռք բերելու եւ բանեցընելու համար հարկաւոր ու պատշաճ համարեցաւ եւ որոշեց՝ հռոմէական գահը բոլորովին վերջացընել։ Եւ աս բանս ընելու պատճառանք ու պատրուակ մը ցուցընելու համար՝ քահանայապետին առաջարկեց որ իրեն հետ դաշն դնէ՝ Գաղղիայի թշնամեաց դէմ յարձակողական ու պաշտպանողական պատերազմ ընելու։ Աս դաշին հաստատութեան համար ալ իբրեւ գլխաւոր պայման պահանջեց՝ որ քահանայապետը Նաբոլէոնին թշնամի ըլլող ամէն տէրութեանց դեսպանները Հռոմայէն հեռացընէ ու իր նաւահանգիստներն Անգղիացւոց նաւերուն գոցէ։ Ասոնք առաջարկելէն ետքը՝ սպառնալիք ըրաւ որ եթէ քահանայապետը նոյները կատարել չուզէ, ինքն ալ Անգոնայի երկիրը կամ մարզը* (marche) *կը գրաւէ։*

*Աս առաջարկութեանց ու սպառնալեաց դէմ քա-*

հանայապետն իր ժողովովը մէկտեղ հաստատութեամբ պատասխան տուաւ թէ առանց իր պարտուցը կատարման վրայ արատ բերելու եւ խղճմտանաց դէմ գործելու եւ առանց ուրիշ ամէն տէրութեանց ատելութիւնն ու թշնամութիւնը պարապ տեղ գրգռելու՝ չիկրնար Նաբոլէոնին առաջարկած դաշինքն ընդունիլ ու հաստատել եւ անով մշտնջենաւոր պատերազմի պատրաստ կենալ, մանաւանդ Անգղիացւոց դէմ պատերազմ հրատարակել, որոնցմէ մինչեւ այն ատեն ամենեւին թշնամութեան ցոյց ու գործ մը չէր տեսած։ Բայց որպէս զի ցուցընէ թէ իր ձեռքէն եկածն ու խղճմտանքին թոյլ տուածը կատարելու պատրաստ է՝ կ'ուզէ ու կը հաւանի որ իր նաւահանգիստներն Անգղիացւոց նաւերուն գոց ըլլան ու իր երկրին ծովեզերքն իր զօրքը պահպանեն։

Նաբոլէոն սաստիկ պատասխան մը ընդունելէն ու քահանայապետին անխախտելի հաստատութիւնը տեսնելէն ետքը, ալ երկայն ժամանակ անգործ կենալը՝ իբր թէ քահանայապետէն բանադրանք մը ընդունելու վախ ունենալէն յառաջ եկած տկարութիւն սեպուելիքը գիտնալով, Հռոմայի դէմ իր թշնամութեան գործքերը սկսաւ։ Յամի 1808 (փետր. 2.) 6000 գաղղիացի զօրք Միոլիս զօրապետին հրամանին տակ (որն որ իսկզբան Հռոմայի երկիրէն անցնելու եւ Նէապոլիս երթալու հրաման խնդրած ու ընդունած էր,) եկան Հռոմ մտան, ու պատճառ բերելով որ նոյն քաղաքն ու իր երկիրը Նէապոլսեցի աւազակներէն պաշտպանելու համար հոն մնալ կ'ուզեն, քաղքին մէջ բնակութիւն ընդունեցան ու մնացին։ Քանի մը օր ետքը (փետր. 4.) Նաբոլէոն յայտարարութեամբ մը ծանոյց որ իր զօրքն անոր համար Հռոմ մտան ու մնացին՝ վասն զի Պիոս Է. իր պահանջումները չուզեց կատարել։ Անկից ետեւ ալ

Գաղղիացիք սկսան Հռոմայի մէջ իրենց բռնաւորական գործքերը կատարել. քահանայապետին զօրքերը գաղղիական զօրաց մէջ խառնեցին, հելուետիացի պահապան զօրքը քահանայապետին պալատէն վռնտեցին, քանի մը պաշտօնականներ, մեծամեծներ ու կարդինալներ բանտարկեցին ու աքսորեցին։ Երբ որ քահանայապետական տէրութեան պաշտօնեայ Կապրիէլլի կարդինալը աս բռնաւորական գործքերուն վրայ (Ապր. 3.) Գաղղիացւոց դեսպանին տրտունջ ըրաւ, դեսպանը պատասխանեց թէ այս ամենայն միայն Նաբոլէոնին ըրած առաջարկութիւններուն՝ քահանայապետին կողմանէ ընդունելութիւն չգտնելուն հետեւանքն են. քահանայապետը զանոնք չընդունելովը՝ կայսեր դէմ պատերազմ հրատարակեց։ Արդ՝ աս պատերազմին առաջին հետեւութիւնը պիտ'որ ըլլայ Հռոմայի Գաղղիացոցմէ գրաւիլը, իսկ ասոր ալ հետեւանքը պիտ'որ ըլլայ քահանայապետին աշխարհական իշխանութեան դադրիլը, որն որ այնուհետեւ միայն Հռոմայի եպիսկոպոս պիտ'որ մնայ։ Այսպիսի եւ ասոր նման պատճառանքներով, ինչպէս նաեւ Պիոս Է.ին իր դեսպանը Փարիզէն ետ կանչելը ամէն թշնամութեանց սկիզբը ու պատճառ բերելով, կայսեր ընթացքը կ'արդարացընէր ու ամէն յանցանքը Հռոմայի կառավարութեան վրայ կը ձգէր։ Այսպիսի զրպարտութեանց դէմ քահանայապետին կողմանէ բարեկամական ու իմաստուն խօսքերով ծանուցագիր մը գրուեցաւ նոյն դեսպանին, յայտնի ընելով՝ որ Գաղղիացւոց զօրացը Հռոմ մտած ատենը քահանայապետը ջանաց որ ժողովրդեան կողմանէ աղէկ ընդունելութիւն գտնեն. Նաբոլէոնին ըրածներուն դէմ մէկու մը տրտունջ չըրաւ. ուստի եւ խնդիրը բոլորովին հանդարտ ըլլալով՝ իր դատն Աստուծոյ ու արդարութեան կը յանձնէ ու վստահ է որ

ամէն բան միայն անոր (Աստուծոյ) կամքէն ու իր սահմանած ատենին ի բարին կը կատարուի։

Բայց աս դեսպանական Թղթակցութիւնք Հռոմ սկսելէն օր մը առաջ (Ապր. 2.) Նաբոլէոն Փարիզէն հրովարտակ մը հանեց, որով կը վճռէր թէ քահանայապետական երկիրէն Ուրպինոյ, Անգոնա, Մաչերադա ու Գամերինոյ գաւառներն ի միշտնջենաւորս Իտալիայի թագաւորութեան հետ միացած ու անոր մասերը պիտ՛որ սեպուին։ Աս յափշտակութեան պատճառ կը բերուէր՝ Ա. քահանայապետին Անգղիացւոց դէմ պատերազմ հրատարակել չուզելը. Բ. Իտալիայի ու Նէապոլսոյ թագաւորութիւններուն շահը, զոր կ՛ունենային աս գաւառներուն իրենցմէ մէկուն տրուելովը, որով իրարու անմիջական սահմանակից կ՛ըլլային. ու Գ. աս հանգամանքը՝ որ Մեծին Կարոլոսի աս երկիրները Հռոմայի քահանայապետին պարգեւելը՝ քրիստոնէութեան օգուտ ընելու եւ ոչ թէ հաւատոյ թշնամիներուն (Անգղիացւոց) նպաստելու համար էր։ Պիոս Է. այս ամենայն իմացածին պէս՝ նախ ընդհանուր յայտարարութեամբ մը Նաբոլէոնին իրեն դէմ ըրածներուն վրայ իր մեծ ցաւն ու անոր հրամաններուն անիրաւ ըլլալը բոլոր աշխարհի ծանոյց։ Ետքը առանձինն Նաբոլէոնին ալ թուղթ մը գրեց աս վերնագրով. “Առ սիրելի որդի իմ Նաբոլէոն կայսր Գաղղիացւոց„. եւ թուղթն աս խօսքերով լմնցուց. “Դուք Ձեր իշխանութեամբը չարաչար կը վարուիք ու ամէն նուիրական պարտքերը՝ առաւելապէս ի վնաս եկեղեցւոյ՝ ոտքի տակ կ՛առնէք։ Ասով զմեզ կը ստիպէք՝ որ մենք ալ մեր սրտին խոնարհութիւնը պահելով, մեր իշխանութիւնն ի գործ դնենք՝ զորն որ Ամենակալը մեր ձեռքը տուած է։ Ամէն չարիքը, որոնք Ձեզմէ առաջ կու գան, բոլոր Ձեր խղճմտանաց վրայ իյնան„։

Իսկ Նաբոլէոն այսչափ ապղդարարութեանց վրայ քիչ մը մեղմութիւն ցուցընելու տեղ՝ իր բռնական հրամաններն աւելի եւս կը սաստկացընէր։ Ասոնց համեմատ իր պաշտօնեաները քահանայապետին ներկայութիւնն ամենեւին բանի տեղ չդնելով, Հռոմայի քաղաքապետը՝ իրենց հրամանները կատարել չուզելուն համար՝ բռնեցին ու Ֆինիստրելլայի բերդին մէջ բանտարկեցին, տէրութեան պաշտօնեայ Կապրիէլլի կարդինալին բնակարանը մտան, պահարանները խորտակելով՝ տէրութեան թղթերը յափշտակեցին ու պաշտօնէին հրամայեցին որ իր պաշտօնէն ելլէ Սինիկալեա իր վիճակը քաշուի։ Երբ որ քահանայապետն անոր տեղ Բաքքա կարդինալը տէրութեան պաշտօնեայ դրաւ՝ Նաբոլէոնեանք զանիկայ Կուիրինեան պալատին մէջ բռնեցին ու հրամայեցին որ Պենեւենդ երթայ։ Բայց քահանայապետն աս հրամանը լսածին պէս՝ անձամբ նոյն կարդինալին քովը գնաց ու զանիկայ առաւ իր բնակարանը տարաւ, ըսելով որ ինքն ալ կ'ուզէ անոր հետ բանտարկեալ մնալ։ Ասոր վրայ քահանայապետին բնակարանին առջեւը գաղղիացի պահապաններ դրուեցան, որոնք ամէն մտնող ելլողները զգուշութեամբ կը քննէին։ Մասնաւոր ատեան մ'ալ դրուեցաւ՝ Գաղղիացւոց օրէնքներուն չհնազանդող քահանայապետական հպատակները մահուան դատապարտելու համար ու իրօք շատերն աս ատենին վճռովը սպաննուեցան։ — Այսչափ անիրաւ ու բռնաւորական գործքերուն դէմ չէ թէ միայն քահանայապետն իր արդար բողոքն ըրաւ, հապա նաեւ բոլոր Հռոմայի ժողովուրդը՝ իրենց սիրելի հօր ու իշխանին ու եկեղեցւոյ գլխոյն դէմ եղած անիրաւութեանց վրայ զգացած ցաւերնին այլեւայլ տրտմութեան ու ազդ նշաններով յայտնի կ'ընէին։

Ամէն բողոքները, տրտունջներն ու ազդարարութիւնները շահ մը չընելով, իրերն այս տխուր վիճակի մէջ առաջ կ՚երթային մինչեւ 1809ին սկիզբները։ Նոյն տարի Նաբոլէոն Աւստրիայի դէմ պատերազմի մէջ գըտնուելով ու երկրորդ անգամ Վիէննա մտած ըլլալով, հոնկից (Մայ. 17.) հրովարտակ մը հանեց, որով կը հրատարակէր թէ Եկեղեցւոյ տէրութեան մնացած երկիրներն ալ Գաղղիայի կայսրութեան տակ մտած ու անոր հետ միացած են. քահանայապետին աշխարհական իշխանութիւնը վերջացած դադրած է ու Հռոմ (գաղղիական) կայսերական ազատ քաղաք է։ Այս վճռոյն համեմատ Գաղղիացիք (Յունիս 9.) բոլոր Հռոմ գրաւեցին ու թնդանօթներու ձայներով նոյնը բոլոր աշխարհի հրատարակեցին։ — Պիոս Է. քահանայապետը իբրեւ արդար իշխան չէր կրնար ա՛լ լռել ու իր լռութեամբն իբրեւ թէ աս յափշտակութիւններուն հաւանիլ։ Անոր համար ի հարկէ ստիպուած (Յունիս 10.) եկեղեցական մեծ նզովից վճիռը հրատարակեց այն ամէն անձանց վրայ, որոնք եկեղեցւոյ ու անոր ժառանգութեան դէմ այս անիրաւութիւններն ըրած էին։ Բայց նոյն վճռով թէ՛ քահանայապետական հպատակներուն ու թէ՛ ամէն ժողովրդոց կ՚արգելուր՝ որ չըլլայ թէ աս նզովից տակ իյնողներուն ընչից, ստացուածոց ու իրաւանց դէմ բըռնութիւն մ՚ընեն։ Ուրիշ վճռով մը (Յունիս 12.) քահանայապետը ծանոյց՝ որ այն ամէն անձինք, որոնք աս նզովից հրատարակուելուն ինչ եւ իցէ կերպով կը հակառակին կամ արգելիչ կ՚ըլլան, նոյն նզովից տակ իյնան։

Այս վճիռները դուրս տրուելէն ետքը՝ Նաբոլէոն այնպէս կը ցուցընէր որ զանոնք կամ այն նզովքը բանի մը տեղ չիդներ. ի վերայ այսր ամենայնի իր ընթացքէն

յայտնի կը տեսնուէր՝ որ ներքուստ զանիկայ շատ ծանրակշիռ բան կը սեպէր ու անոր հետեւանքն աղէկ կը ճանչնար. ուստի ձեռքէն եկածին չափ ջանաց՝ ուրիշներուն հաւատացընել որ ան նզովքն արժէք կամ զօրութիւն չունի: Աս վախճանաւ Մոնիթէօր լրագրին մէջ երկայն հատուած մը դնել տուաւ, որով կ'ուզէր ցուցընել թէ գաղղիական եկեղեցւոյն իրաւանց համեմատ՝ քահանայապետն իշխանութիւն չունի Գաղղիայի վեհապետ մը նզովից տակ ձգելու: Աս ընելէն ետքը՝ Հռոմ իր պաշտօնեաներուն հրաման խաւրեց որ ղՊիոս Է. ստիպեն իր տուած նզովքն ետ առնելու: Քահանայապետն իրեն ըլլալու բռնութիւնը յառաջուընէ գուշակելով, իր պալատին ներքին կողմը քաշուեցաւ ու գլխաւոր դռները որմով գոցել տուաւ: Բայց (Յուլ. 5.) գիշերանց սրիկայից բազմութիւն մը գաղղիացի պաշտօնակալներու եւ զինուորներու առաջնորդութեամբ դրսի պատերէն անցնելով ներս մտան, քանի մը տեղ ներսի պատերը փլուցին, եւ Ռատէ զօրապետն ու սրիկայ մը քահանայապետին խուցը մտան, զորն որ իր պաշտօնական զգեստները հագուած, մէկ ձեռքը խաչ մը մէկալ ձեռքը ժամագիրք մը բռնած գտան: Զօրապետն ահաւոր ձայնով իրեն առաջարկեց որ տուած նզովքն ետ առնու եւ միայն երկու միլիոն ֆրանգ տարեկան թոշակով հանգիստ ապրի, ապա թէ ոչ՝ իբրեւ գերի Գաղղիա պիտ'որ տարուի: Իսկ համբերող հովիւը հեզութեամբ՝ բայց հաստատութեամբ պատասխանեց թէ ամէն բանի, աքսորանաց ու մահուան իսկ պատրաստ է: Ան ատեն իբրեւ գերի կամ բանտարկեալ առին զինքն ու երկու կարգ զօրաց մէջէն անցընելով՝ կառք մը նստուցին, որուն մէջ մտաւ նաեւ Ռատէ զօրապետը. եւ առանց տեղ մը հանգչելու՝ Փլորենտիա, անկից ալ՝ Գուրին, եւ վերջապէս Գաղղիայի

Կրընոպլը քաղաքը տարին։ Բայց հազիւ թէ հոն հասած էր, (Օգոստ. 9.) հրաման եկաւ որ նոյն դժուարին ճամբորդութեան մէկ մասը նորէն կրկնելով՝ Գենուայի հասարակապետութեան Սաւոնա քաղաքը տարուի։ Հոն մնաց Պիոս Է. քահանայապետը գրեթէ երեք տարի (1809. Օգոստ. 19. — 1812 Յունիս) իբրեւ աքսորեալ կամ բանտարկեալ, ուր եւ Նաբոլէոնին գործակալները զինքը յաճախ կը յորդորէին որ Հռոմայի իշխանութենէն հրաժարի ու երկու միլիոն ֆրանգ տարեկան թոշակ ընդունելով՝ Փարիզ հանգիստ բնակի։ Իսկ առաքինի քահանայապետը թէ աս ու թէ ուրիշ ամէն առաջարկութիւնները հաստատութեամբ մերժեց։ Աս հաստատութիւնը Նաբոլէոնին բարկութիւնը վերջին աստիճանի սաստկացընելով՝ հրաման ըրկեց որ անկից ետքը քահանայապետին վրայ ամէն կերպ խստութիւնները բանեցուին, ամէն կերպ կապանքն ու արգելքը դրուի, մինչեւ եւ ոչ թուղթ, գրիչ ու կաղամար իր խուցը գտնուի։ Քահանայապետն աս գերութեան մէջ գտնուած ատենը՝ Նաբոլէոն անոր սիրտն աւելի եւս վիրաւորելու գործ մ'ալ ըրաւ. այսինքն երբ որ (1811. Մարտ 20.) իր որդին ծնաւ, զանիկայ Հռոմայի թագաւոր անուանեց, յայտնի ընելով որ քահանայապետը նոյն քաղքին վրայ ա՛լ ամենեւին իշխանութիւն չունի ու ինքն է անոր բուն տէրն ու իշխանը։ Ի վերայ այսր ամենայնի սիրտը միշտ անհանգիստ ըլլալով՝ վերջին փորձ մ'ալ ուզեց ընել քահանայապետին հաստատութիւնը խախտելու համար. ուստի (1812. Յունիս) զինքը Փարիզ բերել տուաւ ու Ֆոնդենպլոյի պալատին մէջ քանի մը դիւրութիւններով բնակեցուց. բայց ասով ալ իր գլխաւոր բաղձանացը կատարման չկրցաւ հասնիլ. ինչպէս ետքը պիտ'որ գրենք։

Իտալիայի ամէն մասերը, պզտիկ ու մեծ տէրութիւնները, Նափոլէոնին զէնքերն ու կամքը տակնուվրայ եղած ու պէսպէս փոփոխութիւններ կրած ատեն, մի միայն պզտիկ ու աննշան տէրութիւն մը, Ս. Մարինոսի Հասարակապետութիւնը հանգիստ կամ անվնաս ու անփոփոխ մնաց, իր հին կարգերն ու կառավարութիւնը պահելով ու շարունակելով։

Աս հասարակապետութիւնը՝ որ Եւրոպայի տէրութեանց մէջ ամենէն պզտիկ ($1^1/_4$ քառ. մղոն) երկիր ունեցողն է՝ 8000 բնակիչով, Հռոմայի տէրութեան Ուրբինոյ ու Բեզարոյ գաւառներուն սահմանին մէջ կ'իյնայ ու Եւրոպայի ազատ տէրութեանց ամենէն հինն է. զորն որ յամի 469ին Ս. Մարինոս անապատականը հիմնեց։ Աս մարդը, որն որ դալմատիացի որմնադիր մըն էր, նոյն (469) տարին Դալմատիայէն հոն եկաւ ու լեռան վրայ ճգնաւորական կեանք վարել սկսաւ։ Իր սրբութեան համբաւն օրէ օր տարածուելով՝ նոյն լեռան տէրը, որ Փելիկիտաս անունով բարեպաշտ տիկին մըն էր, նոյն տեղն իրեն պարգեւեց։ Կամաց կամաց շատ բարեպաշտ մարդիկ իր քովը ժողվուելով՝ իր խորհրդովը սահմանադրութիւն մը յօրինեցին եւ անոր համեմատ անկախ տէրութիւն մը հաստատելով, խաղաղութեամբ կ'ապրէին. իրենց դրացի ըլլող իշխաններն ալ անոնց անկախութիւնը ճանչնալով՝ նոյնը մինչեւ ցայսօր հաստատ մնաց։ Այսպիսի հաստատութեան, մանաւանդ Նափոլէոնին յափշտակող ձեռքէն ազատ մնալուն պատճառը՝ յայտնի է որ աս հասարակապետութեան պզտիկութիւնն ու աննշան ըլլալն է։

Երբ աս աննշան հասարակապետութենէ ի զատ Իտալիայի ուրիշ մասերը բոլորովին Նափոլէոնին ձեռաց վերին կամ իշխանութեան տակ ըլլալով, իրենց բախտն

ու պատահարները միայն նոյն կայսեր ուրիշ տէրութիւններուն դէմ տուած պատերազմներուն յաջողութենէն ու անյաջողութենէն կախում ունէին կամ անոր բախտին հետ կից կ'երթային։ Յամի 1809 Նաբոլէոն Աւստրիացւոց հետ պատերազմի մէջ էր, ու իր որդեգիրը Եւգինէոս Պօհառնէ Իտալիոյ թագաւորութեան փոխարքան՝ հին Վենետական Փրիուլի Սաչիլէ քաղքին մօտ իր Իտալական գնդերովն Աւստրիոյ Յովհաննէս արքիդքսին հրամանին տակ ըլլող աւստրիական զօրաց հետ (Ապր. 12.) զարնուելով յաղթուեցաւ։ Բայց քիչ մը ետքը նոյն արքիդուքսն իր զօրքովն Աւստրիոյ մեծ բանակին օգնութեան երթալու համար ետ քաշած ատենը՝ փոխարքան Հունգարիոյ մէջ անոր ետեւէն հասաւ եւ Դալմատիոյէն եկող Գաղղիացւոց գնդերէն օգնութիւն գտնելով՝ (Յունիս 14.) Ռաապ քաղքին քով արքիդքսին զօրացը յաղթեց ու գնաց Նաբոլէոնին բանակին հետ միացաւ։ Երբ որ Աւստրիոյ կայսրն աս պատերազմէն ետքը (Հոկտ. 14.) Նաբոլէոնին հետ Վիէննա (Շէօնպրուն) խաղաղութեան դաշն դրաւ, ուրիշ շատ պայմաններէն զատ նաեւ ընդունեցաւ Նաբոլէոնին Իտալիոյ մէջ բրած ու ընելու փոփոխութիւններն ու կարգաւորութիւնները։

Ինչպէս պատերազմներու մէջ նոյնպէս եւ քաղաքային կառավարութեան նկատմամբ թէ՛ Նէապոլսոյ թագաւորը Միւրա ու թէ Իտալիոյ թագաւորութեան փոխարքան Եւգինէոս Նաբոլէոնին կարգաւորութեանց ու հրամանաց համաձայն ու անոր գործակալներուն ընկերութեամբն ու մասնակցութեամբն իրենց յանձնուած երկիրները կը կառավարէին։ Աս կերպ ծառայական կառավարութեան ատեն՝ Նաբոլէոնին (1812) Ռուսիոյ վրայ բրած մեծ արշաւանքը հանդիպելով ու ամէն դիաց

նոյնին համար զօրքեր ժողվելով, Իտալիոյ թագաւորութիւնն ու Նէապոլսոյ տէրութիւնն ալ իրենց Իտալական գնդերը՝ Եւգինէոս փոխարքային ու Յովակ. Միրա թագաւորին հրամանին տակ՝ նոյն արշաւանաց օգնութեան խաւրեցին: Նաբոլէոն ընդհանուր բանակին երկրորդ բաժնին վրայ զԵւգինէոս փոխարքան հրամանատար դրաւ: Ինչպէս սա փոխարքան նոյնպէս եւ Յովակիմ թագաւորն աս արշաւանքին առտենը իրենց քաջութեամբն ու հաւատարմութեամբը Նաբոլէոնին աւելի եւս սիրելի եղան. անանկ որ նոյն կայսրն՝ արշաւանքին անյաջող ելքէն ետքը արտորնօք Փարիզ դարձած ատենը, զՅովակիմ իր տեղը բանակին վրայ հրամանատար դրաւ. որ եւ զօրաց մնացած մասովը, ինչպէս Եւգինէոս ալ, գրեթէ միայն հազար հոգւով աս դժբախտ արշաւանքէն Գալլիա դարձան, անկից ալ Իտալիա մտան 1813ին սկիզբները:

Նոյն 1813 տարին Գերմանացիք՝ մանաւանդ Պրուսիացիք ազգովին ոտք ելլելով, Նաբոլէոնին զօրութիւնը բոլորովին խորտակելու եւ իրենց ազգային անկախութիւնը կամ ազատութիւնը նորոգելու համար վերջին ճիգն ի գործ դնելու եռանդմամբ զէնք առնուլ սկսան: Աս եռանդման ու բաղձանաց համեմատ նոյն տարւոյն սկիզբէն Եւրոպայի տէրութիւնները սկսան իրարու հետ դաշնակցիլ հասարակաց թշնամին կատարելապէս յաղթելու համար: Ռուսիա, Պրուս, Շուետ, Անգղիա, ետքէն Աւստրիա ալ միանալով՝ (1813. փետր. 27 — Օգոստ. 13.) Վեցերորդ դաշնակցութիւնը հաստատեցին, որուն յաջողելովն աս հզօր ու ահաւոր աշխարհակալին կատարեալ պարտութիւնն ու անկից ետքը Եւրոպայի ընդհանուր խաղաղութիւնը հետեւեցաւ: — Ինչպէս այլեւայլ տեղեր՝ ուր Նաբոլէոն եւ իր դաշնակիցները

բանակ ու զօրք ունէին, դաշնակցաց զօրքերը քաջ զօրապետաց հրամանին տակ պատերազմելու կ'երթային, այնպէս եւ Աւստրիայի զօրաց մէկ մասը՝ 80,000 հոգի Հիլլէր զօրապետին հրամանին տակ Լիւբիկէ գրաւելէն ետքը՝ Ալպեան լեռներն անցնելով Իտալիա մտաւ։ Եւգինէոս փոխարքան, զորն որ Իտալացւոց մեծ մասը՝ իրեն բարի հանգամանաց համար՝ շատ սիրած էին, եւ կը յուսային օր մը անոր ձեռաց տակ անկախ տէրութիւն ունենալ, երբ որ Ռուսիայի արշաւանքէն պարտութեամբ ետ դարձաւ, բոլորովին վհատած ըլլալով, այնպիսի ընթացք մը սկսաւ բռնել՝ որ Իտալացւոց սիրտն իրմէ պաղեցուց։ Ինք թէպէտ եւ զԻտալացիները կը սիրէր ու բոլոր իր կառավարութեան ատենն իր ձեռաց տակ ըլլող երկիրներն ու բնակիչքը չէ թէ միայն գոհ՝ այլ եւ երջանիկ ընելու կ'աշխատէր. բայց իր խորդ հօրը Նաբոլէօնին կամքին գերի եղած էր եւ անոր ակնարկութեան ըստ ամենայն նկատմանց հաւատարմութեամբ կը հնազանդէր, անանկ որ շատ հեղ անոր կամաց կատարման համար իր ժողովրդոց շահը զոհելու կը ստիպուէր։ Ետքի ատեններն ամէն կողմանէ անյաջողութիւնք ետեւէ ետեւ վրայ հասնելով՝ իր սիրտը կոտրած էին. եւ թէպէտ գիտէր որ անոնց ամենուն պատճառը Նաբոլէոն էր, բայց իր ներողութեան ու տժգոհութեան ոխը չկրնալով անկէց առնուլ, բոլոր սրտին դառնութիւնն իր հպատակաց ու զօրաց վրայ կը թափէր, եւ զանոնք աւելի ներողութեան մէջ դնելով՝ չարեաց սկզբնապատճառը գոհ ընելու կը ջանար։ Հիմայ որ թշնամին զօրաւոր բանակով մը Իտալիա մտած էր, պէտք էր որ Եւգինէոս իր գլխաւորին հաւատարիմ մնալու համար իր գնդերը զօրացընելով ու մեծամեծ զոհեր ընելով՝ զԻտալացիները բազմութեամբ թշնամւոյն դէմ հանէր։ Ուստի 80,000 Աւստրիացւոց

դէմ Եւգինէոս Իտալիայի մէջ Մարաթի սկիզբները (1813) պատերազմը սկսաւ, որուն մէջ երբեմն մէկ կողմը երբեմն մէկալ կողմը յաջողութիւն կ'ունենար։ Բայց վերջապէս Եւգինէոս նորէն յաղթուելով, հարկադրեցաւ (Նոյեմ.) Ադիճէին վրայէն անցնիլ ու մինչեւ Մինչիոյ ետ քաշուիլ. որով նոյն (1813) տարւոյն վերջը Լոմբարտիայի մեծ մասն Աւստրիայի ձեռքն անցած էր։ Եւ որովհետեւ չէ թէ միայն ինք Եւգինէոս (1814. Ապր.) Իտալիայի մէջ իր զօրքովը թշնամւոյն դէմ պատերազմը շարունակելու անկարող էր, հապա նաեւ ուրիշ տեղեր ալ Նապոլէոնին զօրքերը դաշնակցաց զօրքերէն կը յաղթուէին, անոր համար պարտաւորեցաւ (Ապր. 16.) Աւստրիացւոց Պելլեկարտ զօրապետին հետ, որն որ Հիլլէրին յաջորդած էր, զինադադար ընելու եւ Մանդուայի բերդին մէջ մնալու։ Սակայն չուզեց ուրիշ տէրութեանց դաշնակցութեան մէջ մտնելով՝ անոնց կամօքը Նապոլէոնին դէմ թշնամութեան դրօշը բանալ, հապա անոր վրայ ունեցած սիրոյն ու հաւատարմութեան մէջ մինչեւ ցվախճան հաստատ մնաց։

Նաս ներհակ ընթացք մը բռնեց Նապոլէոնին քեռայրը՝ Նէապոլսոյ Յովակ. Միւրա թագաւորը։ Ասիկայ Լիբսիայի նշանաւոր պատերազմէն (1813. Հոկտ. 16. 17. 18.) կատարեալ պարտութեամբ իր մնացած զօրքովն իր երկիրը դառնալէն ետքը, մտածելով որ ա՛լ Նապոլէոնին իշխանութիւնը կորսուած ու օգնելու զօրութիւնը հատած է, անոր կողմն ու դրօշը թողուց ու սկսաւ Աւստրիայի հետ բանակցութիւն ընել. եւ քանի մը առաջարկութիւններու հաւանելով, (1814, Յունու. 11.) դաշն գրաւ, որուն զօրութեամբ Աւստրիայի կայսրն իրեն կը խոստանար զինքը Նէապոլսոյ գահին վրայ հաստատ պահելու ջանալ։ Քանի մը օր ետքը Միւրա իր

յաղթութիւն քահանայապետական երկրին իր զօրքովը
գնաց Հռոմ բռնեց. քիչ մը ետքն ալ Աւստրիայի զօ-
րացը հետ մէկտեղ Տոսկանա առաւ։ Անգղիացիք Միւ-
րային հաւատարմութեան ու անկեղծութեան վրայ վըս-
տահ չըլլալով՝ իրեն հետ դաշն դնել չուզեցին. միայն
Աւստրիայի խորհուրդին հետեւելով (փետր. 3.) զինա-
դադար ըրին։ Եւ որովհետեւ դաշնակցաց պատերազմը
Նաբոլէոնին դէմ դեռ յառաջ կ'երթար, անոր համար
Միւրա ալ (փետր. 15.) Գաղղիայի դէմ պատերազմ
հրատարակեց։ Բայց աս պատերազմին ատենն անանկ
ընթացք մը բռնեց՝ որ դաշնակիցք իրեն վրայ ունեցած
յոյսերնին կորսնցուցին ու հասկըցան որ ինք ներքուստ
դեռ Նաբոլէոնին կողմը կը հակի։ Սակայն իրենք աս
կողմանէ շատ վախնալու պատճառ չունէին. արդէն Աւս-
տրիացւոց զօրքը Մինչիոյի ու Բոյի քովերը Իտալիայի
թագաւորութեան փոխարքային յաղթած ըլլալով,
Գաղղիացւոց զօրութիւնն Իտալիայի մէջ կոտրած ջնկած
էր։ Անկէց աւելի՝ արդէն իրենց զինուց ետեւէ ետեւ
սաստացած յաղթութիւններովը՝ գլխաւոր թշնամին ալ
բոլորովին ընկճած էր։ Վասն զի իրենց միացեալ զօրու-
թեան դէմ Նաբոլէոնին ամէն հնարքները պարապի ել-
լելէն ետքը՝ աս անխոնարհելի մարդն ի հարկէ խոնարհե-
ցաւ ու (1814. Ապր. 6.) թէ իր անձին ու թէ իր որ-
դւոյն համար Գաղղիայի, Իտալիայի եւ ուրիշ ամէն եր-
կիրներու վրայ ունեցած վեհապետական իշխանութենէն
հրաժարեցաւ։ Ասոր վրայ Փարիզ ժողված վեհապետա-
ները (Ապր. 11.) վճիռ տուին ու հաստատեցին որ
Նաբոլէոն Պոնաբարդէ՝ կայսր անունը պահելով, Իտա-
լիայի մէջ Ելպա կղզւոյն վրայ միայն իբրեւ անկախ վե-
հապետ իշխէ եւ Գաղղիայէն տարուէ տարի երկու միլիոն
ֆրանգ ընդունի։ Իր ամուսինը Մարիամ Լուիզ՝ կայսրու-

հի անունը պահելով, Բարմայի, Բիաչէնցայի ու Կուասդալլայի դքսական երկիրներուն վրայ մինչեւ ցմահ իշխէ։ Իսկ մինչեւ ան ատեն Իտալիայի Թագաւորութեան փոխարքայ ըլլող Եւգինէոս Պոհառնէ իշխանին համար դաշնակիցք պատշաճական հատուցում մ՚ընելու խորհին։

Նաբոլէոն (1814. Մայ. 4.) Էլպա կղզին գնաց ու սկսաւ իր փոքր տէրութիւնը վարել. իսկ Փարիզ ժողված վեհապետները (Մայ. 30.) Գաղղիայի Լուդովիկոս ԺԸ. Թագաւորին հետ խաղաղութեան դաշն դնելէն ետքը՝ Եւրոպայի գահերուն ընկճած ու անշքացած իշխանութիւնը միաբան խորհրդով կարգի դնելու համար Վիէննա գացին։ — Պուրպոնեան ցեղը Գաղղիայի մէջ Եւրոպայի վեհապետաց միաբան հաւանութեամբ Թագաւորական գահին վրայ նորէն հաստատուելէն ետքը՝ միայն Նաբոլէոնին կամօքն ու կարգաւորութեամբը Իտալիայի Թագաւորութեան վրայ փոխարքայ դրուող Եւգինէոս Պոհառնէ ալ չէր կրնար Գաղղիայի զօրքը՝ զորն որ Նաբոլէոն իրեն տուած էր, Իտալիայի մէջ պահել ու անոնցմով սկսած պատերազմը յառաջ տանիլ։ Ուստի Մանդուայի մօտ, ինչպէս ըսինք, Աւստրիայի Պելլեկարտ զօրապետին հետ զինադադար ընելէն քանի մը շաբաթ ետքը՝ Գաղղիացի զօրքն իրենց հայրենիքը խաւրեց, բայց ինքն ալ անոնց հետ Իտալիայէն դուրս չելաւ, հապա Մանդուայի բերդին մէջ իտալացի զօրքով մնաց։ Ինչու որ կը յուսար թէ Իտալիայի Թագաւորութիւնը՝ (1805 Դեկտ. 26.) Բրեսպուրկի խաղաղութեան դաշինքէն առաջ ունեցած սահմաններու մէջ՝ դաշնակցաց հաւանութեամբ հաստատուն կը մնայ, եւ ինք Իտալացւոց շատերուն բաղձանացը համաձայն՝ նոյն Թագաւորութեան թագը կ՚ընդունի։ Բայց իրերն իր մտածածէն եւ յուսացածէն շատ տարբեր ընթացք ու ելք ունեցան։

Պետ. Նաբոլէոն Գաղղիայէն չելած՝ Միլանի ծերակուտին Մելցի դահերէցին առաջարկութեան համեմատ՝ ծերակոյտը (Ապր. 20.) սահմանեց որ Փարիզ գըտնուող մեծապետներուն պատգամաւորներ խաւրուին, որոնք անոնց թէ Իտալիայի անկախութիւնն ու թէ Եւգինէոս փոխարքային իրենց թագաւոր դրուիլն առաջարկեն։ Ծերակոյտը ներսը աս խորհուրդն ըրած ատենը՝ դուրսը փողոցը Եւգինէոսին հակառակ ըլլող կողմնակցութիւնը ժողված՝ ահագին ձայնով կ՚աղաղակէր. "Կեցցէ հայրենիք. զԵւգինէոս չենք ուզեր. Գաղղիացի չենք ուզեր"։ Այսպիսի աղաղակներով ու սպառնալիքով ծերակուտին անդամները զարհուրեցընելով ցրուեցին։ Ետքէն կատաղութեամբ ելեւմտից պաշտօնեայ Բրինային պալատը վազեցին ու զինքը դուրս քաշելով այնչափ ծեծեցին՝ որ խեղճը հոն մեռաւ։ Նոյնը կ՚ուզէին նաեւ վերոյիշեալ Մելցի դահերէցին ալ ընել. բայց իր բարեկամներէն մէկը ճարպկութեամբ մը զինքը արգելեց։ Եւգինէոս Մանդուայի մէջ աս անկարգութեանց դոյժն ընդունելով՝ շատ բարկացաւ, ու Իտալիայի թագաւորութեան յաջողելուն վրայ յուսահատելով՝ Մանդուայի բերդն Աւստրիացւոց յանձնեց ու ինք իր ընտանիքովն ու Իտալիայի մէջ դիզած գանձերովը Պաւիերա իր աներոջը՝ Մաքսիմիլիանոս Ցովսէփ թագաւորին քովը գնաց։ Իսկ Միլանի մէջ խորհրդականք մէկտեղ ժողվեցան ու առժամանակեայ կառավարութիւն կամ խնամակալութիւն մը դրին, որն որ շուտ մը Փարիզ ըլլող մեծապետներուն պատգամաւորներ խաւրեց խնդրելու համար՝ որ Իտալիայի թագաւորութիւնն Աւստրիայի կայսերական տան իշխաններուն մէկուն տակ անկախ տէրութիւն մ՚ըլլայ։ Բայց Աւստրիայի կայսրը Փրանկիսկոս Ա. իրենց պատասխանեց թէ "Ես Իտալացի եմ. Լոմ-

բարակս իմ զէնքերովս նուաճեցաւ. եւ իմ հրամաններս ու կարգադրութիւններս Միլան կը խաւրեմ կը ծանուցանեմ,,: Անոր վրայ (Ապր. 28.) Աւստրիայի զօրքը Միլան մտաւ ու (Մայ. 23.) Պելլեկարտ զօրապետը յանուն նոյն կայսեր զանիկայ դրաւեց եւ նոր կառավարութիւնք սկսաւ: Առանկով Նաբոլէոնին կանգնած Իտալիայի թագաւորութիւնը՝ տասը տարիի չափ տեւելէն ետքը՝ վերջացաւ:

Վեհապետները դեռ Փարիզ գտնուած ատենը՝ իրենց կարգադրութեամբն ու կամօքը Իտալիայի օրինաւոր իշխանները սկսան իրենց երկիրները դառնալ ու կառավարութիւններին կարգի դնել: Սարդինիայի Կարոլոս Էմմանուէլ թագաւորը՝ իր երկիրները Գաղղիացիք առնելէն ետքը՝ իր ընտանիքովը Սարդինիա կղզին քաշուած էր, որն որ իր ամէն երկիրներէն միայն իր ձեռքը մնացած էր: Հոն յամի 1802ին իր կամօքը թագաւորութենէ հրաժարելով՝ զանիկայ իր Վիկտոր Էմմանուէլ Ա. եղբօրը տուած էր: Անիկայ մինչեւ 1814 նոյն կղզւոյն վրայ մնաց ու Փարիզի խաղաղութենէ ետքը իր երկիրն ու մայրաքաղաքը Թուրին դարձաւ, կորսնցուցած տեղերը գրեթէ ամբողջ ձեռք բերելով, բաց ի Սաւոյայի մէկ պզտիկ մասէն, որն որ Հելուետիայի անցաւ: — Սոյնպէս եւ Տոսկանայի մեծ դուքսը Փերդինանդոս (Աւստրիայի կայսեր եղբայրը) իր երկիրն ու մայրաքաղաքը Փլորենտիա դարձաւ: — Մոտենայի դուքսը Փրանկիսկոս արքիդուքսն իր երկիրը դառնալէն ետքը՝ իր մայրը Էսդէի իշխանական տնէն ըլլալուն՝ իր արքիդքսական անուան հետ նոյն Էսդէ անունն ալ միացուց. անանկ որ անկից ետքը նոյնատեղաց դքսական ազգատոհմին անդամները Աւստրիական-Էսդէեան տիտղոսով կ'անուանին: — Էտրուրիայի թագաւորին որ-

դին, ուր որ Բարմայի տէրը կամ դուքսը պիտի՛ որ բը-լար, առ դքսական երկիրը Նաբոլէոնին ամուսնոյն՝ Մար. Լուիզ կայսրուհւոյն տրուած ըլլալուն համար՝ ինք անոր տեղը Լուքքայի դքսութիւնն ընդունեցաւ, Բարմայի դքսութեան վրայ ունեցած իրաւունքը պահելով, զորն որ Մար. Լուիզէն մահուընէ ետքը պիտի՛ որ ընդունէր: — Գենուա, ուր որ Անգղիացւոց Պենդինք զօրապետը 9000 անգղիացի զօրքով Սիկիլիայէն եկած՝ հասարակապետութիւնը Գաղղիացւոց ձեռքէն ազատած եւ անկախ ընելու խոստանալով՝ Գենուացիներէն ընդունելութիւն գտած էր, առ ժամանակ մի Անգղիացւոց պաշտպանութեան տակ հասարակապետական կառավարութիւն ունեցաւ:

Հռոմայի քահանայապետը Պիոս Է., ինչպէս վերը գրեցինք, երեք տարիէ չափ Սաւոնա աքսորուած մնալէն ետքը՝ Նաբոլէոնին հրամանաւը Փարիզ տարուած էր ու Ֆոնդէնպլօ կը բնակէր: Հոն երբ որ հեղ մը անոր անձամբ այցելութիւն ընելով քանի մը երկրորդական խնդիրներուն կատարումն ընդունեցաւ եւ (1813. Յունու. 25.) դաշնաւորութիւն մ'ալ ըրաւ, կարծեց որ աւելի առաջ կրնայ երթալ ու ծանրագոյն խնդիրներուն ալ կատարումն ընդունիլ: Ուստի եւ այս յուսով խոստացաւ նոյն տարի զքահանայապետն իր երկիրը ու Հռոմ խաւրել եւ իր վերջին հրովարտակէն առաջ քահանայապետին ունեցած տեղերն ետ տալ: Բայց երբ որ Պիոս Է. այրական համառութեամբ յայտնի ըրաւ՝ որ ան ատեն ամէն բան կը լմըննայ, երբ որ Եկեղեցւոյ եւ Հռոմայի քահանայապետին (Ս. Պետրոսի) ժառանգութիւնն ամբողջ իրեն կը տրուի, Նաբոլէոն չուզելով իր հեղ մը առածը կամ յափշտակածը ետ դարձընել, քիչ մը ատեն ալ՝ մինչեւ 1814 տարւոյն սկիզբները քահանայա-

պետը Փարիզ պահեց։ Նոյն տարին երբ որ դաշնակցաց զօրքերը սկսան Գաղղիայի երկիրը մտնել՝ Հրաման տուաւ որ քահանայապետն իր աթոռը երթայ. բայց սա հեղուալ միշտ գանգատելով ու պատերազմին ընթացքին յաջողութեան ու անյաջողութեան համեմատ անոր ճամբորդութիւնն ուշացընել տալով։ Վերջապէս Նաբոլէոնին իյնալէն քանի մը օր առաջ (Մարտ 20.) Գաղղիացի զօրքն իրենց գերի եղած քահանայապետը Բիաչենցայի մօտ Աւստրիացւոց զօրաց յանձնեցին, որոնց պաշտպանութեան տակ հանդիստ ճամբայ ընելով, (Մայ. 24.) մեծ հանդէսով ու փառաւորութեամբ Հռոմ մտաւ ու իր կառավարութիւնը նորէն ձեռք առաւ։

Ինչպէս յառաջ պատմեցինք՝ երբ որ (1806) Նաբոլէոն Նէապոլիս առաւ ու հոն իր Յովսէփ եղբայրը թագաւոր դրաւ, Ֆերդինանդոս Դ. երկրին բուն թագաւորն իր ընտանեօքը Սիկիլիա կղզին քաշուելով՝ հոն Անգղիացւոց պաշտպանութեան տակ կղզւոյն վրայ իր իշխանութիւնը կը վարէր։ Թէպէտ եւ թագաւորն ու առանձինն Կարոլինա թագուհին ի սկզբանէ հետէ Անգղիացիներէն մեծ բարեկամութիւն տեսնելով՝ անոնց վրայ կը վստահէին. բայց կամաց կամաց իբր թէ անոնց լուծէն ձանձրանալով՝ անոնցմէ ընդունած բազմամեայ պաշտպանութիւնն իրենց ծանր ծառայութիւն կ'երեւար։ Նոյն ինքն թագուհին՝ որ սրտին մէջ Գաղղիացւոց դէմ մեծ ատելութիւն ունէր, ինչպէս ուրիշ տեղ ըսած ենք, (1811ին) Նաբոլէոնին հետ գաղտնի բանակցութիւն ընելու սկսաւ ու կ'ուզէր Սիկիլիա կղզւոյն նաւահանգիստներէն Անգղիացիները վռնտելով՝ նոյները գաղղիացի զօրաց յանձնել։ Աս խորհուրդը չյաջողեցաւ, որն որ թագուհւոյն շատ մեծ տրտմութիւն ու նեղութիւն պատճառեց. բայց իր ատելութիւնն Անգղիացւոց դէմ սրտաքը

կարգի զայրացաւ, երբ որ անոնց վերին հրամանատարը Վէնդինք (1812) զՖերդինանդոս Թագաւորը պարտաւորեց՝ որ Անգղիոյի խորհրդանոցին նման Սիկիլիական խորհրդանոց մը դնէ ու իր ժողովրդեան նոր սահմանադրութիւն մը տայ. միանգամայն զինքը համոզեց՝ որ կառավարութիւնը քիչ մը ատեն իր (Թագաժառանգ) որդւոյն ձեռքը յանձնէ։ Աս գործքերը Թագուհւոյն սիրտն օրէ օր աւելի գառնացընելով, զինքը կը դրդռէին միշտ նոր նոր խռովութիւններ հանելու. անանկ որ անգղիացի հրամանատարը սաստիկ զայրանալով, տէրութիւնը ստիպեց որ զԹագուհին Սիկիլիայէն հեռացընէ։ Իրզք ալ հարկադրեցաւ տիկինը 1813ին ամառը կղզին թողուլ ու դէպ ի արեւելք ճամբորդութիւն ընելով՝ Կոստանդնուպոլսոյ վրայէն իր հայրենիքը Վիէննա գնաց, եւ նոյն մայրաքաղքին մօտ Հեցէնտորֆ գեղին մէջ (1814. Սեպտ. 18.) 62 տարեկան մեռաւ. որմէ քանի մը ամիս եաքը իր երիկը Վիէննայի արքայաժողովին վճռովն իր բոլոր տէրութեան իշխանութիւնը, այսինքն Նէապոլսոյ գահը նորէն ստացաւ։

Աս գահին վրայ (1814. Մարտ.) Փարիզի խաղաղութենէ եաքը դեռ Նաբոլէոնին դրած Յովակիմ Միւրա Թագաւորը կը նստէր, որովհետեւ Աւստրիայի կայսրն անոր Թագաւորութեան երաշխաւոր եղած էր, ինչպէս յառաջ նշանակեցինք։ Բայց արդէն վերջին պատերազմներուն ատենն աս դաշնակից սեպուած Թագաւորին տարակուսական ընթացքը դաշնակցաց անվստահութիւնը զարթուցած էր. ու Փարիզի խաղաղութենէն եաքը աւելի եւս ծանր ու անպատշաճ կ'երեւար իրենց այսպիսի անիրաւ դահակալութեան՝ դաշնակիցներուն մէկ մասէն (Աւստրիայէն) իբրեւ օրինաւոր ճանչցուիլն ու երաշխաւորութիւն գտնելը։ Առաւելապէս Անգղիա ու Գաղղիա

չէին ուզեր այս երաշխաւորութիւնն ընդունիլ ու հաւա-
նիլ՝ որ Միւրայի պէս աննշան մարդ մը, որն որ Գաղղիայի
Գահոր քաղքին մէջ պանդոկապետի մը որդի էր, Պուր-
պոնեան թագաւորական ազգատոհմին մէկ ճիւղին փոխա-
նովը՝ անիրաւութեամբ ստացած իշխանութեան մէջ
հաստատ մնայ: Իսկ Միւրա, որն որ մինչեւ այն ատեն
միայն զինուորական կարգերու նախանձախնդիր էր ու
պատերազմէն ի զատ ուրիշ բան չէր մտածեր եւ ամէն
բան բռնաւորական կերպով առանց քաղաքական օրի-
նաց նկատում ընելու յառաջ կը տանէր, սկսաւ իր ըն-
թացքը փոխել: Իր խօսքերուն մէջ քաղաքական սահ-
մանադրութիւն մը հաստատելու բաղձանքը կը յայ-
տնէր. եկեղեցականաց ու ստորին ժողովրդեան հաճոյ
գործքեր ընելով՝ անոնց սիրտը շահելու կը ջանար. եկե-
ղեցիներու այցելութիւն կ՚ընէր ու եկեղեցական հան-
դէսներու մէջ կը մտնէր: Նա եւ յայտնի կ՚ընէր՝ որ ինք
Նէապոլսոյ հաստատուն երկրին կամ ցամաքին տէրու-
թեամբը գոհ է, եւ չ՚ուզեր ամենեւին Սիկիլիա կղզին՝
զորն որ Նաբոլէոն իրեն խոստացած էր եւ ուր Ֆերդի-
նանդոս թագաւորն Անգղիացւոց պաշտպանութեան տակ
կ՚իշխէր, յառաջուան պէս Նէապոլսոյ թագաւորութեան
հետ միացընելով իրեն իշխանութեան տակ ունենալ:
Բայց միւս տէրութիւնք ինչպէս եւ Ֆերդինանդոս թա-
գաւորը չէ թէ միայն Սիկիլիա ալ իրեն տալու միտք
չունէին, հապա Նէապոլսոյ տէրութիւնն ալ իրմէն առ-
նուլ կ՚ուզէին, եւ Ֆերդինանդոս զանիկայ իրաւամբք կը
պահանջէր, ինչպէս իրօք ալ Վիէննայի արքայաժողովին
որոշմամբն ընդունեցաւ:

Այս արքայաժողովը սկսաւ 1814ին աշնան (Նշ. 1.),
երբ որ Եւրոպայի վեհապետներուն շատը՝ Փարիզի ա-
ռաջին խաղաղութենէն ետքը՝ իրենց գլխաւոր պաշտօ-

նեաններովն Աւստրիայի մայրաքաղաքը ժողվեցան։ Եւ որովհետեւ աս ժողովը բոլոր Եւրոպայի իրողութիւններուն վրայ պիտ'որ խորհէր ու կարգաւորութիւններ ընէր, անոր համար շատ երկայն ժամանակ քշեց։ Երբ ժողովականք աս ծանր գործոց մէջ զբաղած՝ իրենց խորհուրդները յառաջ կը տանէին, երեւելի դէպք մը իրենց գործոց ընթացքն արգելեց։ Նաբոլէոն Գաղղիայի մէջ ունեցած բարեկամներուն օգնութեամբն ու դեռ հեղ մ'ալ իր բախտին յաջողելովը (1815. փետր. 26.) Ելպա կղզիէն ելաւ ու (Մարտ 1.) Գաղղիա հասաւ. ուր ընդունելութիւն գտնելով՝ նորէն կայսերական գահն ելաւ ու հարիւր օր ալ այլ եւ այլ պատերազմներով Եւրոպայի տէրութիւնները զբաղեցուց։ Բայց վերջապէս դաշնակցաց զէնքերէն բոլորովին յաղթուելով՝ անոնց հրամանովը (Յուլ. 31.) արեւմտեան Ովկիանոսին Ս. Հեղինէ կղզին աքսորեցաւ, ուր եւ (1821. Մայ. 5.) մեռաւ ու թաղուեցաւ։ Վեհապետք Գաղղիան ու Եւրոպան երկրորդ անգամ աս ահաւոր թշնամիէն ազատելէն ետքը՝ նորէն յաղթանակաւ Փարիզ մտան ու հոն (Նոյ. 30.) երկրորդ խաղաղութեան դաշն դնելէն ետքը՝ իրենց սկսած արքայաժողովը յառաջ տարին ու լմնցուցին։ Աս երկրորդ խաղաղութեան դաշանց ու Վիէննայի արքայաժողովոյն որոշմունքներէն ու կարգաւորութիւններէն միայն ա'ն կտորները պիտի յիշենք, որոնք Իտալիայի ու անոր այլ եւ այլ տէրութեանց վրայ եղան։

Աւստրիայի կայսրը Լոմբարտիայէն ի զատ, որն որ Գաղղիայի յեղափոխութենէն առաջ իր իշխանութեան տակ էր, ընդունեցաւ նա եւ Վենետիկոյ հասարակապետութեան բոլոր երկիրը, եւ ասոնցմէ կազմուեցաւ Լոմբարտեան-Վենետական թագաւորութիւնը։ Արքայաժողովն անցած անկարգութիւնները յիշելով՝ Եւրոպայի

խաղաղութեան համար պատշաճ ու օգտակար դատեց Իտալիայի հասարակապետութիւնները վերջացընել կամ նորէն չհաստատել: — Միայն Ս. Մարինոսի պզտիկ հասարակապետութիւնը, զորն որ ամէն տէրութեանց հիմերը խախտող Նաբոլէոն իսկ անխախտ թողուցած էր, հիմայ ալ իր հին ժառանգութեան ու կարգերուն մէջ հաստատուն թողուեցաւ: — Գենուայի հասարակապետութիւնը, որն որ Անգղիացւոց Պենդինկ հրամանատարին խոստման համեմայն՝ հաստատուն կամ անկախ պիտի մնար, դքսութիւն անուամբ Սարդինիայի թագաւորին տրուեցաւ. որպէս զի անով Սարդինիայի տէրութիւնը զօրանալով՝ սահմանակից Գաղղիացւոց դիւրութեամբ Իտալիա մտնելուն կարենայ յաջողակի դէմ կենալ: — Տոսկանայի մեծ դուքսն իր առաջուան երկիրներէն զատ ընդունեցաւ նա եւ Պահապանաց վիճակ (Stato dei Presidii) ըսուած նահանգը Էլպա կղզիով, որոնք (1735էն մինչեւ 1801) Նէապոլսոյ տէրութեան տակ էին, իսկ նոյն վիճակին սահմանին մէջ ըլլող Բիոմպինոյի իշխանական երկիրն իր առանձին իշխանն ունէր: Բայց Նաբոլէոն 1801ին նոյն վիճակին մէկ մասն Էտրուրիայի թագաւորութեան տուած, Բիոմպինոյի երկիրը (1804) իր Պաչչիոքքի քեռայրին պարգեւած, Էլպա կղզին ալ Գաղղիայի տակ առած էր: Արքայաժողովն ասոնք բոլոր Տոսկանայի մեծ դքսին տալէն ետքը՝ նա եւ որոշեց որ երբ որ Մ. Լուիզին մեռնելէն ետքը Բարմայի դքսութիւնը Լուքքայի դքսին կ՚անցնի, Լուքքայի դքսութիւնն ալ Տոսկանայի մեծ դուքսն առնու: — Հռոմայի քահանայապետն ալ իր երկրին ամէն մասերը, նա եւ Գոլենդինոյի խաղաղութեան դաշանց զօրութեամբ կորսնցուցած գաւառները ետ առաւ: Միայն Գաղղիայի մէջ հին ատեններէն ի վեր քահանայապետաց ժառանգած Աւի-

նեոն ու Վրնեզէն քաղաքներն իրենց սահմանովը՝ վերջին քաղաքական յեղափոխութեան առեն եղած որոշման համեմատ՝ Գաղղիայի տէրութեան տակ մնացին։

Նէապոլսոյ գահին վրայ նստող Յովակիմ Միւրա թագաւորը՝ թէպէտ եւ կը յուսար որ Վիէննայի արքայաժողովին Աւստրիայի կայսեր միջնորդութեամբ զինքն իր տէրութեան մէջ ու գահին վրայ կը թողու, բայց երբ որ իմացաւ թէ հոն իր վրայ թշնամական խորհուրդներ կ'ըլլան, Փերդինանդոս թագաւորն իր գեսպանին ձեռքովը իր բոլոր երկիրները ետ· կը պահանջէ ու խորհրդականաց մէջ երկպառակութիւն կայ, նոյնն իրեն յարմար առիթ սեպելով՝ զինուց զօրութեամբ ուզեց իր իշխանութիւնը ձեռքէն չհանել։ Գրեթէ իր բոլոր (70,000) զօրքերը (1815. փետր.) քահանայապետական երկրին ան գաւառները խոթեց, որոնցմէ՝ յառաջագոյն հոն եղած զօրքերը Փարիզի առաջին խաղաղութենէն ետքը դեռ չէր հանած։ Աս ընելէն ետքը՝ Աւստրիայէն թոյլտուութիւն խնդրեց՝ որ նոյն զօրքը Վերին Իտալիայէն անցրնելով՝ Գաղղիայի դէմ պատերազմելու տանի։ Աս պահանջմունքը չէ թէ միայն Աւստրիայի եւ ուրիշ տէրութեանց կողմանէ ընդունելութիւն չգտաւ , հապա շուտ մը հրաման ելաւ, որ Աւստրիայի զօրաց թիւն Իտալիայի մէջ մինչեւ 150,000ի հասցուի։ Բայց դեռ աս հրամանը չկատարուած՝ Միւրա Նաբոլէոնին Գաղղիա հասնիլն ու նորէն գահ ելլելը լսածին պէս՝ միւս տէրութեանց դէմ թշնամութեան դրօշը յայտնապէս բացաւ։ Ամէն բանէն առաջ իր Հռոմ նստող դեսպանին ձեռքովը Պիոս Է.ին ծանոյց՝ որ ինք Նաբոլէոնին գործքերն իր սեպհական գործքերը կը սեպէ ու կ'ուզէ ցուցրնել՝ որ երբեք անոր հակառակ կամ թշնամի եղած չէ։ Աս ընելէն ետքը՝ առանց ժամանակ կորսնցրնելու քահանայա-

պետական երկիրներուն վրայէն անցնելով՝ Աւստրիացւոց բանակին դէմ յառաջ քալեց։ Ռիմինի քաղաքը հասածին պէս (Մարտ. 30.) բոլոր Իտալիայի ժողովրդոց յայտարարութիւն մը հանեց, որով զիրենք կը յորդորէր որ իրենց Թերակղզւոյն ազատութեան համար ամէնքն ալ զէնք առնուն ու երկիրն օտար տիրողներէն մաքրեն. որպէս զի անկէց ետքը բոլոր Իտալիա միակ տէրութիւն ըլլայ ու քանի դարէն (2000 տարիէն) ի վեր բաղձացուածը վերջապէս կատարուի։

Ի սկզբան Աւստրիայի զօրքերն ան կողմերը դեռ սակաւաթիւ ըլլալուն՝ բազմաթիւ Թշնամւոյն դէմ պատերազմը սկսելու չհամարձակեցան, ուստի մինչեւ Բոյի եզերքը ետ քաշուեցան։ Նոյն ատեն նաեւ Տոսկանայի մեծ դուքսն ու Մոտենայի դուքսն իրենց երկիրները Թողուցին փախան ու Միւրա ութ օրի չափ պարծելու առիթ ունեցաւ՝ թէ ինք Իտալիայի ազատիչը պիտ՚որ ըլլայ։ Սակայն Իտալիայի ժողովուրդները, որոնց ինք այնպէս մեծ մեծ խոստումներ կ՚ըներ, չէ թէ միայն Իտալիայի բուն հին օրինաւոր իշխողներուն դէմ ամենեւին տրտունջ ու տհաճութիւն չէին ցուցըներ, հապա նաեւ սանկ խոստումներ ընող յեղափոխական գլխու մը նկատմամբ բոլորովին պաղ կը կենային։ Այսպէս Միւրա իր հնարքներուն ու գոռոզ խօսքերովը քիչ հետեւողներ գտնելով ու իր զօրաց թիւը միայն ասդիէն անդիէն ժողված խել մը տաքգլուխ երիտասարդներու բազմութեամբ աւելցընելով՝ սկսաւ Աւստրիացւոց հետ զարնուիլ։ Բայց Բոյի եզերքը Օքքիոպէլլոյ գեղին քով տրուած երկօրեայ (Ապր. 8—9.) ճակատին մէջ մեծ կորուստ ընելէն ետքը՝ երբ որ Աւստրիացւոց Բոյի ետեւը ժողված զօրքն ալ սկսան յառաջ քալել, Միւրա ստիպեցաւ իր բոլոր բանակովն արտորնօք ետ քաշուիլ։ Ա-

կից եռքը տեսնելով՝ որ իր զօրաց թիւն օրէ օր կը քիչնայ, զինուորներուն շատերն իր դրօշը կը թողուն կը փախչին, յուսահատութեան մէջ իյնալով՝ վերջին փորձ մ'ալ ընել ուզեց։ Ուստի (Մայ. 2.) Դոլենդինոյի քով մեծ կռիւ մըն ալ սկսաւ, որն որ երկու օր տեւեց. բայց իր ամէն ջանքն ու քաջութիւնը շահ մը չընելով՝ բոլորովին յաղթուեցաւ, տէրութիւնն ու թագն ալ կորսնցուց։ Բանակն ըստ մեծի մասին ցրուեցաւ. ու (Մայ. 20.) Գազալանցիի քով Աւստրիայի զօրաց Պիանքի սպարապետին հետ Նէապոլսեցի Գոլեդդա զօրապետը դաշնադրութիւն ընելով՝ տէրութեան ամէն բերդերն ու մայրաքաղաքն անոր յանձնեց իրենց օրինաւոր թագաւորին տալու համար։ Միւրա Նէապոլսեցի փախստականներուն յառաջընթաց ըլլալով՝ Նէապոլիս մտաւ, ուսկից երկրորդ օրը Իսքիա կղզին, անկից ալ Գաէդա գնաց, Նաբոլէոնին ձեռաց տակ՝ դաշնակցաց դէմ պատերազմելու համար։ Իսկ իր ամուսինը Կարոլինա, Նաբոլէոնին քոյրը, իր զաւակներովն Անգղիացւոց նաւով մը Թրիէստ գնաց Աւստրիայի կայսեր պաշտպանութեան տակ մտաւ։ Նոյն կայսեր զօրքը (Մայ. 22.) յաղթանակաւ Նէապոլիս մտան, ուր Յուլիսի սկիզբը Փերդինանդոս թագաւորն ալ եկաւ ու իր գահն ու իշխանութիւնը յաղթող Աւստրիացւոց ձեռքէն ընդունեցաւ, բոլոր իր տէրութեան ազատութեան համար եղած վերջին պատերազմներուն ծախքը վճարելով։

Միւրա այսչափ պարտութիւններով իր անմիտ խորհուրդներէն չզգաստանալով՝ երբ որ Նաբոլէոն երկրորդ անգամ գահէն ինկաւ, ուստի եւ ինք անկէց օգնութիւն գտնելու ա'լ յոյս չունէր, վերջին անմտութեան գործքով մը իր մինչեւ ան ատեն ըրած յանդուգն գործքերը պսակեց։ Աւստրիայի կայսրը Փրանկիսկոս Ա.

որուն քովը Միւրայի ամուսինն իր զաւկըներուն ապաւինած էր, իրեն առաջարկեց որ իր երկիրներուն մէկուն մէջ գայ հանգիստ ապրի իր ընտանիքովը։ Միւրա աս հրաւէրն արհամարհելով՝ Գորսիկա գնաց, հոնկից ալ գաղտուկ քանի մը ընկերներով միայն Գալապրիայի Բիցցօ քաղքին մօտ Նէապոլսոյ ցամաքն ելաւ ու սկսաւ ժողովուրդը գրգռել՝ որ զինք առնուն ու իրեն օգնեն իր կորսնցուցած թագը նորէն ձեռք բերելու։ Իսկ ժողովուրդն անոր քովի մարդկան քիչութիւնը տեսնելով՝ չէ թէ միայն իր ուզածը չկատարեցին, հապա զինքը բռնեցին դատաւորին կուսակալին ձեռքը տուին։ Կուսակալը զՄիւրա նոյն իսկ իրեն (Միւրային) սահմանած պատժական օրինաց համաձայն դատելով՝ (Հոկտ. 13.) մահուան դատապարտեց ու մեռցընել տուաւ։ Այսպէսով Իտալիայի թշնամիներն ու խռովիչները վերջացան, օրինաւոր իշխաններն իրենց տեղերը դարձան ու իւրաքանչիւր իր տէրութիւնը կառավարել սկսաւ։



## Բ. ՄԻՋՈՑ

## 1815—1850

Ինչպէս յառաջագոյն ըսինք, Վիէննայի արքայաժողովը, ինչպէս Եւրոպայի ուրիշ տէրութեանց, նոյնպէս առանձինն Իտալիայի այլ եւ այլ տէրութեանց իշխանութիւնը նորոգած ու հաստատած էր, ամէն մէկ տեղւոյն մերժուած օրինաւոր իշխանն իր գահը դարձընելով։ Նոյն ժողովն աս ըրած ատենը այնչափ միտ չէր դրած ու փոյթ չէր ցուցըրած Իտալացւոց ազգային հոգւոյն ու զգածմանց համաձայն կարգաւորութիւններ ընելու. կամ նոյն թերակղզւոյն վրայ տէրութեանց միութեան կապ մը կամ միապետութիւն մը հաստատելու։ Աս ասանկ ըլլալով, Իտալիայի այլ եւ այլ մասերն այլ եւ այլ իշխողաց տակ ու այլ եւ այլ տեսակ կառավարութեամբ իբրեւ իրարմէ բոլորովին զատ ազգաց երկիրներ կը սեպուէին։ Ասկից ի զատ՝ հին իշխանները նոյն արքայաժողովոյն որոշմանցը համաձայն իրենց գահերուն վրայ նորէն հաստատուելէն ետքը՝ գրեթէ ուրիշ բանի միտ չէին դներ, բայց եթէ ետքի ատենները Գաղղիացւոց ազդեցութեան տակ դրուած կարգերը ջնջելու եւ իրենց հին կարգերը նորէն հաստատելու։ Ասիկայ ալ ուրիշ բան չէր, բայց եթէ այլ եւ այլ ժողովրդոց տրուած քանի մը ազատութիւնները բոլորովին արգելել ու զիրենք խիստ կապանքներու տակ դնել ու խիստ կարգերու հնազանդեցընել։ Այս ջանքերուն պտուղը ժողովրդոց սիրտը դառնացընելէն ու իրենց ստացած քանի մը ազատու-

թեանց կորուստն աւելի եւս զգալի ընելէն ուրիշ բան չէր ըլլար ։ Ամէն դի տժգոհութիւնն ու իշխանաց վրայ անվստահութիւնն օրէ օր երկրին մէջ կը տարածուէր ու կ՚աւելնար ։

Աս զգածմանց աւելի եւս սաստկանալուն ու արմատանալուն ուրիշ պատճառ մ՚ալ շատ մեծ նպաստ կ՚ընէր ։ Իտալիայի մէջ ատեն ատեն այլ եւ այլ գաղտնի ընկերութիւններ կազմուած են, երբեմն մասնաւոր երկրի մը իշխանին դէմ, երբեմն ընդհանրապէս քանի մը իշխողներու դէմ ։ Ասոնց մէջ ամենէն աւելի համբաւ ունեցողն ու աւելի ընդարձակ տարածուածն եղաւ Գարպոնարիա անուանուած ընկերութիւնը ։ Ասիկայ թէպէտ եւ Իտալիայի մէջ շատոնցուընէ սկսած էր ու Գաղղիացւոց հոն եղած ատենն ալ կար, բայց անկից ետքը աւելի եւս զօրացաւ, ընդարձակեցաւ ու հաստատուեցաւ անանկ որ ատեն մը (1819ին) 60,000 անդամէն աւելի ունէր, որոնք ամէն կարգի ու աստիճանի մարդիկ էին, գեղացիներէն սկսելով՝ մինչեւ մեծամեծ իշխաններ ալ իրենց մէջ կը գտնուէր ։ Աս ընկերութեան գլխաւոր նպատակն ու ջանքը բոլոր Իտալիայի ազատութիւնը, անկախութիւնն ու միութիւնը՝ այսինքն մէկ իշխողի տակ, կամ միակ հասարակապետութիւն մ՚ըլլալն էր ։ Յայտնի է՝ որ այսպիսի մեծ ընկերութիւն մը, որն որ բոլոր Իտալիայի մէջ տարածուած էր, ու անոր ամէն մասին մէջ իր ժողովներն ու զօրաւոր գործակալներն ունէր, երկրին ամէն մասնաւոր իշխողներուն կարգաւորութիւնները, հրամաններն ու ջանքը պարապի կրնար հանել ու այլ եւ այլ տէրութեանց հպատակներուն իրենց իշխանացը դէմ ունեցած տժգոհութիւնն ու թշնամական խորհուրդները սնուցանել ու սաստկացընել ։

Այսչափ զօրաւոր ջանից դէմ խախուտ հիման

վրայ հաստատուած տէրութիւններն ու դողդողացող գահերու վրայ նստող իշխաններն ինչպիսի միջոցներով ու ինչ զօրութեամբ կրնային յաջողակի գործել ու սկսածնին եւ ուզածնին յառաջ տանիլ: Անոր համար Իտալիայի մէջ՝ Աւստրիայի իշխանութեան տակ ըլլող երկիրներէն (այսինքն Լոմբարտիայէն ու Վենետիկի սահմանէն) դուրս՝ միւս տէրութեանց մէջ ոչ կառավարութիւնը յաջողակի առաջ կ'երթար ու ոչ հասարակաց գործքերը խաղաղութեամբ կը կատարուէին. ամէն դի անկարգութիւն ու շփոթութիւն կը տիրէր: — Նէապոլսոյ Փերդինանդոս Դ. (Ա.) թագաւորը նորէն իր գահը նստելէն ետքը՝ սկսաւ իր առաջուան ընթացքը բռնել, ինք զինքն որսորդութեան ու ձկնորսութեան եւ զբօսանաց տալով՝ կառավարութեան գործքերն իր պաշտօնէից թողուց, որոնց ջանքն եղաւ ամէն հին կարգերը բանեցընել ու անոնց համեմատ տէրութիւնը կառավարել: Սիկիլիա կղզւոյն վրայ Անգղիացւոց միջնորդութեամբը 1812ին տրուած սահմանադրութիւնն ու խորհրդարանցը վերցուեցաւ ու հին կառավարութեան կերպերն ու կարգերը նորէն հաստատուեցան: Թէ աս կղզւոյն վրայ ու թէ Նէապոլսոյ ցամաքին վրայ ժողովուրդը սկսաւ տէրութեան դէմ իր տհաճութիւնը ցուցընել, Գարպոնարիներն ալ իրենց հնարքները կը բանեցընէին գրգռուած սրտերն աւելի եւս գրգռելու: Տեղ տեղ հին աւենուան պէս աւազակաց խումբեր կը կազմուէին ու տէրութեան դէմ օրէ օր կը զօրանային. անանկ որ տէրութիւնը կը պարտաւորէր՝ ասոնց հետ իբրեւ օրինաւոր իշխանութեան մը հետ դաշինք դնելու եւ երբեմն իրենց պահանջածը կատարելու: Աս ամէն տխուր հանգամանաց վրայ ուրիշ վտանգաւոր պարագայ մ'ալ կու գար, այսինքն՝ տէրութեան գանձը շատ դէշ

վիճակի մէջ գտնուելուն, զինուորաց ու պաշտօնակալնե-
րուն թոշակները չէին կրնար վճարուիլ։ Աւելի դէշն ան
էր՝ որ Գարպոնարիներն ալ դրդուիչ հանգամանքներն
իրենց նպատակին ծառայեցընելով՝ գաղտնի ու յայտնի
հնարքներով ապստամբութեան հոգին զինուորաց ու
քաղաքացւոց մէջ օրէ օր աւելի կ՚արծարծէին։ Սպանի-
այի ու Բորդուկալի մէջ (1820) եղած յեղափոխու-
թիւններուն յաջողելն ու Սպանիայի մէջ նոր ազատական
սահմանադրութիւն մըն ալ դրուիլը * Նէապոլսոյ տէ-
րութեան մէջ ծանուցուելով, ապստամբութեան դրօ-
շը բանալու վերջին խրախոյսը զարթուց։ Ամէն տեղէն
յառաջ Սեսսա քաղքին քով ժողվուած բանակին
գունդերն ըստ մասին իրենց պաշարին դէշութեան ու
ըստ մասին իրենց օտարազգի մը՝ այսինքն Նիւժան սպա-
րապետը՝ հրամանատար դրուելուն վրայ տժգոհ ըլլալով,
յայտնապէս գլուխ վերցուցին։ Ասոնցմէ 130 ձիաւորք
Մորէլլի պաշտօնակալին առաջնորդութեամբը (1820.
Յուլ. 1.) գիշերանց Նոլա քաղքին մէջ Սպանիայի ա-
զատական սահմանադրութիւնը հրատարակեցին։ Ետքը
դէպ ի Աւելլինոյ քաղաքը գացին, ուր քաղաքապահ
զօրքն իրենց տէ Գոնչիլիիս գնդապետին հրամանին տակ
անոնց հետ միացան. որուն վրայ շրջակայ գեղերուն բնա-
կիչքն ու Գարպոնարիները բազմութեամբ եկան նոյն
զինուորաց մէջ խառնուեցան։ Նա եւ կառավարութեան
կողմանէ աս ապստամբներուն դէմ խաւրուած զօրքին
մէկ մասն ամենեւին անոնց դէմ զէնք չվերցուց. մէկ
մասն ալ գնաց բոլորովին անոնց հետ միացաւ։ Փերդի-
նանդոս թագաւորն այսպէս իր զօրքին օգնութենէն

* Աս սպանիական (Գորդէզներու ըրուած) սահմանադրու-
թեան վրայ տես Պատմ. քաղաքական. Եւրոպական տէ-
րութեանց. Հատ. Դ. Երես 54—55 ։

զուրկ մնալով՝ ճարը հատաւ ու խոստացաւ ութ օրէն Նէապոլսոյ տէրութեան համար նոր սահմանադրութիւն մը տալու։ Բայց Կ. Բէբէ զօրապետը, որն որ երկու ապստամբ գնդերու գլուխ եղած էր, դէպ ի Նէապոլիս քաղաքը յառաջ քալելով՝ ճամբէն թագաւորին պատգամաւորներ խաւրեց, յայտնի ընելով որ նոր սահմանադրութիւն մը յօրինելու հարկ չկայ, ամէնքը 1812ին Գօրդէզներուն դրած սահմանադրութիւնը կ'ուզեն, զորն որ պէտք է 24 ժամու մէջ հրատարակել։ Աս յայտարարութենէն թագաւորն արտաքոյ կարգի այլայլելով, շուտ մը երկրին կառավարութիւնն իր թագաժառանգ որդւոյն ձեռքը յանձնեց՝ զանիկայ տէրութեան ընդհանուր փոխանորդը կամ տեղակալն անուանելով։ Բայց ասիկայ ընդունելի չըլլալով, հարկադրեցաւ խոստանալ որ նոյն 1812ին սահմանադրութիւնը կ'ընդունի, անոր կը ստորագրէ ու անոր վրայ կ'երդնու, եւ այս խոստումը (Յուլ. 8.) կատարեց։ Երկրորդ օրը Բէբէ 20,000 զօրքով Նէապոլիս քաղաքը մտաւ երեքգունեան (կարմիր, կապոյտ ու սեւ) ծաղկերով զարդարուած. եւ քաղաքացիներէն ուրախութեան աղաղակներով ընդունուեցաւ։

Երբ որ Սիկիլիայի Բալերմոյ քաղքին մէջ տէրութեան կառավարութեան կերպին փոխուելուն լուրը հրատարակեցաւ, շուտ մը նոր կողմնակցութիւն մը կազմուեցաւ, որն որ առանձին սահմանադրութիւն մը ու Նէապոլսոյ տէրութենէ բոլորովին անկախ ըլլալ կ'ուզէր։ Բայց որովհետեւ քաղաքացւոց շատը, ինչպէս նաեւ քաղաքապահ զօրքը Նէապոլսոյ նոր սահմանադրութիւնն ընդունած էին, անոր համար երկու կողման մէջ սաստիկ կռիւ մը սկսաւ։ Սիկիլիական զօրքը (1820. Յուլ. 15.) ստորին ժողովրդենէ մեծ բազմութիւն մ'ալ մէկտեղ ժողվուելով ու "Կեցցէ սահմանադրութիւնը, կեցցէ ան-

խակութիւնը,, պոռալով բոլոր բանտերուն դռները բըռնութեամբ կոտրեցին բացին ու անոնցմէ ազատած չարագործներուն հետ մէկտեղ Նէապոլսոյ զօրաց վրայ քալելով, անոնց յաղթեցին. սակայն քաղաքացւոց մէջ կռիւը քիչ մը տեւեն ալ շարունակեց. անանկ որ 4000 հոգի քաղքին ճամբաներուն վրայ ինկած մեռած էին: Անկից ետքը ապստամբները Պալերմոյէն դուրս ելլելով՝ բոլոր կղզւոյն վրայ յառաջ կ՚երթային, ամէն դի դիմացնին եկողները զարնելով ու սպաննելով: Դրէբանոյ ու Մեսսինա քաղաքներուն բնակիչքը թագաւորական զօրքին օգնութեամբը՝ ապստամբներուն յառաջ երթալն արգելեցին. քիչ մը ետքը Նէապոլսէն ուրիշ գնդեր ալ աս երկու քաղաքները հասնելով, հոն բուն թագաւորականաց հաստատուն ու ամուր տեղն եղաւ: Թագաւորական զօրաց հրամանատարն էր Բէբէ զօրապետը, որն որ Գալդանիսէդդա քաղքին քովն ապստամբներուն վրայ առաջին մեծ յաղթութիւնն ըրաւ: Երբ որ (Սեպտ. 19.) Գերմինիի քով երկրորդ անգամ ապստամբները յաղթուեցան, ալ ժողովրդեան մէջ քիչ մը աւելի հանդարտ ու խելացի ըլլողներուն վրայ անանկ մեծ վախ մը ինկաւ որ բոլորովին ապստամբներէն զատուեցան: Պալերմոյ քաղքին բնակիչներն իրենց վրայ յարձակող զօրաց քանի մը օր քաջութեամբ դէմ կենալէն ետքը՝ քանի մը նպաստաւոր պայմաններով (Հոկտ. 5.) Բէբէ զօրապետին անձնատուր եղան: Աս պայմաններուն գլխաւորն էր՝ որ Սիկիլիա կղզին Նէապոլսոյ կառավարութեան տակ պիտ՚որ մնար, բայց թէ որ նոր դրուելու խորհրդանոցն ուզելու ըլլար՝ իրեն յատուկ օրէնսդիր իշխանութիւն պիտ՚որ ունենար: Բայց որովհետեւ Նէապոլսոյ կառավարութիւնն աս պայմանը չընդունեցաւ, անոր համար Սիկիլիայի մէջ խռովութիւնները չվերջացան: Նոր խորհրդանոցն ալ

հաստատուելէն ետքը՝ որովհետեւ Սիկիլիայի գանձին մէջ նոր կարգաւորութիւններն ի գործ դնելու եւ բանական զօրք պահելու համար ստակ չէր գտնուեր, ժողովրդեան վրայ ալ նոր տուրքեր դնելով ստակ ճարելը նոր խռովութիւններու պատճառ պիտ'որ ըլլար. անոր համար նոյն խորհրդանոցը չէր կրնար ուզածին պէս գործել ու կղզւոյն կառավարութիւնը յառաջ տանիլ: Աս պէսպէս ըլլալով՝ տէրութենէ ապստամբ ըլլող կողմնակցութեան յոյսը կը մնար Իտալիայի ուրիշ տէրութեանց մէջ ապստամբութեան հրդեհը տարածելով՝ անոնց հետ մէկտեղ նպատակներնուն հասնելու: Սակայն Հռոմայի տէրութեան մէջ ժողովուրդը կառավարութեան վրայ ըստ բաւականին գոհ ըլլալով, իսկ Լոմբարտեան-Վենետական թագաւորութեան մէջ Աւստրիայի զօրաւոր միջոցներուն ուժովը Իտալացիք հանդարտ մնալով՝ ապստամբութեան նշան մը չէր երեւար: Միայն Սարդինիայի թագաւորութեան մէջ շատոնցուընէ ոգիները գրգռելու սկսած ըլլալով՝ վերջապէս ապստամբութեան դրօշը բացուեցաւ. բայց անկից Նէապոլսոյ ապըստամբներուն ու յեղափոխականներուն օգուտ ու օգնութիւն մը հասնելու ատենն անցած էր, ինչպէս հետեւեալ դէպքերէն կը տեսնուի:

Եւրոպայի վեհապետներն Իտալիայի, առանձինն Նէապոլսոյ մէջ եղած յեղափոխական շարժմունքէն տխրելով՝ որոշեցին նոր արքայաժողով մը գումարել, զորն որ իրօք ալ սկսան՝ առաջ (1820. Նոյ.) աւստրիական Սիլեզիայի Դրոբբաւ քաղքին մէջ, բայց ետքը (1821. Յունու.) Աւստրիայի կայսրութեան Գրաինիա Նահանգին Լայպախ (Լուպիանա) քաղաքին մէջ առաջ տարին ու լմնցուցին. Աւստրիայի ու Ռուսիայի կայսրներն անձամբ եկան, իսկ ուրիշ տէրութիւններն իրենց

դեսպանները խաւրեցին։ Աս ժողովին Նէապոլսոյ Ֆերդինանդոս թագաւորն ալ հրաւիրուեցաւ, ու թէպէտ իր խորհրդականներն անոր հոն երթալը այնչափ չէին ուզեր, բայց յուսալով՝ որ ժողովոյն մէջ իր ընդունած ու հրատարակած նոր սահմանադրութիւնը կը պաշտպանէ, երթալուն արգելք չդրին։ Իսկ թագաւորը Լայպախ հասածին պէս՝ արքայաժողովին մէջ յայտնապէս ըսաւ որ ինք նոր սահմանադրութիւնը բռնի ընդունած ու ակամայ անոր վրայ երդուընցած ըլլալով, ինք զինք պարտաւորեալ չսեպեր զանիկայ հաստատ պահելու։ Միւս տէրութիւններն ալ թէպէտ առ հասարակ այս կարծիքն ունէին ու նոյնին հաւանեցան. բայց Գաղղիա ու Անգղիա հաստատութեամբ յայտնի ըրին որ եղածն եղած պէտք է սեպել ու Նէապոլսեցիներուն ազատ թողուլ իրենց թագաւորին հետ տէրութեան գործքերը կարգի դնելու։ Իսկ միւս երեք մեծ տէրութիւնները, Աւստրիա, Ռուսիա ու Պրուշ միաբանութեամբ որոշեցին Ֆերդինանդոս թագաւորին օգնելու եւ զէնքով ու զօրքով Նէապոլսեցիներն ու Սիկիլիացիները հնազանդութեան ստիպելու։ Աս բանիս գործադրութեան համար սահմանուեցաւ որ Աւստրիայի կայսրը շուտ մը օգնական զօրք ոտք հանելով, թէ որ Նէապոլսեցիք իրենք զիրենք թագաւորին հնազանդելու պատրաստ ցուցընելու ըլլան, միայն 10,000 զինուոր ապահովութեան համար Նէապոլսոյ երկիրը խաւրէ. իսկ եթէ հնազանդիլ չուզեն, 100,000ի բանակ մը հոն քալեցընէ ու ապստամբութիւնը բոլորովին վերջացընէ։ Ժողովոյն այս որոշումները նախ առանձինն Ֆերդինանդոս թագաւորին ու ետքը միւս թագաւորները Նէապոլսեցւոց մասնաւոր յայտարարութիւններով ծանուցին։

«Նէապոլսոյ խորհրդանոցը տէրութեանց որոշման

չհաւանելով, քաղաքացւոցմէ պահանջուած հաստատ-կութիւնն ու թագաւորին բացարձակ իշխանութեան հնազանդիլը յանձն չառաւ: Բայց իր յամառութիւնն ու հեռատեսութիւնը ինչպէս ու ինչ ուժով պիտա՛ր պաշտպանէր. իր պատերազմական զօրութիւնն ու զօ-րացը թիւը միայն թղթի վրայ մեծ ու ահաւոր էր. ինչու որ իր քաղաքացի կամ ազատական զինուորներն ամէն զինուորական հրահանգէն ու կարգապահութենէ զուրկ էին, ըստ մասին նա եւ զէնք ալ չունէին. իսկ 52,000 ծակառող կամ կրթեալ զօրքէն հազիւ 30,000 հոգի ըստ պատշաճի զէնք ունէին. նա եւ զինուորա-կան պաշարները, ուտելեաց ու ռազմամթերքի (munition) պատրաստութեան համար ամեներին խնամք մը չկար: Անկից ի զատ նա եւ յայտնի կը տեսնուէր՝ որ զինուորներն ո՛չ իրենց ուժին ու ո՛չ իրենց զօրապետ-ներուն հմտութեան վրայ վստահութիւն ունէին. շա-տերն ալ սրտանց կը բաղձային որ շուտով յաղթուին ու կռիւը լմննայ: Ահա աս վիճակի մէջ էր Նէապոլ-սեցւոց յեղափոխական կառավարութիւնը, երբ որ Աւս-տրիացւոց 80,000 զօրաց բանակը Ֆրիմոն սպարապետին հրամանին տակ (1821, փետր. վերջերը) Նէապոլսոյ երկրին սահմանը հասաւ: Նէապոլսեցւոց զօրքն եր-կու բանակի բաժնուած էր, որոնց մէկը Կ. Բէբէ զօ-րապետին հրամանին տակ Աբրուցցոյ նահանգին մէջ երկրին սահմանին վրայ կը կենար. իսկ երկրորդը Գա-րաշգոզա զօրապետին հրամանին տակ՝ Կաէգայի ու Գաբուայի բերդերուն ապաւինած՝ թշնամեաց յարձակ-մանը կը սպասէր: Աբրուցցոյ կեցող բանակին մէջ զօրաց անհաւատարմութիւնն ու մատնութիւններն այն-չափ շատցան, որ Բէբէ վախնալով որ չըլլայ թէ կռիւը քիչ մ'ալ ուշանալով՝ խայտառակութիւնը յայտնուի

ու ամէն բան կորսուի, առաջարկեց որ պատերազմը սկսի: Ռիէդի քաղքին քովերը (Մարտ 7.) կռիւը սկսաւ. եւ Աւստրիացւոց քաջութեամբը քանի մը ժամու մէջ յաղթութիւնը որոշուեցաւ: Նէապոլսեցւոց զօրքը բոլորովին՝ պարտուելով՝ առանց կարգի ու արտօրնօք սկսան փախչիլ, եւ բոլոր երկրին մէջ ցրուելով՝ հասած տեղերնուն մէջ ամէն բնակչաց սիրտը վհատեցուցին: Ասոր վրայ Գարապզողային հրամանին տակ ըլլող զօրքն ալ ապստամբելով, ինքն ալ ստիպեցաւ բերդերուն դռները բանալ. որով արիւնհեղութիւնը դադրեցաւ եւ (Մարտ 24.) ամէն բան լմննալով, Աւստրիացիք բոլոր Նէապոլիս թագաւորին հնազանդեցուցին. եւ մայրաքաղքին ժողովուրդը յաղթութեան դաբնիններով իր ազատիչներն ընդունելով, բոլոր յեղափոխութեան վերջանալը յայտնի ըրաւ: Իսկ Սիկիլիացւոց պարտութիւնն ու խոնարհիլը, միայն 10,000 աւստրիացի զօրաց գալովը, առանց կռուոյ գլուխ ելաւ:

Հազիւ թէ Աւստրիայի զէնուքը Նէապոլսեցւոց ապստամբութիւնը զսպուեցաւ, դեռ հոս կռիւները կատարելապէս չվերջացած՝ Սարդինիայի մէջ Գարպոնարիները (Մարտ 9.) ապստամբութեան դրօշը բարձրացուցին ու յեղափոխութիւնը սկսան: Աղեքսանդրիայի, Դորդոնայի ու Ֆոսսանոյի մէջ եղած զօրքը պաշտօնակալներուն հնարքովը ու ջանիւքը տէրութեան դէմ գլուխ վերցուցին, ու երեք օր ետքը (Մարտ 12.) Դուրինի բերդապահ զօրքը Սպանիայի ազատական սահմանադրութիւնը հրատարակեց: Վիկտոր Էմմանուէլ թագաւորը շուտ մը գահէն հրաժարեցաւ, եւ ինք թագաժառանգ որդի չունենալուն՝ իր Կարոլոս Փելիքս եղբայրն իրեն յաջորդ անուանեց. բայց որովհետեւ աս ալ որդի չունէր եւ նոյն ատեն Մոտենա կը բնակէր,

Գարինեանի Կարոլոս Ալբերտ իշխանը՝ որ նոյն թագաւորական ցեղէն էր, իբրեւ թագաժառանգ թագաւորութեան՝ տէրութեան խնամակալ ու կառավարիչ դրուեցաւ։ Աս իշխանը շատոնցուընէ Գարպոնարիա ընկերութեան մէջ մտած էր ու Գարպոնարիներուն միշտ խորհրդակից կ'ըլլար, ուստի երկրին իրական կառավարութիւնն իր ձեռքն անցնելով՝ յեղափոխականք կը յուսային որ իրենց սկսածը յաջողութեամբ յառաջ պիտի երթայ։ Սակայն Կարոլոս Ալբերտ իր կառավարութեան սկիզբներն անանկ տարակուսելի ընթացք մը բռնեց ու իր հին ընկերակիցներուն հետ անանկ վարուիլ սկսաւ՝ որ ամէնքն ալ հասկցան թէ ինք իրենց ուզածին պէս պիտ'որ չկառավարէ ու իրենց կարգաւորութիւններուն ու խորհուրդներուն պիտ'որ չհետեւի։ Անկից զատ Գարպոնարիներն իրենց մէջն ալ բռնելու ընթացքներնուն վրայ միաբան չէին. նաեւ բոլոր Սարդինիայի տէրութեան այլ եւ այլ մասանց մէջ ուրիշ ներքին շփոթութիւններ պակաս չէին, որովհետեւ կառավարութեան այսպէս փոփոխուելու ատենը Սարդինիայի մէկ մասը Սաւոյայի հետ կ'ուզէր որ կառավարութեան կերպը՝ բացարձակ թագաւորութիւն կամ արձակապետութիւն ըլլայ, ուստի եւ թագաւորին հաւատարիմ մնացած էր. իսկ Գենուա իր հին անկախ հասարակապետական կառավարութիւնը ձեռք բերելու կը բաղձար ու կը ջանար։

Կարոլոս Ալբերտ այս ամենայն գիտնալով՝ կառավարութիւնը սկսելէն տասն օր ետքը՝ յառաջագոյն իր պատրաստութիւններն ըրաւ ու (Մարտ 21—22) գիշերանց գաղտուկ Թուրինէն ելաւ, նոյն ճամբով՝ որով քանի մը օր առաջ զօրաց մէկ մասն իր հրամանովը յառաջ գացած էր, դէպ ի Լոմբարտիայի սահ-

Մոռենայէն եկաւ իր գահը նստաւ ու յանցաւորներուն, հասարակ զինուորաց ու քաղաքացիներուն ընդհանուր թողութիւն հրատարակեց. միայն պաշտօնականներն ու ապստամբաց գլխաւորները խստիւ պատժուեցան:

Սարդինիայի մէջ Գարպոնարիներուն պատիժն ու հալածումն այսպէս թեթեւ ու կարճ եղաւ: Բայց Նէապոլսոյ տէրութեան մէջ շատ աւելի խիստ կերպով պատժուեցան. եւ որովհետեւ ասոնք երկրին ամէն կողմը տարածուած ու իրենց գրգռութիւնները բանեցուցած էին, անոր համար տէրութիւնն ալ իր խստութիւնն ամէն քաղաքներու եւ գաւառներու մէջ ու ամէն կարգի մարդկան վրայ առանց խնայելու բանեցուց: Այլ եւ այլ տեղեր չորս մասնաւոր քննութեան ատեաններ դրուեցան, ու ամէն դի յանցաւոր գտնուողները, կամ Գարպոնարիա ընկերութեան անդամ ու բաժանորդ ըլլողները, — թագաւորական պաշտօնատէրներ, դատաւորականներ, մատենագիրներ, եկեղեցականներ, եւ այլն — բռնուեցան ու պատժուեցան: Տասն'ութը գունդ ոտանաւոր զօրաց ու հինգ գունդ ձիաւորաց զինուորութենէ արձակուեցան ու անոնց տեղ նոր զօրք դրուեցաւ: Քանի մը հրապարակական դպրոցներ բոլորովին գոցուեցան: Տէրութիւնն այս ամէն խիստ միջոցներն առանց արգելքի բանեցընելու համար Աւստրիայի օգնական զօրքը քանի մը տարի իր երկրին մէջ պահեց. որոնք յամի 1826 Սիկիլիա կղզիէն ու յաջորդ տարին Նէապոլսոյ ցամաքէն իրենց երկիրը դարձան. ամէն տեղ իրենց քաջութեան ու զինուորական կարգապահութեան համար բոլոր երկրին բնակչաց շնորհակալութիւնն ու գովեստներն ընդունելով:

Թէպէտ եւ Սարդինիոյ մէջ, ուր որ Լոմպարտիոյ սահմանակից էր, այսպիսի խռովութիւններ ու յեղափոխական խառնակութիւններ եղած էին, սակայն՝ ինչպէս յառաջ յիշեցինք՝ Լոմպարտօ-Վենետական Թագաւորութեան մէջ յայտնի յեղափոխական փորձեր չեղան, միայն գաղտնի ընկերութիւններ այլ եւ այլ ծածուկ հնարքներ բանեցընելով, հոն ալ ազատասիրութեան դրօշը բանալու եւ նոր յեղափոխութիւն մը հանելու կը ջանային։ Բայց ոստիկանութիւնն իր հսկողութիւնն ամէն դի աղէկ պահելով, վերջապէս (1821) գաղտնի ընկերութիւն մը գտաւ. բայց ինք վրայ հասնելէն առաջ անոր անդամներէն շատեր ու հնարք գտնելով՝ այլ եւ այլ կողմեր փախան. միայն մէկ քանիին ոստիկանութեան ձեռքն ինկան։ Ասոնց մէջ անուանի են Գոնֆալոնիէրի ու Սիլուիոյ Բելլիքոյ։ Գոնֆալոնիէրին գաղտնի ընկերութեան գլուխներուն մէկն ըլլալուն՝ տէրութիւնն ամէն կերպով աշխատեցաւ որ իրմէն քանի մը կարեւոր գաղտնիք իմանայ, առանձինն (Կարոլոս Ալբերտոս) Գարինեանի իշխանին վրայ, որն որ յառաջ Գարպոնարիա ընկերութեան անդամ եղած էր, ինչպէս ըսինք, որպէս զի ամէն բանն իմանալով, թէ որ նոյն իշխանը յանցաւոր ցուցունելու ըլլայ, Սարդինիոյ գահին յաջորդութենէն դուրս ձգուի. բայց Գոնֆալոնիէրիէն գաղտնիք մը իմանալը կարելի չեղաւ։ — Իսկ Սիլուիոյ Բելլիքոյ, որն որ հեզաբարոյ ու բարեպաշտ բանաստեղծ մըն էր, ինչպէս մեր ազգին մէջ ալ իր գրոցը թարգմանութեամբը ծանուցուած է, միայն այլ եւ այլ բանաստեղծական գրուածներով Իտալիոյ ազատութեան ու անկախութեան վրայ ունեցած արտաքոյ կարգի եռանդը յայտնի ըրած էր։ Ասիկայ իր վերոյիշեալ ընկերովը խիստ բանտարգելութեամբ տառապե-

լէն ետքը, մահուան դատապարտուեցաւ. բայց ետքէն մահուան պատիժը մշտնջենաւոր բանտարգելութեան փոխուելով, առաջ Վենետիկի մէջ ու ետքը Մորաւիայի Պռիւն քաղքին քովի բերդը բանտ դրուեցաւ։ Հոն, ինչպէս կը պատմուի, բարի հանդամանքով ու գովելի համբերութեամբ տասը տարիի չափ ապրեցաւ ու 1830ին իր ազատութիւնն ընդունեցաւ։

Ինչպէս վերը յիշեցինք՝ Նէապոլսոյ կամ Սիկիլիայի ու Սարդինայի յեղափոխական խռովութեանց ատենը Հռոմայի տէրութեան մէջ յայտնի ու նշանաւոր խռովութիւն մը չէր եղած։ Ցիրաւի նոյն յեղափոխական շփոթութիւնները (1820) սկսելէն քանի մը տարի առաջ Հռոմայի երկրին Մաչերադա քաղքին մէջ ապստամբութիւն մը եղած էր. բայց ան ալ շուտով զսպուած էր ու մեծ հետեւութիւն մը չէր ունեցած։ Պիոս Է. քահանայապետը գաղղիական աքսորանքէն (1814) դառնալէն ետքը, մանաւանդ Նաբոլէոն Ա. իշխանութենէ իյնալէն, Իտալիա Գաղղիացւոց լուծէն ազատելէն ու Վիէննայի արքայաժողովը, ինչպէս յառաջագոյն պատմեցինք, Իտալիայի այլ եւ այլ տէրութեանց հին իշխանութիւնները նորոգելէն ու հաստատելէն ետքը, եկեղեցւոյ տէրութեան խախտած կարգերը հաստատելու փոյթ տարաւ, Գաղղիացւոց սահմանած կարգերը վերցընելէն ու յեղափոխական գաղափարներով լցուած եւ կրօնի բարեկամ չեղող աշխարհական պաշտօնատէրները հեռացընելէն ետքը, իրեն հաւատարիմ մնացող հպատակներուն բաղձանացը համաձայն աշխարհական կառավարութեան պաշտօնները կարգաւորեց, բոլոր երկիրը տասն՛ութը նահանգներու կամ կուսակալութիւններու (Delegazioni) բաժնեց ու (1816) խօսք տուաւ կառավարութեան հին կարգերուն մէջ կարեւոր ու կարելի եղող փոփոխու-

թիւններն ընելու ։ Այս խստական գործադրութիւնը շատ եւ շատ դժուարութեանց հանդիպելով՝ չյաջողուեցաւ։ Այս քահանայապետը խորին ծերութեամբ (1823) վախ-ճանելէն ետքը՝ Լեւոն ԺԲ. իրեն յաջորդելով՝ թէպէտ եւ աշխարհականաց քանի մը դատաստանական առաւե-լութիւն տուաւ, բայց եկեղեցականաց իշխանութիւնն ու ազդեցութիւնը թէ ատեաններու եւ թէ դպրոցներու մէջ աւելի եւս ընդարձակեց ու հաստատեց։

Իսկ մը ատենէ ի վեր Հռոմայ տէրութեան մէջ մեծ անհանգստութիւն ու հոգ կը պատճառէին բազ-մաթիւ խռովարար աւազակներ (briganti), որոնց գլխաւոր տեղերն էին Հռոմայ երկրին մէջ Ապեննինեան լերանց, Պոնտինեան ճահիճներուն եւ Ալպանոյ ու Տուսկուլոյ լեռներուն մէջի երկիրները։ Այս տեղերը 1816էն ի վեր Գոլոննա ազգատոհմին ժառանգական կալուածներն ըլ-լալով, նոյնին իշխանները Որսինի ազգատոհմին եւ Հռո-մայի քահանայապետներուն դէմ ունեցած թշնամու-թիւններն ու ատելութիւններն ի գործ դնելու համար աս աւազակները զինելով կը զօրացընէին ու կը գործածէին։ Գաղղիացւոց ատենին Իտալիոյ մէջ գտնուած ատենները աս խռովարարները քիչ մը զսպուած էին. բայց քահա-նայապետական իշխանութիւնը նորէն հաստատուելէն ետքը՝ գլուխ վերցուցին ու գրեթէ առաջուընէ աւելի նե-ղութիւն կու տային, անանկ որ Հռոմայ ու Նէապոլ-սոյ մէջ ըլլող ճամբաներն ու գեղերն ամենեւին ապա-հովութիւն մը չունէին։ Պիոս Է.ին յաջորդ պաշտօ-նեան Գոնսալուի կարդինալը շատ աշխատեցաւ զանոնք ջնջելու եւ Նէապոլսոյ տէրութեան հետ աս բանին մէջ դաշնակցելով՝ բայց մասին իր ջանքերն պտուղը ցըցուց։ Սակայն նոյն աւազակները բոլորովին չջնջուեցան ու Լեւոն ԺԲ. քահանայապետին բոլոր իշխանութեան ատենը

դեռ երբեմն երբեմն տէրութեան մեծ հոգ ու նեղութիւն կը պատճառէին։

Ասոնցմէ զատ Գարպոնարիա ընկերութիւնը Իտալիոյ մէջ միշտ հաստատ մնացած ըլլալով, թէպէտ եւ յայտնի խռովութիւններ հանելէն կը զգուշանար. բայց ամէն մարդ գիտէր՝ որ նոյնն իր ծածուկ հնարքները բանեցնելու զբաղած է՝ Իտալիոյ ամէն տէրութիւնները, մանաւանդ Աւստրիայի իտալական տէրութիւնը կործանելու համար։ Այս ընկերութեան ծածուկ ժողովարանը կամ միութեան կեդրոնը՝ այս տարիները Հռոմայ երկրին մէջ էր, որովհետեւ ստորին ու վերին Իտալիոյ տէրութեանց մէջ 1822էն վեր նոյնին դէմ բանեցուած զգուշութիւններն ու միջոցները՝ ան տեղերն անոր ազդեցութիւնը շատ տկարացուցած, մանաւանդ թէ բոլորովին անզօր ըրած էին։ Նա եւ Հռոմայ երկրին մէջ Ռաւեննայի կուսակալը Կարդինալ Ռիվարոլա (1815. Օգոստ. 31.) 500էն աւելի Գարպոնարիներ ձեռք անցընելով՝ աւելի կամ նուազ խիստ պատիժներու դատապարտած էր։ Սակայն ասով ընկերութիւնը բոլորովին անզօր ընելու կամ ջնջելու ճամբայ մը չէր բացուած։

Լեւոն ԺԲ. (1829. Մայ. 31.) մեռնելէն ետքը՝ իրեն յաջորդեց Պիոս Ը. որուն քահանայապետութեան տարին շատ կարճ ըլլալով՝ քահանայապետական երկրին հանդարտեան համար սկսած քանի մը օգտակար կարգադրութիւններն անկատար մնացին։ Նա եւ ասդին անդին խլրտող խռովարարներուն դէմ զօրաւոր դարման մը չկրցաւ գտնել, մանաւանդ թէ իր մեռած տարին (1830. Նոյ. 30.) երկրին մէջ, ինչպէս Իտալիոյ ուրիշ կողմերն ալ յեղափոխական շարժմունքը յայտնի երեւալու սկսած էին։ Օրէ օր չարագուշակ դէպքերը յաճախելով՝ մինչեւ նոր քահանայապետին ընտրութեան ա-

տենը (1831. փետր. 2.) յեղափոխական խմբուամբ վերջին աստիճանի հասաւ ու վերջապէս տապալութեամբ դուրս ելաւ, ինչպէս ըստ կարգի պիտի որ պատմենք։

Իտալիոյի միւս տէրութիւնները՝ 1821ին յեղափոխական շփոթութիւններն ու պատերազմները վերջանալէն ետքը՝ արտաքին խաղաղութեան ու հանդարտութեան մէջ էին։ — Աւստրիոյի կայսեր իշխանութեան տակ ըլլող Լոմբարտեան-Վենետական թագաւորութեան երկիրներն ըստ անտեսական եւ ուսումնական հանգամանաց կը ծաղկէին. նա եւ ըստ քաղաքային կարգաց նոյն կայսերութեան հսկող զգուշութեան ու ջանիցը զօրութեամբ յաջողակի կը կառավարուէին։ — Սարդինիայի տէրութիւնը ետքի (1821) խռովութեանց ատենն ու անկից առաջ կրած վնասները կամաց կամաց բժշկելու եւ ըստ կարի յաջողութեան հանգամանաց մէջ մտնելու կը ջանայր։ Կարոլոս Փելիքս Թագաւորը (1831. Ապր. 27.) առանց արու զաւկի մեռնելով եւ Սարդինիայի Թագաւորական ցեղին գլխաւոր կամ ուղիղ գծին մէջ անոր յաջորդ չգտնուելով, Թագաւորութիւնը կողմնական գծին, այսինքն Գարինեան ազգատոհմին անցաւ, որմէ էր Կարոլոս Ալբերտոս (ծնեալ՝ 1798.) որ եւ ըստ կարգի (1831. Ապր. 27.) Սարդինիայի գահը նստաւ*։

* Սարդինիայի Թագաւորական ցեղը, որն որ Սաւոյայի իշխանական ազգատոհմէն յառաջ եկած է, 1630էն ետքը երկու գծի բաժնուեցաւ, առաջինն էր Թագաւորական գիծը, որն որ Կարոլոս Էմմանուէլ Ա.էն սկսաւ. իսկ երկրորդն էր Սաւոյական Գարինեան գիծը, որուն սկիզբն եղաւ նոյն Կար. Էմմանուէլին կրտսեր եղբօրը Փրանկիսկոս Թովմաս Գարինեանի իշխանին մէկ որդիէն։ Աս Սաւոյական Գարինեան ազգատոհմին վերջին իշխանը կամ դուքսը Կարոլոս Էմմանուէլ՝ Կարոլոս Ալբերտոսին հայրը՝ 1810ին մեռաւ ու նոյնէն զատ ուրիշ արու զաւակ չունենալով՝ Կար. Ալբերտոսին Սարդինիայի գահն ելլելովը՝ երկու գիծը՝ ուստի եւ իշխանութիւնը Թագաւորական ցեղին վրայ միացաւ։

Այս իշխանը՝ ինչպէս յառաջագոյն գրեցինք՝ իշխանութեան հասնելէն առաջ յեղափոխականաց, առանձինն՝ Գարպոնարիներուն հետ գրեթէ մի սիրտ մի հոգի եղած էր, բայց իշխանութեան հասնելէն ետքը չէ թէ միայն անոնցմէ բաժնուած էր, հապա անոնց դէմ իր տէրութիւնն ապահովցընելու համար ամէն ջանքն ու հնարքը կը բանեցընէր։ Ի սկզբան երբ որ թագաւորական գահն ելաւ՝ ահու դողու մէջ էր՝ որ Աւստրիայի տէրութիւնը իր յառաջուան ընթացքին համար իրեն հետ բարեկամութեամբ չվարուի, նաեւ շատ կը վախնար՝ որ յեղափոխականք ալ իրեն դէմ գաղտուկ հնարքներ բանեցընեն։ Բայց իրերն իրեն վախցածին պէս չեղան։ Աւստրիա իր հին բարեկամութիւնը Սարդինիայի տէրութեան հետ հաստատուն պահեց. իսկ յեղափոխականք ձայն մը չհանեցին, յուսալով որ քիչ մը ատեն ետքը զէնքը նորէն իրենց կողմը կը շահին։ Ուստի եւ Կար. Ալբերտոս հանդարտութեամբ թագաւորելու սկսելով՝ իր տէրութիւնն ըստ պատշաճի կարգի դնելու եւ պայծառացընելու մտադիր կ'ըլլար։ Երկրին դրամական վիճակը լաւագունացընելը, քաղաքային տեսչութեան կարգաւորեալ ընթացք մը հոգալը, ցամաքային զօրաց ու ծովական զօրութեան կամ նաւատորմղին նոր կարգերով լաւագոյն հանգամանաց մէջ մտնելը, ասոնցմէ ի զատ Գենուայի վաճառականութեան կարգաւորութիւնն ու ծաղկիլը եւ Նաբոլէոնին օրինագրոց (code) համեմատ օրինաց գիրք մը յօրինելն եւ ուրիշ ասոնց նման կարեւոր բարեկարգութիւններ ընելը Կար. Ալբերտոսին թագաւորութեան առջի տարիներուն գործքերն եղան։ Նա եւ ուսմանց եւ ուսումնարանաց համար՝ առաւելապէս Աւստրիական Իտալիայի կամ Լոմբարտիայի մէջ դրուած կարգերուն համեմատ՝ կարեւոր ու օգտակար կարգեր

տահմանեց։ Առանձին խնամքը ցուցուց Սարդինիա կղզւոյն վրայ, որն որ մինչեւ ան ատեն գրեթէ բոլորովին երեսէ ձգուած էր, թէ անոր մշակական հանգամանքը լաւա-գունացընելու միջոցներն ու թէ քաղաքային կառավա-րութեան կարգերը հաստատուն պայմաններով սահմա-նուեցան. կղզւոյն մէջ նոր ճամբաներ շինուեցան ու ցա-մաք երկրին հետ կարգաւորեալ կապակցութեան մէջ մտնելուն համար հարկաւոր եղող միջոցներն ի գործ դրուեցան։ — Կար. Ալբերտոս արտաքին տէրութեանց հետ բարեկամութիւնն ու խաղաղութիւնը պահելու ջանք ունէր. բայց իր թագաւորութեան անկախութիւնը հաստատ պահելու համար արտաքոյ կարգի նախանձա-խնդրութեամբ հետամուտ ըլլալով՝ շատ անգամ մէկ կամ մէկալ տէրութեան հետ այլ եւ այլ խնդիրներ ու-նենալու պատճառ կու տար։ Առանձինն Գաղղիոյ հետ քանի մը հեղ անհաճոյ վէճեր ունեցաւ։ Նա եւ Սպա-նիոյ (Քրիստինեան թագուհւոյն) տէրութիւնն անոր վրայ գոհ չէր, որովհետեւ Տոն Կարոլոս իշխանին կողման յառաջ երթալուն եւ անոր ջանիցը յաջողելուն համար Սարդինիացիք ու Կար. Ալբերտոս դրամով եւ ուրիշ օգ-նութիւններով ձեռնտու ըլլալու կը ջանային։

Նէապոլսոյ Փերդինանդոս Ա. (Դ.) թագաւորը (1825. Յունու. 3.) մեռնելով, իրեն յաջորդեց իր որդին Փրանկիսկոս Ա. որն որ իր հօրը կենդանութեան ատենէն կառավարութեան գործքերուն մէջ մտած ըլլալով, վեր-ջի (1821) խռովութիւնները Աւստրիայի օգնութեամբը հանդարտելէն ետքը՝ հին կարգերը յառաջ տանելով՝ քանի մը տարի թագաւորեց ու (1830. Նոյ. 7.) մեռաւ։ Իր աթոռը նստաւ իրեն որդին Փերդինանդոս Բ. (ծնեալ՝ 1810. Յունու. 12.), որն որ իր կառավարութիւնը սկսաւ՝ քանի մը տարիէ ի վեր տէրութեան մէջ գտնուող քա-

ղաքային յանցաւորներուն ընդհանուր թողութիւն հրատարակելով, ու տէրութեան հին վէրքերը բժշկելու համար լաւ կարի օգտակար նորոգութիւններ ընելով։ Նա եւ ի սկզբան յօժարութիւն ու պատրաստականութիւն կը ցուցընէր սահմանադրական կառավարութեան կերպերը տէրութեան մէջ խոթելու. բայց այս յօժարութեան անգործունեայ ըլլալը քիչ ատենէն յայտնի երեւցաւ։ Տէրութեան խորհրդոյն դահերէցը (1834) յայտարարութիւն մը հանեց, որով կը ծանուցանէր՝ որ թագաւորը հաստատութեամբ միտքը դրած է՝ երկրին հին միապետական կարգին ու օրինաց միշտ հաւատարիմ մնալու, եւ զանոնք փոխելու համար եղած որպիսի՛ եւ իցէ խորհուրդն ու առաջարկութիւնը հաստատութեամբ կը մերժէ։ Աս բանս թէ Նէապոլսոյ կամ ցամաք երկրին ու թէ Սիկիլիա կղզւոյն կառավարութեան համար կ'իմացուէր։

Ու Սիկիլիա կղզւոյն յառաջադիմութեան համար թէպէտ եւ թագաւորը մեծ խնամք կը ցուցընէր, նոր դատաստանական իրաւունքներ, վաճառականաց առանձին դատաստանարաններ ու փաստաբաններու ժողովներ սահմանելով, կառավարութեան ընթացքը կարգաւորելով, առուտուրն ու նաւագնացութիւնն այլ եւ այլ միջոցներով դիւրինցընելով ու յառաջացընելով, նա եւ կղզւոյն վրայ կարգաւորեալ ճամբաներ ու քառասուն եւ երեք հատ կամուրջներ շինել տալով։ Ի վերայ այսր ամենայնի Սիկիլիացիք տէրութեան վրայ գոհ չէին. որովհետեւ թագաւորական տուրքերը չափազանցութեամբ աւելցան, այս տուրքերէն զատ ալ ուրիշ շատ միլիոններ, զորոնք կղզեցիք իրենց առուտուրովը կը վաստըկէին, Նէապոլիս թագաւորական գանձը կ'երթային։ Թէպէտ եւ սահմանուած էր՝ որ Սիկիլիա կղզին Նէապոլսոյ ցամաք երկրին կառավարութենէն զատուած առ-

մանք գնաց։ Ինք հոն հասածին պէս՝ իր զօրաց տէլլա Դոռրէ հրամանատարը Նովարա քաղաքին քովերը հաւատարիմ գնդերը կարգի դրաւ, որոնց հետ եկան միացան Աւստրիայէն խրկուած օգնական զօրքերը Պուպնա սպարապետին հրամանին տակ։ Թէև որ սահմանադրականք Աւստրիայի զօրաց հասնելէն առաջ՝ Կարոլոս Ալբերտին գունդերուն հետ զարնուած ըլլային, գուցէ կրնային յաղթող ըլլալ. բայց յուսալով ու ջանալով տէլլա Դոռրէ սպարապետան իրենց կողմը վաստըկելու, կռիւն ուշացուցին։ Եւ երբ որ (Ապր. 8.) պատերազմն սկսաւ, Աւստրիացիք արդէն Կարոլոս Ալբերտին զօրացը հետ միացած ըլլալով, մէկ օրուան կռուոյ մէջ այնպէս յաղթեցան, որ բոլոր ուժերնին ու ազդեցութիւննին կորսնցընելով՝ Սարդինիա ալ անոնց կողմնակցութեան հնարքներէն ազատեցաւ։ Պատերազմին երկրորդ օրը՝ Դուրին, երրորդ օրն ալ՝ Աղեքսանդրիայի հզօր բերդը՝ որ սահմանադրականաց մէկ հաստիկ ապաստանն էր, առանց կռուոյ թագաւորականաց ձեռքն անցան։ Այնպէս Գենուա ալ առանց ընդդիմութեան յանձնուեցաւ. իսկ Սաւոյա յեղափոխութեան ամէնեւին մասնակից եղած չըլլալով, տէրութեան ամէն կողմը յեղափոխութիւնը կամ անոր կռիւները վերջացան. բայց այսչափ քիչ ատենուան, այսինքն հինգ օրուան մէջ յեղափոխականք տէրութեան գանձը բոլորովին պարպած էին, 16 միլիոն ֆրանգ անկից յափշտակելով։ Կռիւը լմննալէն ետքը Պուպնա սպարապետան աւստրիացի օգնական զօրքով (Ապր. 12.) յաղթանակաւ Դուրին մտաւ, ուր քաղաքին արքեպիսկոպոսը գլխաւոր քաղաքացիներուն հետ զանիկայ դիմաւորելու եկաւ քաղաքին բանալիքներն իրեն մատուցանելով։ Անկից ետքը Կարոլոս Ֆելիքս Թագաւորն ալ

Մոտենայէն եկաւ իր գահը նստաւ ու յանցաւորնե-
րուն, հասարակ զինուորաց ու քաղաքացիներուն ընդ-
հանուր թողութիւն հրատարակեց. միայն պաշտօնա-
կալներն ու ապստամբաց գլխաւորները խստիւ պատ-
ժուեցան:

Սարդինիայի մէջ Գարպոնարիներուն պատիժն ու
հալածումն այսպէս թեթեւ ու կարճ եղաւ: Բայց Նէ-
ապոլսոյ տէրութեան մէջ շատ աւելի խիստ կերպով
պատժուեցան. եւ որովհետեւ անոնք երկրին ամէն կող-
մը տարածուած ու իրենց դրդութիւնները բանեցու-
ցած էին, անոր համար տէրութիւնն ալ իր խստու-
թիւնն ամէն քաղաքներու եւ գաւառներու մէջ ու
ամէն կարգի մարդկան վրայ առանց խնայելու բանե-
ցուց: Ալ եւ այլ տեղեր չորս մասնաւոր քննու-
թեան ատեաններ դրուեցան, ու ամէն դի յան-
ցաւոր գտնուողները, կամ Գարպոնարիա ընկերութեան
անդամ ու բաժանորդ ըլլողները, — թագաւորական
պաշտօնատէրներ, դատախազականներ, մատենագիրներ,
եկեղեցականներ, եւ այլն — բռնուեցան ու պատ-
ժուեցան: Տասն'ութը գունդ ոտանաւոր զօրաց ու հինգ
գունդ ձիաւորաց զինուորութենէ արձակուեցան ու
անոնց տեղ նոր զօրք դրուեցաւ: Քանի մը հրապարա-
կական դպրոցներ բոլորովին գոցուեցան: Տէրութիւնն
այս ամէն խիստ միջոցներն առանց արգելքի բանեցընե-
լու համար Աւստրիայի օգնական զօրքը քանի մը տարի
իր երկրին մէջ պահեց. որոնք յամի 1826 Սիկիլիա
կղզիէն ու յաջորդ տարին Նէապոլսոյ ցամաքէն իրենց
երկիրը դարձան. ամէն տեղ իրենց քաջութեան ու զի-
նուորական կարգապահութեան համար բոլոր երկրին
բնակչաց շնորհակալութիւնն ու գովեստներն ընդու-
նելով:

Ինչպէս եւ Սարդինիայի մէջ, որն որ Լոմբարտիայի սահմանակից էր, այսպիսի խռովութիւններ ու յեղափոխական խառնակութիւններ եղած էին, սակայն՝ ինչպէս յառաջ յիշեցինք՝ Լոմբարտեան - Վենետական թագաւորութեան մէջ յայտնի յեղափոխական փորձեր չեղան, միայն գաղտնի ընկերութիւններ այլ եւ այլ ծածուկ հնարքներ բանեցընելով, հոն ալ ապստամբութեան դրօշը բանալու եւ նոր յեղափոխութիւն մը հանելու կը ջանային։ Բայց ոստիկանութիւնն իր հսկողութիւնն ամէն դի աղէկ պահելով, վերջապէս (1821) գաղտնի ընկերութիւն մը գտաւ. բայց ինք վրայ հասնելէն առաջ անոր անդամներն ատեն ու հնարք գտնելով՝ այլ եւ այլ կողմեր փախան. միայն մէկ քանին ոստիկանութեան ձեռքն անցաւ։ Ասոնց մէջ անուանի են Գոնֆալոնիէրի ու Սիլուիոյ Բելլիքօյ։ Գոնֆալոնիէրին գաղտնի ընկերութեան գլուխներուն մէկն ըլլալուն՝ տէրութիւնն ամէն կերպով աշխատեցաւ որ իրմէն քանի մը կարեւոր գաղտնիք իմանայ, առանձինն (Կարոլոս Ալբերտոս) Գարինեանի իշխանին վրայ, որն որ յառաջ Գարպոնարիա ընկերութեան անդամ եղած էր, ինչպէս ըսինք, որպէս զի ամէն բանն իմանալով, թէ որ նոյն իշխանը յանցաւոր ցուցուելու ըլլայ, Սարդինիայի գահին յաջորդութենէն դուրս ձգուի. բայց Գոնֆալոնիէրիէն գաղտնիք մը իմանալը կարելի չեղաւ։ — Իսկ Սիլուիոյ Բելլիքօյ, որն որ հեզաբարոյ ու բարեպաշտ բանաստեղծ մըն էր, ինչպէս մեր ազգին մէջ ալ իր գրոցը թարգմանութեամբը ծանուցուած է, միայն այլ եւ այլ բանաստեղծական գրուածներով Իտալիայի ազատութեան ու անկախութեան վրայ ունեցած արտաքոյ կարգի եռանդը յայտնի ըրած էր։ Ասիկայ իր վերոյիշեալ ընկերովը խիստ բանտարգելութեամբ տառապե-

լէն ետքը, մահուան դատապարտուեցաւ. բայց ետքէն մահուան պատիժը մշտնջենաւոր բանտարգելութեան փոխուելով, առաջ Վենետիկի մէջ ու ետքը Մորաւիայի Պռիւն քաղքին քովի բերդը բանտ դրուեցաւ։ Հոն, ինչպէս կը պատմուի, բարի հանգամանքով ու գովելի համբերութեամբ տասը տարիի չափ ապրեցաւ ու 1830ին իր ազատութիւնն ընդունեցաւ։

Ինչպէս վերը յիշեցինք՝ Նէապոլայ կամ Սիկիլիայի ու Սարդինայի յեղափոխական խռովութեանց ատենը Հռոմայի տէրութեան մէջ յայտնի ու նշանաւոր խռովութիւն մը չէր եղած։ Յիրաւի նոյն յեղափոխական շփոթութիւնները (1820) սկսելէն քանի մը տարի առաջ Հռոմայի երկրին Մաչերադա քաղքին մէջ ապստամբութիւն մը եղած էր. բայց ան ալ շուտով զսպուած էր ու մեծ հետեւութիւն մը չէր ունեցած։ Պիոս Է. քահանայապետը գաղղիական աքսորանքէն (1814) դառնալէն ետքը, մանաւանդ Նաբոլէոն Ա. իշխանութենէ իյնալէն, Իտալիա Գաղղիացւոց լուծէն ազատելէն ու Վիէննայի արքայաժողովը, ինչպէս յառաջագոյն պատմեցինք, Իտալիայի այլ եւ այլ տէրութեանց հին իշխանութիւնները նորոգելէն ու հաստատելէն ետքը, եկեղեցւոյ տէրութեան խախտած կարգերը հաստատելու փոյթ տարաւ, Գաղղիացւոց սահմանած կարգերը վերցընելէն ու յեղափոխական գաղափարներով լցուած եւ կրօնի բարեկամ չըլլող աշխարհական պաշտօնատէրները հեռացընելէն ետքը, իրեն հաւատարիմ մնացող հպատակներուն բաղձանացը համաձայն աշխարհական կառավարութեան պաշտօնները կարգաւորեց, բոլոր երկիրը տասն'ութը նահանգներու կամ կուսակալութիւններու (Delegazioni) բաժնեց ու (1816) խօսք տուաւ կառավարութեան հին կարգերուն մէջ կարեւոր ու կարելի եղող փոփոխու-

թիւններն ընելու ։ Աս խստամբան գործադրութիւնը այլ եւ այլ դժուարութեանց հանդիպելով՝ չկատարուեցաւ ։ Աս քահանայապետը խորին ծերութեամբ (1823) վախճանելէն ետքը՝ Լեւոն ԺԲ. իրեն յաջորդելով՝ թէպէտ եւ աշխարհականաց քանի մը դատաստանական առաւելութիւն տուաւ, բայց եկեղեցականաց իշխանութիւնն ու ազդեցութիւնը թէ ատեաններու եւ թէ դպրոցներու մէջ աւելի եւս ընդարձակեց ու հաստատեց ։

Իսել մը ատենէ ի վեր Հռոմայ տէրութեան մէջ մեծ անհանգստութիւն ու հոգ կը պատճառէին բազմաթիւ խռովարար աւազակներ (briganti), որոնց գլխաւոր տեղերն էին Հռոմայ երկրին մէջ Ապենինեան լեռանց, Պոնտինեան ճահիճներուն եւ Ալպանոյ ու Դուսգոլոյ լեռներուն մէջի երկիրները ։ Աս տեղերը 1816էն ի վեր Գոլոննա ազգատոհմին ժառանգական կալուածներն ըլլալով, նոյնին իշխանները Ուրսինի ազգատոհմին եւ Հռոմայի քահանայապետներուն դէմ ունեցած թշնամութիւններն ու ատելութիւններն ի գործ դնելու համար աս աւազակները զինելով կը զօրացընէին ու կը գործածէին ։ Գաղղիացւոց ատենէն Իտալիայի մէջ գտնուած ատենները աս խռովարարները քիչ մը զսպուած էին . բայց քահանայապետական իշխանութիւնը նորէն հաստատուելէն ետքը՝ գլուխ վերցուցին ու գրեթէ առաջուընէ աւելի նեղութիւն կու տային, անանկ որ Հռոմայի ու Նէապոլսոյ մէջ ըլլող ճամբաներն ու գեղերն ամենեւին ապահովութիւն մը չունէին ։ Պիոս Է.ին յաջողակ պաշտօնեան Գոնսալուի կարդինալը շատ աշխատեցաւ ասոնք ջնջելու եւ Նէապոլսոյ տէրութեան հետ աս բանիս մէջ դաշնակցելով՝ բաւ մասին իր ջանքին պտուղը ցըցուց ։ Սակայն նոյն աւազակները բոլորովին չջնջուեցան ու Լեւոն ԺԲ. քահանայապետին բոլոր իշխանութեան ատենը

դեռ երբեմն երբեմն տէրութեան մեծ հող ու նեղութիւն կը պատճառէին։

Ասոնցմէ զատ Գարպոնարիա ընկերութիւնը Իտալիոյ մէջ միշտ հաստատ մնացած ըլլալով, թէպէտ եւ յայտնի խռովութիւններ հանելէն կը զգուշանար. բայց ամէն մարդ գիտէր՝ որ նոյնն իր ծածուկ հնարքները բանեցընելու զբաղած է՝ Իտալիոյ ամէն տէրութիւնները, մանաւանդ Աւստրիոյ իտալական տէրութիւնը կործանելու համար։ Այս ընկերութեան ծածուկ ժողովարանը կամ միութեան կեդրոնը՝ աս տարիները Հռոմայի երկրին մէջ էր, որովհետեւ ստորին ու վերին Իտալիոյ տէրութեանց մէջ 1822էն վեր նոյնին դէմ բանեցուած զգուշութիւններն ու միջոցները՝ ան տեղերն անոր ազդեցութիւնը շատ տկարացուցած, մանաւանդ թէ բոլորովին անզօր ըրած էին։ Նա եւ Հռոմայի երկրին մէջ Ռաւեննայի կուսակալը Կարդինալ Ռիվարոլա (1815. Օգոստ. 31.) 500էն աւելի Գարպոնարիներ ձեռք անցընելով՝ աւելի կամ նուազ խիստ պատիժներու դատապարտած էր։ Սակայն ասով ընկերութիւնը բոլորովին անզօր ընելու կամ ջնջելու ճամբայ մը չէր բացուած։

Լեւոն ԺԲ. (1829. Մայ. 31.) մեռնելէն ետքը՝ իրեն յաջորդեց Պիոս Ը. որուն քահանայապետութեան ատենը շատ կարճ ըլլալով՝ քահանայապետական երկրին հանդստեան համար սկսած քանի մը օգտակար կարգաւորութիւններն անկատար մնացին։ Նա եւ ասդին անդին խլրտող խռովարարներուն դէմ զօրաւոր դարման մը չկրցաւ գտնել, մանաւանդ թէ իր մեռած ատենը (1830. Նոյ. 30.) երկրին մէջ, ինչպէս Իտալիոյ ուրիշ կողմերն ալ յեղափոխական շարժմունքը յայտնի երեւալու սկսած էին։ Օրէ օր չարագուշակ դէպքերը յաճախելով՝ մինչեւ նոր քահանայապետին ընտրութեան ա-

տենը (1831. փետր. 2.) յեղափոխական խմորումք վերջին աստիճանի հասաւ ու վերջապէս սաստկութեամբ դուրս ելաւ, ինչպէս ըստ կարգի պիտ՚ որ պատմենք։

Իտալիայի միւս տէրութիւնները՝ 1821ին յեղափոխական շփոթութիւններն ու պատերազմները վերջանալէն ետքը՝ արտաքին խաղաղութեան ու հանդարտութեան մէջ էին։ — Աւստրիայի կայսեր իշխանութեան տակ ըլլող Լոմբարտեան-Վենետական թագաւորութեան երկիրներն ըստ տնտեսական եւ ուսումնական հանգամանաց կը ծաղկէին. նա եւ ըստ քաղաքային կարգաց նոյն կայսերութեան հսկող զգուշութեան ու ջանիցը զօրութեամբ յաջողակի կը կառավարուէին։ — Սարդինիայի տէրութիւնը ետքի (1821) խռովութեանց ատենն ու անկից առաջ կրած վնասները կամաց կամաց բժշկելու եւ ըստ կարի յաջողութեան հանգամանաց մէջ մտնելու կը ջանար։ Կարոլոս Փելիքս թագաւորը (1831. Ապր. 27.) առանց արու զաւկի մեռնելով եւ Սարդինիայի թագաւորական ցեղին գլխաւոր կամ ուղիղ գծին մէջ անոր յաջորդ չգտնուելով, թագաւորութիւնը կողմնական գծին, այսինքն Գարինեան ազգատոհմին անցաւ, որմէ էր Կարոլոս Ալբերտոս (ծնեալ՝ 1798.) որ եւ ըստ կարգի (1831. Ապր. 27.) Սարդինիայի գահը նստաւ*։

* Սարդինիայի թագաւորական ցեղը, որն որ Սաւոյայի իշխանական ազգատոհմէն յառաջ եկած է, 1630էն ետքը երկու գծի բաժնուեցաւ, առաջինն էր թագաւորական գիծը, որն որ Կարոլոս Էմմանուէլ Ա.էն սկսաւ. իսկ երկրորդն էր Սաւոյական Գարինեան գիծը, որուն սկիզբն եղաւ նոյն Կար. Էմմանուէլին կրտսեր եղբօրը Փրանկիսկոս Թովմաս Գարինեանի իշխանին մէկ որդիէն։ Աս Սաւոյական Գարինեան ազգատոհմին վերջին իշխանը կամ դուքսը Կարոլոս Էմմանուէլ՝ Կարոլոս Ալբերտոսին հայրը՝ 1810ին մեռաւ ու նոյնէն զատ ուրիշ արու զաւակ չունենալով՝ Կար. Ալբերտոսին Սարդինիայի գահն ելլելովը՝ երկու գիծը՝ ուստի եւ իշխանութիւնը թագաւորական ցեղին վրայ միացաւ։

Այս իշխանը՝ ինչպէս յառաջագոյն գրեցինք՝ իշխանութեան հասնելէն առաջ յեղափոխականաց, առանձինն՝ Գարպոնարիններուն հետ գրեթէ մի սիրտ մի հոգի եղած էր, բայց իշխանութեան հասնելէն ետքը չէ թէ միայն անոնցմէ բաժնուած էր, հապա անոնց դէմ իր տէրութիւնն ապահովցընելու համար ամէն ջանքն ու հնարքը կը բանեցընէր։ Ի սկզբան երբ որ թագաւորական գահն ելաւ՝ ահու դողու մէջ էր՝ որ Աւստրիայի տէրութիւնը իր յառաջուան ընթացքին համար իրեն հետ բարեկամութեամբ չվարուի, նաեւ շատ կը վախնար՝ որ յեղափոխականք ալ իրեն դէմ գաղտուկ հնարքներ բանեցընեն։ Բայց իրերն իրեն վախցածին պէս չեղան։ Աւստրիա իր հին բարեկամութիւնը Սարդինիայի տէրութեան հետ հաստատուն պահեց. իսկ յեղափոխականք ձայն մը չհանեցին, յուսալով որ քիչ մը ատեն ետքը զինքը նորէն իրենց կողմը կը շահին։ Ուստի եւ Կար. Ալբերտոս հանդարտութեամբ թագաւորելու սկսելով՝ իր տէրութիւնն ըստ պատշաճի կարգի դնելու եւ պայծառացընելու մտադիր կ'ըլլար։ Երկրին դրամական վիճակը լաւագունացընելը, քաղաքային տեսչութեան կարգաւորեալ ընթացք մը հոգալը, ցամաքային զօրաց ու ծովական զօրութեան կամ նաւատորմիղին նոր կարգերով լաւագոյն հանգամանաց մէջ մտնելը, ասոնցմէ ի զատ Գենուայի վաճառականութեան կարգաւորուիլն ու ծաղկիլը եւ Նաբոլէոնին օրինագրոց (code) համեմատ օրինաց գիրք մը յօրինելն եւ ուրիշ ասոնց նման կարեւոր բարեկարգութիւններ ընելը Կար. Ալբերտոսին թագաւորութեան առջի տարիներուն գործքերն եղան։ Նա եւ ուսմանց եւ ուսումնարանաց համար՝ առաւելապէս Աւստրիական Իտալիայի կամ Լոմբարտիայի մէջ դրուած կարգերուն համեմատ՝ կարեւոր ու օգտակար կարգեր

սահմանեց։ Առանձին խնամք ցուցուց Սարդինիա կղզւոյն վրայ, որն որ մինչեւ ան ատեն գրեթէ բոլորովին երեսէ ձգուած էր, թէ անոր մշակական հանգամանքը լաւագոյնացընելու միջոցներն ու թէ քաղաքային կառավարութեան կարգերը հաստատուն պայմաններով սահմանուեցան. կղզւոյն մէջ նոր ճամբաներ շինուեցան ու ցամաք երկրին հետ կարգաւորեալ կապակցութեան մէջ մնալուն համար հարկաւոր եղող միջոցներն ի գործ դրուեցան։ — Կար. Ալբերտոս արտաքին տէրութեանց հետ բարեկամութիւնն ու խաղաղութիւնը պահելու ջանք ունէր. բայց իր թագաւորութեան անկախութիւնը հաստատ պահելու համար արտաքոյ կարգի նախանձախնդրութեամբ հետամուտ ըլլալով՝ շատ անգամ մէկ կամ՝ մէկալ տէրութեան հետ այլ եւ այլ խնդիրներ ունենալու պատճառ կու տար։ Առանձինն Գաղղիայի հետ քանի մը հեղ անհաճոյ վէճեր ունեցաւ։ Նա եւ Սպանիայի (Քրիստինէ թագուհւոյն) տէրութիւնն անոր վրայ գոհ չէր, որովհետեւ Տոն Կարլոս իշխանին կողմն յառաջ երթալուն եւ անոր ջանիցը յաջողելուն համար Սարդինիացիք ու Կար. Ալբերտոս դրամով եւ ուրիշ օգնութիւններով ձեռնտու ըլլալու կը ջանային։

Նէապոլսոյ Փերդինանդոս Ա. (Դ.) թագաւորը (1825. Յունու. 3.) մեռնելով, իրեն յաջորդեց իր որդին Փրանկիսկոս Ա. որն որ իր հօրը կենդանութեան ատենէն կառավարութեան գործքերուն մէջ մտած ըլլալով, վերջի (1821) խռովութիւնները Աւստրիայի օգնութեամբը հանդարտելէն ետքը՝ հին կարգերը յառաջ տանելով՝ քանի մը տարի թագաւորեց ու (1830. Նոյ. 7.) մեռաւ։ Իր աթոռը նստաւ իրեն որդին Փերդինանդոս Բ. (ծնեալ՝ 1810. Յունու. 12.), որն որ իր կառավարութիւնը սկսաւ՝ քանի մը տարիէ ի վեր տէրութեան մէջ գտնուող քա-

ղաքային յանցաւորներուն ընդհանուր թողութիւն հրատարակելով, ու տէրութեան հին վէրքերը բժշկելու համար ըստ կարի օգտակար նորոգութիւններ ընելով։ Նա եւ ի սկզբան յօժարութիւն ու պատրաստականութիւն կը ցուցընէր սահմանադրական կառավարութեան կերպերը տէրութեան մէջ խօթելու. բայց այս յօժարութեան անգործունեայ ըլլալը քիչ ատենէն յայտնի երեւցաւ։ Տէրութեան խորհրդոյն գահերէցը (1834) յայտարարութիւն մը հանեց, որով կը ծանուցանէր՝ որ թագաւորը հաստատութեամբ միտքը դրած է՝ երկրին հին միապետական կարգին ու օրինաց միշտ հաւատարիմ մնալու, եւ զանոնք փոխելու համար եղած որպիսի՛ եւ իցէ խորհուրդն ու առաջարկութիւնը հաստատութեամբ կը մերժէ։ Աս բանս թէ Նէապոլսոյ կամ ցամաք երկրին ու թէ Սիկիլիա կղզւոյն կառավարութեան համար կ՚իմացուէր։

Աս Սիկիլիա կղզւոյն յառաջադիմութեան համար թէպէտ եւ թագաւորը մեծ խնամք կը ցուցընէր, նոր դատաստանական իրաւունքներ, վաճառականաց առանձին դատաստանարաններ ու փաստաբաններու ժողովներ սահմանելով, կառավարութեան ընթացքը կարգաւորելով, առուտուրն ու նաւագնացութիւնն այլ եւ այլ միջոցներով դիւրինցընելով ու յառաջացընելով, նա եւ կղզւոյն վրայ կարգաւորեալ ճամբաներ ու քառասուն եւ երեք հատ կամուրջներ շինել տալով։ Ի վերայ այսր ամենայնի Սիկիլիացիք տէրութեան վրայ գոհ չէին. որովհետեւ թագաւորական տուրքերը չափազանցութեամբ աւելցան, այս տուրքերէն զատ ալ ուրիշ շատ միլիոններ, զորոնք կղզեցիք իրենց առուտուրովը կը վաստըկէին, Նէապոլիս թագաւորական գանձը կ՚երթային։ Թէպէտ եւ սահմանուած էր՝ որ Սիկիլիա կղզին Նէապոլսոյ ցամաք երկրին կառավարութենէն զատուած առ-

անձին օրէնքներով կառավարուի. սակայն իրօք այս օրէնքներուն ամենեւին նկատում մը չէր ըլլար: Տէրութեան գլխաւոր ու մեծ պաշտօնէից արծաթսիրութիւնն ու անկարգ գործելը ժողովրդեան սիրտը դառնացընելով՝ սաստիկ տրտունջներու պատճառ կու տար: Եւ թէպէտ թագաւորը գաւառներու մէջ ըրած ճամբորդութեանց ատենը ժողովրդեան ընդհանուր տրտունջները լսելով ու անոնց իրաւացի ըլլալուն վրայ համոզուելով, չարիքը խափանելու կը յօժարէր ու եռանդ կը ցուցընէր. սակայն մեծ պաշտօնեաները՝ ամէն վախն ու սպառնալիքը բանի տեղ չդնելով՝ անհնարին դժուարութիւններ կը հանէին ու երիտասարդ թագաւորը կ՚արգելէին իր ուզածն ու իրաւացի դատածն ի գործ դնելու: Այսպէսով խեղճ թագաւորը ժողովրդեան ատելի կ՚ըլլար, իսկ անկարգութիւնք նոյն պաշտօնէից չարաչար վարմամբը կը շատնային ու ժողովրդեան տրտունջն ու տժգոհութիւնը օրէ օր կը սաստկանար:

Ինչպէս Սարդինիա ու Նէապոլիս՝ այնպէս եւ Իտալիայի մէկալ տէրութիւններն ալ ատենները (1821—1830) ամէն կերպով կը ջանային Գարպոնարիներն եւ ուրիշ ծածուկ ընկերութիւնները զսպելու, ջնջելու եւ անոնց հնարքներն անգործ ընելու. սակայն ասոնք իրենց վնասակար ու յեղափոխական խորհուրդները շարունակելու եւ տարածելու միշտ ճամբայ ու միջոցներ կը գտնէին: Դեռ ասոնք որոշ ու իրենց մէջ ընդհանուր ընդունուած նպատակ մը չսահմանած ու յայտնի դրօշ բանալու տեղն ու ժամանակը չորոշած, (1830. Յուլ.) Գաղղիայի մէջ Յուլիսի յեղափոխութիւնը փրթաւ: Երբ որ հոն ամէն բան յաջողեցաւ լմնցաւ ու նոր սահմանադրութիւնը հաստատուեցաւ, Իտալիայի յեղափոխականներն այլ եւ այլ կողմնակցութեանց կամ կարծեաց բաժնուելով՝ ոմանք

կ՚ուզէին Սպանիական (1812) սահմանադրութեան համեմատ, իսկ ուրիշները Գաղղիայի Նոր սահմանադրութեան համաձայն բոլոր Իտալիայի մէջ ընդհանուր կառավարութիւն մը հաստատել. առջինները կ՚ուզէին որ Իտալիա դաշնակցական կամ դաշնակցաց կառավարութիւն ունենայ, իսկ վերջիններուն փափաքն ու ջանքն էր՝ բոլոր Իտալիա մի միայն տէրութիւն կամ թագաւորութիւն ընել: Թէպէտ այլ եւ այլ կողմնակցութիւնք՝ կազմուելու Նոր կառավարութեան նկատմամբ այսպէս այլ եւ այլ կարծիքներու բաժնուած էին, սակայն ամէնքն ալ մէկ բանի մէջ միաբան էին՝ թէ մինչեւ ան ատեն Իտալիայի մէջ եղած կարգերն ու կառավարութիւնները պէտք է վերջացընել, բոլորովին փոխել: Ասոնք տասնեակ խորհած ու աշխատած ատեննին՝ յոյսերնին բոլորովին Նոր Գաղղիայի վրայ դրած էին, ու ինչպէս ամէն ատեն՝ նոյնպէս հիմայ ալ իրենց գործոցը յաջողութիւնն անկից կը սպասէին: Եւ յիրաւի Յուլիսի յեղափոխութենէն ետքը ի սկզբան դեռ Գաղղիայի ժողովուրդը Նոր կառավարութեան վրայ մեծ ազդեցութիւն ունենալով՝ բոլոր ռամկապետականք Իտալացւոց օգնելու եւ ան տեղաց յեղափոխականներուն յառաջադիմութեան ձեռնտու ըլլալու յօժարութիւն կը ցուցընէին: Մանաւանդ թէ կերպով մը Նոր կառավարութիւնը ստիպել կ՚ուզէին որ Իտալացւոց ջանից յաջողելուն օգնէ. բայց կառավարութիւնն ու պաշտօնեաները Լուդովիկոս Փիլիպպոս թագաւորին բաղձանաց համաձայն յայտնի ըրին՝ որ Գաղղիայի տէրութիւնն անմիջամտութեան (օտար տէրութեանց ներքին կառավարութեան գործքերուն չխառնուելու) սկզբբը հաստատ պահել կ՚ուզէ: Սակայն ո՛չ աս յայտարարութիւնն ու ո՛չ Աւստրիայի կայսրութեան հզօր զէնքերուն Պոյի եզերքը պատրաստ կենալը Իտալիայի յեղափո-

խականներուն սիրտը լքուցին, Հապա Գաղղիայի ռամկապետականներէն յուսացուցիչ խոստումներ ընդունելով՝ յեղափոխութիւնը սկսելու եւ յաջողցընելու փորձերն սադին անդին ի գործ դրին։

Քահանայապետական երկրին Ռոմանեայի գաւառներուն մէջ 1831 տարւոյն սկիզբները (երբ որ դեռ նոր քահանայապետ չէր ընտրուած,) լուր տարածուեցաւ՝ որ Փրանկիսկոս Դ. Մոտենայի դուքսն Իտալիայի մէջ յեղափոխութեան բաղձացող ու ձեռնտու է։ Այսկայ կրնար ստոյգ լուր մը սեպուիլ, որովհետեւ նոյն դուքսն իր երկրին մէջ ու բոլորտիքը պատրաստուող յեղափոխական շարժմանց աւելի տեղեակ ըլլալու համար՝ ինք զինք յեղափոխականներուն նպաստաւոր ու բարեկամ կը ձեւացընէր ու Գարպոնարիներուն գաղտնի խորհուրդներն իմանալու համար անոնց կարծեկից կը ձեւանար։ Աւանձինն անոնց Կիւրոս Մենոդդի գլխաւորին, որն որ Մոտենայի ոստիկանութեան գլխաւոր պաշտօնեան էր, քիչ մը ատենէ ի վեր մեծ սէր կը ցուցընէր ու կ'օգնէր։ Բայց (1831, փետր. 3.) գիշերանց՝ երբ որ յեղափոխականաց գլխաւորներէն քառասուն հոգիի չափ նոյն պաշտօնէին տան մէջ ժողվուած խորհուրդ կ'ընէին, դուքսը յանկարծակի տունը զինուորներով պաշարել տուաւ. եւ թէպէտ յեղափոխականք քաջութեամբ դէմ կեցան, բայց թնդանօթներու գնդակները դուռները բացին, եւ մէջինները բռնուելով բանտ դրուելով՝ ամէն բան լմնցած կ'երեւար։

Երկրորդ օրը (փետր. 4.) Մոտենա լուր հասաւ՝ որ Պոլոնեայի մէջ ապստամբութիւնը սաստկութեամբ փրըթեր է ու յառաջ երթալով քովի տեղերն ալ մինչեւ Մոտենա եկած հասած է։ Եւ յիրաւի Պոլոնիայի մէջ յեղափոխականք ժողովուրդը ոտք հանելու փորձ մ'ընելով՝ սկսածնին յաջողցուցին, որովհետեւ հոն գտնուող

քահանայապետական զօրքը չէ թէ միայն ապստամբները զսպելու չաշխատեցան, հապա իրենց մեծ մասն անոնց հետ միացաւ, ու քահանայապետական նուիրակը կամ կուսակալը Գլարելլի հրովարտակ մը հանելու ստիպուեցաւ, որով աժամանակեայ կառավարութեան կամ վարչութեան մը դրուիլն ու ազգային զօրաց գնդերու կազմուիլը կը հաստատէր։ Ասոր վրայ ամէն հրապարակական շէնքերուն վրայէն քահանայապետական նշանները վար առնուեցան ու Իտալական երեքգունեան դրօշներ անկուեցան։ Ապստամբութիւնն օրէ օր յառաջ երթալով, չէ թէ միայն բոլոր քահանայապետական երկրին մէջ՝ հապա նաեւ դրացի պզտիկ տէրութիւններուն մէջ ալ տարածեցաւ, անանկ որ Մոտենայի դուքսն ու Պարմայի դքսուհին իրենց երկիրները թողուցին փախան։

Մինչեւ սա ապստամբութեան յայտնի դուրս ելլելու օրերուն մօտ դեռ քահանայապետական գահը նոր քահանայապետին ընտրութեան կը սպասէր։ Ամէն դիյերափոխութեան փրթելու ձայները պտըտած ատենը՝ կարդինալները նոր ընտրութեան համար իրենց գաղտնի ժողովքին (conclave) մէջ գումարուած՝ կը ջանային ժամանակին պարագայից պահանջածին համեմատ խոհական անձ մը գահը հանել։ Վերջապէս Հռոմայի մէջ պզտիկ ապստամբութիւն մը սկսելուն ձայնը տարածուած ատենը (1831, փետ. 2.) Կամալդուլեանց կարգին ընդհանուր առաջնորդ Մաւրոս Գաբբէլլարի կարդինալին քահանայապետ ընտրուիլն ու Գրիգոր ԺԶ. անուանիլը հրատարակուեցաւ։ Որովհետեւ դեռ յայտնի չէր թէ նոր քահանայապետն ինչ ընթացք պիտ'որ բռնէ, ինչ միջոցներ ձեռք պիտ'որ առնու խռովութիւնները զսպելու համար, անոր համար բոլոր երկրին մէջ մեծ ու պզտիկ պաշտօնատէրներն ապստամբներուն դէմ զօրաւոր միջոցներ չէին

բանեցընել: Ֆորլի քաղաքին մէջ յեղափոխականք քանի մը արիւնհեղութեան փորձեր ընելու սկսան. բայց ետքը քաղաքացիք անոնց հետ միաբանելով՝ կռիւները դադրեցան: Անգոնայի բերդին զինուորական հրամանատարը տեսնելով որ խել մը երիտասարդներու բազմութիւն ըստ մասին զինուորած՝ ըստ մասին ալ առանց զէնքի դէպ ի բերդը կը դիմեն, առանց դիմադրութիւն ընելու բերդն անոնց յանձնեց: Ուրիշ տեղեր զօրաց հրամանատարներն ապստամբաց գլուխն անցնելով՝ անոնց առաջնորդ կ՚ըլլային, իսկ քաղաքային պաշտօնատէրները կամ իրենց պաշտօնները թող տալով կը փախչէին եւ կամ ապստամբաց հետ միաբանելով՝ անոնց հրամանովը իրենց պաշտօններուն մէջ կը հաստատուէին: Միայն Ռիէդի քաղաքը քահանայապետական կառավարութեան հաւատարիմ մնալով՝ իր դռները գոցեց ու ամէն ճգամբ ապստամբներուն դէմ կենալու պատրաստուեցաւ: Բայց ապստամբներն ու յեղափոխականք այսպիսի փոքր հակառակութիւններէն չվախնալով, ուրիշ կողմանէ ալ իբր ապահով ըլլալով՝ որ Գաղղիայի կառավարութիւնն ու խորհրդանոցն անմիջամտութեան սկիզբը պաշտպանելուն՝ մեծ տէրութիւնները՝ մանաւանդ Աւստրիա Իտալիայի մէջ պիտ՚որ չկարենան իրենց զէնքն ու զօրութիւնը բանեցընել, իրենց յեղափոխական խորհուրդներն ու գործքերը յառաջ տանելու կ՚աշխատէին: Աս վախճանաւ (փետր. 26.) Պոլոնեայի մէջ մեծ ժողով մը գումարեցին, որն որ Հռոմայի տէրութեան այլ եւ այլ նահանգները մէկ իշխանութեան տակ դրաւ, օրէնսդիր, դատաստանական կամ դատողական ու գործադիր իշխանութիւններն իրարմէ բաժնեց, ամէն մէկուն զատ զատ պաշտօնատէրներ կարգեց, Վիչինի փաստաբանը պաշտօնէից գլուխ անուանեց: Աս ան Վիչինին է՝ որն որ (փետր. 3.) Հռոմայի տէրութեան

մէջ յեղափոխութիւնը քիչ մը յառաջ երթալէն ետքը հրատարակած էր՝ որ քահանայապետին աշխարհական իշխանութիւնն անկից ետքը ա՛լ բոլորովին դադրած է։

Յեղափոխականաց այսչափ ջանից ու համարձակ գործելուն դէմ դնելու Հռոմայի տէրութիւնն այնչափ քիչ զօրութիւն ու պատրաստութիւն ունէր ու այնպէս շփոթած էր՝ որ եթէ յեղափոխականք միաբանած ու արագ ընթացքով մը Հռոմայի վրայ յարձակած ըլլային, իրենց փորձը կրնար յաջողիլ ու քաղաքն իրենց ձեռքն իյնալ։ Գրիգոր ԺԶ. Նոր քահանայապետն ասոնք գիտնալով ու իր ունեցած զօրքովը յեղափոխութիւնը վերջացընելու կարող չըլլալը հասկընալով՝ Գաղղիայի ու առաւելապէս Աւստրիայի օգնութեան վրայ իր բոլոր յոյսը հաստատեց։ Գաղղիա թէպէտ եւ մէկ կողմանէ իր օգնութիւնն անով կը ցուցընէր՝ որ Հռոմայի տէրութեան յեղափոխականներուն պաշտպանութիւն չցուցընելէն ի զատ՝ անոնց պաշար խաւրելն ալ կ'արգելէր. բայց ուրիշ կողմանէ Աւստրիայի տէրութեան ալ ծանուցագիր տուաւ՝ որ թէպէտ Աւստրիայի կայսրը Մոտենայի ու Բարմայի իշխողներուն կրնայ օգնել իր ազգակիցներն ըլլալուն համար. սակայն Հռոմայի տէրութեան երկիրներուն մէջ չիկրնար զօրքով իր օգնութիւնը բանեցընել։ Սակայն Աւստրիայի կայսրն իր մեծանուն Մեդեռնիկ պաշտօնէին խորհրդեան համեմատ՝ աւելի քահանայապետական երկրին կարօտութեան միտ դնելով, նա եւ իր Իտալական գաւառներուն ապահովութիւնն ալ նկատելով, Գաղղիայի ազդարարութեան ու սպառնալեաց ականջ չդրաւ ու Իտալիայի մէջ ծնած յեղափոխութիւնը շուտով վերջացընելու փութաց։ Ուստի (փետր. 25.) 800 աւստրիայի զօրաց գունդ մը, որոնք Բիաչէնցայի բերդին պահպանութիւնը կ'ընէին, սկսան յառաջ քալել ու

Բարմայի առժամանակեայ (յեղափոխական) կառավարութեան՝ Ֆիրենցուոլայի քով ժողված սակաւաթիւ զօրաց վրայ հասաւ ու զանոնք ցրուեց: Յեղափոխականք՝ Իտալիայի այլ եւ այլ տէրութեանց, Մոտենայի, Բարմայի ու Հռոմէական գաւառներուն մէջ զատ զատ առանձնական կառավարութիւններու բաժնուած ու իրարմէ անկախ գործելու զբաղած ըլլալով, իւրաքանչիւր իր ապահովութեան միջոցները կը փնտռէր ու իրարու զօրքով օգնելու փոյթ չէին ունենար. որովհետեւ ամէնքն ալ կը կարծէին որ իրենց շահը, յառաջադիմութիւնն ու յաջողութիւնը՝ միայն անմիջամտութեան սկիզբը պահելով, այսինքն իրարու կառավարութեան գործքերուն չխառնուելով, կրնայ գլուխ ելլել: Աս սկզբան համեմատ՝ երբ որ Ցուքքի զօրապետը, որն որ Մոտենայի յեղափոխականաց զօրքերուն հրամանատարն էր, Աւստրիացւոց մօտենալն իմացաւ, եւ քաշուելով Հռոմայի երկրին սահմանը հասաւ ու իբրեւ բարեկամ կամ դաշնակից կ՚ուզէր ներս մտնել, անտեղաց (յեղափոխական) կառավարութիւնն իրեն յայտնի ըրաւ՝ որ իր զօրքը զէնքերնին յանձնելէն ետքը սահմանէն կրնան անցնիլ իրենց կողմը գալ: Ցուքքի ու իր զօրքն աս պայմանը յանձն չառնելով՝ երկու յեղափոխական կողմանց (Մոտենացւոց ու Հռոմայեցւոց) գունդերն երկու սահմանագլուխներու վրայ իրարմէ բաժնուած կը կենային: Բայց երբ որ Աւստրիացւոց զօրքերն սկսան իրենց մօտենալ, Հռոմայեցիք շուտ մը զՄոտենացիներն առանց պայմանի իրենց զէնքերովն ընդունեցան, իրենց գունդերուն հետ միացուցին ու Ցուքքի բոլոր յեղափոխականաց բանակին հրամանատար եղաւ, որուն մեծ մասն ազատական զինուորներ էին, քիչ մ՚ալ կանոնաւոր զօրք. ձիաւոր զօրք խիստ քիչ էր, իսկ թնդանօթ ամենեւին չունէին:

Աւստրիացւոց Պոլոնիա մօտեցած ատենը Ցուքքի մտածելով որ անոնց դէմ չիկրնար հոն յաջողութեամբ պատերազմիլ՝ դէպ ի Ռիմինի ետ քաշուեցաւ։ Աւստրիացիք (Մարտ 25.) 5000 ոտանաւոր ու 500 ձիաւոր զօրքով ու չորս թնդանօթով հոն հասան ու կռիւը սկսան, որն որ մինչեւ գիշեր տեւեց։ Իտալացւոց յառաջապահ զօրաց քաջութեամբը Ցուքքի ատեն վաստըկեցաւ կամաց կամաց դէպ Անքոնա ետ քաշուելու, ուր որ գլխաւոր պատերազմը սկսիլ կ'ուզէր։ Անքոնա չհասած՝ յեղափոխականք յաղթելու յոյս մը չունենալով՝ ժամանակեայ կառավարութիւնը՝ զՊէնվէնուտի կարգինալը, զորն որ Գրիգոր ԺԶ. ապստամբած նահանգները հաշտեցընելու համար Հռոմայէն իբրեւ իր գործակալը խաւրած էր ու ճամբան յեղափոխականք զինքը իբրեւ պատերազմի գերի բռնած կը պահէին, ստիպեցին իրենց հետ քանի մը պայմաններով դաշն դնել։ Պայմաններն ասոնք էին՝ որ իրենք զէնքերնին թողուն ու քահանայապետն իրենց ընդհանուր թողութիւն հրատարակէ եւ ամենէն աւելի յանցաւոր աեպուողներուն տէրութեան երկիրներէն դուրս ելլելու արգելք չդնէ։ Պէնվէնուտի կամայ ակամայ աս պայմաններն ընդունելով՝ դաշին ստորագրեց ու օտար երկիրներ երթալ ուզողներուն անցագիրները տուաւ։ Ասոր վրայ Անքոնայի բերդին հրամանատարը բերդէն ելաւ, յեղափոխականաց զօրքը զէնքերը թողուցին ու ցրուեցան, եւ Աւստրիայի զօրքն առանց կռուոյ ներս մտաւ։ Բայց որովհետեւ քահանայապետը գիտէր թէ բռնութեան տակ ըլլող ու լիակատար իշխանութիւն չունեցող անձէ մը բռնութեամբ առնուած խոստումն իր վրայ պարտաւորութիւն մը չիդներ, անոր համար վերոյգրեալ դաշը պահելու հոգ մը չըրաւ։ Ուստի եւ Աւստրիայի տէրութիւնն ալ ան դաշին ամենեւին միտ

ջնջելով՝ Պէնվէնուտիին անցագրովը նաւ մտնող յեղափոխականաց գլխաւորներուն ետեւէն պատերազմական նաւ մը խաւրեց ու զիրենք բռնեց Վենետիկի մէջ բանտարգել ըրաւ։ Քիչ մը ետքը օտար տէրութեանց հպատակ ըլլողներուն ազատութիւն տուաւ. իսկ իր Իտալական գաւառներուն բնակիչներէն՝ ապստամբաց գունդերուն մէջ խառնուողները, որոնց մէջն էր նա եւ Ցուքքի զօրապետը, երկայն բանտարկութեան դատապարտեց *։ Աւստրիայի զօրքը Մոտենայի ու Բարմայի դքսութիւններն ու քահանայապետական երկիրները յեղափոխականներէն մաքրելէն ետքը տեղերնին դարձան։

Թէպէտ եւ քահանայապետական երկրին մէջ յեղափոխութիւնն Աւստրիայի զինուքն այսպէս շուտով խափանեցաւ ու վերջացաւ. սակայն տէրութիւնները դիտնալով՝ որ նոյն երկրին մէջ կառավարութեան վրայ շատ տրտունջներ կային, իրենց դեսպաններուն ձեռքով պատշաճական մեծարանօք քահանայապետին խորհուրդ տուին՝ մինչեւ ան ատեն սովորական եղած կարգերուն նկատմամբ, մանաւանդ այլ եւ այլ ապստամբած ու հաւտարիմ մնացած նահանգներուն եւ նոյն իսկ մայրաքաղքին (Հռոմայի) մէջ քանի մը կարեւոր ու պատշաճական փոփոխութիւններ ընել, ու դատաստանական եւ քաղաքային տեսչութեան պաշտօններուն մէջ եկեղեցականներու հետ աշխարհական պաշտօնատէրներ ալ

* Աս տեղեններու Իտալիայի յեղափոխականաց գնդերուն մէջ էին Լուդովիկոս Նաբոլէոն Պոնաբարդէ՝ Գաղղիայի հիմակուան կայսրն ու իր երէց եղբայրը Նաբոլէոն Պոնաբարդէ (Նաբոլէոն Ա.ին Լուդովիկոս եղբօրն որդիքը), որոնք Իտալիայի ազատութեան համար յանձն առած էին պատերազմիլ։ Նաբոլէոն Պոնաբարդէ Աւստրիացւոց գնդերէն սպաննուեցաւ. իսկ Լուդ. Նաբոլէոն փախչելու հնարք գտնելով՝ իր կեանքն ապագայ կայսերութեան համար կրցաւ պահել։

դնել: Առանձինն յիշեցուցին՝ որ արդարութեան կամ դատաստանական գործքերու նկատմամբ ժողովրդեան մէջ եղած տրտունջները դադրեցընելու համար մէկ հատիկ միջոց է՝ Պիոս Է. քահանայապետին (1816) աս նիւթին վրայ ըրած խոստումն ի գործ դնելը:

Քահանայապետական կառավարութիւնը դեսպանաց տուած խորհուրդներուն միայն մէկ մասը կատարեց: Ամէն յանցաւորներու համար ընդհանուր թողութիւն հրատարակեց, միայն մէկ քանի գլխաւորները (Որիոլի, Մամիանի, Արմանտի, Գերրէդդի, Սերգանեանի, Վիչինի, եւ այլն,) դուրս հանելով. բայց նոյն իսկ արձակուած յանցաւորները մասնաւոր հսկողութեան տակ կը պահէր: Աշխարհականներու քանի մը երկրորդական պաշտօններ տրուեցան. ինչպէս, նահանգներու վրայ աշխարհականներ կուսակալ դրուեցան, բայց բուն կուսակալի (Legato) անուամբ չէ, հապա միայն փոխանակ կուսակալի (Prolegato) անուամբ, որոնք միայն առժամանակեայ կառավարներ ու իբր բուն կուսակալաց տեղակալները կը սեպուէին: Սահմանուեցաւ (1831. Յուլ. 5.) որ քաղաքներու մէջ քաղաքացւոց ժողովներ դրուին՝ ամէն մէկ նահանգին քաղաքային գործքերն ըստ օրինաց կարգի դնելու համար. բայց աս ժողովներուն գլխաւոր անդամները տէրութիւնը պիտ'որ անուանէր, որոնք ետքէն մնացած ժողովակիցները պիտ'որ ընտրէին, ու ասոնք ալ տէրութիւնը պիտ'որ ընդունէր ու հաստատէր: Աս ժողովներուն ամէն որոշումներն ու կարգաւորութիւնները գործադրելի ըլլալու համար՝ պէտք էր որ առաջ տէրութեան վճռովը հաստատուէին: Աս պատճառիս համար աս ժողովներուն մէջ քահանայապետական պաշտօնատէր մը պիտ'որ գտնուէր: Թէպէտ եւ ասոնք այսպէս սահմանուեցան. սակայն ոչ Հռոմի ու անոր մօտաւոր քաղաք-

ներուն մէջ եւ ո՛չ նահանգներուն մէջ իրօք կամ ինչպէս որ սահմանուած էր՝ հաստատուն ժողովներ գրուեցան։ Քահանայապետն այսպիսի կարգադրութիւններն եկեղեցւոյ տէրութեան միապետական կառավարութեան հոգւոյն համաձայն չսեպելով՝ ջանաց որ առանց անոնց տէրութեան մէջ խաղաղութիւնն ու բարեկարգութիւնը պահուի։

Ինչպէս աս բանս եկեղեցւոյ տէրութեան հպատակաց մէջ հրատարակուած ատենը՝ ամէնը շատ խռովեցան ու ասդին անդին գաւառաց մէջ դժգոհութեան նշաններ ու խռովութեան ցոյցեր ալ տեսնուելու սկսան։ Սակայն քահանայապետն իր որոշումներուն եւ հրամաններուն վրայ հաստատ կեցաւ. ու (1832. Յունու. 10.) Ալպանի կարդինալը, որ քահանայապետին արտաքոյ կարգի գործակալն էր, արտաքին տէրութեանց ծանուցագիր մը տուաւ, որուն մէջ կը ծանուցանէր՝ որ տէրութեան մէջ պատերազմները բոլորովին դադրած ըլլալով՝ քահանայապետական զօրքերը կը պատրաստուին ամէն կուսակալութեանց կամ նահանգներու մէջ խաղաղութեան կարգերը հաստատել ու խռովութեանց դէմ դնելու համար ամէն կարեւոր ըլլող խիստ միջոցները բանեցընել։ Աս կարգադրութեան գրեթէ ամէն տէրութիւնները հաւանելով, անոր գործադրութիւնը սկսաւ։ Սակայն ազատ կարգադրութեանց բաղձացող քաղաքներու մէջ խռովութիւն հանելու փորձերն աւելի կամ նուազ սաստկութեամբ սկսան ու խաղաղութիւնը նորէն տակնուվրայ ընելու կը սպառնային։ Քանի մը քաղաքներու մէջ խռովութիւնները չափէն աւելի զայրանալով՝ կռիւներ եղան ու արիւն ալ թափուեցաւ. ամէն տեղերէն աւելի Չեզենա քաղաքին մէջ կռիւն ու արիւնհեղութիւնը սաստիկ եղաւ։

Աս շփոթութիւններէն Աւստրիայի տէրութիւնը պատճառ առնելով՝ իր օգնութիւնն եկեղեցւոյ տէրութեան ցուցընելու փութաց. ուստի եւ (Յունու. 28.) իր զօրքը նորէն Ռոմանեա խոթեց ու խռովութիւնները վերջացընելու ձեռնտու եղաւ։ Հազիւ թէ Աւստրիացիք քահանայապետին երկիրը մտած էին, Գաղղիայի տէրութեան երեք պատերազմական նաւեր (փետր. 23.) եկան Անգոնայի առջեւ խարիսխ նետեցին, ու խել մը զօրք ցամաք ելլելով՝ բերդը մտան ու անոր պահպանութիւնն ընելու սկսան։ Աս բանս Լուդ. Փիլիպպոսին պաշտօնեաներն առանկ ընելու պատշաճ դատեցին, որպէս զի չկարծուի թէ Աւստրիայի տէրութեան Իտալիայի մէջ մինակ գործելու թող կու տան ու իրենք անոր վրայ ամենեւին հոգ չունին։ Իսկ քահանայապետը՝ Գաղղիայի կառավարութեան առանց իր հաւանութիւնը խնդրելու կամ առանց իրմէ հրաւիրուելու այսպէս ինքնիշխան իր երկիրը մտնելուն ու կարգաւորութիւններ ընելուն վրայ ի սկզբան շատ այլայլեցաւ ու (Մարտ 3 եւ 10.) յայտնի բողոք ալ ըրաւ. բայց ետքէն (Ապր. 15.) թոյլ տուաւ՝ որ ցորչափ Աւստրիայի զօրքը Ռոմանեայի մէջ կը մնան, Գաղղիացիք ալ Անգոնայի բերդին պահպանութիւնը շարունակեն։ Հոն մնացին Գաղղիացիք մինչեւ 1838. եւ նոյն տարի բերդն ու քաղաքը քահանայապետական զօրաց յանձնելով՝ երկրէն դուրս ելան։

Հռոմայի երկրին մէջ (1831, եւ այլն,) այսպիսի ընդհանուր ու մասնաւոր քաղաքային խռովութիւններ եղած ատենը Սարդինիայի մէջ ալ յեղափոխութեան բաղձացողներն այլ եւ այլ փորձերու ձեռք զարկին խռովութիւն հանելու եւ ընդհանուր ապստամբութեան դրօշը կանգնելով հոն ալ յեղափոխութիւնը սկսելու։ Բայց տէրութիւնն ատենին զինուորական խիստ միջոցներ բա-

նեցընելով՝ ծագելու չարեաց առջեւն առաւ: Սաւոյայի մէջ Իտալիայի ուրիշ կողմերէն, ինչպէս նաեւ Լեհաստանէն, Գերմանիայէն ու Գաղղիայէն փախչող յեղափոխականք ժողվուելով (1834.) երկիրը խռովելու սկսած էին. բայց հոն ալ տէրութեան զէնքերը վրայ հասնելով՝ քիչ մը արիւնհեղութենէ ետքը խաղաղութիւնը հաստատեցին: Յեղափոխականք նոյն ատեններն այսպէս ամէն դիաց զարնուելով ու յաղթուելով՝ հասկըցան որ ուզածնին կատարելու ժամանակը դեռ չէ հասած. ուստի նոյն ատեններէ սկսած՝ գաղտնի ընկերութիւն մը կազմուեցաւ, Երիտասարդ Իտալիա անուամբ, որուն սկզբնաւորողն ու գլուխն էր Յովսէփ Մածծինի Գենուացի երիտասարդը *: Այս ընկերութիւնը կամաց կամաց արմատանալով ու ճիւղաւորուելով՝ գրեթէ ամէն դի ծանօթացաւ, որովհետեւ իր նպատակն ու ինչ բանի համար աշխատիլը թերթեր տպելով կը հրատարակէր: Նոյն գրութեանց մէջ ամէն երիտասարդ Իտալացիներուն սիրտ կու տար ջանք ընելու որ զէնուք յեղափոխութիւն մը հանելու եւ Իտալական անուան պատիւը նորոգելու պատրաստուին. Գարպոնարիներուն հետ միանալով՝ Իտալի-

* Աս երիտասարդը տեսնելով՝ որ Կարոլոս Ալբերտոս Սարդինիայի գահը նստելէն ետքը՝ յառաջուան խորհուրդները թող տուած է ու յեղափոխականաց կամ Գարպոնարիներուն հետ թշնամութեամբ կը վարուի, անոր զօրաւոր խօսքերով թուղթ մը գրեց, որուն մէջ զինքը յայտնապէս ու ամենայն համարձակութեամբ կը յորդորէ՝ որ հասարակ թագաւորի մը պէս չկառավարէ, իրմէ առաջ եղող թագաւորներուն պէս վախով ու չափով Իտալիայի մէկ մասին վրայ տիրելով գոհ չըլլայ. հապա յիշելով իր երիտասարդութեան ատենը (Գարպոնարիներուն հետ ընկերացած ըլլալով) ունեցած խորհուրդներն ու եռանդը, գեղեցիկ Իտալիային ազատութեան համար ոտք ելլէ ու ջանայ զանիկայ միահեծան տէրութիւն մ՚ընելով՝ անոր ազատիչն անուանուիլ: Մէկ դի ըրէ զԱւստրիա, կ՚ըսէր, մէկ դի ձգէ Գաղ-

ան օտարականաց լծէն ազատէն: Գլխաւորապէս յայտնի կը ցուցնէր ընկերութիւնը՝ որ պէտք է բոլոր Իտալիա մի միայն հասարակապետութիւն ըլլալ, ազնուականաց առաւելութիւնները ջնջուիլ ու ընդհանուր (Իտալիայի) ժողովրդեան կամքն ու բաղձանքն ամէն բանէն վեր սեպուիլ: Կրօնի նկատմամբ ալ ընկերութեան որոշումն ու վճիռն աս էր՝ որ կաթողիկէ կրօնը հինցած ըլլալով՝ պէտք է զանիկայ փոխել ու անոր տեղն ուրիշ կրօն մը հաստատել: — Աս ընկերութեան ջանիցն ու հնարիցը պտուղը շատ տարիներ ու մինչեւ հիմայ ալ ուրիշ բան չեղաւ՝ բայց եթէ իրեն անդամ ըլլողներուն ատեն ատեն կառավարութեանց ձեռքն իյնալով՝ մահուամբ ու բանտարգելութեամբ պատժուիլը: Մի միայն իր հիմնիչն ու գլուխը Մածծինի ամէն ատեն ու գրեթէ ամէն տէրութեանց հնարքներուն դէմ ինք զինքն ապահովցընելու ճամբայ ու հնարք գտաւ ու կը գտնէ, եւ բոլոր Իտալիա միակ հասարակապետութիւն ընելու խորհուրդն ու ջանքը կը շարունակէ:

Աս ընկերութենէ զատ՝ բայց գրեթէ անոր հոգւովը՝ մասնաւոր անձինք մանաւանդ քանի մը մատենագիր-

ղեան, Իտալիայի հետ սերտ ու հաստատ դաշինին մէջ կեցիր. ազգին գլուխն անցիր ու քու դրօշիդ վրայ գրէ. Միութիւն, Ազատութիւն, Անկախութիւն: Ինք զինքդ վրէժխնդիր, ժողովրդեան իրաւանց թարգման ու բոլոր Իտալիայի նորոգիչը հրատարակէ: Ազատէ Իտալիան բարբարոսներուն լծէն: Եղիր Իտալիայի ազատութեան Նաբոլէոնը: Աս ու ասոր նման խօսքերէն ու նա եւ քանի մը սպառնալիքներէն ետքը թուղթն սանկ կը լմնցընէ. Թէ որ սանկ դուն չես ընէր, ուրիշները պիտ'որ ընեն ու առանց քեզի եւ քեզի դէմ պիտ'որ ընեն: Կար. Ալբերտոս ան ատեն աս ու ասոր նման յեղափոխական խորհուրդներու եւ խօսքերու դէմ իր թագաւորութիւնն հին օրինաց համաձայն եւ ուրիշ տէրութեանց, մանաւանդ Աւստրիայի հետ բարեկամական յարաբերութեանց մէջ պահելով՝ խոհեմութեամբ յառաջ կը վարէր:

ներ՝ Իտալիայի միութեան, ազատութեան ու անկախու-
թեան սէրը՝ ըստ կարի ծածուկ կամ վարպետական ոճով
մը յօրինուած գրութիւններով միայն՝ Իտալացւոց սրտին
մէջ բորբոքելու եւ վառուած պահելու անդադար կ'աշ-
խատէին: Այսպիսի գրուածներն ու ասանկ հնարքները,
որոնց վրայ ստորին ժողովուրդը խիստ քիչ կամ ոչինչ տե-
ղեկութիւն կրնայ ունենալ, միայն կարդացողներուն եւ
բարձրագոյն կարգի մարդկան վրայ ազդեցութիւն կ'ընէ-
ին ու անոնց ոգիները կը գրգռէին: Այսպիսի անձինք
մինչեւ 1848 տարին Իտալիայի այլ եւ այլ կողմերը քա-
նի մը փոքր փորձեր ըրին ժողովուրդներն ոտք հանելու եւ
յեղափոխութիւն մը սկսելու. բայց իրենց փորձերն անյա-
ջող վախճան ունեցան ու իրենք ալ տէրութեանց հսկող
զգուշութենէն չկրնալով պրծիլ՝ իրենց մահուամբը վարձ-
քերնին առին: Գրեթէ տարի մը չէր անցներ՝ որ Իտա-
լիայի մէկ կամ մէկալ տէրութիւնն իր մէջը ապստամբու-
թեան պատրաստութիւն կամ դաւակցութիւն մը գտնե-
լով, նոր ու խստագոյն կարգեր դնելու եւ մեծագոյն
զգուշութիւններ ընելու չպարտաւորէր: Վերը յիշուած՝
1834 տարւոյն Սաւոյական ապստամբութենէն, մինչեւ
1844 տարին Իտալիայի այլ եւ այլ տէրութեանց մէջ
իննսունուինն անձինք ապստամբութիւն հանելու գլուխ
ըլլալնուն համար մահուամբ պատժուեցան. իսկ ցւկա-
նաւերու կամ թիու ծառայութեան եւ ուրիշ ծանր
ու երկայն բանտարգելութեան եւ պատիժներու դա-
տապարտուողներուն թիւն ասկից շատ աւելի էր: Յա-
մի 1843ին Մուրադորի անուամբ երկու եղբարք Պո-
լոնեայի մէջ ապստամբութիւն մը հանեցին, որն որ
բոլոր Իտալիայի մէջ պիտ'որ տարածուէր, բայց տէ-
րութիւնը զօրաւոր միջոցներ բանեցընելով՝ չարիքը շու-
տով վերջացուց: Յամի 1844ին Պանտիերա անուամբ եր-

կու վենետիկցի եղբարք՝ Աւստրիայի ծովական զօրաց մէջէն փախչելով՝ ուրիշ խել մը Իտալացւոց հետ Գալապրիա անցան ու հոն ապստամբութիւն մը հանելու աշխատեցան. բայց շուտ մը բռնուելով՝ սպաննուեցան։ Տարի մը ետքը Նա եւ Հռոմայի երկրին մէջ այսպիսի ապստամբական փորձ մը փորձուեցաւ. այսինքն (1845. Սեպտ. 23.) քանի մը երդուեալք Ռիմինի քաղքին մէջ՝ ժողովուրդը հրապարակական պարահանդիսի պատրաստուած տեղը՝ մէկ տեղ գալով՝ ոստիկանութեան մէկ պաշտօնէին հետ դիտմամբ կամ առանց պատճառի վէճ մը սկսան, որ ետքէն կռուի դարձաւ ու ատիկայ քանի որ գնաց սաստկացաւ, մինչեւ կռուողներուն թիւը վայրկենէ վայրկեան շատնալով՝ խռովութիւնը մեծցաւ, զինուորներ վրայ հասան, եւ խռովարարները սկսան անոնց հետ կռուիլ. զինուորներէն քանի մը հոգի սպաննուեցան, իսկ մէկ մասն ալ ապստամբներուն հետ միանալով անոնց ձեռնտու կ՚ըլլային։ Թէպէտ եւ բանն աւանկ յաջող երթալով՝ Ռիմինի քաղաքն ապստամբներուն ձեռքը մնաց, բայց ուրիշ քաղաքները, որոնք յառաջագոյն խօսք տուած էին Ռիմինեցւոց հետ մի եւ նոյն ժամանակ ապստամբութեան դրօշը բանալու, խօսքերնին չբռնեցին ու հանդարտ կեցան. ուստի եւ մեծ կամ ընդհանուր խռովութիւն ու կռիւ մը չեղած կամ զինուորական գնդեր մէջ չմտած՝ Ռիմինի ալ ապստամբութիւնը դադրեցաւ. որովհետեւ գլխաւորները քաղաքը թողուցին, մէկ մասը Ս. Մարինոյի՝ մէկ մասն ալ Տոսկանայի երկիրը փախան։

Քիչ մը աւելի խորունկ ու հանդարտ մտածող Իտալացիք այսպիսի փորձերուն անպիտանութեան ու յաջող ելք չունենալուն վրայ համոզուած ըլլալով, կը կարծէին՝ որ Իտալիայի անկախութիւնն ու միութիւնը հաս-

տատելու կամ հիմնելու համար պէտք է Իտալիայի իշխողներուն մէկը բոլոր երկրին վրայ ընդհանուր միապետ կամ մէկ հասարակ թագաւոր դնել։ Աս բանիս համար ոմանք՝ Կար. Ալբերտոս Սարդինիայի թագաւորը, ոմանք՝ զՖրանչիսկոս Մոտենայի դուքսը, իսկ ոմանք Աւստրիայի կայսրը յարմար կը դատէին։ Նա եւ կը համարէին՝ որ Իտալիա հեղ մը այսպէս միահեծան տէրութիւն ըլլալէն ետքը՝ ուրիշ ամէն հանգամանքներն ետքէն դիւրութեամբ ու յաջողութեամբ կրնան կարգի դրուիլ։

Ուրիշ Իտալացիք՝ բոլոր երկրին անկախութեան ու ազատութեան համար Հռոմայի քահանայապետներուն հնուցմէ ի վեր ցուցըցած ջանքն ու զանիկայ օտարաց իշխանութենէ ազատ պահելու համար ըրած գործքերը յիշատակելով, աս խորհուրդը յառաջ տանիլ կ'ուզէին՝ որ Իտալիայի այլ եւ այլ տէրութիւններն իրարու հետ դաշնակցելով՝ բոլոր երկիրն իբր մէկ դաշնակցութիւն (confédération) կառավարեն. ու աս դաշնաւորներուն կամ դաշնակցեալ կառավարութեան՝ Հռոմայի քահանայապետն՝ իբրեւ Իտալիայի մէկ մասին աշխարհական իշխանը՝ գլուխ ըլլայ։ Աս վախճանիս համար Ճոպէրդի քահանան (1843) երկայն գրուածքով մը նոյն խորհուրդն ունեցողներուն դիտումը կը պարզէ։ Ինք նոյն կարծիքը պաշտպանելով կը դնէ՝ որ քահանայապետն Իտալիայի դաշնաւորաց կառավարութեան գլուխն ըլլալով՝ Իտալիայի անկախութիւնն ու Իտալացի ազգին յոյսերը կը կատարուին ու կը հաստատուին։ Իսկ Կար. Ալբերտոսին մեծամեծ գովեստներ տալով կը ցուցընէ՝ թէ պէտք է որ ինք սկիզբ ու միութեան եւ գործոց կեդրոն ըլլայ Իտալիա նորոգելու համար։ Ինչպէս Ճոպէրդի՝ նոյնպէս իր խորհուրդն ունեցողներն ասոնք մնացած ատեններին՝ ամենեւին չէին հոգար որ Աւստրիայի կայսրն ալ, որն որ Ի-

տալիայի իշխողներուն մէկն է, այսպիսի դաշնակցութեան մը կը հաւանի՞ ու անոր մէջ կը մտնէ՞ թէ չէ. ու թէ որ մտնելու ըլլայ՝ իր ոյժն ու ազդեցութիւնը բոլոր Իտալիայի անկախութիւնը վտանգի մէջ չի՞ձգեր։

Աս խորհուրդն ալ ոչինչ պտուղ կամ յաջողութիւն կրցաւ ու կրնար ունենալ, մանաւանդ որ Գրիգոր ԺԶ. քահանայապետը՝ (ուրիշ պատճառներէն զատ) աս խորհուրդին գործադրութեամբը քահանայապետին եկեղեցական կամ հոգեւոր իշխանութեան աշխարհական իշխանութեան հետ խառնուելուն ու վտանգուելուն վրայ ամենեւին չտարակուսելով՝ նոյն խորհուրդը սնուցանելու եւ յառաջ տանելու առիթ եւ յոյս չէր տար։ Նա եւ Իտալացւոց մէջէն շատերն ալ, որոնք քահանայապետին այսպիսի ազգային ազատութեան ու միութեան գլուխ ու յառաջացուցիչ ըլլալուն վրայ ամենեւին յոյս ու վստահութիւն մը չունէին, յայտնի ու համարձակ նոյն խորհուրդին կը հակառակէին ու գրով եւ խօսքով անոր ծիծաղելի մտածութիւն մ'ըլլալը կը քարոզէին։

Իտալիայի ազատութեան բաղձացողները, մանաւանդ Հռոմայի տէրութեան մէջ, իրենք զիրենք աս խորհուրդներուն եւ յոյսերուն տալով, եւ վերջապէս մ'ալ գլուխ վերցընելու ժամանակն եկած հասած կարծելով, 1846ին իրենց մեծ փորձը սկսելու կը պատրաստուէին, որն որ չէ թէ միայն բոլոր Իտալիայի՝ հապա նաեւ ընդհանուր Եւրոպայի համար շատ վնասակար հետեւութիւններ կրնար ունենալ։ Մէյ մ'ալ նոյն տարի՝ Գրիգոր ԺԶ. քահանայապետը, որուն կառավարութեան բոլոր վախճանը յեղափոխականաց ջանքը պարապի հանել էր, 15 տարի ու չորս ամիս քահանայապետական գահը նստելէն ետքը, (1846. Յունիս 2.) ջրգողութեան հիւանդութենէ մեռաւ։ Թէպէտ եւ ամէն ատեն՝ ժողո-

վարդները դրդռութեան մէջ գտնուած ժամանակը քահանայապետի մը մեռնիլն իրեն յաջորդ ընտրողներուն ծանր մտածութեանց ու մեծ զգուշութեան պատճառ կու տար. բայց աս հեղու Իտալիայի ազատութեան եռանդովը բորբոքած Իտալացիները՝ առաւելապէս Հռոմայի երկրին մէջ՝ ամէն ատեններէն աւելի վախ կու տային՝ Նոր քահանայապետին ընտրութեան ատենն արտաքոյ կարգի շփոթութիւններ ու անկարգութիւններ հանելու: Յայտնի իմացուած էր՝ որ քահանայապետական երկրին մէջ գտնուող ազատականք կամ յեղափոխականք կը բաղձային՝ որ Միգարա կարդինալը քահանայապետական գահը նստի: Ասոնք կը պատրաստուէին՝ որ կարդինալներն իրենց գաղտնի ժողովին (conclave) մէջ գումարուած ատենը՝ բոլոր ժողովրդեան աղաղակաւը նոյն Միգարա կարդինալը քահանայապետ անուանեն. ինչպէս միջին դարու մէջ քանի մը հեղ եղած է: Բայց գումարուած կարդինալներն աս անկարգ խորհուրդին կատարման ժամանակ թող չտալով՝ անսովոր շուտութեամբ քանի մը օրուան մէջ (Յունիս 16.) քահանայապետ ընտրեցին Յովհաննէս Մաստայի Ֆէրրէդդի կոմս կարդինալը (Ծն. 1792. Մայ. 13.), որն որ անուանեցաւ Պիոս Թ.:

Աս Նոր քահանայապետն Իտալիայի ուրիշ մասերէն աւելի Հռոմայի երկրին մէջ գտնուող ազատականաց կամ յեղափոխականաց դրդռութիւնը ճանչնալով, համոզուած էր՝ որ կամ աշխարհական կառավարութեան կարգերուն մէջ քանի մը փոփոխութիւններ պէտք է ընել, եւ կամ սոսկալի յեղափոխութեան մը փրթելուն սպասել: Աս սանկ հաստատ գիտնալով, միտքը դրաւ՝ դեռ խռովութիւն մը չծագած՝ կարելի եղած փոփոխութիւններու կամ բարեկարգութիւններու ձեռք զարնել:

*Քահանայապետական գահը նստելէն ամիս մը ետքը՝ իր առաջին գործքն եղաւ ամէն քաղաքային յանցաւորներուն ընդհանուր թողութիւն* (amnistie) *հրատարակել* (*Յուլ.* 17.), *որով* 6000 *հոգի բանտերէն ազատեցան ու* 18,000 *հոգի Հռոմայի երկիրը մտնելու ազատութիւն ընդունեցան։ Անկից ետքը քանի մը հրամանագրերով սահմանեց որ աշխարհականները տէրութեան գործքերուն մէջ խորհուրդի կանչուին, վեց կարդինալներու մասնաժողով մը դրաւ՝ որ երկրին կառավարութեան կարգերուն մէջ կարեւոր ըլլալիք օգտակար փոփոխութիւնները գտնեն ու իրեն առաջարկեն։*

*Նոր քահանայապետին ըրած այսպիսի նորոգութիւնները ժողովրդեան բաղձանացը համաձայն ըլլալով, չափէ աւելի ուրախութեամբ զանոնք ընդունեցան ու ամէն տեղ կեցցէ Պիոս Թ. ձայները կը հնչէին։ Նոյն. իսկ Մածծինի ու իր կարծեկիցներէն շատերը՝ քահանայապետին ըրած ազատական կարգադրութիւններէն յոյս առնելով ու կարծելով որ անոր ձեռքովն իրենց հասարակապետական խորհուրդներն ու բոլոր Իտալիա միակ հասարակապետութեան դարձընելու բաղձանքն ու ջանքը կատարելու ճամբայ կը բացուի, իր վրայ գոհութիւն կը ցուցընէին ու զինքը կը գովէին. մանաւանդ թէ Մածծինի ալ յուսով իրեն քանի մը (չկատարուելու) առաջարկութիւններ ալ ընելու համարձակեցաւ։ — Բայց մեծերուն եւ պաշտօնատէրներուն մէջ կային շատ անձինք ալ, որոնք քահանայապետին ըրած ազատ կարգադրութեանց վրայ ամենեւին գոհ չըլլալով՝ յայտնապէս կը տրտնջէին. տեղ տեղ ալ պաշտօններու մէջ ըլլողները նոյն կարգադրութիւնները չէին ուզեր ի գործ դնել. նա եւ ոմանք իրենց պաշտօններէն հրաժարեցան ելան։ Հայրենիքնին դառնալու ազատութիւն ընդունողներուն*

մէջէն ալ շատերը նոյն ազատութիւնն ի գործ դնել կամ ընդունիլ չուզեցին, որովհետեւ քահանայապետն իրենց համար պայման դրած էր՝ որ տէրութեան դէմ ըրած յանցանքներնուն համար զղջում ցուցընեն ու խոստում տան որ իրենց տրուած ազատութեամբ չարաչար չեն վարուիր ու տէրութեան կարգերուն դէմ ամենեւին հակառակութիւն չեն ցուցըներ։

Պիոս Թ. քահանայապետին տուած ազատութիւններուն ու անկէց Հռոմայի երկրին բնակչաց մէջ եղած ուրախութեան ու գոհութեան լուրերը Տոսկանայի երկիրը հասնելով, Լէոբոլդոս Բ. մեծ դուքսն ալ սկսաւ քանի մը ազատական նորոգութիւններ ընել. (1847. Յուլ. 24.) ազատական գաղափարներ ունեցող պաշտօնեաներ դրաւ ու տէրութեան խորհրդոյ ժողով մը սահմանեց. նա եւ ժողովրդեան բաղձանաց համաձայն ուրիշ քանի մը նոր կարգեր դրաւ։ Ասոնք ըլլալէն ետքը՝ Տոսկանայի ժողովուրդն ալ Հռոմայի տէրութեան բնակչաց պէս՝ իր ստացած ազատութեան վրայ մեծ ուրախութիւն ու գոհութիւն կը ցուցընէին։ Ա՛լ աս երկու տէրութեանց մէջ ամէն օր մեծ հանդէսներու եւ տօներու վախճան չէր ըլլար. բայց աս առիթներուն մէջ յայտնի կ'իմացուէր որ հանդէսները կատարողներուն մէջ շատերուն դիտաւորութիւնը՝ իրենց վեհապետներուն տուած ազատութեան վրայ ուրախութիւն ցուցընել չէր, հապա ժողովուրդները գրգռել՝ որ կէս կամ մասնական ազատութեամբ գոհ չըլլան, Իտալիայի մէջ ընդհանուր ազատութիւնն ու միութիւնը հիմնելու ետեւէ ըլլան. այսինքն վեհապետները ստիպեն՝ որ Իտալիա մէկ մեծ տէրութիւն ընելու համար ժողովրդոց բաղձանաց համաձայն իրարու հետ ձեռք ձեռքի տալով աշխատին։

Որչափ ալ ժողովրդեան մէջ սաստիկ գրգռու-

թիւններու պատրաստութիւն ու ջանք կար, սակայն իրօք ու յայտնապէս ապստամբական ցոյցեր չէին ըլլար։ Պիոս Թ.ին գահակալութեան տարեդարձին օրը (1847. Յունիս 17.) Հռոմայ երկրին մէջ մեծ տօներով ու հանդիսութիւններով կատարուեցաւ. եւ աս առթին մէջ քահանայապետը յարգող ու անոր հաւատարիմ ըլլող բազմութիւնն այնչափ մեծ էր՝ որ կառավարութիւնն իրենց զգածմանց վրայ ապահով ըլլալով՝ որոշեց անոնցմէ խել մը անձինք զինելու եւ անոնցմով գաւառներու մէջ քահանայապետին դէմ ըլլող կողման հետեւողներն ու անդին անդին երեւցող աւազակները զսպելու։ Ասկից ամիս մը ետքը (Յուլ. 17.) քահանայապետին գահ ելլելէն ետքը տուած ընդհանուր թողութեան յիշատակը պիտ՚որ կատարուէր։ Աս հանդէսը կատարելու պատրաստութիւններն առաջուան հանդէսներու ամեն եղածներէն շատ աւելի էին. բայց աս հեղու քանի մը անկարգութիւններ կամ թէ ըսենք՝ ապստամբութեան նշաններ երեւան գալու սկսան։ Կառավարութիւնն ակամայ ստիպեցաւ խռովութիւն հանողներէն քանի մը հոգի բռնել ու բանտ դնել. եւ իրենց յանցանքը տէրութեան դէմ ապստամբութիւն ըլլալը ծանուցուելով՝ քննութիւնն երկնցաւ։ Աս հանդամանքներէն եւ նոյն միջոցին հանդիպող ուրիշ քանի մը դէպքերէն իմացուելով որ ժողովուրդը հանդարտ պիտ՚որ չկենայ, քահանայապետը հարկադրեցաւ անոնց կամքն ըստ իմիք կատարել։ Այսպէսով կրնայ ըսուիլ որ Հռոմայ երկրին մէջ նոր ապստամբութեան կամ յեղափոխութեան սկիզբը 1847. Յուլ. 17ին եղաւ. անկից ետքն աստիճան աստիճան հաստատուելու, զօրանալու եւ տարածուելու ճամբուն մէջ մտաւ։

Այսպիսի սկզբնաւորութենէ ետքը ա՛լ այն ուրա-

խուլթեան ու ցնծութեան աղաղակներն ու կեցցէ Պիոս Թ. ձայները յառաջուան պէս յաճախ ու եռանդամբ չէին լսուեր: Կ'երեւար որ քահանայապետը մինչեւ ան ատեն իր ըրած նոր բարեկարգութիւններովը, զորոնք շատերը միայն ուրիշ աւելի մեծ նորոգութիւններու սկիզբը կը համարէին, ինք զինքն իր բաղձացած վախճանին հասած կը սեպէր: Բայց Եկեղեցւոյ տէրութեան մէջ մեծ յեղափոխութեան բաղձացողներուն միտքն ու բաղձանքն ասոնցմէ զատ ուրիշ շատ բաներու վրայ կ'երթար: Ասոնք կ'ուզէին որ քահանայապետն իր քաղաքային պաշտօնեաներուն մէջ աշխարհականներ ալ խաթէ, զատոնք դատաստաններու եւ քաղաքային գործոց գլուխը դնէ ու իրենց յանձնէ որ ամէն քաղաքային պաշտօնարաններու մէջ նոր կարգեր ու օրէնքներ սահմանեն, ելեւմտից գործքերը կարգաւորելով՝ տէրութեան ելքերը մուտքերուն հետ հաւասարակշռութեան մէջ դնեն ու ասով տէրութեան վրայ ամէն դի վստահութիւն զարթուցանեն, թէ մայրաքաղքին (Հռոմայի) ու թէ նահանգներուն մէջ ըլլող անկարգութիւնները շիտկեն, անպիտան պաշտօնեաները հեռացընեն ու բանտերուն համար օգտակար կարգաւորութիւններ ընեն: Սակայն չէ թէ միայն ասոնց եւ ոչ մէկն եղաւ, հապա նա եւ քահանայապետը տէրութեան ամէն կարգերուն (états) պատգամաւորաց ժողովքին մէջ, որուն անդամներն ինք անձամբ ընտրած էր, յայտնապէս ու հաստատութեամբ ծանուց՝ որ աշխարհականներու եւ եկեղեցականներու հաւասար իրաւունք ունենալն եկեղեցական կառավարութեան մը էութեան կը հակառակի: Նա եւ զօրաւոր խօսքերով յայտնի ըրաւ՝ որ բոլորովին անխոհեմ ու յանդուգն են ան մարդիկ՝ որոնք (Եկեղեցւոյ տէրութեան համար) վտանգաւոր խորհուրդներ ու առաջարկութիւն-

նէր դասը կը հանեն։ Այսպիսիք կրնան Եկեղեցւոյ տէրութիւնը կամ կառավարութիւնն աշխարհականացընելու ջանալ, բայց չեն կրնար երբեք զինքը (քահանայապետը) ստիպել որ այսպիսի յանդուգն ու անօրէն խորհուրդի մը իր համաձայնութիւնը տայ։ Պատգամաւորները պատշաճական մեծարանօք յայտնի ըրին՝ որ կառավարութեան կարգերուն մէջ այլ եւ այլ պակասութիւններ կան ու իրենք պատրաստ են այնպիսի միջոցներ գտնել ու առաջարկել, որոնցմով ամէն դի արդարութիւնը, հաւասարութիւնն ու երջանկութիւնը տարածուի ու պահուի։ Նոյն ատեն քահանայապետին կողմանէ հաճոյական որոշում մը չելլելով, իր ու հպատակներուն մէջ անհաճոյ վէճերը սկսան ու օրէ օր կը սաստկանային։

Իտալիոյ ազատականները մինչեւ Պիոս Թ.ին ատենները երկու կողմնակցութիւն կամ մաս բաժնուած էին, այսինքն Հռոմայեցւոց ու Սարդինիացւոց. եւ նոյն քահանայապետին տուած ազատութիւններէն ետքը բաներն այն աստիճանի հասած էին, որ եթէ Հռոմայ երկրին ազատականները նշան մը տային, Սարդինիոյ ազատականք ալ շուտով անոնց հետ կը միանային։ Եւ աս բանս յաջողցընելու համար քանի մը անուանի մատենագիրք (Կեսար Պալպօ, Մաքսիմոս Ածեղիօ, եւ այլն,) իրենց ճարտար գրչովը բոլոր Իտալիոյ վեհապետութիւնը երկուքի բաժնելով ու եկեղեցական վեհապետութիւնը՝ քահանայապետին, իսկ աշխարհական գլխաւորութիւնը՝ Սարդինիոյ թագաւորին սահմանելով, կը ջանային ցուցընել որ միայն այսպէս Իտալիոյ միութիւնը կրնայ հիմնիլ ու հաստատուիլ։

Կար. Ալբերդոս Սարդինիոյ թագաւորը ի սկզբանէ հետէ (1846) Հռոմայ երկրին անցքերը լսելով ու վերոյգրեալ եւ ուրիշ գրուածները կարդալով, թէպէտ

եւ իր սկսած կառավարութեան կերպն ու կարգերը փոխելու նշան մը չէր տար, բայց այնպիսի ընթացք մը կը բռնէր, որ Իտալացւոց շատերը (Սարդինիայի վեհապետներուն հին ատեններէ ի վեր ունեցած՝ բոլոր Իտալիայի գլուխ կամ միահեծան թագաւոր ըլլալու բաղձանքն ու ջանքը յիշելով,) բոլոր խորհուրդնին ու յոյսերնին անոր վրայ ուղղած էին։ Թագաւորին խորհրդականներն աս բանիս մէջ միաբան չէին. ոմանք զինքը կը վախցընէին այսպիսի մեծ գործքի մը յաջողելուն դժուարութիւններն առջեւը դնելով. իսկ ուրիշները քիչ մը ատենէ ի վեր զինքը կը քաջալերէին ու խորհուրդ կու տային որ իր երկրին ազատական սահմանադրութիւն մը տալով ու անով Սարդինիա բոլոր Իտալացւոց նախանձելի ընելով՝ իր իշխանութիւնն ընդարձակելու ճամբայ բանայ։ Սակայն Թագաւորն իր յառաջուան ընթացքին մէջ ամենեւին փոփոխութիւն մը չէր ցուցըներ ու ազատականաց կողմը հակելու նշան չէր տար։ Ինք այսպիսի ընթացք բռնելով՝ թէ մայրաքաղաքին ու թէ անկից դուրս այլ եւ այլ քաղաքներու մէջ ժողովրդոց իր կառավարութեան նկատմամբ ցուցըրած դժգոհութեան նշաններն ոստիկանութեան հսկողութեամբը շուտով կը խափանուէին ու արտաքուստ խռովութեան մը պատճառ չէին ըլլար։ Խել մը ատեն ասանկ առանց խռովութեան ու ապստամբական ցոյցերու անցաւ, մինչեւ 1847. Սեպտ. 8. որ օրն որ Սարդինիացիք՝ ատենօք Դուրին քաղքին Աւստրիացւոց զօրաց ձեռքէն ազատուելուն տարեդարձը կը կատարէին։ Աս տարի նոյն օրը տէրութեան ամէն քաղաքները՝ առանձինն Գենուա քաղաքը շատ մեծ հանդէսներով ու փառաւորութեամբ կատարեցին։ Բայց աս հանդէսներուն ատենն ու ետեւէ ետեւ ուրիշ քանի մը դէպքերու մէջ տեսնուած ցոյցերը յայտնի իմացուցին կար.

Ալբերդոսին՝ որ մինչեւ ան ատեն բռնած ընթացքովը պիտա՝ որ չկարենայ կառավարութիւնը յառաջ տանիլ։ Աս խորհրդեան վրայ աւելի եւս հաստատուեցաւ երբ որ Դուրինի ու Աղեքսանդրիայի մէջ ժողովուրդը յայտնի նշաններ տալու սկսաւ՝ որ իր վրայ գոհ չէ։ Անկից ի զատ զօրքին մէջ ալ ժողովրդեան հետ միաբանելու նշաններ կը տեսնուէին. նոյնպէս Սաւոյայի մէջ ապստամբական խլրտմունքներ կ'երեւային։ Ասոնք եւ ուրիշ ասոնց նման նշանները կը գուշակէին՝ որ Սարդինիայի մէջ շատ չ'անցնիր խռովութիւնները սաստկութեամբ կը փրթին։

Ասոնց առջեւն առնելու համար Կար. Ալբերդոս (1847. Հոկտ. 11.) տէրութեան հին պաշտօնեաները հանեց ու նոր եւ ազատութեան կողմն ըլլող պաշտօնեաներ դրաւ, տպագրութեան խիստ օրէնքները քիչ մը մեղմացուց եւ ուրիշ քանի մը նոր դատաստանական կարգեր սահմանեց։ Ասոնք թէպէտ Սարդինիայի ժողովրդեան մեծ մասին բաղձացածին մէկ փոքր մասն էին ու Թագաւորն ալ Իտալացւոց սիրտը չէր կրնար շահիլ. սակայն գոնէ իր երկրին մէջ ընդհանուր գոհութեան նշաններ սկսան երեւալ ու ամէն դի ուրախութեան ձայներ կը լսուէին։ Կրնայ ըսուիլ՝ որ անկից ետքը Կար. Ալբերդոս սկսաւ իր առաջուան բռնած ընթացքին դէմ այնպիսի ազատական կարգերով կառավարել՝ որ յայտնապէս կը գուշակուէր թէ ամէն Իտալացւոց սիրտը շահելու եւ մեծագոյն իշխանութեան կամ բոլոր Իտալիայի թագաւորութեան հասնելու կը ջանար։

Իտալիայի երեք տէրութեանց (Հռոմայի, Տոսկանայի ու Սարդինիայի) մէջ աս ատենները թէ ժողովրդոց ու թէ կառավարութեանց կողմանէ եղածներուն վրայ Աւստրիա ի սկզբանէ հետէ մտադիր եղած էր. դիտէր եւ կը լսէր որ ամէն Իտալացւոց սրտին մէջ իրեն

դէմ եղած ատելութիւնն ու իր Իտալիոյ մէջ ունեցած իշխանութիւնը բոլորովին ջնջելու փափագն ու ջանքը չափէ աւելի սաստկանալով, բոլոր Իտալիոյ մէջ սասկալի յեղափոխութիւն մը կը պատրաստուէր։ Ասոր համար տէրութեան առաջին մեծ պաշտօնեայն Մեդեռնիխ իշխանն ամէն բարեկամ տէրութեանց յիշատակագիր մը խաւրեց, որուն մէջ Իտալիոյ ամէն տէրութեանց մէջ ընդհանուր յեղափոխութեան մը փրթելիքը գուշակելով, կ'առաջարկէր որ Աւստրիոյ կայսեր Իտալիոյ մէջ ունեցած ստացուածներուն անկորուստ մնալուն երաշխաւոր ըլլան ու յեղափոխութեան ծագելն արգելելու օգնեն։ Տէրութիւններն աս երկու խնդրոց առաջինին ընդունեցան. բայց երկրորդին վրայ պատասխան տուին՝ որ իւրաքանչիւր տէրութիւն ազատ է իր երկրին կամ կառավարութեան մէջ ուզած նորոգութիւններն ու բարեկարգութիւնները ժամանակին պահանջածին ու ժողովրդեան հանգամանաց համաձայն ընելու՝ առանց օտար տէրութեան մը անոր մէջ խառնուելուն։ Աւստրիա սաստիկ պատասխան մ'ընդունելէն ետքը՝ հարկ համարեցաւ (1847.) Ֆերրարայի բերդին մէջ առաջուընէ աւելի զօրք խոթել. եւ նոյն բերդին մէջ իր զօրք պահելու իրաւունքն ընդարձակելով՝ բոլոր նոյն քաղաքին վրայ իր իշխանութիւնը բանեցընելու։ Աս գործողութեան մէջ Աւստրիոյ տէրութեան ունեցած դիտումը՝ գանէ քահանայապետական երկրին մէջ յեղափոխութեան ծագիլն արգելել, եւ ոչ թէ Իտալիոյ մէջ նոր երկիր մը գրաւել ու իր կալուածները շատցընել էր։ Բայց Իտալացիք ասկից պատճառ առնելով՝ իրենց հին ատելութիւնը Գերմանացւոց դէմ նոր ու սաստիկ կատաղութեամբ դուրս թափելու սկսան, Մա՛հ Գերմանացւոց աղաղակով ու անոնց դէմ ազգին անգին խռովութիւններ հանելով։ Քահանայա-

պետն այսպիսի պարագայից մէջ Իտալացւոց կամացը հետեւելով, Աւստրիայի տէրութեան արտորնօք առաջարկեց որ իր զօրքը Ֆերրարայէն հեռացընէ: Աւստրիա թէպէտ եւ իր օգնութեան այսպիսի կերպով մերժուելուն վրայ վշտացաւ. բայց իր զօրքն անյապաղ ետ կանչեց, որմէ քահանայապետական երկրին աւելի վնաս՝ քան թէ օգուտ յառաջ եկաւ, ինչպէս յաջորդ դէպքերը յայտնապէս ցուցուցին:

Անցնինք հիմայ Իտալիայի վերջին հարաւային ծայրը, որ է Նէապոլսոյ կամ երկու Սիկիլիայի թագաւորութեան երկիրը, եւ տեսնենք անոր քաղաքային հանգամանքն աս տարիներուն մէջ (1846. 1847.):

Թէպէտ եւ ցամաք երկրին կամ Նէապոլսոյ ժողովրդեան ալ մեծագոյն մասը կառավարութեան վրայ բոլորովին տժգոհ էր. սակայն Սիկիլիա կղզւոյն վրայ այսպիսի տժգոհներուն թիւը շատ աւելի էր: Ինչպէս պատմութիւններէն գիտենք՝ աս կղզւոյն բնակիչքը սկզբնաբար այլ եւ այլ ցեղերէն մէկ եղած տաքարիւն մարդիկներ են, որոնք շատ տարիներէ վեր ակամայ Նէապոլսոյ տէրութեան տակ կը մնային, բայց երբեք անոր վրայ գոհ չէին: Յեղափոխականք աս բանս գիտնալով, այլ եւ այլ հնարքներով ու միջոցներով ստորին ժողովուրդը տէրութեան դէմ գրգռելու եւ ապստամբեցընելու կը ջանային, առաւելապէս Իտալիայի մէկալ տէրութեանց մէջ եղած նոր ազատական կարգաւորութիւններն աւիթ առնելով: Այսպիսի հնարքները կամաց կամաց ժողովրդեան վրայ ազդեցութիւն ընելով, յեղափոխութեան սկսելուն ճամբաները կը պատրաստուէին: Ընդհանուր խռովութիւն կամ ապստամբութիւն մը չեղած, Բալերմոյի մէջ (1847. Օգոստ.) տէրութիւնն իրեն դէմ պատրաստուած դաւակցութիւն մը գտաւ, որուն մէջ

քանի մը զինուորական պաշտօնակալներ ալ մտած էին ու շուտով զարկեց: Մեսսինայի ու Ռէճճիոյի մէջ ալ (Սեպտ. 2.) ապստամբութիւն մը ելաւ. բայց աս ալ նոյնպէս բերդին թնդանօթներուն ազդեցութեամբը շուտով խափանուեցաւ: Թէպէտ եւ տէրութիւնն ասանկ ասդին անդին երեւցող մասնաւոր ապստամբական շարժմունքն իր հսկողութեամբը շուտով կը զարկէր. սակայն թէ ցամաք երկրին մէջ ու թէ Սիկիլիա կղզւոյն վրայ Երիտասարդ Իտալիոյ գործակալներն ընդհանուր յեղափոխութեան պատրաստութիւնը մեծ փութով յառաջ կը տանէին: Տէրութիւնն իր մեծագոյն հսկողութիւնն ու մտադրութիւնը ցամաք երկրին վրայ երեւցող յեղափոխական շարժմանց վրայ հաստատած ըլլալուն, Սիկիլիոյ վրայ ամէն կարեւոր ըլլող զգուշութիւնները չէր կրնար ի գործ դնել, ուստի եւ Մածծինեանք հոն աւելի համարձակութեամբ կը գործէին: Անոնք հոս Յայտարարութիւն Պանորմիդանացւոց (Բալերմոցիներուն) անուամբ երկայն գրուած մը դուրս հանեցին եւ հազարաւոր օրինակներ ամէն դի սփռեցին: Ասոր մէջ չէ թէ միայն տգէտ ժողովրդեան կը սորվեցընէին թէ ինչ պէտք է ընել, հապա նա եւ որոշակի կը ցուցընէին թէ երբ պէտք է ոտք ելլել ու ապստամբութեան դրօշը բանալ:

Այսպիսի պատրաստութիւններով բոլոր տէրութեան մէջ 1847 տարւոյն վերջին երեք ամիսները շատ տխուր ու ահու դողու եւ անհանգստութեան մէջ անցան: Վերջապէս եկաւ հասաւ 1848 տարին, որուն մէջ Յունուար ամսոյն 12ը, որ երկրին Փերդինանդոս Բ. թագաւորին ծննդեան օրն էր, յեղափոխականաց յուսացածին կամ պատրաստածին համեմատ՝ ամէն բան երեւան պիտ'որ գար կամ որոշուէր: Ինչու որ բոլոր տէրութեան մէջ ժողովուրդը մեծ յուսով կը սպասէր՝ որ թա-

գաւորն աս օրը նշանաւոր պիտ՚ որ ընէ իր հպատակաց շատ մեծ ազատութիւններ ու իրաւունքներ տալով: Թագաւորն աս բանիս վրայ եւ ոչ խորհուրդ մը ունէր. միայն յեղափոխականք աս լոյսը ժողովրդեան մէջ տարածած էին, որպէս զի ետքը թէ որ աս լոյսը պարապի ելլէ, ինչպէս որ պիտ՚ որ ելլէր, ժողովուրդն ոտք հանելու առիթ ունենան: Երբ որ նոյն օրն ամենեւին առանց Թագաւորական հրովարտակի մը անցաւ ու ժողովրդեան յուսացածը չկատարուեցաւ, Մեսսինայի ու Բալերմոյի բնակիչքը կատաղութեամբ ոտք ելան ու ապստամբութեան դրօշը կանգնեցին. եւ քիչ ատենուան մէջ ապստամբութիւնը բոլոր Սիկիլիա կղզւոյն վրայ տարածեցաւ: Բալերմոյի մէջ ապստամբները մեծ բազմութեամբ յանկարծակի Թագաւորական զօրաց վրայ յարձակեցան, ու սոսկալի կռուէ մը ետքը բոլոր զօրքը քաղքէն դուրս հանեցին: Ասոր վրայ ամէն դիհաց գեղացիները զինած եկան ապստամբներուն հետ միացան ու մինչեւ Յունուարի 27 Թագաւորական զօրքը, որ 6000ի կը հանէր, Գաստէլլամարէ ամրոցին մէջ, իսկ ապստամբները քաղքին մէջ իրարու հետ կը պատերազմէին: Վերջապէս Թագաւորական զօրաց հրամանատարը տեսնելով որ զօրքը յոգնած ու լքած է ու ապստամբաց յաղթելու յոյս չկայ, զամէնքն ալ նաւերը դնելով՝ ցամաք երկիրն անցաւ: Ետքը կղզւոյն ուրիշ տեղերն ըլլող զօրքերն ալ Նէապոլիս անցնելով՝ բոլոր կղզին ապստամբաց ձեռքը մնաց, որոնք շուտ մը առժամանակեայ կառավարութիւն մը դրին՝ կղզւոյն քանի մը երեւելի անձինքներէն կազմած, որոնց գլուխ կամ՝ դահերէց եղաւ Ռուճճերոյ Սեդդիմոյ իշխանը:

Սիկիլիայի մէջ եղածներուն լուրերը Նէապոլիս հասնելով ու ժողովուրդը հոնկից դարձող զօրաց վի-

ճակը տեսնելով, սկսաւ ահու դողու մէջ իյնալ. մանաւանդ որ յեղափոխականք սուտ լուրեր կը տարածէին թէ Սիկիլիացիք խել մը նաւերով Նէապոլիս գալու վրայ են՝ իրենց թշնամիները (Նէապոլսեցիները) ջարդելու համար։ Ժողովուրդը կը յուսար՝ որ թագաւորն աս խռովութեանց վերջ տալու համար՝ Յունուարի 25ին (որ իրենց մէջ նշանաւոր օր մըն էր,) անշուշտ նոր ու ազատական սահմանադրութիւն մը կը հրատարակէ։ Բայց նոյն օրն աս բանս չկատարուելով՝ ասդին անդին սկսան ապստամբութեան նշաններ երեւալ։ Վերջապէս թագաւորը բաներուն ետքի սահմանը հասած ըլլալը տեսնելով, (1848. Յունու. 29.) բաղձացուած սահմանադրութիւնը հրատարակեց, որուն գլխաւոր որոշումն էր՝ երկու խորհրդոյ սենեակներ (այսինքն ազնուականաց եւ պաշտօնէից, ու պատգամաւորաց,) հաստատել, առաջին սենեակին անդամներուն ընտրութիւնն իրեն պահելով։ Անկից ետքը հին պաշտօնեաները հանեց ու նոր եւ ժողովրդեան սիրելի ըլլող պաշտօնեաներ անուանեց. նա եւ խոստացաւ որ ասոնք (ժողովրդեան) պատասխանատու ըլլան. նոյնպէս եւ տպագրութեան համար ազատութիւններ տալու խոստում ըրաւ։ Նէապոլսեցիք աս սահմանադրութեան վրայ գոհ եղան ու մեծ ուրախութեամբ ընդունեցան. իսկ Սիկիլիացիք գոհ չըլլալով՝ ապստամբութիւնը կը շարունակէին։

"Նէապոլսոյ թագաւորն իր ժողովրդոց ասանկ ազատական սահմանադրութիւն մը տալէն ետքը, Իտալիոյ միւս վեհապետները, որոնք անկից առաջ այլ եւ այլ ազատական նորոգութիւններ ընելու սկսած էին, ինչպէս մինչեւ հիմայ պատմեցինք, ալ չէին կրնար անոր օրինակին չհետեւիլ։ Ամենէն առաջ աս բանիս կարեւորութիւնը ճանչցաւ Սարդինիայի Կար. Ալպերդ թագաւորը

ուտալէ ետեւ (Փետր. 8.) իր ժողովրդեան (Statuto անուամբ) նոր սահմանադրութիւն մը հրատարակեց, որն որ ըստ գլխաւոր մասանց (երկու սենեակներու ձեւը ունեցող) Գաղղիական սահմանադրութեան նման էր։ Նոյն օրերը (Փետր. 17.) Նա եւ Տոսկանայի մեծ դուքսն իր երկրին համար սահմանադրութիւն մը տուաւ, իր հրովարտակին մէջ առանձինն յիշելով՝ որ իր նախորդները Լէոպոլտոս Ա. ու Ֆերդինանդոս Ա. իրենց ատենները նոյնը խոստացած ըլլալով՝ ինք անոնց խոստումը կը կատարէ։

Քանի մը ամիս առաջ (1847. Հոկտ. 5.) Լուգգայի Կարոլոս դուքսը՝ զանազան անհաճոյ դէպքերէն ստիպելով, իր պզտիկ երկիրը (զորն որ Բարմայի Մարիամ Լուիզ դքսուհւոյն մեռնելէն ետքը՝ Բարման ինք առնելով՝ պիտի՛ որ թողուր, ինչպէս ուրիշ տեղ գրած ենք,) հրաժարելով Տոսկանայի մեծ դքսին թողուց։ Ասոր վրայ նոյն մեծ դքսին ու Մոտենայի դքսին մէջ վէճ ծագելով, սա երկքինը նոյնին մէկ մասը զօրքով գրաւեց։ Բայց դեռ վէճը չլմնցած (Դեկտ. 18.) Բարմայի դքսուհին Մարիամ Լուիզ (Նաբոլէոն Ա.ին այրին) մեռնելով, Լուգգայի Կարոլոս դուքսն՝ ըստ դաշանց՝ Բարմայի երկիրը ժառանգեց ու խոստացաւ իր հպատակաց սահմանադրութիւն մը տալ։ — Նա եւ պզտիկ Մոնագոյ իշխանութեան՝ Փլորեստան Բ. վեհապետը հարկադրեցաւ իր երկրին՝ հազիւ 6000ի հասնող՝ հպատակաց սահմանադրութիւն մը տալ։

Իսկ Պիոս Թ. քահանայապետը, որն որ ազատական նորոգութիւններ ընելու մէջ՝ Իտալիոյ միւս տէրութիւններուն առաջին օրինակը տուած էր, վերջապէս հարկադրեցաւ մինչեւ ետքի վայրկեանը կատարել չուզածն ի գործ դնել։ Ուստի իր կարդինալներուն հետ խորհուրդ ընելէն ետքը՝ (1848. Մարտ 15.) բաղձացու-

ած Սահմանադրութիւնը հրատարակեց։ Ասոր մէջ կը
ծանուցանէ որ ժամանակին պարագաներէն ու իր ժողո-
վրդեան փափագները կատարելու բաղձանքէն շարժելով,
առանց կրօնի վնաս մը հասցընելու, իր յօժար կամօքը
նոյն սահմանադրութիւնը կը հրատարակէ։ Աս քահա-
նայապետական կամ Հռովմէական սահմանադրութեան
գլխաւոր մասերը հետեւեալներն էին։ Կարդինալաց ժո-
ղովը՝ քահանայապետին անձէն անբաժան հոգեւոր կամ
եկեղեցական ծերակոյտ մը կը մնայ. իսկ աշխարհական ի-
րողութեանց մէջ օրէնք դնելու համար խորհուրդ ընելը
երկու (աշխարհական) ատենակներու կը յանձնուի։ Ա-
ռաջին ատենակին կամ բարձրագոյն խորհրդոյ ժողովոյն
անդամները ցկեանս կ՚ընտրուին. ասոնք՝ բարձրագոյն
պաշտօններու մէջ մտած, ուսմանց մէջ արդիւնաւոր ու
4000 դահեկան (scudi) տարեկան եկամուտք ունեցող
անձինք պիտի որ ըլլան։ Երկրորդ ատենակին անդամները
ժողովուրդէն կ՚ընտրուին. բայց պէտք է որ ընտրողները՝
տէրութեան տարին 12 դահեկան, իսկ ընտրելիները՝
տարին 100 դահեկան տուրք վճարող ըլլան։ Երկու ատե-
նակներուն անդամները տարին երեք ամիս ժողովուած
կը մնան. քահանայապետն իշխանութիւն ունի զա-
նոնք ժողվելու, ատենակները գոցելու, նա եւ բոլորովին
լուծելու։ Ատենակներն իշխանութիւն ունին տուրքերը
սահմանելու, տրուելու օրինաց վրայ խորհուրդ ընելու
եւ վճիռ տալու. բայց աս օրէնքները քահանայապետէն
հաստատուելէն ետքը օրինաց զօրութիւն կ՚ունենան։ —
Ասոնցմէ զատ աս սահմանադրութեամբ գրոց քննու-
թիւնը կը վերցուի, միայն եկեղեցական գրոց քննութիւ-
նը կը մնայ, տուրքերէն ազատ ըլլալու առաւելութիւնը
կը ջնջուի եւ ուրիշ քանի մը նոր քաղաքային կարգեր
կը հաստատուին։ Քահանայապետն աս սահմանադրու-

թիւնը հրապարակելէն ետքը եկեղեցական պաշտօնեաներուն երեքը հանեց ու անոնց տեղ երեք աշխարհական պաշտօնեաներ դրաւ։ Անկից զատ միայն եկեղեցականներէ կազմած մասնաժողով մը դրաւ, որուն գործքը պիտ՚ որ ըլլար՝ աշխարհական կառավարութեան օրէնքներուն մէջ այն փոփոխութիւններն ընել, որոնք քահանայապետական իշխանութեան հետ կրնան միաբանիլ։

Վերը գրեցինք՝ որ Աւստրիա Իտալացւոց աղաղակին ու տրտունջին համեմատ քահանայապետին կողմանէ եղած բողոքն ու ծանուցումն ընդունելով՝ Ֆերրարայէն իր զօրքը ետ կանչեց։ Սակայն ասով Իտալացւոց կատաղութիւնն Աւստրիայի դէմ չհանդարտեցաւ. Իտալիայի ուրիշ կողմանց ժողովուրդները թողունք, նոյն իսկ Աւստրիայի տակ ըլլող Լոմբարտեան-Վենետական գաւառներուն բնակիչքն ալ ամէն Իտալացւոց խորհուրդներուն ու զգացմանց մասնակից ըլլալով, Աւստրիայի իշխանութեան տակէն ելլելը, Աւստրիայի տէրութիւնն Իտալիայէն բոլորովին դուրս հանելը՝ բոլոր սրտով կը փափագէին ու այս փափագն ամէն առթի մէջ յայտնի կը ցուցընէին։ Իսկ կայսերական կառավարութիւնը շատոնցուընէ այս բաներուս անտեղեակ ըլլալով ու ասդին անդին բաւ մասին յայտնի ու բաւ մասին գաղտնի երեւցող ապստամբական շարժմանց վրայ ստոյգ լուրեր ընդունելով, իր Իտալական երկիրներուն համար քանի մը ազատական նորոգութիւններ ընելու կը հակէր։ Բայց այս բանին կատարումն աւելի հանդարտ ժամանակի մը թողուլը պատշաճ սեպեց, որպէս զի չկարծուի թէ եղած ապստամբական ցոյցերէն վախնալով ազատական կարգաւորութիւններ ընելու հարկադրած է։ Կառավարութիւնն ասանկ մտածած ատեն՝ իր Իտալացի հպատակներն իրենց ազգային զգածմանց հետեւելով, այլ եւ այլ հնարքներ

մտածելու սկսան՝ աւստրիական տէրութեան կամ գերմանական իշխանութեան դէմ ունեցած անհաճութիւննին ու ատելութիւննին գործքով ցուցընելու համար։ Ի սկզբան անդ սա գործքերն աննշան բաներ էին. ժողովրդեան դրդուիչները կամ առաջնորդները (1848. Յունու. 1.) իրենց ազգայնոց խստիւ արգելեցին՝ որ տէրութեան վիճակախաղէն (ֆէնէքօ) ամենեւին մասնակից չըլլան ու ծխախոտ ծխելէն բոլորովին դադրին։ Ասիկայ երկու պատճառի համար սաստիկ ըրին. մէյ մը որ Իտալացիք իրարու հետ միաբանած միով հոգւով գործեն, մէյ մ՚ալ՝ որ տէրութեան գանձին զգալի վնաս հասցընեն։ Աս կարգադրութեան Լոմպարտեան-Վենետական քաղաքներուն ամէն բնակիչքը զարմանալի միաբանութեամբ հպատակեցան։ Միլանի, Վերոնայի, Պերկամոյի, Պրեշիայի ու Բատուայի մէջ ամէն Իտալացիք ծխախոտ քաշելէն դադրեցան ու վիճակի խաղը բոլորովին վերջացուցին։ Ասով ալ գոհ չըլլալով, կ՚ուզէին այն քաղաքներուն մէջ գտնուող Գերմանացիներուն ալ ծխելն արգելել։ Երբ որ տեղ մը ծխող մը կը տեսնուէր, ժողովուրդը բազմութեամբ անոր գլուխը ժողվուելով՝ կ՚արգելուր. եւ եթէ կայսերական զինուորներէն մէկն իր գլանիկը (սիկար) ձեռքէն նետելու կ՚ընդդիմանար, կռիւ ու շփոթութիւն կ՚ելլէր։ Միլանի մէջ (Յունու. 3.) այսպիսի պատճառաւ մեծ կռիւ մը ելաւ, որն որ սաստկանալով՝ այնչափ կատղած եղաւ, որ քաղաքին ճամբաները վիրաւորեալներով ու դիակներով ծածկուեցան։ Ասանկ տխուր դէպքեր Բատուայի, Բաւուայի ու Պերկամոյի մէջ ալ պատահեցան. անանկ որ Իտալիայի զինուորական հրամանատարը Ռատեցքի ստիպուեցաւ (Փետր. 23.) բոլոր Լոմպարտիան պատերազմի վիճակի մէջ կամ պատերազմական օրինաց տակ հրատարակել։ Իսկ Վենետիկի

երկրին բնակիչքն ալ ատենները գէթ գրեթէ բոլորովին հանդարտ կը կենային։

Մեր նպատակէն դուրս կ՚ելլենք, եթէ հոս Գաղղիոյ մէջ (1848. փետր.) ծագած յեղափոխութեան պատմութիւնը, ինչպէս նաեւ անկից ամիս մը ետքը Վիեննա եւ ուրիշ տեղեր եղած յեղափոխութեանց պատմութիւնը պատմելու ըլլանք։ Բաւական կը համարինք միայն յիշել որ այս յեղափոխութիւնները՝ մանաւանդ Աւստրիայինները՝ Իտալիոյ մէջ մոխրոյ տակ ծածկուած յեղափոխութեան կրակին բորբոքելուն մեծապէս օգնեցին։ Եւ որովհետեւ հարաւային Իտալիոյ կամ Նէապոլսոյ տէրութեան մէջ գրեթէ առանցմէ անկախ յեղափոխութիւնը ծագեցաւ, անոր համար ամենէն առաջ այն տէրութեան անցքերը պէտք ենք պատմել։

Վերը գրեցինք՝ որ Սիկիլիա կղզւոյն բնակիչքը նոր սահմանադրութեան վրայ գոհ չըլլալով՝ իրենց ապստամբութիւնը կը շարունակէին։ Թագաւորը, որն որ նոյն սահմանադրութեան համեմատ՝ Սիկիլիա կղզւոյն համար զատ կառավարութիւն մը ու մասնաւոր պաշտօնարան կամ սեպհական պաշտօնեաններ սահմանած էր, կը յուսար՝ որ Սիկիլիացիք վերջապէս խելքերնին գլուխնին ժողվելով՝ նոյն առաւելութիւնները շնորհակալութեամբ կ՚ընդունէին ու կը հնազանդէին։ Բայց իր յոյսը պարապի ելաւ. կղզեցիք հաշտութեան նշան մը չցուցընելով՝ օրէ օր թշնամութեան ցոյցերն աւելի եւս կը յաճախէին։ Քանի որ թագաւորական զօրքը Պալերմոյի ամրոցին մէջն էր, Սիկիլիացիք դեռ քիչ մը օրինաց հնազանդութիւն կը ցուցընէին. բայց նոյն զօրքը հոնկից հեռանալէն ետքը, նոր առժամանակեայ կառավարութիւնը բաւական զօրութիւն չցուցուց՝ ժողովրդեան կատղութիւնը զսպելու եւ Սիկիլիոյ ու առանձինն Պա-

լէրմոյի մէջ գտնուող Նէապոլսեցիներն անանց թշնամու-
թեննէն ապահովցընելու։ Կատաղի ժողովուրդն ամենէն
յառաջ իր կատաղութիւնը քանի մը բանտարկուած
Նէապոլսեցի ասպետութեան պաշտօնատարաց վրայ
ցուցուց, որոնցմէ երեսունուչորս հոգի բանտերէն քա-
շելով դուրս հանեց ու գազանական անգթութեամբ
սպաննեց։ Աս ու ասոր նման անգթութեան գործքերը
բոլոր Սիկիլիացիներն ամէն դի ատելի ըրին։

Սիկիլիա կղզւոյն վրայ աս անկարգութիւններն ե-
ղած ատենը՝ Նէապոլսոյ մէջ սահմանադրութեան հաս-
տատուելուն փոյթ կը տարուէր։ Հօս (Փետր 24.) Թա-
գաւորն ու իրմէ ետքը բոլոր զօրքը նոյնը պահպանելու
երդում ըրին։ Քանի մը օր ետքը (Մարտ 9.) հրատա-
րակուեցաւ՝ որ Մայիս ամսոյն մէջ Նէապոլսոյ սենեակները
պիտ՚որ ժողվին։ Բայց որովհետեւ Սիկիլիացիք Նէապոլ-
սոյ սահմանադրութիւնն ընդունել չէին ուզեր, անոր
համար Թագաւորն ամէն չարիքը խափանել ուզելով՝ նոր
փորձ մըն ալ փորձեց Սիկիլիացւոց սիրտը շահելու։ Հոն-
տեղաց առժամանակեայ յեղափոխական կառավարու-
թեան Ռուճճերոյ Սեդդիմոյ դահերէցը կղզւոյն վրայ
Թագաւորական կուսակալ անուանեց, տեղւոյն խորհրդա-
նոցն ալ յորդորեց որ (Մարտ 25.) Պալերմոյի մէջ ժող-
վուի, 1812ին սահմանադրութիւնը ներկայ ժամանակին
պարագայից յարմարցընելով հաստատէ, եւ ջանայ այն-
պիսի միջոցներ բանեցընել՝ որ տէրութեան երկու այլ եւ
այլ մասանց՝ Սիկիլիայի ու Նէապոլսոյ՝ երկիրները մէկ
թագաւորի իշխանութեան տակ միակ թագաւորութիւն
կամ միապետութիւն մը կացուցանեն։ Բայց աս հեղ ալ
թագաւորին ամէն ջանքը պարապի ելաւ։ Սիկիլիացիք չէ
թէ միայն անոր հրամաններուն ամենեւին գլուխ չէին
ծռեր, հապա նա եւ զէնքը կը յորդորէին որ Սիկիլիայի

թագէն հրաժարի ու իր յաջորդին թողու: Ասկից զատ՝ կղզւոյն վրայ երբեմն երբեմն՝ թագաւորական իշխանութիւնը բոլորովին ջնջելու եւ հասարակապետութիւն հաստատելու ձայներ կը լսուէր ու խորհուրդ կ'ըլլար. բայց աս խորհուրդը հետեւողներ չունեցաւ. որովհետեւ հոս Մածծինի իր հնարքները չէր բանեցըներ:

Երբ որ Սիկիլիայի ապստամբութիւնն այսպէս անխափան յառաջ կ'երթար ու ցամաք երկրին մէջ ալ անկարգութիւնները վերջ չէին գտներ, թագաւորն իր հպատակաց հաւատութեան ու ապերախտութեան վրայ նեղուելով՝ Գաղէրդա քաղաքին մէջ իր պալատը քաշուեցաւ, եւ հոնկից իր հրամանները տէրութեան ամէն կողմը կը խաւրէր. առանձինն Սիկիլիայի իրողութեանց վրայ դարման ընելու կ'աշխատէր: Ուստի ամէն բանէն առաջ հոն յայտարարութիւն մը խաւրեց, որով կը ծանուցանէր՝ թէ իր թագաւորական իշխանութեամբն անզօր ու անվաւեր կը հրատարակէ այն ամէն որոշումներն ու հրամանները՝ զորոնք հոնտեղաց առժամանակեայ կառավարութիւնը դուրս հանած է, ինչպէս նա եւ ան ամէն գործքերը, զորոնք նոյն կառավարութիւնն անկից ետքը ի վնաս թագաւորական իրաւանց համարձակի գործելու: Աս թագաւորական յայտարարութեան կամ հրովարտակին աւելի ազդեցութիւն տալու համար, (Մարտ 23.) տասնուչորս նաւ ալ խաւրեց Մեսսինա, միանգամայն հրամայեց որ Սիկիլիա կղզւոյն վրայ գտնուող բոլոր թագաւորական զօրքը հոն ժողվին:

Աս միջոցին (փետր. 23.) Գաղղիայի յեղափոխութիւնը, քիչ մը ետքը Լոմբարտիայի ու Վենետիկի, ինչպէս նաեւ Վիէննայի ու Գերմանիայի յեղափոխութիւնները (մինչեւ Մարտ 28.) իրարու ետեւէ բորբոքելով, անոնց լուրը Նէապոլիս հասած ատեն՝ ժողովուրդը չա-

փաղանց ուրախութեամբ իր հաճութիւնը կը յայտնէր։ Այսպիսի ուրախութեան մէջ ամէնքն ալ կարծելով որ ամէն դի ապստամբած երկիրները Թագաւորական իշխանութիւնը վերջացընելով՝ հասարակապետութիւններ պիտի՛ որ հաստատեն, անհնարին դրդութեամբ ու աղաղակներով կը պահանջէին որ թէ Նէապոլսոյ տէրութեան ու թէ բոլոր Իտալիոյ մէջ նոյն գործքը յաջողցընելու համար շուտով ամէն միջոցները բանեցունեն։ Թագաւորին ու կառավարութեան՝ աս շփոթութիւնները դադրեցընելու համար ամէն ըրածները յեղափոխականք պարապի կը հանէին, եւ ժողովուրդն աւելի եւս կը գրգռէին ու տէրութեան դէմ կը քաջալերէին։ Պաշտօնեաները նեղի մտնելով ու չարեաց առջեւն առնելու միջոց չգտնելով, քանի մը հեղ իրենց պաշտօններէն հրաժարեցան, բայց Թագաւորն անոնց հրաժարումը չընդունեցաւ, որովհետեւ անոնց տեղը դնելու ուրիշ աւելի յարմար ու յաջող անձինք չէր կրնար գտնել։

Նէապոլսեցւոց պահանջմունքներուն մէկն ալ ան էր՝ որ տէրութիւնն Աւստրիայէն ապստամբած Լոմպարտիային ու Վենետիկի բնակչաց զօրք ու զէնուք օգնութեան հանէ։ Թագաւորն ամէն կողմանէ աս բանս կատարելու ստիպուելով, Իտալիոյ ամէն տէրութեանց, որոնք սահմանադրական կառավարութիւն մը հաստատած էին, առաջարկեց որ ամէնքն իրարու հետ պաշտպանողական դաշնակցութիւն մը կազմեն։ Աս առաջարկութիւնն ամենէն առաջ Պիոս Թ. քահանայապետն ընդունեցաւ. բայց Նէապոլսեցիք այսպիսի դաշնակցութեամբ միայն գոհ չըլլալով, կը պահանջէին որ բոլոր Իտալիոյ բնակիչքը միաբանութեամբ պատերազմ երթան Աւստրիացիներն Իտալիայէն դուրս հանելու համար։ Թէպէտ եւ սաստիկ համարձակութեամբ կը պահան-

ջէին որ իրենց թոյլ տրուի զէնք առնուլ ու Լոմպարտա-ցւոց օգնութեան երթալ. բայց երբ որ տէրութեան կողմանէ թոյլտուութիւն եղաւ որ ուզողը զէնք առնու եւ ազատ գունդ մը կազմելով՝ Իտալացւոց օգնութեան եր-թայ, այն աղաղակ հանողներէն քիչերը գործքով կրցան իրենց քաջասրտութիւնը ցուցընել: Շատերը պատ-ճառ բերելով՝ որ տէրութիւնը կ'ուզէ երկրին ազատու-թեան պաշտպանները Նէապոլսէն հեռացընել՝ որպէս զի Աւստրիացւոց ձեռքն իյնան ու սպաննուին, իրենք իրենց երկրին մէջ հասարակաց ազատութիւնն ու բարիքը յա-ռաջ տանելու համար աւելի հարկաւոր են, չուզեցին ա-զատակամ՝ զինուոր գրուողներուն կարգը մտնել ու Նէա-պոլսէն դուրս ելլել:

Ասոնց մէջէն իբր 5000 երիտասարդներ (Մարտ 26. 27.) աղաղակաւ Աւստրիայի դեսպանին բնակարանին առջեւը ժողվուեցան, անոր տէրութեան նշանը դրան վրայէն վար առին եւ ուրախութեան երգերով այրեցին. եւ թէպէտ կառավարութիւնն ատիկայ կը տեսնէր, բայց չկրցաւ խափանել: Յաղթութիւնն աս ընելէն ետքը՝ նոյն աղաղակաւ պաշտօնէից բնակարաններուն առջեւը գնաց ու ահագին սպառնալիքներով կը պահանջէր որ անոնք իրենց պաշտօններէն մերժուին: Անկից ետքը բոլոր կա-տաղիները Թագաւորական պալատին առջեւը գացին, ուր Թագաւորը քանի մը օրէն ի վեր Գաղերդայէն դարձած կը բնակէր, ու կը պահանջէին՝ որ պաշտօնեաները վար առնուին, ու շուտ մը Լոմպարտիայի Իտալացւոց օգնական զօրք խաւրուի: Թագաւորը ստիպեցաւ իր պալատին պատշգամբն ելլել ու ապստամբաց խնդիրները կատարե-լու խոստում տալ: Հրամայեց ալ որ քանի մը օրուան մէջ 10,000 հոգւոյ ազատ գունդեր կազմուին Լոմպարտիա խաւրելու համար: Աւստրիայի դեսպանն ալ ամէն դոր-

ծողութեանց մէջ իր տէրութեան դէմ պառակտումի յայտարարութիւն ու յայտնի թշնամութիւն տեսնելով, անցագիրն ուզեց ու (Մարտ 28.) Նէապոլսէն ելաւ։ Նա եւ Ռուսիայի դեսպանը նոյնն ընելու սպառնացաւ։

Երբ որ դրդութիւններն ու շփոթութիւններն օրէ օր սաստկանալով ամէն բան տակն ու վրայ ընելու երես կը բռնէին, Թագաւորը գերագոյն ատեանին Դրդյա գահերեցին յանձնեց՝ որ նոր պաշտօնէից ժողով մը կազմէ։ Անիկայ շատ աշխատելէն ետքը՝ վերջապէս կարող եղաւ նոր պաշտօնեաներ ընտրել. նոյնը ժողովրդեան ծանուցանելու համար յայտարարութիւն գրած ատենը՝ Թագաւորին անուամբը խոստացաւ՝ որ պատգամաւորաց ընտրութեան համար աւելի մեծ ազատութիւններ շնորհէին, տարեկան տուրքերը քիչցուէին ու Լոմբարտիա օգնական զօրք խաւրուի։ Աս շնորհքներն ալ յեղափոխականաց համար բաւական չեղան. որովհետեւ ասոնք որչափ աւելի կ՚ընդունէին, այնչափ աւելի պահանջմունք ընելու կը համարձակէին։ Սակայն նոր պաշտօնեաներն ասոնց պահանջմանց միտ չդնելով, իրենց գործքը յառաջ տանելու կ՚աշխատէին։ Շուտ մը խել մը զօրաց գնդեր դէպ ի Լոմբարտիա ճամբայ հանեցին. աս բանս յեղափոխականաց շատ հաճոյ եղաւ. մանաւանդ թէ կ՚ուզէին որ բոլոր թագաւորական զօրքը դուրս խաւրուի, որպէս զի իրենք իրենց ուզածն աւելի դիւրութեամբ յաջողցընեն։

Ասոնք ցամաք երկրին վրայ եղած ատենը՝ Սիկիլիա կղզւոյն վրայ ապստամբութեան գործքերն աւելի եւս դրդութեամբ յառաջ կը տարուէին։ Բալերմոյի մէջ (Մարտ 25.) խորհրդանոցը ժողվեցաւ, եւ զՌուճճերոյ Սեդդիմոյ գահերէցը՝ տէրութեան ժամանակեայ խնամապետ հրատարակեց. նա եւ Թագաւորին պատգամաւո-

որութիւն մը խաւրեց՝ որ իր անչափահաս անդրանիկ որդին Սիկիլիայի փոխարքայ դնէ։ Թագաւորն աս բանս չուզեց կատարել, որովհետեւ կը վախնար որ Սիկիլիացիք իր որդին աւելի իբրեւ պատանդ իրենց քովը պահելով՝ ուզածնին կատարեն, քան թէ անոր իբրեւ իրենց իշխանին ու գլխուն հնազանդին։ Բայց աս խնդիրքը չկատարելով Սիկիլիացիներն աւելի չդառնացընելու համար իրենց ուրիշ քանի մը խնդիրները կատարեց, առանձինն քանի մը ժողովրդեան սիրելի պաշտօնեաներ երկրին ներքին կառավարութեան գլուխ անուանեց։ Սակայն այս ամենայն միջոցներով չկրցաւ անոնց սիրտն ու վստահութիւնը շահիլ։ Խորհրդանոցը (Ապր. 13.) ժողվեցաւ ու վճիռ տուաւ որ Փերդինանդոս Պուրպոնեան ու բոլոր իր ազգատոհմն ի մշտնջենաւորս Սիկիլիայի գահէն մերժուած է, ու Սիկիլիա իր սահմանադրութիւնն աղէկ մը հաստատելէն ետքը՝ Իտալացի իշխան մը իր գահին վրայ նստեցընէ։ Ասով Սիկիլիացիք իրենց ապստամբութեան վերջին գործքը կատարեցին եւ յայտնի ըրին որ ա՛լ իրենց հետ հաշտութեան միջոցներ բանեցընելն օգուտ մը չունի։

Որովհետեւ Նէապոլսոյ խորհրդանոցին բացուիլը, ինչպէս վերը գրեցինք, Մայիս ամսոյն մէջ պիտ՚ որ ըլլար, անոր համար պատգամաւորաց սենեկին անդամներուն ընտրութիւնը բոլոր ցամաք երկրին մէջ Ապրիլի 18ին սկսաւ, որպէս զի ատենին ընտրութիւնները լմնալով՝ Մայիսի մէկին ամէն անդամները՝ այսինքն պատգամաւորները Նէապոլիս գտնուին։ Արմատականք կամ յեղափոխականք շատոնցուընէ կը սպասէին ու կը պատրաստուէին որ սենեակները բացուին, որպէս զի իրենք ալ իրենց խորհուրդը կատարեն, որ էր բոլոր Նէապոլսոյ տէրութիւնը Հասարակապետութիւն հրատարակել։ Թա-

գաւառն աս խորհուրդին տեղեակ ըլլալով՝ հասարակութեան միտքը դրած էր մինչեւ վերջին միջոցը բանեցընել՝ որ նոյնը չյաջողի. եւ թէպէտ տուած սահմանադրութիւնը հաստատ պահել կ'ուզէր, բայց եւ նոյն սահմանադրութեան զօրութեամբն իր ձեռքը մնացած իշխանութիւնն ալ անկորուստ պահել ու բանեցընել։ Ցեղափոխականաց կողմնակցութիւնն իր խորհուրդները կատարելու պատրաստուած ու առդին անդին՝ մանաւանդ Գալաբրիայի մէջ՝ բնակիչները գրգռելու զբաղած ատենը, քիչ մը բարեմիտները կամ թագաւորին հաւատարիմ ըլլողներն ալ իրենց կողմանէ կը պատրաստուէին անոնց ջանքը պարապի հանելու. եւ աս պատճառաւ երկու իրարու հակառակ կողմնակցութեանց աշխատութեամբը տեղ տեղ շփոթութիւններ կը ծագէին։ Ցեղափոխականք յառաջուընէ ի վեր աչուընին եկեղեցիներու, եկեղեցականաց ու վանքերու ստացուածներուն վրայ տնկած էին ու կը պատրաստուէին զանոնք յափշտակելու։ Իսկ Լածծարոնիները, որոնք ամէն ատեն եկեղեցիներուն ու վանքերուն սէր ու մեծարանք կը ցուցընեն, թշնամեաց խորհուրդներն իմանալով՝ զանոնք տէրութեան կը մատնէին։

Ժողովներուն բացուելուն նախընթաց օրը (Մայ. 14.) թագաւորական հրովարտակ մը հրատարակուեցաւ, որուն մէջ թագաւորէն անուանուած 50 նախարարներուն կամ ատենակալներուն (pair) անունները նշանակուած էին։ Աս հրովարտակը զարմատականներն առաջոյ կարգի զարմացուց ու սասանեցուց, որովհետեւ անոնք կը յուսային որ պիտի՛ որ կարող ըլլան զթագաւորը ստիպել՝ վերին կամ ատենակալաց ժողովը մէկդի թողտալու։ Ասոր վրայ իրենց մէջ եղած գրգռութիւնն աւելի եւս սաստկացաւ եւ թշնամական գործքերն ու կռուոյ

պատրաստութիւնները սկսան։ Նոյն օրը պատգամաւորնե-րը կամ ստորին սենեակին անդամները պատրաստիչ ժո-ղովի մը գումարուած ըլլալով, իրենց հրաման եղաւ որ թագաւորին ու սահմանադրութեան հաւատարիմ ու հնազանդ ըլլալու երդում ընեն։ Անոնք սա հրամանը չուզեցին կատարել, պատճառ տալով որ իրենք ի-րաւունք ունին տրուած սահմանադրութեան մէջ կարեւ-որ ըլլող փոփոխութիւններն ընելու. եւ սա փոփոխու-թիւններն ըլլալէն ետքը սահմանադրութիւնն երդմամբ հաստատելու։ Աս պահանջումն իրաւացի կ'երեւար, բայց թագաւորը կը վախնար որ փոփոխութիւններ ընել ըսե-լով՝ պատգամաւորներն իր տուած սահմանադրութիւնը բոլորովին չոչնչացընեն. ուստի իրենց ծանոյց որ փոփո-խութիւններ ընելու իրաւունքը նոյն իսկ այն սահմանա-դրութեան մէջ բովանդակած է ու իրենց անոր վրայ ը-րած երդումով չիկորսուիր, հապա մանաւանդ կը հաս-տատուի։ Դեռ աս վէճը տեւած ատենը՝ պատգամաւոր-ներէն 80 հոգի՝ իբրեւ իրենց պաշտօնին մէջ հաստա-տուած՝ թագաւորէն պահանջեցին որ սահմանադրու-թիւնը տալէն ետքը մինչեւ Ապրիլ ամսոյն երեքն ըրած խոստմունքներն իբրեւ սահմանադրութեան ամբողջացու-ցիչ մասերը հրատարակէ։ Թագաւորն աս բանս ընդու-նելու եւ հաստատելու յօժարութիւն ու պատրաստութիւն կը ցուցընէր. սակայն քաղքին մէջ երեւցած ապստամբա-կան նշանները, այսինքն ճամբաներուն վրայ պատնէշներ (barricade) շինելն ու արմատականաց կողմնակիցներուն զէնքերով անոնց վրայ երեւնալը՝ չէ թէ միայն իր միտքը փոխել տուին, հապա նա եւ պատգամաւորներն ալ իրենց կեանքը վտանգի մէջ տեսնելով՝ խորհուրդնին ընդհա-տեցին ու ցրուեցան։ Աս ապստամբական գործքերն ար-մատականաց կամ Մածծինեանց հնարքն էր, որոնք

զատեցին առին։ Այս կռիւը 24 ժամ քշեց, Հելլենատացիներէն 28 հոգի սպաննուեցան ու 174 հոգի վիրաւորուեցան. իսկ Թագաւորական անձնապահներէն միայն երկու հոգի սպաննուեցան ու 18 հոգի վիրաւորուեցան։ Դոլետոյի ճամբան կորանցընելէն ետքը՝ ոմն ապստամբները կամ Մածծինեանք պատերազմելէն դադրեցան։

Զինուորական կռիւը լմննալէն ու զինուորները ետ քաշուելէն ետքը՝ սկսաւ Լածծարոններուն կատաղութեան գործքերն ու արիւնհեղութիւնները ճամբաներուն վրայ ու տուներուն մէջ։ Պատերազմի ատեն քանի մը մեծ պալատներ կրակ առած ըլլալով՝ ահագին հըրդեհին լոյսն ամէն դի տարածուած էր. այս խառնակութեան մէջ Լածծարոններն անթիւ բազմութեամբ սադին անդին ցրուելով՝ տները կը մտնէին, գանձնին կը յափշտակէին, առջեւնին ելլողները կը զարնէին կը մեռցընէին։ Կառավարութիւնն ասոնց ամենեւին արգելք չէր դներ, որպէս զի քաղքին մէջ ըլլող ամէն ապստամբները հեղ մը տանկ բան արժանեյն պատժուելով ու զարհուրելով՝ զգաստանան ու յեղափոխական խորհուրդներէն հեռու կենան։ Բայց վերջապէս երբ որ Նէապոլսոյ նաւահանգստին մօտ կեցող գաղղիական նաւատորմղին Պօտէն հրամանատարը սպառնացաւ՝ որ եթէ արիւնհեղութեան ու աւարառութեան շուտով վերջ չտրուի, ինքն ալ կը սկսի քաղաքը ռմբակոծել, կառավարութիւնը Լածծարոնները յափշտակելէն ու ջարդելէն դադրեցուց եւ անկէց ետքը բոլոր մայրաքաղաքը հանդարտեցաւ։ Այս երկու երեք օրուան կռիւներուն մէջ մեռնողներուն թիւը 1753ի կը հասնի։ Նոյն միջոցին Գալաբրիայի մէջ ելած ապստամբութիւնն ալ Թագաւորական զօրաց վրայ հասնելովը՝ կարճ պատերազմէ մը ետքը՝ բոլորովին զսպուեցաւ ու վերջացաւ։

Ցամաք երկրին վրայ ազատամիտները կամ արմատականք բոլորովին յաղթուելէն ետքը՝ ապագային պահուած զօրաց գնդերը լուծուեցան, որովհետեւ տակաւ չէ թէ միայն ազատամիտներուն օգնականներն եղած էին, այլ եւ ուրիշ կողմանէ ալ օգտակար ծառայութիւն մը չէին ըներ. բոլոր մայրաքաղաքն ալ պատերազմական օրինաց տակ դրուեցաւ: Պատերազմէն առաջ դրուած պաշտօնեաները մերժուեցան ու անոնց տեղ ինքը Թագաւորը նոր պաշտօնեաներ անուանեց եւ անոնց գահերէց դրաւ Գարիկալի իշխանը: Նա եւ պատգամաւորաց սենեակը լուծուեցաւ ու Լոմպարտիա խաւրուած ազատակամ գնդերը Թագաւորին հրամանովը ետ կանչուեցան: Մի եւ նոյն ատեն Թագաւորը հրաման հանեց որ պատգամաւորաց սենեակը Յունիսի 1ին ժողվուի եւ միանգամայն սահմանեց՝ որ նոր պատգամաւորներուն ընտրութիւնն առջի հեղուան պէս չըլլայ, հապա օրինաւոր կարգով ու ազատութեամբ:

Անկից ետքը Թագաւորն իր բոլոր մտադրութիւնն ու փոյթը Սիկիլիա կղզւոյն վրայ դարձուց ու անիկայ ալ հնազանդեցընելու եւ կարգի բերելու միջոցները ձեռք առաւ: Սիկիլիայի յեղափոխական կառավարութիւնը (Յուլ. 11.) Բալերմոյի մէջ խորհուրդ ընելով՝ Սարտինիայի Թագաւորին երկրորդ որդին Փերդինանդոս Գենուայի դուքսը՝ Սիկիլիայի Թագաւոր ընտրեցին ու իրեն նոր անուն տուին Ալբերդոս Ամադէոս: Երբ որ աս ընտրութիւնը նոյն դքսին առանձին պատգամաւորութեամբ ծանուցուեցաւ, դուքսը պատասխանեց՝ որ պէտք է սպասել մինչեւ որ խաղաղութիւնը հաստատուի ու անկից ետքը հաստատուն որոշում մ'ընել: Նէապոլոյ Թագաւորն աս բաներն իմանալէն ետքը՝ ալ շուտ մը սկսաւ զօրաւոր բանակ մը պատրաստել՝ Սիկիլիացիները զինաց

զօրութեամբ իր իշխանութեան տակ բռնելու համար։ Իսկ Սիկիլիայի յեղափոխական կառավարութեան Ռուճ-ճերոյ Սեդդիմոյ գահերէցը կղզին ամրացընելու համար յայտարարութիւն հանեց, որով կղզւոյն ամէն բնակիչքն ալ հաւասարակ կը յորդորէր՝ որ զէնք առնեն ու ամէն կերպիւ պաշտպանութիւն իրենց ազատութիւնն ու իրենց ընտրած նոր Թագաւորին գահը պաշտպանելու համար։ Եւ որովհետեւ կառավարութիւնն այսպիսի պատերազմի մը հարկաւոր եղած դրամը չունէր. անոր համար (Յուլ. 31.) բոլոր Յիսուսեանները կղզիէն աքսորեց, ու անոնց ամէն ստացուածները գրաւեց, բայց այս կողմանէ ձեռք բերել յուսացած հարստութիւնը չգտաւ։

Թագաւորն ալ հեռու ամէն զօրութեամբ կղզւոյն գործքը լմնցընելու համար՝ իր զօրքին ընտիր մասը հոն խաւրել ուզեց։ Աս զօրքերը Գալապրիայի Ռեճիոյ քա-ղաքէն ետեւէ ետեւ ժողվուելէն ետքը, երբ որ (Սեպտ. 2.) 20,000 զօրաց բանակ մը պատրաստուեցաւ՝ անուանի Ֆիլանճերի զօրապետին հրամանին տակ ամէնն ալ նաւ մտան ու սկսան դէպ ի Մեսսինա յառաջ երթալ, որովհետեւ տէրութիւնը կ'ուզէր ամէն առջէն առաջ աս քաղաքն առնուլ։ Մեսսինացիք ամէն միջոցները բանե-ցուցին քաղաքն լաւ կարգի ամրացընելու, նոր պատնէշ-ներ շինուեցան, ականներ փորուեցան ու բոլոր քաղաքն անառիկ ամրոց մը եղաւ։ Յառաջագոյն հոն խաւրուած Նէապոլսեցի զօրքը քաղքին բերդին մէջ դեռ ամրացած կեցած էին։ Թագաւորին կողմանէ նորէն առաջարկու-թիւն եղաւ Մեսսինացւոց՝ մեծ կորուստ մ'ընելէն ա-ռաջ անձնատուր ըլլալու. բայց երբ որ անոնք ամէն ա-ռաջարկութիւնները մերժեցին, (Սեպտ. 3.) նաւերէն ու բերդէն սկսան քաղաքը գնդակոծել. ան որ 24 ժամ անդադար շարունակուեցաւ։ Այսչափ ժամանակի մէջ

20,000ի չափ ռումբեր ու հրալից փամփուշտներ (raquette) քաղքին վրայ արձակուելէն ետքը, վերջապէս զօրքը Նաւերէն ցամաք ելան ու (Սեպտ. 6.) սկսան քաղքին վրայ յարձակում ընել: Աս յարձակումը սաստիկ պատերազմով առաւօտընէ մինչեւ իրիկուն քշեց. երկրորդ օրն ալ նոյն սաստկութեամբ շարունակեցաւ. ու երբ որ Հելուետացի քաջ գունդերը անառիկ բերդի մը պէս ամրացած Մագդաղենացւոց վանքին առին, ու Մեսսինացւոց բոլոր ուժն ու քաջութիւնը կոտրեցաւ ու նոյն օրը Թագաւորական զօրքը քաղաքին տիրեց: Բնակչաց շատերը տեսնելով որ քաղաքը ստուգիւ Թագաւորականաց ձեռքը պիտի իյնայ, յառաջագոյն ամէն ստացուածնին՝ կրցածնուն չափ ժողվելով՝ առած փախած էին: Հրալից փամփուշտներէն պատճառուած հրդեհը հազիւ երկու օրէն ետքը կարելի եղաւ մարել: Անկէց ետքը Նէապոլսեցի զօրքը սկսաւ ամէն դի աւար ժողվել ու թալլել եւ առջեւը եկողը ջարդել. որովհետեւ Մեսսինացիք ալ պատերազմի ատեն իրենց ձեռքն իյնող Նէապոլսեցիները չլսուած տանջանքներով սպաննած էին: Այսպէս Սիկիլիացւոց ամենէն աւելի զօրաւոր ամրոցն ու քաղաքն առնուելէն ետքը, Նէապոլսեցիք բոլոր Սիկիլիա շուտով օրինաւոր Թագաւորին իշխանութեան տակ կը հնազանդեցընէին, եթէ քիչ մը Գաղղիայի բայց աւելի Անգղիայի կողմանէ Սիկիլիացիները պաշտպանութիւն գտած չըլլային: Ասոնց Բէրքըր ծովապետն ու Գաղղիացւոց Պոտէն ծովապետը, ինչպէս նաեւ անոնց դեսպանները Թէնփլ ու Լորտ Նէբիէր, ամէն միջոցներն ի գործ դրին որ Սիկիլիայի անկախութիւնը պաշտպանելու քիչ մը ժամանակ ալ միջոց ու դիւրութիւն գտնուի: Վերջապէս իրենց հնարքներովը յաջողեցուցին՝ որ զինադադար ըլլայ. միանգամայն

Սիկիլիայի երկրին վրայ սահմաններ որոշելով՝ անոր մեծ մասը կղզեցւոց իշխանութեան տակ ձգել տուին, իսկ Նէապոլսեցւոց ձեռքը միայն Մեսինա գաւառին երկիրը թողուցին։

Բոլոր զինադադարին ժամանակը Թագաւորը ջանաց Սիկիլիացւոց յամառութիւնը կակղցընել ու զիրենք շահիլ, իրենց այլ եւ այլ շնորհքներ ու ազատութիւններ խոստանալով, որչափ որ միապետական տէրութեան ամբողջութեան վնաս չէր ըլլար. մինչեւ՝ ինչպէս յառաջ ալ խոստացած էր՝ որոշեց որ Սիկիլիա իր առանձին կառավարութիւնն ու դատաստանական կարգերն ունենայ։ Բայց Սիկիլիացիք իրենց զօրութեան վրայ ունեցած վստահութենէն կուրնալով ու Նէապոլսեցւոց դէմ սըրտերնուն մէջ միշտ բորբոքող ատելութենէն գրգռուելով, բոլոր ան շնորհքներն ու խոստմունքները մերժեցին։ Աս յամառութեան մէջ զիրենք աւելի եւս հաստատեց Միերոսլաւսքի լեհ զօրապետը, որն որ թէպէտ եւ զինուորական քաջութիւն ու հմտութիւն մը չէր ցուցըցած, ինչպէս տեղեակ ըլլողները կը վկայեն, սակայն այնպիսի հնարքներ բանեցուց՝ որ բոլոր Սիկիլիայի 20,000 զօրաց բանակին հրամանատար դրուեցաւ։ Եւ թէպէտ թագաւորական զօրաց թիւն ալ նոյնչափ էր, սակայն Սիկիլիացիք իրենց քաջութեան վրայ յիմարութեամբ վստահանալով, Թագաւորականաց ծանուցին որ 1849 Մարտի 29ին զինադադարը լմնցած է ու կ'ուզեն պատերազմը սկսիլ։

Ասոր վրայ Թագաւորական զօրաց վերին հրամանատարը Ֆիլանճերի իր զօրքը Եանա լերան տակ ըլլող Գադանիա քաղաքին վրայ քալեցուց, որովհետեւ Միերոսլաւսքի ալ բոլոր իր ուժը հոն կեդրոնացուցած ու քաղաքն ամրացուցած պատրաստ կը կենար։ Հոն կռիւը

սկսան (Ապր. 6.) Նէապոլսեցի գնդերը. իսկ Հելուետացի գնդերն իբրեւ պահեստի զօրք ի սկզբան կռուոյ մէջ չմտան: Մինչեւ իրիկուն կատաղութեամբ պատերազմելէն ետքը, Նէապոլսեցիք տկարանալով՝ սկսան խառն ի խուռն ետ քաշուիլ. մէյ մ՚ալ Հելուետացի քաջերը զէնքերնին բանեցընելու սկսան. Ասոնք հազիւ երեք ժամ պատերազմեցան, եւ Գաթանիա քաղաքը յաղթուեցաւ, թագաւորականաց ձեռքն ինկաւ: Աս յաղթութենէն ետքը՝ ալ ետեւէ ետեւ միւս գաւառներն ու քաղաքները թագաւորական զօրաց անձնատուր կ՚ըլլային: Այսպէս զօրքը յաղթանակաւ յառաջ երթալով՝ Բալերմոյ քաղաքին կը մօտենար: Աս քաղաքին մէջ ազհեստաւորաց ակումբներն ու ազգային պահապանները կ՚ուզէին առանց պատերազմելու անձնատուր ըլլալ. իսկ աղքատ ժողովուրդն իր յուսահատած առաջնորդներէն գրգռուելով՝ կ՚ուզէր որ պատերազմը յառաջ տարուի: Ֆիլանճերի աս միջոցին իր չուն յառաջ տանելով՝ դէպ ի քաղաքը կը քալէր. ու քանի որ զօրքը կը մօտենար՝ քաղաքին մէջ պատերազմ ուզողներուն թիւը կը քիչնար. վերջապէս անձնատուր ըլլալ բաղձացողներուն կարծիքը յաղթելով՝ ասոնց գլխաւորները քաղաքին բանալիները բերին Ֆիլանճերիին տուին ու քաղաքը յանձնեցին: Այսպէս կռիւները դադրելով՝ թագաւորական զօրքը, որուն թիւը 16,000ի կը հասնէր, 1849. Մայիսի 15ին. այսինքն Նէապոլսոյ ապստամբութեան բոլորովին զսպուելուն տարեդարձին օրը՝ յաղթանակաւ Բալերմոյ մտաւ. ու Ֆերդինանդոս Բ. թագաւորն իր տէրութեան աս մասն ալ, որ է Սիկիլիա կղզին, իր իշխանութեան տակ առաւ: Ապստամբաց ու յեղափոխականաց գլխաւորները կղզիէն թողուցին փախան ու Մալթա կղզւոյն վրայ իրենց ապահովութիւնը գտան:

Սիկիլիա կղզւոյն յաղթուելովը ու իր օրինաւոր թագաւորին հնազանդելովը՝ Իտալիոյ ուրիշ կողմերուն յեղափոխութեան միտք մը չեղաւ, որովհետեւ Սիկիլիացւոց իրողութիւններն իբր առանձինն իրենց մէջ ծնած ու գործադրուած փորձ մըն էր։ Բայց Իտալիոյ յեղափոխականաց կամ Մածծինեանց, որ է Հասարակապետութիւն հիմնել ուզողներուն կողմնակցութիւնը Սիկիլիոյ վրայ ջանք մը չէր ցուցըրած. իր բոլոր մտադրութիւնը, ջանքն ու գաղտնութիւնները Միջին Իտալիոյ տէրութիւններուն Հռոմայ ու Տոսկանայի վրայ ուղղած էր։ Այն հասարակապետականաց գլուխն ու առաջնորդը Մածծինի աս երկու տէրութեանց մէջ անդադար ճամբորդութիւն կ'ընէր, մէյ մը Փլորենտիա կ'երթար, մէյ մը Հռոմ. ու ամէն միջոցները կը գործածէր յեղափոխութեան սերմը ցանելու, հասարակապետութեան խորհուրդն ամենուն մտքին մէջ զարթեցանելու եւ հաստատելու։ Փլորենտիայի մէջ հին ատենուան հասարակապետութեան յիշատակները բնակչաց միտքը յափշտակելով՝ անոր նման նոր հասարակապետութիւն մը հաստատելու շատ օգնեցին։ Մեծ դուքը չկրնալով բռնական ազդուութեամբ աս խորհուրդներն ու ջանքերը սպառապէս հանել, իսկ ժողովրդեան մէկ մասն իր խորամանկներէն գրգռուելով, միւս մասն ալ ամէն բանի համար անտարբեր ու անգործ կենալով, Մածծինեանք իրենց հնարքները դիւրութեամբ կը յաջողցընէին։ Քանի մը հեղ գլխաւոր պաշտօնեաները փոխուելէն ետքը՝ հասարակապետականաց հնարքներովը այնպիսի պաշտօնեաներ դրուեցան, որոնք անոնց կարծեկից ու օգնական էին, մանաւանդ երկուքը՝ Մոնդանելլի ու Գուերացցի, եւ ատանկով հասարակապետական կառավարութիւն մը հիմնելու ճամբայ բացուեցաւ։

Հռոմայ կամ քահանայապետական երկրին անցքերուն պատմութիւնը վերը մինչեւ քահանայապետին (1848. Մարտ 14.) իր հպատակաց սահմանադրութիւն մը տալը հասուցինք։ Անկէց ետքը Մածծինեանք կամ հանրապետականք աւելի եւս համարձակութիւն առնելով՝ օրէ օր զքահանայապետն այլ եւ այլ միջոցներով կը ստիպէին իրենց պահանջմունքները կատարել։ Ասանկով Հռոմայ իրերն երթալով աւելի եւս կը խառնակէին, քահանայապետն աստիճան աստիճան աւելի մեծ նեղութեան մէջ կ'իյնար ու մեծամեծ փոթորիկներ կը պատրաստուէին։ Աս ամէն յեղափոխական երեւոյթներուն ընթացքը Վերին Իտալիայ, մանաւանդ Լոմբարդիայ ու Վենետիկի յեղափոխական անցքերուն համեմատ յառաջ երթալուն, ըստ կարգի ժամանակին յառաջ Վերին Իտալիայ դէպքերը պէտք ենք ստորագրել։

Վիեննայի (1848. Մարտ 13.) յեղափոխութեան լուրը քիչ ատենուան մէջ աւստրիական տէրութեան ամէն մասերուն, ուստի եւ Ալպեանց միւս կողմը՝ Իտալական երկիրները՝ Լոմբարտեան-Վենետական թագաւորութիւնն ալ կայծակի պէս հասաւ, եւ ամէն դի այլ եւ այլ պարագայից եւ բնակչաց պատրաստութեան համեմատ՝ իր ազդեցութիւնն ըրաւ։ Աւստրիական Իտալիայ մէջ ի սկզբանէ հետէ երկու կողմնակցութիւնք կային, որոնք միշտ իրարու հակառակ մնալով ալ՝ կրնային հիմայ միաբանիլ ու աւելի եւս յաջողութեամբ տէրութեան դէմ գլուխ վերցընել։ Աս կողմնակցութեանց մէկը երկրին ազնուականներէն, դքսերէն, իշխաններէն ու կոմսերէն կազմած էր, իսկ մէկալը բոլոր Մածծինեաններէն։ Աս վերջինները իրենց բաղձացած ռամկապետական հասարակապետութիւնը միայն Աւս-

որևայի իշխանութիւնը Իտալիոյ վրայէն բոլորովին ջնջելէն ետքը կրնային կանգնել. ուստի եւ ամէն հնարքներով ու զօրութեամբ անոր դէմ կռուելու եւ անոր զօրութիւնն Իտալիոյ մէջ տկարացնելու կ՚աշխատէին: Առաջին կամ ազնուականաց կողմնակցութիւնն ալ թէպէտ եւ Աւստրիայի տէրութեան Իտալիոյ վրայէն վերցուիլը կ՚ուզէր, բայց ռամկապետականաց հետ բոլորովին միաբանիլն ալ իր ամէն հին ու իշխանական կամ ազնուապետական իրաւունքներէն ետ կենալը պահանջելուն, չէր կրնար արձակ համարձակ անոնց հետ եղբայրակցութիւն ընել: Սակայն վերջապէս բաւ մասին անոնց հետ միացաւ, որպէս զի այնուհետեւ գոնէ առանց խիստ օրինաց տակ ըլլալու եւ առանց կարեւոր բարձրագոյն եւ ուսումնական կրթութեան՝ ինչպէս աւստրիական օրէնքները կը պահանջէին՝ հանգիստ ու զուարճալի կեանք մը անցընէ:

Դեռ ժողովրդեան մէջ խռովութեան ձայները չատատկացած կայսեր հօրեղբայրը՝ Ռայներ արքիդուքսը, որ աւստրիական Իտալիոյ փոխարքան էր, (Մարտ. 17. Միլանէն ելաւ գնաց, ու նոյն օրն իրիկուան Վիեննայի յեղափոխութեան յաջողելուն լուրը հոն տարածուելով՝ ժողովուրդը բարձրաձայն աղաղակներով իր ուրախութիւնը սկսաւ յայտնել ու յեղափոխութիւնը խափանել ուզողներուն դէմ նախատական ցոյցեր ընել: Կառավարութիւնը շուտ մը կայսեր իր իտալացի հպատակաց քանի մը բանի մէջ իրենց բաղձանաց համեմատ տուած ազատութիւնները հրատարակեց, որոնց մէկն էր ազգային պահպան կամ քաղաքային զօրաց գունդեր կազմել: Միլանցիք կայսեր ու Գերմանացւոց դէմ ունեցած ատելութիւնն ու այսպիսի շնորհմունքներով հաշտուելու կամք չունենալնին ցուցընելու համար պատե-

ռաջնորդներին այսպիսի պատրաստութիւններէն ետքը ալ յայտնի սկսան երեւալ ու գործել. իրենց մէջ անուանի ազնուականներ ալ կային, Գազադի Միլանի քաղաքապետը, Լիդդա իշխանը, Պորձիա, Բոռրոյ, Կուիչչարտի, Տուրինի ու Պոռռոմէոյ կոմսերը, Կուերրիերի փաստաբանն ու Լեգգի սպարապետը, որն որ յեղափոխականաց զինուորական գործքերուն գլուխն էր։ Կայսերական զօրաց թիւը Միլանի մէջ հազիւ 15,000ի կը հասնէր. բայց անոնց գլուխն ու հրամանատարն էր 82 տարեկան քաջ ծերունին Ռատեցքի կոմս սպարապետը, որն որ իր 65 տարեկան զինուորական ծառայութեամբն ու քաջութիւններովը մեծ անուն ստացած էր, եւ իր քաղցր վարմունքովն իր զինուորներուն սիրտը շահած ըլլալով, ուր որ ինք կը տեսնուէր ու կը հրամայէր՝ զինուորներն աւելի պէս թշնամեաց դէմ կը վազէին ու բերդերու վրայ կը յարձակէին Կեցցէ՛ մեր սպարապետը պոռալով։

Յեղափոխութիւնը կամ ապստամբութիւնը Միլանի մէջ քանի մը ցոյցերով սկսելէն ետքը՝ Մարտի 18ին ամենայն սաստկութեամբ բորբոքեցաւ։ Յեղափոխականք զինուած՝ աստին անդին կը ցրուէին, եւ ուր որ սակաւաթիւ զինուորներ կը գտնէին՝ չարաչար կը զարնէին կը մեռցնէին։ Արդէն ամէն դի ճամբաներուն վրայ պատնէշներ շինուած էին. բայց ապստամբներն իրենց մէջ հաստատած էին որ երբ որ կայսերական զօրքը նոյն պատնէշներուն մէկուն վրայ յարձակելու ըլլայ, անոնց վրայ ըլլողները զինուորաց հետ չզարնուին, հապա մօտիկ տուները փախչելով՝ հոնկից պատերազմին։ Ուստի կայսերական զօրաց մաս մը տեսնուած ատենը իրենք տուները կը մտնէին ու անոնց մէջէն զինուորներուն վրայ քարեր, կաւ կտորտանք ու նոյն խոկ տուներուն

գիտնալով որ սահմանադրութիւնն երկու սենեակներուն խորհրդոյն ու երդմամբը հաստատուելու որ ըլլայ, ա՛լ իրենց հնար չ՚ըլլար Հասարակապետութիւն հիմնելու, անոր համար իրենց գաղտնի ժողովը հրաման տուած էր ազգային պահապանաց գնդերուն, որոնց մեծ մասն իրենց կողմը շահած էին, որ պատնէշներ շինեն եւ պատերազմի պատրաստ կենան՝ զանոնք սուտ յուսով խաբելով որ Նաւահանգիստը կեցող Գաղղիայի նաւատորմիղն իր Թնդանօթներուն գնդակներովը ժողովրդեան օգնելու պատրաստ է։

Իսկ Թագաւորն իր հաւատարիմ զօրքը, այսինքն Հելուետացւոց գնդերն ու Թագաւորական անձնապահները, իր պալատին առջեւն ըլլող ընդարձակ հրապարակներուն վրայ ժողված էր։ Երկրորդ օրը (Մայ. 15.) առտու չեղած՝ պատնէշներուն վրայէն ապստամբները սկսան Թագաւորական զօրաց վրայ հրացաններ արձակել։ Թագաւորին պալատէն՝ Թոլետոյի փողոց ըսուած ճամբան՝ քաղաքը ծայրէ ծայր երկու կը բաժնէ. աս ճամբան ապստամբներն աղէկ ամրացուցած էին ու տուներուն ամէն դատիկոններուն առջեւն եղած պատշգամբներն ալ նոյնպէս պատերազմին օգնելու վիճակի մէջ էին։ Թագաւորական զօրքը մեծ նեղութեան ու դժուարութեան մէջ կը գտնուէր աս ճամբուն վրայ պատերազմած ատենը, եւ սակայն ապստամբաց յաղթելու համար պէտք էր նոյն ճամբան անոնցմէ առնուլ. աս նշանաւոր քաջութեան գործքը Հելուետացի գունդերուն պահուած էր։ Ասոնք մէկ երկու հեղ պատնէշներուն ու տուներուն վրայ յարձակեցան, բայց առանց յաղթելու հարկադրեցան ետ քաշուիլ։ Սակայն նոր զօրութեամբ ու քաջութեամբ հեղ մ՚ալ սաստիկ յարձակում մ՚ընելով՝ վերջապէս նոյն ճամբան ապստամբաց ձեռքէն ա-

զատեցին առին։ Այս կռիւը 24 ժամ քշեց, Հելուետացիներէն 28 հոգի սպաննուեցան ու 174 հոգի վիրաւորուեցան. իսկ Թագաւորական անձնապահներէն միայն երկու հոգի սպաննուեցան ու 18 հոգի վիրաւորուեցան։ Դոլէտոյի ճամբան կորսնցընելէն ետքը՝ ալ ապստամբները կամ Մածծինեանք պատերազմելէն դադրեցան։

Զինուորական կռիւը լմննալէն ու զինուորները ետ քաշուելէն ետքը՝ սկսաւ Լածծարոնիներուն կատաղութեան գործքերն ու արիւնհեղութիւնները ճամբաներուն վրայ ու տուներուն մէջ։ Պատերազմի ատեն քանի մը մեծ պալատներ կրակ առած ըլլալով՝ ահագին հըրդեհին լոյսն ամէն դի տարածուած էր. աս խառնակութեան մէջ Լածծարոնիներն անթիւ բազմութեամբ ասդին անդին ցրուելով՝ տները կը մտնէին, գտածնին կը յափշտակէին, առջեւնին ելողները կը զարնէին կը մեռցընէին։ Կառավարութիւնն ասոնց ամենուն արգելք չէր դներ, որպէս զի քաղքին մէջ ըլլող ամէն ապստամբները հեղ մը ասանկ ըստ արժանւոյն պատժուելով ու զարհուրելով՝ զգաստանան ու յեղափոխական խորհուրդներէն հեռու կենան։ Բայց վերջապէս երբ որ Նէապոլսոյ նաւահանգստին մօտ կեցող գաղղիական նաւատորմղին Պոտէն հրամանատարը սպառնացաւ՝ որ եթէ արիւնհեղութեան ու աւարառութեան շուտով վերջ չտրուի, ինքն ալ կը սկսի քաղաքը գնդակոծել, կառավարութիւնը Լածծարոնիները յափշտակելէն ու ջարդելէն դադրեցուց եւ անկից ետքը բոլոր մայրաքաղաքը հանդարտեցաւ։ Այս երկու երեք օրուան կռիւներուն մէջ մեռնողներուն թիւը 1753ի կը հասնի։ Նոյն միջոցին Գալապրիայի մէջ ելած ապստամբութիւնն ալ Թագաւորական զօրաց վրայ հասնելովը՝ կարճ պատերազմէ մը ետքը՝ բոլորովին զսպուեցաւ ու վերջացաւ։

Յամենայն երկրին վրայ ապստամբները կամ արշաւականք բոլորովին յաղթուելէն ետքը՝ ազգային պաշտպան զօրաց գնդերը լուծուեցան, որովհետեւ անոնք չէ թէ միայն ապստամբներուն օգնականներն եղած էին, այլ եւ ուրիշ կողմանէ ալ օգտակար ծառայութիւն մը չէին ըներ. բոլոր մայրաքաղաքն ալ պատերազմական օրինաց տակ դրուեցաւ։ Պատերազմէն առաջ դրուած պաշտօնեաները փոխուեցան ու անոնց տեղ իրեն թագաւորը նոր պաշտօնեաներ անուանեց եւ անոնց դահերէց դրաւ Գաբրիէլ իշխանը։ Նա եւ պատգամաւորաց սենեակը լուծուեցաւ ու Լոմպարտիա խրկուած ազատակամ գնդերը թագաւորին հրամանովը ետ կանչուեցան։ Մի եւ նոյն ատեն թագաւորը հրաման հանեց որ պատգամաւորաց սենեակը Յուլիսի 1ին ժողովուի եւ միանգամայն սահմանեց՝ որ նոր պատգամաւորներուն ընտրութիւնն առջի հեղուան պէս չըլլայ, հապա օրինաւոր կարգով ու ազատութեամբ։

Ասկից ետքը թագաւորն իր բոլոր մտադրութիւնն ու փոյթը Սիկիլիա կղզւոյն վրայ դարձուց ու անիկայ ալ հնազանդեցընելու եւ կարգի բերելու միջոցները ձեռք առաւ։ Սիկիլիայի յեղափոխական կառավարութիւնը (Յուլ. 11.) Բալերմոյի մէջ խորհուրդ ընելով՝ Սարդինիայի թագաւորին երկրորդ որդին Փերդինանդոս Գենուայի դուքսը՝ Սիկիլիայի թագաւոր ընտրեցին ու իրեն նոր անուն տուին Ալպերդոս Ամադէոս։ Երբ որ աս ընտրութիւնը նոյն դքսին առանձին պատգամաւորութեամբ ծանուցուեցաւ, դուքսը պատասխանեց՝ որ պէտք է սպասել մինչեւ որ խաղաղութիւնը հաստատուի ու անկից ետքը հաստատուն որոշում մ'ընել։ Նէապոլսոյ թագաւորն աս բաներն իմանալէն ետքը՝ ալ շուտ մը սկսաւ զօրաւոր բանակ մը պատրաստել՝ Սիկիլիացիները զինաց

զօրութեամբ իր իշխանութեան տակ խոթելու համար։ Իսկ Սիկիլիոյ յեղափոխական կառավարութեան Ռուճ-ճերոյ Սեդդիմոյ գահերէցը կղզին ամրացընելու համար յայտարարութիւն հանեց, որով կղզւոյն ամէն բնակիչքն ալ հասարակ կը յորդորէր՝ որ զէնք առնեն ու ամէն կերպիւ պաշտպանուին իրենց ազատութիւնն ու իրենց ընտրած նոր թագաւորին գահը պաշտպանելու համար։ Եւ որովհետեւ կառավարութիւնն այսպիսի պատերազմի մը հարկաւոր եղած դրամը չունէր. անոր համար (Յուլ. 31.) բոլոր Յիսուսեանները կղզիէն աքսորեց, ու անոնց ամէն ստացուածները գրաւեց, բայց այս կողմանէ ձեռք բերել յուսացած հարստութիւնը չգտաւ։

Թագաւորն ալ հեղու ամէն զօրութեամբ կղզւոյն գործքը լմնցընելու համար՝ իր զօրքին ընտիր մասը հոն խաւրել ուզեց։ Աս զօրքերը Գալաբրիայի Ռեճիոյ քա-ղաքն ետեւէ ետեւ ժողվուեցան եղեր, երբ որ (Սեպտ. 2.) 20,000 զօրաց բանակ մը պատրաստուեցաւ՝ անուանի Ֆիլանճերի սպարապետին հրամանքին տակ ամէնն ալ նաւ մտան ու սկսան դէպ ի Մեսսինա յառաջ երթալ, որովհետեւ տէրութիւնը կ'ուզէր ամէն առջէն առաջ աս քաղաքն առնուլ։ Մեսսինացիք ամէն միջոցները բանե-ցուցին քաղաքն ըստ կարի ամրացընելու, նոր պատնէշ-ներ շինուեցան, ականներ բացուեցան ու բոլոր քաղաքն անառիկ ամրոց մը եղաւ։ Յառաջագոյն հոն խաւրուած նէապոլսեցի զօրքը քաղքին բերդին մէջ դեռ ամրացած կեցած էին։ Թագաւորին կողմանէ նորէն առաջարկու-թիւն եղաւ Մեսսինացւոց՝ մեծ կոտորած մ'ընելէն ա-ռաջ անձնատուր ըլլալու. բայց երբ որ անոնք ամէն ա-ռաջարկութիւնները մերժեցին, (Սեպտ. 3.) նաւերէն ու բերդէն սկսան քաղաքը ռմբակոծել. որն որ 24 ժամ անընդհատ շարունակուեցաւ։ Այսչափ ժամանակի մէջ

20,000ի չափ ռումբեր ու հրալից փամփուշտներ (raquette) քաղաքին վրայ արձակուելէն ետքը, վերջապէս զօրքը նաւերէն ցամաք ելան ու (Սեպտ. 6.) սկսան քաղաքին վրայ յարձակում ընել: Աս յարձակումը սաստիկ պատերազմով առաւօտէն մինչեւ իրիկուն քշեց. երկրորդ օրն ալ նոյն սաստկութեամբ շարունակեցաւ. ու երբոր Հելուետացի քաջ գունդերը անուանի բերդի մը պէս ամրացած Մագդաղենացւոյն վանքն առին, ալ Մեսսինացւոց բոլոր ուժն ու քաջութիւնը կոտրեցաւ ու նոյն օրը թագաւորական զօրքը քաղաքին տիրեց: Բնակչաց շատերը տեսնելով որ քաղաքը ստուգիւ թագաւորականաց ձեռքը պիտի իյնայ, յառաջագոյն ամէն ստացուածնին՝ կրցածնուն չափ ժողվելով՝ առած փախած էին: Հրալից փամփուշտներէն պատճառած հրդեհը հազիւ երկու օրէն ետքը կարելի եղաւ մարել: Անկից ետքը Նէապոլսեցի զօրքը սկսաւ ամէն դի աւար ժողվել ու թալլել եւ առջեւը եկողը ջարդել. որովհետեւ Մեսսինացիք ալ պատերազմի ատեն իրենց ձեռքն իյնող Նէապոլսեցիները չլսուած տանջանքներով սպաննած էին: Այսպէս Սիկիլիացւոց ամենէն աւելի զօրաւոր ամրոցն ու քաղաքն առնուելէն ետքը, Նէապոլսեցիք բոլոր Սիկիլիա շուտով օրինաւոր թագաւորին իշխանութեան տակ կը հնազանդեցընէին, եթէ քիչ մը Գաղղիայի բայց աւելի Անգղիայի կողմանէ Սիկիլիացիները պաշտպանութիւն գտած չըլլային: Ասոնց Բէրքըր ծովապետն ու Գաղղիացւոց Պոտէն ծովապետը, ինչպէս նա եւ անոնց դեսպանները Ռէնվալ ու Լորտ Նէբիէր, ամէն միջոցներն ի գործ դրին որ Սիկիլիայի անկախութիւնը պաշտպանելու քիչ մը ժամանակ ալ միջոց ու դիւրութիւն գտնուի: Վերջապէս իրենց հնարքներովը յաջողեցուցին՝ որ զինադադար ըլլայ. միանգամայն

Սիկիլիայի երկրին վրայ սահմաններ որոշելով՝ անոր մեծ մասը կղզեցւոց իշխանութեան տակ ձգելու էին, իսկ Նէապոլսեցւոց ձեռքը միայն Մեսինա գաւառին երկիրը թողուցին։

Բոլոր զինադադարին ժամանակը թագաւորը ջանաց Սիկիլիացւոց յամառութիւնը կակղցընել ու զիրենք շահիլ, իրենց այլ եւ այլ շնորհքներ ու ազատութիւններ խոստանալով, որչափ որ միապետական տէրութեան ամբողջութեան վնաս չէր ըլլար. մինչեւ՝ ինչպէս յառաջ ալ խոստացած էր՝ որոշեց որ Սիկիլիա իր առանձին կառավարութիւնն ու դատաստանական կարգերն ունենայ։ Բայց Սիկիլիացիք իրենց զօրութեան վրայ ունեցած վստահութենէն կուրնալով ու Նէապոլսեցւոց դէմ սըրտերնուն մէջ միշտ բորբոքող ատելութենէն գրգռուելով, բոլոր այն շնորհքներն ու խոստմունքները մերժեցին։ Այս յամառութեան մէջ զիրենք աւելի եւս հաստատեց Միերոսլաւսքի լեհ զօրապետը, որն որ թէպէտ եւ զինուորական քաջութիւն ու հմտութիւն մը չէր ցուցըցած, ինչպէս տեղեակ ըլլողները կը վկայեն, սակայն այնպիսի հնարքներ բանեցուց՝ որ բոլոր Սիկիլիայի 20,000 զօրաց բանակին հրամանատար գրուեցաւ։ Եւ թէպէտ թագաւորական զօրաց թիւն ալ նոյնչափ էր, սակայն Սիկիլիացիք իրենց քաջութեան վրայ յիմարութեամբ վստահանալով, թագաւորականաց ծանուցին որ 1849 Մարտի 29ին զինադադարը լմնցած է ու կ՚ուզեն պատերազմը սկսիլ։

Անոր վրայ թագաւորական զօրաց վերին հրամանատարը Ֆիլանճերի իր զօրքը Եանա լերան տակ ըլլող Գադանիա քաղքին վրայ քալեցուց, որովհետեւ Միերոսլաւսքի ալ բոլոր իր ուժը հոն կեդրոնացուցած ու քաղաքն ամրացուցած պատրաստ կը կենար։ Հոն կռիւը

սկսան (Ապր. 6.) Նէապոլսեցի գնդերը. իսկ Հելուետացի գնդերն իբրեւ պահեստի զօրք ի սկզբան կռուոյ մէջ չմտան: Մինչեւ իրիկուն կատաղութեամբ պատերազմելէն ետքը, Նէապոլսեցիք տկարանալով՝ սկսան խառն ի խուռն ետ քաշուիլ մէյ մ'ալ Հելուետացի քաջերը զէնքերնին բանեցընելու սկսան. Ասոնք հազիւ երեք ժամ պատերազմեցան, եւ Գադտանիա քաղաքը յաղթուեցաւ թագաւորականաց ձեռքն ինկաւ: Աս յաղթութենէն ետքը՝ ալ ետեւէ ետեւ միւս գաւառներն ու քաղաքները թագաւորական զօրաց անձնատուր կ'ըլլային: Այսպէս զօրքը յաղթանակաւ յառաջ երթալով՝ Բալերմոյ քաղաքին կը մօտենար: Աս քաղաքին մէջ ահեստաւորաց ակումբներն ու ազգային պահապանները կ'ուզէին առանց պատերազմելու անձնատուր ըլլալ. իսկ ատոր ժողովուրդն իր յուսահատած առաջնորդներէն գրգռուելով՝ կ'ուզէր որ պատերազմ յառաջ տարուի: Ֆիլանճերի աս միջոցին իր չուն յառաջ տանելով՝ դէպ ի քաղաքը կը քալէր. ու քանի որ զօրքը կը մօտենար՝ քաղաքին մէջ պատերազմ ուզողներուն թիւը կը քիչնար. վերջապէս անձնատուր ըլլալ բաղձացողներուն կարծիքը յաղթելով՝ ասոնց գլխաւորները քաղաքին բանալիները բերին Ֆիլանճերիին տուին ու քաղաքը յանձնեցին: Այսպէս կռիւները դադրելով՝ թագաւորական զօրքը, որուն թիւը 16,000ի կը հասնէր, 1849. Մայիսի 15ին. այսինքն Նէապոլսոյ ապստամբութեան բոլորովին զսպուելուն տարեդարձին օրը՝ յաղթանակաւ Բալերմոյ մտաւ. ու Ֆէրդինանդոս Բ. թագաւորն իր տէրութեան աս մասն ալ, որ է Սիկիլիա կղզին, իր իշխանութեան տակը առաւ: Ապստամբաց ու յեղափոխականաց գլուխները կղզին թողուցին փախան ու Մալթա կղզւոյն վրայ իրենց ապահովութիւնը գտան:

Սիկիլիա կղզւոյն յաղթութեամբ ու իր օրինաւոր թագաւորին հնազանդելովը՝ Իտալիայի ամբողջ կողմերուն յեղափոխութեան միտքն մը չեղաւ, որովհետեւ Սիկիլիացւոց իրաւունքներն իր ժամանակին իրենց մէջ ծնած ու զարգացած փոքր մըն էր։ Բայց Իտալիայի յեղափոխականաց կամ Մածծինեանց, որ է Հասարակապետութիւն հիմնել ուզողներուն կողմնակցութիւնը Սիկիլիոյի վրայ ջանք մը չէր ցուցուցած. իր բոլոր մտադրութիւնը, ջանքն ու դաւադրութիւնները Միջին Իտալիոյի տէրութիւններուն Հռոմայի ու Տոսկանայի վրայ ուղղուած էր։ Ամէն հասարակապետականաց գլուխն ու առաջնորդը Մածծինի ալ երկու տէրութեանց մէջ անդադար ճամբորդութիւն կ՚ընէր, մէյ մը Փլորենտիա կ՚երթար, մէյ մը Հռոմ. ու ամէն միջոցները կը գործածէր յեղափոխութեան սերմը ցանելու, հասարակապետութեան խորհուրդն ամենուն մտքին մէջ զարթուցանելու եւ հաստատելու։ Փլորենտիայի մէջ հին ատենուան հասարակապետութեան յիշատակները բնակչաց միտքը յափշտակելով՝ անոր նման նոր հասարակապետութիւն մը հաստատելու շատ օգնեցին։ Մեծ դուքսը չկրնալով բաւական արդարութեամբ աս խորհուրդներն ու ջանքերը պարապայի հանել, խել ժողովրդեան մէկ մասն իր խրատիչներէն գրգռուելով, միւս մասն ալ ամէն բանի համար անտարբեր ու անգործ կենալով, Մածծինեանք իրենց հնարքները դիւրութեամբ կը յաջողցընէին։ Քանի մը հեղ գլխաւոր պաշտօնեաները փոխուելէն ետքը՝ հասարակապետականաց հնարքներովն այնպիսի պաշտօնեաներ դրուեցան, որոնք անոնց կարծեկից ու օգնական էին, մանաւանդ երկուքը՝ Մոնդանելլի ու Կուերացցի, եւ առանց հասարակապետական կառավարութիւն մը հիմնելու ճամբայ բացուեցաւ։

Հռոմայի կամ քահանայապետական երկրին անց-քերուն պատմութիւնը վերը մինչեւ քահանայապետին (1848. Մարտ 14.) իր հպատակաց սահմանադրութիւն մը տալը հասուցինք։ Անկից ետքը Մածծինեանք կամ հասարակապետականք աւելի եւս համարձակութիւն առնալով՝ օրէ օր զքահանայապետն այլ եւ այլ միջոց-ներով կը ստիպէին իրենց պահանջմունքները կատարել։ Ասանկով Հռոմայի իրերն երթալով աւելի եւս կը խառ-նակէին, քահանայապետն աստիճան աստիճան աւելի մեծ նեղութեան մէջ կ'իյնար ու մեծամեծ փորձութիւններ կը պատրաստուէին։ Աս ամէն յեղափոխական երեւոյթ-ներուն ընթացքը Վերին Իտալիայի, մանաւանդ Լոմ-բարտիայի ու Վենետիկի յեղափոխական անցքերուն համեմատ յառաջ երթալուն, ըստ կարգի ժամանակին յառաջ Վերին Իտալիայի դէպքերը պէտք ենք ստո-րագրել։

Վիէննայի (1848. Մարտ 13.) յեղափոխու-թեան լուրը քիչ ատեննուան մէջ աւստրիական տէրու-թեան ամէն մասերուն, ուստի եւ Ալպեանց միւս կողմը՝ Իտալական երկիրները՝ Լոմբարտեան-Վենետական թա-գաւորութիւնն ալ կայծակի պէս հասաւ, եւ ամէն դի այլ եւ այլ պարագայից եւ բնակչաց պատրաստութեան համեմատ՝ իր ազդեցութիւնն ըրաւ։ Աւստրիական Իտա-լիայի մէջ ի սկզբանէ հետէ երկու կողմնակցութիւնք կային, որոնք միշտ իրարու հակառակ մնալով ալ՝ կըր-նային հիմայ միաբանիլ ու աւելի եւս յաջողութեամբ տէրութեան դէմ գլուխ վերցընել։ Աս կողմնակցու-թեանց մէկը երկրին ազնուականներէն, դքսերէն, իշ-խաններէն ու կոմսերէն կազմած էր, իսկ մէկալը բոլոր Մածծինեաններէն։ Աս վերջիններն իրենց բաղձացած ռամկապետական հասարակապետութիւնը միայն Աւս-

տրիայի իշխանութիւնը Իտալիայի վրայէն բոլորովին ջնջելէն ետքը կրնային կանգնել. ուստի եւ ամէն հնարքներով ու զօրութեամբ անոր դէմ կռուելու եւ անոր զօրութիւնն Իտալիայի մէջ տկարացընելու կ՚աշխատէին։ Առաջին կամ ազնուականաց կողմնակցութիւնն ալ Թէպէտ եւ Աւստրիայի տէրութեան Իտալիայի վրայէն վերցուիլը կ՚ուզէր, բայց ռամկապետականաց հետ բոլորովին միաբանիլն ալ իր ամէն հին ու իշխանական կամ ազնուապետական իրաւունքներէն ետ կենալը պահանջելուն, չէր կրնար արձակ համարձակ անոնց հետ եղբայրակցութիւն ընել։ Սակայն վերջապէս ըստ մասին անոնց հետ միացաւ, որպէս զի այնուհետեւ գոնէ առանց խիստ օրինաց տակ ըլլալու եւ առանց կարեւոր բարձրագոյն եւ ուսումնական կրթութեան՝ ինչպէս աւստրիական օրէնքները կը պահանջէին՝ հանգիստ ու զուարճալի կեանք մը անցընէ։

Դեռ ժողովրդեան մէջ խռովութեան ձայները չսաստկացած կայսեր հօրեղբայրը՝ Ռայներ արքիդուքսը, որ աւստրիական Իտալիայի փոխարքան էր, (Մարտ. 17. Միլանէն ելաւ գնաց, ու նոյն օրն իրիկուան Վիէննայի յեղափոխութեան յաջողելուն լուրը հոն տարածուելով՝ ժողովուրդը բարձրաձայն աղաղակներով իր ուրախութիւնը սկսաւ յայտնել ու յեղափոխութիւնը խափանել ուզողներուն դէմ նախատական ցոյցեր ընել։ Կառավարութիւնը շուտ մը կայսեր իր իտալացի հպատակաց քանի մը բանի մէջ իրենց բաղձանաց համեմատ տուած ազատութիւնները հրատարակեց, որոնց մէկն էր ազգային պահապան կամ քաղաքային զօրաց գունդեր կազմել։ Միլանցիք կայսեր ու Գերմանացւոց դէմ ունեցած ատելութիւնն ու այսպիսի շնորհմունքներով հաշտուելու կամք չունենալնին ցուցընելու համար պատե-

րու վրայ կայացած միթինկներու Հրատարակութեան օրինակները ներբողական խօսքերով հանեցին պատուեցին: Թէպէտեւ այսպիսի ազատամտական ցոյցեր կ'ըլլային. իսկոյն (բան կուսակալ Շփաուր արդէն քաղքէն ելած գացած ըլլալով) անոր փոխանորդն Օ'Տանէլ զինուորական հրամանատարէն աղաչեց որ իր զօրքը դուրս չհանէ, որպէս զի քաղաքացիք իրենց ազատութիւնն անխափան կատարեն: Հրամանատարն ալ կարգադրութեան հնազանդեցաւ. բայց այս՝ անխոհեմ գործքին վնասակար հետեւութիւնն ինք Օ'Տանէլ ամէնէն առաջ զգաց. վասն զի անսանձ ժողովուրդը խառնաձայն աղաղականօք պալատին վրայ վազելով՝ զինքը բռնեց բանտարկեց: Ետքէն ապստամբաց գլուխներն իրենց խորհրդոցը համաձայն քանի մը կարգադրութիւններ գրելով՝ նոյն Օ'Տանէլին բռնութեամբ ստորագրել տուին: Այս կարգադրութեանց զօրութեամբ ոստիկանութեան պաշտօնեաններն ու զինուորները Միլանին մէջ կազմուած յեղափոխականաց ատեանին կամ առժամանակեայ կառավարութեան իշխանութեան ու հրամանին տակ կը դրուէին: Նոյն կարգադրութեանց հրամանագրին օրինակներն ուրիշ գաւառներ ալ խաւրուելով ու ցրուելով, ամէն տեղ իրենց վնասակար ազդեցութիւնը ցուցցին:

Որովհետեւ յեղափոխութիւնն աւստրիական Իտալիոյ մէջ շատոնցուընէ վեր կը պատրաստուէր, անոր համար հիմայ իր յաջողութեան համար կարեւոր ըլլող միջոցներն ամէն դի գործածուելու սկսան. դրամ, զէնք, ամէն տեսակ ռազմամթերք եւ ուտելիք առատութեամբ կը գտնուէին: Նա եւ գաւառներէն, Հելուետիոյ Իտալական Դիչինոյ նահանգէն, ինչպէս նա եւ Սարդինիայէն ամէն պատերազմի հարկաւոր նիւթեր Միլան կը խաւրուէին: Յեղափոխութեան գլուխներն ու ա-

ռաջնորդներն այսպիսի պատրաստութիւններէն ետքը մը յայտնի սկսան երեւալ ու գործել. իրենց մէջ անուանի ազնուականներ ալ կային, Գաղաղի Միլանի քաղաքապետը, Լիդդա իշխանը, Պործիա, Բօրրօյ, Կուիչչարտի, Տուրինի ու Պորրոմէոյ կոմսերը, Կուերրիերի փաստաբանին ու Լեգգի սպարապետը, որն որ յեղափոխականաց զինուորական գործքերուն գլուխն էր: Կայսերական զօրաց թիւը Միլանի մէջ հազիւ 15,000ի կը համնէր. բայց ասոնց գլուխն ու հրամանատարն էր 82 տարեկան քաջ ծերունին Ռատեցքի կոմս սպարապետը, որն որ իր 65 տարեկան զինուորական ծառայութեամբն ու քաջութիւններովը մեծ անուն առած էր, եւ իր քաղցր վարմունքովը իր զինուորներուն սիրտը շահած ըլլալով, ուր որ ինք կը տեսնուէր ու կը հրամայէր՝ զինուորներն առիւծի պէս թշնամեաց դէմ կը վազէին ու բերդերու վրայ կը յարձակէին Կեցցէ մեր սպարապետը պոռալով:

Յեղափոխութիւնը կամ ապստամբութիւնը Միլանի մէջ քանի մը ցոյցերով սկսելէն ետքը՝ Մարտի 18ին ամենայն սաստկութեամբ բորբոքեցաւ: Յեղափոխականք զինած՝ ասդին անդին կը ցրուէին, եւ ուր որ սակաւաթիւ զինուորներ կը գտնէին՝ չարաչար կը զարնէին կը մեռցնէին: Արդէն ամէն դի ճամբաներուն վրայ պատնէշներ շինուած էին. բայց ապստամբներն իրենց մէջ համաձայնած էին որ երբ որ կայսերական զօրքը նոյն պատնէշներուն մէկուն վրայ յարձակելու ըլլայ, անոնց վրայ ըլլողները զինուորաց հետ չզարնուէին, հապա մօտիկ տուները փախչելով՝ հոնկից պատերազմին: Ուստի կայսերական զօրաց մաս մը տեսնուած ատենը իրենք տուները կը մտնէին ու անոնց մէջէն զինուորներուն վրայ քարեր, կամ կարասիք ու նոյն իսկ տուներուն

յարկերը կոտրտելով կը նետէին։ Եւ պաշտպանելու այս-պիսի կռուով զինուորներուն պարապ տեղ վառօդ վատ-նել Հարկ կ՚ըլլար ու նաւէն վառօդ, գնդակներ եւ ուրիշ պատերազմի կարեւոր ըլլող նիւթերը հեռուանց բերե-լու համար ճամբաներու վրայ շատ մարդ պիտ՛որ ողան-նուէր, անոր համար ծերունի սպարապետը պարապ տեղ արիւն չթափելու համար՝ զինուորները քաղաքէն դուրս հանեց ու անոր դռներուն առջեւն ու բոլորտիքը կեցուց։ Ասանկով քաղաքին մէջ մտնել ելլելը խափանուելով՝ թէ որ աս պաշարումը երկայն ատեն քշելու ըլլար, քա-ղաքացւոց պաշարը կամ ուտելիքը լմննալով, պէտք էր որ անձնատուր ըլլային։ Աս միջոցիս (Մարտ 23.) գա-ւառներուն մէջ ապստամբութեան տարածուելուն լուրե-րը սպարապետին հասան, եւ իմացաւ որ Լոմբարտիայի դրեթէ ամէն քաղաքներուն մէջ քաղաքացիք զինուո-րական զօրութեան դէմ այլ եւ այլ խաբէական հնարքներով յաղթող եղած են, իտալական գնդե-րուն մէջէն շատ զինուորներ իրենց դրօշը թող տալով, ապստամբաց կողմն անցեր են, եւ Մոնցա, Պերկամօ, Լեգգօ, Գոմօ, Վարեզէ, Պաւեչիա, Բաւիա, Վիչենցա, Բիաչենցա, Բալմանովա ու Ոզոբօ իրենք զիրենք կայսե-րական լծէն ազատած են։ Աս լուրերն ատանկ ետեւէ ետեւ հասնելով, ուրիշ դիհաց ալ Սարդինիայի Կար. Ալպերտոս թագաւորին քիչ մը ատենէ ի վեր Լոմբար-տիայի սահմանին վրայ իր զօրքը ժողված՝ յառաջ քա-լելու դիտաւորութիւն ունենալն ալ յայտնի ըլլալով, Միլանի քով կեցող կայսերական զօրաց վիճակն արտա-քոյ կարգի դժուարին կ՚ըլլար։ Ուր թողունք՝ որ աս զօր-քը հինգ օր հինգ գիշեր Միլանի բոլորտիքն տուանց բնակարանի, տուանց վրաններու անդադար հեղեղի պէս իջնող անձրեւին տակ կեցած, պաշարմնին դրեթէ բոլո-

լովին սպառած, նոյնպէս եւ վառօդնին ալ նուազած ըլլալով, ալ գործելու կարողութիւն չունէին: Ուստի քաջ սպարապետը քիչ մը ատեն տարակուսի մէջ մնաց՝ թէ արդեօք կեցած տեղը միայն ու մինչեւ ցյետին զինուորին իյնալը կամ բոլոր պատերազմի պաշարներուն լմննալը պատերազմի, ան ալ՝ չորս դիհաց յանկարծակի ապստամբներէն ու Սարդինիայի զօրքէն պաշարուելու վտանգով, թէ Միլան բոլորովին ապստամբներուն ձեռքը թող տալով՝ իր զօրքը ետ քաշէ ու աւելի յարմար տեղ մը իր զօրութիւնը կեդրոնացընելով ու նորէն գալու զօրաց սպասելով, աւելի օգտիւ գործելու սկսի: Ինչպէս յառաջ՝ նոյնպէս հիմայ ալ կրնար իր զօրքն ամրոցին մէջ քաշելով՝ քաղաքը ռմբակոծել տալ ու ապստամբները սաստեցընել. սակայն այն աղուոր քաղաքն աւրել ապականելն ալ իրեն պատշաճական չերեւցաւ: Վերջապէս միտքը հաստատեց առ այժմ ետ քաշուելու հրաման տալ. ուստի եւ քիչ ատենէն նորէն հոս կը դառնանք ըսելով, զօրքը յառաջ քալեցուց: Բայց Միլանցոց ձեռքն իբրեւ պատերազմի գերի մնացած Աւստրիացիներուն կեանքն ապահովցընելու համար, քաղքէն հեռացած ատենն երեւելի քաղաքացիներէն 17 հոգի իբրեւ պատանդ հետն առաւ:

Ռատեցքիին միտքն ի սկզբան ան էր որ մինչեւ (Միլանէն միայն չորս մղոն հեռու՝) Ատտա գետին միւս կողման եզերաց վրայ Լոտի քաղաքն երթայ, ուր կը յուսար որ քիչ օրուան մէջ 7000ի չափ զօրք ու խել մը թնդանօթներ կու գան իր զօրաց հետ կը միանան: Բայց ճամբան լուր առաւ՝ որ Վենետիկ քաղաքն ապստամբեր է ու կայսերական կուսակալն եւ զօրաց հրամանատարը քաղաքը բոլորովին յեղափոխականաց ձեռքը յանձներ են: Աս տխուր լուրը զինքը ստիպեց զօրքը մինչեւ Վերօ-

հրաման հանել տուին՝ որ քաղաքացիներէն պահապան զօրաց գունդեր կազմուին եւ քաղաքին երեւելի տեղերն անոնց պահպանութեան յանձնուի. նա եւ Գերմանացի զօրաց գունդը քաղքէն հանուի հեռացուի. Ծովական կամ նաւական գործքերը, Իտալացի զինուորաց գունդը, նաւարանն ու մթերանոցները նոյն քաղաքային զօրաց խնամոցն ու հսկողութեան տակ դրուին: Ամէն կայսերական պաշտօնատէրներն այսպէս հեղ մը խորամանկ յեղափոխականաց որոգայթին մէջ բռնուելէն ու անոնց ըսածներն ընելու սկսելէն ետքը՝ ալ չէին կրնար անոնց առաջարկած պայմանադրութեան կամ իրաւախոհութեան դաշին չստորագրել: Արդ Զիչի հրամանատարը (Մարտ 23.) իր ընկերներովն աս պայմանադրութիւնն ընդունելով՝ Վենետիկ քաղաքն ու բերդը յեղափոխականաց առժամանակեայ կառավարութեան յանձնեց, որուն գահերէցը վերոյիշեալ Մանին փաստաբանն էր: Աս իրաւախոհութեան համեմատ յեղափոխականաց ձեռքը յանձնուեցաւ նաւարանն իր մէջն ըլլող առատ զէնքերովն եւ ուրիշ պատերազմական մթերներովը, նա եւ հասարակաց դրամոց արկղները. սոյնպէս եւ Իտալացի զինուորները իբրեւ նոր կառավարութեան զօրքը մնացին: Իսկ մնացած (Գերմանացի) զօրքն ու մեծ եւ պզտիկ կայսերական պաշտօնատէրները նաւ մտնելով՝ Թրիեստ անցան: Ապստամբները զԶիչի կոմսն առ ժամս իբրեւ պատանդ իրենց քովը պահեցին:

Թէպէտ կայսերական մեծ պաշտօնատէրները Վենետիկի մէջ իրենց պարտքին ու հաւատարմութեան դէմ տկար գտնուելով՝ այսպիսի նախատական վարմամբ գրեթէ իրենց տէրութեան մատնիչ եղան. բայց ուրիշ հաւատարիմ պաշտօնատէրներ ալ գտնուեցան, որոնք իրենց պարտքերն ամենայն ճշդութեամբ կատարեցին: Ասոնց

մէկն էր Մորգանիչ գնդապետը, որն որ Նաւարանին հրամանատարն ըլլալով՝ իր հրամանին տակ ըլլող պաշտօնատէրներով մէկտեղ՝ իր խնամոց յանձնուած տեղը մինչեւ ցվերջին շունչը պաշտպանեց ու պատուաւոր մահուամբ իր անունը փառաւորեց. իսկ իր ընկերները յեղափոխականաց ձեռքը գերի ինկան: Նա եւ Սանդգյ Սեբերիգյ ըսուած վառօդի աշտարակին մէջն ըլլող 16 Գերմանացի (Սըվերիացի) ռմբաձիգ զինուորներն աշտարակին դուները գոցեցին ու ոչ ինչ կերպով ուզեցին անձնատուր ըլլալ: Եւ պէտք եղաւ՝ որ յեղափոխական կառավարութիւնը զանոնք կամայ ակամայ ներուցանէ, որովհետեւ նոյն պահապանները միշտ կը սպառնային՝ որ եթէ իրենց բռնութիւն մը ընել ուզուի, վառօդին կրակ տալով՝ աշտարակն օդը կը հանեն:

Լոմբարտիայի ու Վենետիկի բնակչաց աւստրիական տէրութենէն ապստամբելովը՝ Աւստրիայի կայսեր ազգակից ու անոր պաշտպանութեան տակ ըլլող Իտալիայի վեհապետներուն երկիրները չէին կրնար ալ յեղափոխութեան արկածներէն ազատ մնալ: Ուստի մինչեւ ան տեն հանդարտ մնացող Մոտենայի ու Բարմայի բնակիչներն իրենց վեհապետները դահերնէն մերժելով, Պիոս Թ.ին, կար. Ալբերտոսին ու Տոսկանայի մեծ դուքսին պաշտպանութեան տակ մտան: Ասանկով Աւստրիայի իշխանութեան ու պաշտպանութեան տակ Վերին Իտալիայի մէջ մնացին միայն քանի մը ամուր քաղաքներ կամ ամրոցներ, Վերոնա, Մանդուա, Լեննեակոյ ու Բեռքիերա: Վերոնայի մէջ Ռատեցքի սպարապետը 16,000 զօրքով ու 54 թնդանօթով ամրացած՝ գործելու կը պատրաստուէր. Մանդուայի ամրոցն ալ՝ թէպէտ թշնամեաց ձեռքն իյնալու վտանգի մէջ կը գտնուէր, բայց ատենին նոր զօրք հասնելով՝ ապահովութեան մէջ մնաց:

Մինչեւ Մարտի 24 (1848) Աւստրիայի Իտալական երկիրներն աս վիճակի մէջ էին։ Սարդինիայի Կար. Ալպերտոս Թագաւորը, որն որ խել մը ատենէ վեր (դըրսանց) մէյ մը աս կողմը մէյ մը ան կողմը կը հակէր ու դեռ հաստատուն նպատակի մը դիմելու որոշ նշաններ չէր ցուցըներ, Լոմպարտեան-Վենետական Թագաւորութեան յեղափոխութեան յաջողիլը տեսնելով՝ մտածեց որ իրեն համար փառաւորութեան ու բարձրանալու ատենն եկած հասած է։ Երբ որ Դուրինի մէջ իր զինուորական պաշտօնակալները, զինուորները, քաղաքացիները, ուսանողներն ու գործավարները միաբանութեամբ երդում ըրին՝ որ իրենց Լոմպարտացի եղբայրներուն ազատութեան համար իրենց ինչքն ու կեանքը զոհեն. ալ Թագաւորը վայրկեան մ՚ալ չսպասեց, հապա բոլոր Իտալացւոց սիրտը շահելու համար Իտալական ազգայնութեան ու անկախութեան դրօշը բացաւ. երեքգունեան դրօշն ամէն դի բարձրացընել տուաւ ու իրեն տրուած Իտալիայի սուսեր անունը գործքով արդիւնաւորելու պատրաստուեցաւ։ Իր Սարդինիական Թագն իրեն այնչափ մեծ փառաւորութիւն չսեպելով, նաեւ Լոմպարտական երկաթի Թագով պսակուիլն ու Ս. Մարկոսի առիւծին գեղեցիկ ժառանգութեան տէր ըլլալն իր սիրտը վառեց, թէպէտ եւ կը տարակուսէր՝ որ Վենետական հասարակապետութիւնն իր սքանչելի ժառանգութիւնն այնպէս դիւրաւ օտար Թագաւորի ձեռքը տայ։

Հոս Սարդինիական-Աւստրիական պատերազմին պատմութիւնը գրելէն առաջ՝ Կար. Ալպերտոսին Սարդինիայի եւ ուրիշ Իտալացի զօրքերէն կազմուած բանակին հանգամանքը տեսնենք։ Աս ատենները (Մարտ — Ապրիլ. 1848.) իր Սարդինիացի զօրաց թիւը 60,000ի կը հանէր, որն որ ետեւէ ետեւ աւելնալով՝ մինչեւ Յունիս

ամբողջ 71,000ի հասաւ: Ասոնց վրայ պէտք է աւելցընել ան զօրքերն ալ, որոնք Իտալիոյ այլ եւ այլ տէրութիւնները կէս մը Իտալիոյ ազատութեան բաղձանքէն յորդորուելով, կէս մ'ալ իրենց ժողովուրդներէն ստիպուելով՝ Վերին Իտալիա, այսինքն Աւստրիայի դէմ պատերազմելու՝ խաւրեցին: Քահանայապետական երկիրներէն Տուրանտոյ զօրապետին հրամանին տակ եկան 17,000 կէս մը կրթեալ կէս մ'ալ ազատական զինուորներ, որոնց մէջ գտնուող Հելուետացի զօրաց բաժին մը աս համեմատական զօրքին խիստ ընտիր մասն էր: Պիոս Թ. աս զօրքը խաւրած ատենը յայտնի ըրաւ՝ որ զանոնք յարձակապէս պատերազմի կամ Աւստրիայի դէմ գործելու համար չխաւրեր, հապա երկրին սահմաններուն վրայ հսկելու եւ զանոնք պահելու համար կը խաւրէ. սակայն զօրաց հրամանատարին աս յայտարարութեան այնչափ ճշդիւ չհետեւելով՝ սահմաններն անցաւ ու Սարդինիոյ զօրաց հետ Իտալական ազատութեան համար Աւստրիայի դէմ կռուելու փութաց: Նէապոլսոյ Ֆերդինանդոս Բ. Թագաւորը, ինչպէս յառաջագոյն պատմեցինք, յեղափոխականաց կատաղութիւնէն ստիպելով՝ Բեբէ զօրապետին հրամանին տակ 15,000 Նէապոլսեցի զօրք խաւրեց: Բայց իր երկրին մէջ ապստամբութիւնը դադրեցընելէն ետեւ՝ նոյն գունդերը ետ կանչեց, որոնցմէ միայն 2000 հոգի աս հրամանին չհնազանդեցան, իսկ մէկալները շուտ մը ետ դարձան: Ասոնցմէ զատ Տոսկանայէն եկած էին 7000, Լոմպարտիայէն 5000, Բարմայէն եւ Մօտենայէն 3000 զօրք*, բայց ըստ մեծի մասին ազատական

* Տոսկանայի Լէոպոլդոս Բ. մեծ դուքսը թէպէտ եւ Աւստրիայի կայսերական ցեղէն ու տիրող Ֆերդինանդոս Ա. կայսեր հօրեղբօրորդին էր, Աւստրիայի դէմ ալ ամենեւին թշնամութիւն չունէր, սակայն իր հպատակները Մածինեաններուն խորհրդովը գրգռուելով՝ զինքը ստիպեցին Աւստրիայի

զինուորներ ու քիչ կրթուած ըլլալով՝ Սարդինիայի զօրապետները զանոնք ակամայ պատերազմի մէջ կը գործածէին, որովհետեւ անոնց վարժութենէն ալ կը տեսնէին որ բոլոր հասարակապետութիւն հաստատելու ջանացող մարդիկ են։ Այնչափ Իտալիայի այլ եւ այլ կողմերէն ժողվուած զօրաց մէջ Սարդինիայի զօրքերն ամենէն աւելի ընտիր, քաջ, աղէկ կրթուած ու իրենց զօրապետներուն հնազանդ էին։ Բոլոր բանակին վերին հրամանատարն ինք կար. Ալբերտոս թագաւորն էր, որն որ, ինչպէս զինք ճանչցողները կը վկայեն, թեպետ եւ քաջ ու համարձակ էր, բայց քիչ հմտութիւն ունէր ու միանգամայն քաջ սպարապետի մը հարկաւոր ըլլալ զինուորական աչալրջութիւնն ու արագ զօրութիւնը (énergie) չունէր։ Իր զօրապետներուն մէջ ալ շատ ընտիր ու քաջ մարդիկ կային, որոնց զինուորական հմտութիւնը թշնամիք իսկ ճանչցան ու գովեցին։

Այսպիսի բանակով մը կար. Ալբերտոս պատերազմի պատրաստուած ըլլալով, երբ որ աւստրիական Իտալիային մէջ յեղափոխութիւնը յաջողութեամբ յառաջ երթալու սկսաւ, ինքն ալ յառաջագոյն Աւստրիայի հետ թշնամութիւն մը չունենալով ու առանց անոր դէմ ըստ կարգի եւ ըստ իրաւանց ազգաց պատերազմ հրատարակելու, սահմանն անցաւ, իր զօրքը Լոմբարտիա խօթեց ու Աւստրիայի ապստամբներուն օգնութիւն ընելու սկսաւ։ Իսկզբան իր բախտն աղէկ յաջող գնաց, իր զօրքերն Աւստրիայի զօրաց վրայ, որոնց գունդերը Իտալացի զօր-

դէմ ըլլալ պատերազմին զօրքով օգնելու։ Իսկ Մոտենայի դուքսը (որն որ նոյնպէս Աւստրիայի կայսեր ազգակից էր,) ու Բարմայի դուքսը Մածծինեանց անկարգութիւններուն չկրնալով յաղթել՝ իրենց երկիրները թողուցած հեռացած էին. եւ անոնց կառավարութիւնը Մածծինեանց ձեռքը մնալով՝ Սարդինիայի բանակին կրցածնուն չափ օգնական զօրքեր խաւրեցին։

գերման անոնցմէ հեռանալովը քաշուած տկարացած էին, քանի մը յաղթութիւններ ըրին, ու Մարտ եւ Ապրիլ ամիսներուն մէջ եղած պատերազմներուն գրեթէ ամենքն ալ Աւստրիացւոց համար անյաջող ելք ունեցան: Ամենէն առաջ Սարդինիացիք Աւստրիացւոց հետ զարնուեցան Կոյտոյի քով Մինչիոյ գետն անցնելու ատենները, ուր Աւստրիայի զօրքն ամէն կերպ քաջութեամբ աշխատեցան Թշնամին գետէն առաջին անցնելէն արգելուլ, բայց անհնարին եղաւ: Անկէց ետքը կռիւն եղաւ Մոնծամպանոյի քով, ուր նոյնպէս Աւստրիացիք Մինչիոյ գետին կամուրջներէն Թշնամին հեռացընելու աշխատեցան, բայց հոն ալ ամէն ջանքերնին անօգուտ եղաւ. նոյնպէս եւ Վիլլաֆրանգայի, Բասդրենկոյի ու Գուաստալէնկոյի կռիւներն (Ատիճէ գետին քով) Աւստրիացւոց համար յաջող վերջ չունեցան: Սարդինիացիք այսպէս յաղթութիւններով յառաջ երթալով՝ Բեսքիերայի ու Մանդուայի բերդերուն վրայ յարձակեցան. բայց որովհետեւ այսպիսի զօրաւոր ամրոցներն առնելու համար բաւական մեծ Թնդանօթներ չունէին ու միանգամայն զօրաց մէկ մասովը միայն յարձակում կ'ընէին, անոր համար նոյն բերդերուն քով իրենց ջանքը պարապի ելաւ:

Թշնամին այսպէս իր զօրութիւնը ցուցընելով յառաջ եկած ու մեծ պատերազմ մը տալու պատրաստած ատենը՝ Ռատեցքիին զօրքերը դեռ շատցած ու զօրացած չէին. սակայն ետեւէ ետեւ անոնց Թիւն աւելնալով՝ վերջապէս 30,000ի հասաւ. բայց ամէնքը մէկտեղ ժողված չէին: Վերոնայի մօտ Ս. Լուչիա գեղին քով (Մայ. 6.) տրուած ճակատին մէջ Աւստրիացւոց զօրաց Թիւն էր 16,000, իսկ Սարդինիացւոցը 45—50 հազար: Ասոնք կը յուսային որ Վերոնայի մէջ ապստամբութիւն մը ելլելով՝ իրենց մեծ օգնութիւն կ'ըլլայ.

բայց յուսացածնին չկատարուեցաւ։ Աւստրիացիք հոն՝ երեքպատիկ աւելի զօրքով ու զօրութեամբ պատերազմող Թշնամւոյն հետ կռուելնուն՝ երեք ժամ անդադար պատերազմելէն ետքը ետ քաշուեցան։ Բայց քիչ մը ետքը Սարդինիացւոց զօրքը Ս. Լուչիա գեղէն քիչ մը հեռու Աւստրիացւոց Թնդանօթներուն կրակէն սարսափելով՝ շփոթեցան ու սկսան փախչիլ. եւ Ս. Լուչիային քով զօրքն անոնց օգնելու փութալով՝ Աւստրիացիք պատերազմը վաստըկեցան. սակայն զօրքն արտաքոյ կարգի յոգնած ու տկարացած ըլլալով՝ չկրցաւ Թշնամւոյն ետեւէն քալել ու հալածել։ Աս պատերազմին մէջ Աւստրիայի հիմակուան Փրանկիսկոս Յովսէփ Ա. կայսրը (դեռ 18 տարեկան ըլլալով ու կայսրութեան Թագը չընդունած) առաջին անգամ ղէնք առաւ ու զարմանալի քաջութեամբ կռուեցաւ։

Սարդինիացիները Լոմբարտիա մտնելէն ու Լոմբարտիայի ապստամբներուն հետ միանալէն ետքը՝ կը յուսային ու կը ջանային կայսերական զօրաց Դիրոլի երկիրը մտնելը խափանելու, որովհետեւ աս երկրին Լոմբարտիայի սահմանակից ըլլող մասն իտալական Դիրոլ կ'ըսուի ու բնակիչքն Իտալացիք են կամ իտալերէն կը խօսին։ Եւ յիրաւի աս Դիրոլցիք իրենց բաղձանքն այլ եւ այլ ցոյցերով յայտնի կ'ընէին, որ Աւստրիայէն ապստամբելով՝ իրենց սահմանակից ու ազգակից կամ լեզուակից Լոմբարտացւոց հետ միանան։ Աս բաղձանքով նոյն երկրին Դրիէնդ ու Ռովէրէտոյ քաղաքներուն բնակիչքը գլուխ վերցընելով՝ սկսան Միլանի մէջ ըլլող յեղափոխական առժամանակեայ կառավարութեան հետ բանակցութիւն ընել ու իրենց ապստամբութիւնը յաջողցընելու միջոցներ փնտռել. բայց Աւստրիացիք ատենին՝ վրայ հասնելով, ապստամբութեան յառաջադիմու-

յարկերը կատրտելով կը նետէին։ Եւ արովհետեւ այս-
պիսի կռուով զինուորներուն պարապ տեղ վառօդ վատ-
նել հարկ կ'ըլլար ու նարէն վառօդ, գնդակներ եւ ուրիշ
պատերազմի կարեւոր ըլլող նիւթերը հեռուանց բերե-
լու համար ճամբաներու վրայ շատ մարդ պիտ՚ որ սպան-
նուէր, անոր համար ծերունի սպարապետը պարապ տեղ
արիւն չթափելու համար՝ զինուորները քաղաքէն դուրս
հանեց ու անոր դռներուն առջեւն ու բոլորտիքը կեցուց։
Ասանկով քաղաքին մէջ մտնել ելլելը խափանուելով՝
թէ որ աս պաշարումը երկայն ատեն քշելու ըլլար, քա-
ղաքացւոց պաշարը կամ ուտելիքը լմննալով, պէտք էր
որ անձնատուր ըլլային։ Աս միջոցիս (Մարտ 23.) գա-
ւառներուն մէջ ապստամբութեան տարածուելուն լուրե-
րը սպարապետին հասան, եւ իմացաւ որ Լոմբարտիայի
գրեթէ ամէն քաղաքներուն մէջ քաղաքացիք զինուո-
րական զօրութեան դէմ այլ եւ այլ խաբէական
հնարքներով յաղթող եղած են, իտալական գնդե-
րուն մէջէն շատ զինուորներ իրենց դրօշը թող տալով,
ապստամբաց կողմն անցեր են, եւ Մոնցա, Պերկամօ,
Լեգգօ, Գոմօ, Վարեզէ, Պռեշիա, Բաւիա, Վիչենցա,
Բիաչենցա, Բալմանովա ու Ոզոբօ իրենք զիրենք կայսե-
րական լծէն ազատած են։ Աս լուրերն ասանկ ետեւէ
ետեւ հասնելով, ուրիշ դիաց ալ Սարդինիայի կար·
Ալբերտոս թագաւորին քիչ մը ատենէ ի վեր Լոմբար-
տիայի սահմանին վրայ իր զօրքը ժողված՝ յառաջ քա-
լելու դիտաւորութիւն ունենալն ալ յայտնի ըլլալով,
Միլանի քով կեցող կայսերական զօրաց վիճակն արտա-
քոյ կարգի դժուարին կ'ըլլար։ Ուր թողունք՝ որ աս զօր-
քը հինգ օր հինգ գիշեր Միլանի բոլորտիքն առանց
բնակարանի, առանց վրաններու անդադար հեղեղի պէս
իջնող անձրեւին տակ կեցած, պաշարնին գրեթէ բոլո-

լովլին պատուած, նոյնպէս եւ վառօդնին ալ նուազած ըլլալով, ալ գործելու կարողութիւն չունէին։ Ուստի քաջ սպարապետը քիչ մը ատեն տարակուսի մէջ մնաց՝ թէ արդեօք կեցած տեղը մնայ ու մինչեւ ց յետին զինուորին իյնալը կամ բոլոր պատերազմի պաշարներուն լմննալը պատերազմի, թէ ան ալ՝ չորս դիհաց յանկարծակի ապստամբներէն ու Սարդինիայի զօրքէն պաշարուելու վտանգով, թէ Միլան բոլորովին ապստամբներուն ձեռքը թող տալով՝ իր զօրքը ետ քաշէ ու աւելի յարմար տեղ մը իր զօրութիւնը կեդրոնացընելով ու նորէն գալու զօրաց սպասելով, աւելի օգտիւ գործելու սկսի։ Ինչպէս յառաջ՝ նոյնպէս հիմայ ալ կընար իր զօրքն ամրոցին մէջ քաշելով՝ քաղաքը ռմբակոծել տալ ու ապստամբները սաստեցընել. սակայն այն աղուոր քաղաքն աւրել ապականելն ալ իրեն պատշաճական չերեւցաւ։ Վերջապէս միտքը հաստատեց առ այժմ ետ քաշուելու հրաման տալ. ուստի եւ քիչ ատենէն նորէն հոս կը դառնանք ըսելով, զօրքը յառաջ քալեցուց։ Բայց Միլանցոց ձեռքն իբրեւ պատերազմի գերի մնացած Աւստրիացիներուն կեանքն ապահովցընելու համար, քաղքէն հեռացած ատենն երեւելի քաղաքացիներէն 17 հոգի իբրեւ պատանդ հետն առաւ։

Ռատեցքիին միտքն ի սկզբան ան էր որ մինչեւ (Միլանէն միայն չորս մղոն հեռու՝) Ատտա գետին միւս կողման եզերաց վրայ Լոտի քաղաքն երթայ, ուր կը յուսար որ քիչ օրուան մէջ 7000ի չափ զօրք ու խել մը թնդանօթներ կու գան իր զօրաց հետ կը միանան։ Բայց ճամբան լուր առաւ՝ որ Վենետիկ քաղաքն ապստամբեր է ու կայսերական կուսակալն եւ զօրաց հրամանատարը քաղաքը բոլորովին յեղափոխականաց ձեռքը յանձներ են։ Աս տխուր լուրը զինքը ստիպեց զօրքը մինչեւ Վերո-

նոր բերդաքաղաքը յառաջ տանելու եւ հոնկէց գործելու։

Իսկ Վենետիկի ապստամբելուն ու հոն յեղափոխականաց գործքերուն արտաքոյ կարգի դիւրութեամբ ու յաջողութեամբ, առանց կռուոյ, առանց արիւնհեղութեան յաջողելուն պատճառը՝ միայն հոն ըլլող կայսերական գլխաւոր պաշտօնատարաց, քաղաքական կուսակալին ու զինուորական հրամանատարին վախկոտութիւնն ու տկարութիւնն էր։ Ինչու որ աս քաղաքին պէս դիւրաւ պաշտպանուելու եւ ապստամբները զսպելու յարմար քաղաք մը չկայ. որովհետեւ հոն ապստամբները միայն երկու յարմար տեղ կրնան ունենալ մէկտեղ ժողվուելու եւ զօրաց հետ կռուելու, այսինքն Ս. Մարկոսի հրապարակին ու Սլաւաց ծովեզերքը (Ռիվա տէի Սքիավոնի). ուստի եւ քաջ հրամանատարի մը աշխուժութիւնն իր զօրքովը կրնայ ապստամբներուն ջանքը դիւրաւ պարապի հանել։ Բայց կոմս Բալֆի քաղաքական կուսակալը տկար ծերունի մ՚ըլլալով, ապստամբութեան առջի կայծը տեսնուածին պէս՝ շուտ մը ամէն բան կոմս Զիչի զինուորական հրամանատարին յանձնեց ու ինք ետ քաշուեցաւ։ Իսկ Զիչի փոխանակ փութալու եւ կարեւոր աշալրջութեամբ իր զօրքն ապստամբաց դէմ յառաջ քշելու, Վենետիկի Գօրրէր քաղաքապետին՝ որ ի ծածուկ ապստամբաց հետ միաբանած էր, եւ խորամանկ Մանինին փաստաբանին բանեցուցած հնարքներուն հետեւելով, այնչափ տկար գտնուեցաւ՝ որ անոնց ամէն բաղձանքները կատարելու փութաց։ Անոնք ժողովուրդը գրգռելէն ու ոտք հանելէն ետքը՝ հրամանատարին ու ծովակալի փոխանորդին հասկցուցին՝ թէ պէտք է քանի մը բանի մէջ ժողովրդեան կամքը կատարել, որպէս զի խաղաղութիւն ու հանդարտութիւն ըլլայ։ Աս կերպով

հրամանն հանել տուաւ՝ որ քաղաքացիներէն պահապան զօրաց գունդեր կազմուին եւ քաղաքին երեւելի անձերն անոնց պաշտպանութեան յանձնուի. նա եւ Գերմանացի զօրաց գունդը քաղքէն հանուի հեռացուի. Ծովական կամ նաւական գործքերը, Իտալացի զինուորաց գունդը, նաւարանն ու մթերանոցները նոյն քաղաքային զօրաց խնամոցն ու հսկողութեան տակ դրուին: Ամէն կայսերական պաշտօնատէրներն այսպէս հեղ մը խորամանկ յեղափոխականաց որոգայթին մէջ բռնուելէն ու անոնց ըսածներն ընելու սկսելէն ետքը՝ ալ չէին կրնար անոնց առաջարկած պայմանագրութեան կամ իրաւախոհութեան դաշին չստորագրել: Արդ Ջինչի հրամանատարը (Մարտ 23.) իր ընկերներուն առ պայմանագրութիւնն ընդունելով՝ Վենետիկ քաղաքն ու բերդը յեղափոխականաց առժամանակեայ կառավարութեան յանձնեց, որուն գահերէցը վերոյիշեալ Մանին փաստաբանն էր: Աս իրաւախոհութեան համեմատ յեղափոխականաց ձեռքը յանձնուեցաւ նաւարանն իր մէջն ըլլող առատ զէնքերովն եւ ուրիշ պատերազմական մթերներովը, նա եւ հասարակաց դրամոց արկղները. սոյնպէս եւ Իտալացի զինուորները իբրեւ նոր կառավարութեան զօրքը մնացին: Իսկ մնացած (Գերմանացի) զօրքն ու մեծ եւ պզտիկ կայսերական պաշտօնատէրները նաւ մտնելով՝ Թրիեստ անցան: Ապստամբները զՋինչի կոմսն առ ժամս իբրեւ պատանդ իրենց քովը պահեցին:

Թէպէտ կայսերական մեծ պաշտօնատէրները Վենետիկի մէջ իրենց պարտքին ու հաւատարմութեան դէմ ակար գտնուելով՝ այսպիսի նախատական վարմամբ գրեթէ իրենց տէրութեան մատնիչ եղան. բայց ուրիշ հաւատարիմ պաշտօնատէրներ ալ գտնուեցան, որոնք իրենց պարտքերն ամենայն ճշդութեամբ կատարեցին: Ասոնց

մէկն էր Մորդոնիչ գնդապետը, որն որ Նաւարանին հրամանատարն ըլլալով՝ իր հրամանին տակ ըլլող պաշտօնատարներով մէկտեղ՝ իր խնամոց յանձնուած ամրը մինչեւ ցվերջին շունչը պաշտպանեց ու պատուաւոր մահուամբ իր անունը փառաւորեց. իսկ իր ընկերները յեղափոխականաց ձեռքը գերի ինկան։ Նա եւ Սանդդոյ Սբիրիդոյ բռնուած վառօդի աշտարակին մէջն ըլլող 16 Գերմանացի (Սդիրիացի) ռմբաձիգ զինուորներն աշտարակին դռները գոցեցին ու ոչ ինչ կերպով ուզեցին անձնատուր ըլլալ։ Եւ պէտք եղաւ՝ որ յեղափոխական կառավարութիւնը զանոնք կամայ ակամայ ննուցանէ, որովհետեւ նոյն պահապանները միշտ կը սպառնային՝ որ եթէ իրենց բռնութիւն մը ընել ուզուի, վառօդին կրակ տալով՝ աշտարակն օդը կը հանեն։

Լոմբարտիայի ու Վենետիկի բնակչաց աւստրիական տէրութենէն ապստամբելովը՝ Աւստրիայի կայսեր ազգակից ու անոր պաշտպանութեան տակ ըլլող Իտալիայի վեհապետներուն երկիրները չէին կրնար ալ յեղափոխութեան արկածներէն ազատ մնալ։ Ուստի մինչեւ ան ատեն հանդարտ մնացող Մոտենայի ու Բարմայի բնակիչներն իրենց վեհապետները դահերնէն մերժելով, Պիոս Թ.ին, կար. Ալպերտոսին ու Դոսկանայի մեծ դուքսին պաշտպանութեան տակ մտան։ Ասանկով Աւստրիայի իշխանութեան ու պաշտպանութեան տակ Վերին Իտալիայի մէջ մնացին միայն քանի մը ամուր քաղաքներ կամ ամրոցներ, Վերոնա, Մանդուա, Լենեակոյ ու Բեաքիերա։ Վերոնայի մէջ Ռատեցքի սպարապետը 16,000 զօրքով ու 54 թնդանօթով ամրացած՝ գործելու կը պատրաստուէր. Մանդուայի ամրոցն ալ՝ թէպէտ թշնամեաց ձեռքն իյնալու վտանգի մէջ կը գտնուէր, բայց ատենին նոր զօրք հասնելով՝ ապահովութեան մէջ մնաց։

Մինչեւ Մարտի 24 (1848) Աւստրիայի Իտալական երկիրներն աս վիճակի մէջ էին։ Սարդինիայի Կար. Ալպերտոս թագաւորը, որն որ խել մը ատենէ վեր (դըրսանց) մէյ մը աս կողմը մէյ մը ան կողմը կը հակէր ու դեռ հաստատուն նպատակի մը դիմելու որոշ նշաններ չէր ցուցըներ, Լոմպարտեան-Վենետական թագաւորութեան յեղափոխութեան յաջողիլը տեսնելով՝ մտածեց որ իրեն համար փառաւորութեան ու բարձրանալու ատենն եկած հասած է։ Երբ որ Դուրինի մէջ իր զինուորական պաշտօնակալները, զինուորները, քաղաքացիները, ուսանողներն ու գործավարները միաբանութեամբ երդում ըրին՝ որ իրենց Լոմպարտացի եղբայրներուն ազատութեան համար իրենց ինչքն ու կեանքը զոհեն. ալ թագաւորը վայրկեան մ'ալ չսպասեց, հապա բոլոր Իտալացւոց սիրտը շահելու համար Իտալական ազգայնութեան ու անկախութեան դրօշը բացաւ. երեքգուներան դրօշն ամէն դի բարձրացընել տուաւ ու իրեն տրուած Իտալիայի սուսեր անունը գործքով արդիւնաւորելու պատրաստուեցաւ։ Իր Սարդինիական թագն իրեն այնչափ մեծ փառաւորութիւն չսեպելով, նա եւ Լոմպարտական երկաթի թագով պսակուիլն ու Ս. Մարկոսի առիւծին գեղեցիկ ժառանգութեան տէր ըլլալն իր սիրտը վառեց, թէպէտ եւ կը տարակուսէր՝ որ Վենետական հասարակապետութիւնն իր աքանչելի ժառանգութիւնն այնպէս դիւրաւ օտար թագաւորի ձեռքը տայ։

Հոս Սարդինիական-Աւստրիական պատերազմին պատմութիւնը դրելէն առաջ՝ Կար. Ալպերտոսին Սարդինիայի եւ ուրիշ Իտալացի զօրքերէն կազմուած բանակին հանգամանքը տեսնենք։ Աս ատենները (Մարտ — Ապրիլ. 1848.) իր Սարդինիացի զօրաց թիւը 60,000ի կը հանէր, որն որ ետեւէ ետեւ աւելնալով՝ մինչեւ Յունիս

ամբողջ 71,000ի հասաւ։ Ասոնց վրայ պէտք է աւելցընել ան զօրքերն ալ, որոնք Իտալիոյ այլ եւ այլ տէրութիւններն կէս մը Իտալիոյ ազատութեան բաղձանքէն յորդորուելով, կէս մ'ալ իրենց ժողովուրդներէն ստիպուելով՝ Վերին Իտալիա, այսինքն Աւստրիոյ դէմ պատերազմելու՝ խաւրեցին։ Քահանայապետական երկիրներէն Տուրանտոյ զօրապետին հրամանին տակ եկան 17,000 կէս մը կրթեալ կէս մ'ալ ազատական զինուորներ, որոնց մէջ գտնուող Հելուետացի զօրաց բաժին մը սա հռոմէական զօրքին խիստ ընտիր մասն էր։ Պիոս Թ. սա զօրքը խաւրած ատենը յայտնի ըրաւ՝ որ զանոնք յառաջապէս պատերազմի համար Աւստրիոյ դէմ գործելու համար չխաւրեր, հապա երկրին սահմաններուն վրայ հսկելու եւ զանոնք պահելու համար կը խաւրէ. սակայն զօրաց հրամանատարն ալ յայտարարութեան այնչափ ճշդիւ չհետեւելով՝ սահմաններն անցաւ ու Սարդինիոյ զօրաց հետ Իտալական ազատութեան համար Աւստրիայի դէմ կռուելու փութաց։ Նէապոլսոյ Փերդինանդոս Բ. Թագաւորը, ինչպէս յառաջագոյն պատմեցինք, յեղափոխականաց կատաղութենէն ստիպելով՝ Բեբէ զօրապետին հրամանին տակ 15,000 Նէապոլսեցի զօրք խաւրեց։ Բայց իր երկրին մէջ ապստամբութիւնը դադրեցընելէն ետեւ՝ նոյն գունդերը ետ կանչեց, որոնցմէ միայն 2000 հոգի սա հրամանին չհնազանդեցան, իսկ մէկալները շուտ մը ետ դարձան։ Ասոնցմէ զատ Տոսկանայէն եկած էին 7000, Լոմպարտիայէն 5000, Բարմայէն եւ Մոտենայէն 3000 զօրք*, բայց ըստ մեծի մասին ազատական

* Տոսկանայի Լէոպոլդոս Բ. մեծ դուքսը թէպէտ եւ Աւստրիայի կայսերական ցեղէն ու տիրող Փերդինանդոս Ա. կայսեր հօրեղբօրորդին էր, Աւստրիոյ դէմ ալ ամենեւին թշնամութիւն չունէր, սակայն իր հպատակները Մանծինեաններուն խորհրդովը գրգռուելով՝ զինքը ստիպեցին Աւստրիոյ

զինուորներ ու քիչ կրթուած ըլլալով՝ Սարդինիայի զօրապետները զանոնք ակամայ պատերազմի մէջ կը գործածէին, որովհետեւ անոնց վարմունքէն ալ կը տեսնէին որ բոլոր հասարակապետութիւն հաստատելու ջանացող մարդիկ են։ Այսչափ Իտալիայի այլ եւ այլ կողմերէն ժողվուած զօրաց մէջ Սարդինիայի զօրքերն ամենէն աւելի ընտիր, քաջ, աղէկ կրթուած ու իրենց զօրապետներուն հնազանդ էին։ Բոլոր բանակին վերին հրամանատարն ինք Կար. Ալբերտոս թագաւորն էր, որն որ, ինչպէս զինք ճանչցողները կը վկայեն, թէպէտ եւ քաջ ու համարձակ էր, բայց քիչ հմտութիւն ունէր ու միանգամայն քաջ սպարապետի մը հարկաւոր ըլլող զինուորական աչալրջութիւնն ու ազդու զօրութիւնը (énergie) չունէր։ Իր զօրապետներուն մէջ ալ շատ ընտիր ու քաջ մարդիկ կային, որոնց զինուորական հմտութիւնը թշնամիք իսկ ճանչցան ու գովեցին։

Այսպիսի բանակով մը Կար. Ալբերտոս պատերազմի պատրաստուած ըլլալով, երբ որ աւստրիական Իտալիային մէջ յեղափոխութիւնը յաջողութեամբ յառաջ երթալու սկսաւ, ինքն ալ յառաջագոյն Աւստրիայի հետ թշնամութիւն մը չունենալով ու առանց անոր դէմ ըստ կարգի եւ ըստ իրաւանց ազգաց պատերազմ հրատարակելու, սահմանն անցաւ, իր զօրքը Լոմպարտիա խոթեց ու Աւստրիայի ապստամբներուն օգնութիւն ընելու սկսաւ։ Իսկզբան իր բախտն աղէկ յաջող գնաց, իր զօրքերն Աւստրիայի զօրաց վրայ, որոնց գունդերը Իտալացի զօր-

դէմ ըլլող պատերազմին զօրքով օգնելու։ Իսկ Մոտենայի դուքսը (որն որ նոյնպէս Աւստրիայի կայսեր ազգակից էր,) ու Բարմայի դուքսը Մածծինեանց անկարգութիւններուն չկրնալով յաղթել՝ իրենց երկիրները թողուցած հեռացած էին. եւ անոնց կառավարութիւնը Մածծինեանց ձեռքը մնալով՝ Սարդինիայի բանակին կրցածնուն չափ օգնական զօրքեր խաւրեցին։

քերուն անոնցմէ հեռանալովը քիչցած տկարացած էին, քանի մը յաղթութիւններ ըրին, ու Մարտ եւ Ապրիլ ամիսներուն մէջ եղած պատերազմներուն գրեթէ ամէնքն ալ Աւստրիացւոց համար անյաջող ելք ունեցան։ Ամենէն առաջ Սարդինիացիք Աւստրիացւոց հետ զարնուեցան Կոյիդոյի քով Մինչիօյ գետն անցնելու ատեննին, ուր Աւստրիայի զօրքն ամէն կերպ քաջութեամբ աշխատեցաւ Թշնամին գետէն ասդին անցնելէն արգելուլ, բայց անհնարին եղաւ։ Անկէց ետքը կռիւն եղաւ Մոնծամպանոյի քով, ուր նոյնպէս Աւստրիացիք Մինչիօյ գետին կամուրջներէն Թշնամին հեռացընելու աշխատեցան, բայց հոն ալ ամէն ջանքերնին անօգուտ եղաւ. նոյնպէս եւ Վիլլաֆրանգայի, Բասդրենկոյի ու Պուսսոլէնկոյի կռիւներն (Ատիճէ գետին քով) Աւստրիացւոց համար յաջող վերջ չունեցան։ Սարդինիացիք այսպէս յաղթութիւններով յառաջ երթալով՝ Բեսքիերայի ու Մանդուայի բերդերուն վրայ յարձակեցան. բայց որովհետեւ այսպիսի զօրաւոր ամրոցներն առնելու համար բաւական մեծ Թնդանօթներ չունէին ու միանգամայն զօրաց մէկ մասովը միայն յարձակումը կ՚ընէին, անոր համար նոյն բերդերուն քով իրենց ջանքը պարապի ելաւ։

Թշնամին այսպէս իր զօրութիւնը ցուցընելով յառաջ եկած ու մեծ պատերազմ մը տալու պատրաստած ատենը՝ Ռատեցքիին զօրքերը դեռ շատցած ու զօրացած չէին. սակայն ետեւէ ետեւ անոնց Թիւն աւելնալով՝ վերջապէս 30,000ի հասաւ. բայց ամէնքը մէկտեղ ժողված չէին։ Վերոնայի մօտ Ս. Լուչիա գեղին քով (Մայ. 6.) տրուած ճակատին մէջ Աւստրիացւոց զօրաց Թիւն էր 16,000, իսկ Սարդինիացւոցը 45—50 հազար։ Ասոնք կը յուսային որ Վերոնայի մէջ ապստամբութիւն մը ելլելով՝ իրենց մեծ օգնութիւն կ՚ըլլայ.

բայց յուսացածնին չկատարուեցաւ։ Աւստրիացիք հոն՝ երեքպատիկ աւելի զօրքով ու զօրութեամբ պատերազմող Թշնամւոյն հետ կռուելնուն՝ երեք ժամ անդադար պատերազմելէն ետքը ետ քաշուեցան։ Բայց քիչ մը ետքը Սարդինիացւոց զօրքը Ս. Լուչիա գեղէն քիչ մը հեռու Աւստրիացւոց Թնդանօթներուն կրակէն սարսափելով՝ շփոթեցան ու սկսան փախչիլ. եւ Ս. Լուչիային քով զօրքն անոնց օգնելու փութալով՝ Աւստրիացիք պատերազմը վաստըկեցան. սակայն զօրքն արտաքոյ կարգի յոգնած ու տկարացած ըլլալով՝ չկրցաւ Թշնամւոյն ետեւէն քալել ու հալածել։ Աս պատերազմին մէջ Աւստրիայի հիմակուան Փրանկիսկոս Յովսէփ Ա. կայսրը (դեռ 18 տարեկան ըլլալով ու կայսրութեան Թագը չընդունած) առաջին անգամ զէնք առաւ ու զարմանալի քաջութեամբ կռուեցաւ։

Սարդինիացիները Լոմբարտիա մտնելէն ու Լոմբարտիայի ապստամբներուն հետ միանալէն ետքը՝ կը յուսային ու կը ջանային կայսերական զօրաց Դիրոլի երկիրը մտնելը խափանելու, որովհետեւ աս երկրին Լոմբարտիայի սահմանակից ըլլող մասն իտալական Դիրոլ կ'ըսուի ու բնակիչքն Իտալացիք են կամ իտալերէն կը խօսին։ Եւ յիրաւի աս Դիրոլցիք իրենց բաղձանքն այլ եւ այլ ցոյցերով յայտնի կ'ընէին, որ Աւստրիայէն ապստամբելով՝ իրենց սահմանակից ու ազգակից կամ լեզուակից Լոմբարտացւոց հետ միանան։ Աս բաղձանքով նոյն երկրին Դրիէնդ ու Ռովերեդոյ քաղաքներուն բնակիչքը գլուխ վերցընելով՝ սկսան Միլանի մէջ ըլլող յեղափոխական առժամանակեայ կառավարութեան հետ բանակցութիւն ընել ու իրենց ապստամբութիւնը յաջողցընելու միջոցներ փնտռել. բայց Աւստրիացիք ատենին՝ վրայ հասնելով, ապստամբութեան յառաջադիմու-

թիւնն ու յաջողելն արգելեցին։ Ցոպէլ գնդապետին հրամանին տակ գունդ մը կայսերական զօրք (Ապր. 9.) Տրիէնդ հասնելով՝ ապստամբներուն գլխաւորներն ու առաջնորդները բռնեցին։ Բայց երեք օր ետքը 600 Սարդինիայի զօրք ու 2000 ալ Իտալիայի այլ եւ այլ կողմերէն ժողվուած ազատականաց զինուորներ եկան Իտալական Տիրոլ մտան, ու քանի մը քաղաքներու տիրելէն ետքը՝ մինչեւ երեք ժամու չափ ճամբայ հեռու Տրիէնդ քաղաքը մօտեցան։ Ասոր վրայ Յովհաննէս արքիդուքսը, որն որ ան ատեն Տիրոլի կուսակալն էր, լեռնաբնակ գեղացիները, որոնց քաջութիւնն ամէն դի յայտնի ծանուցուած է, զօրաւոր խօսքերով յորդորեց իրենց սահմանին քաջութիւնն ու հերոս ալ ցուցընել։ Քաջ լեռնականքն ալ ձայնին հնազանդելով՝ այլ եւ այլ տեղերէն բազմութեամբ եկան ու (Ապր. 18—22.) զանազան դիրեր թշնամեաց հետ պատերազմելով, զանոնք Տիրոլէն դուրս հանեցին ու երկիրը հանդարտեցաւ։

Ս. Լուչիայի ճակատը, որուն մէջ Աւստրիացիք յաղթող եղան, պատերազմին բախտը բոլորովին փոխեց։ Այն ճակատէն քանի մը օր ետքը 19,000ի նոր զօրաբաժին մը Վերոնա հասաւ ու Ռատեցքիին բանակը զօրացուց. ալ անկէց ետքը կրնար քաջ սպարապետը մեծ գործողութիւններու ձեռք զարնել։ Միւս կողմանէ ալ կար. Ալբերտոս հեղ մը պարտուելէն ետքը՝ նոր գործք կամ կռիւ մը չըրաւ, ուստի եւ Ռատեցքի պատշաճ համարեցաւ Վերոնայէն դուրս ելլել ու թշնամիոյն ալ թեւին վրայ քալել, որն որ Մանդուայի մօտ Գուրդաղոնէ գեղէն քովը Մինչիոյ գետին եզերաց վրայ տարածուած էր եւ զինուորներուն լաւ մեծի մասին Տոսկանացի ու Նէապոլսեցի օգնական գնդեր էին։ Անոնք Գուրդաղոնէ կրկին կարգ հողաբլուրներով ու խել մը

թնդանօթներով ամրացուցած թշնամւոյն գալուն կը սպասէին։ Ռատեցքի իր զօրքէն 4000 զինուոր Վերոնա թողուց, իսկ մնացած զօրքովը (Մայ. 27.) դէպ ի Գուրդադոնէ ճամբայ ելաւ. իրեն հետն էր Ֆրանկիսկոս Յովսէփ արքիդուքսը (հիմակուան Աւստրիայի կայսրը)։ Երկրորդ օրը թշնամւոյն ամուր կայարանը հանելով յարձակումը սկսաւ. երկու հեղ Աւստրիացւոց զօրքը նոյն ամրութեանց վրայ յարձակեցան, բայց չկրցան անոնց տիրել. վերջապէս երրորդ անգամ յարձակում մ'ալ ընելով՝ ամէն ընդդիմութեանց յաղթեցին ու տեղւոյն տիրեցին։ Թշնամիներուն մէկ մասը փախան հեռացան. իսկ մէկ մասն ալ յաղթողներուն ձեռքը գերի ինկան. եւ այսպէս աս կողմանէ Աւստրիացւոց համար վտանգ մը չմնաց։ Բայց (Մայ. 30.) Կոյիդոյի քով Սարդինիացի զօրաց հետ նոր կռիւ մը սկսան, որն որ շատ սաստիկ եղաւ, եւ երկու կողմանք ալ հաւասար քաջութեամբ պատերազմելուն՝ յաղթութիւնն անորոշ մնաց, առաւելապէս Ասպրը զօրապետին դանդաղելովն ու ատենին Ռատեցքիին գունդերուն օգնութեան չհասնելովը. ի վերայ այսր ամենայնի Աւստրիացիք պատերազմի դաշտին վրայ հաստատ կեցան եւ չքաշուեցան։

Ռատեցքի Վերոնայէն իր զօրքովն ելած ատենը՝ միտքը Բեսքիէրայի բերդին օգնութեան հասնիլ ու պաշար հասցընել էր, որովհետեւ հոն ըլլող զօրքը վերջին նեղութեան ու կարօտութեան հասած ըլլալով ու Սարդինիացւոց զօրքն ալ ամէն օր բերդն առնելու փորձեր ընելով, բերդը թշնամեաց ձեռքն իյնալու վտանգի մէջ կը գտնուէր։ Սակայն Կոյիդոյի ճակատը Ռատեցքին զբաղեցընելով եւ ունեցած զօրութիւնն ալ տկարացած ըլլալով, բերդին պահապան զօրքը կարօտութենէ ու անօթութենէ ստիպած՝ թշնամւոյն հետ բանակցութիւն

ըրաւ, ու առանց վնասու հոնկից Մինչի քաշուելու պայմանաւ՝ բերդը (Մայ. 31.) Սարդինիացւոց յանձնեց։ Թէպէտ եւ Սարդինիացիք Փեսքիերա առին, բայց անով իրենց բանակին աջ թեւին կրած կորուստին հատուցում մը չեղաւ. մանաւանդ թէ Ռատեցքի ալ աս կողմանէ վախ չունենալով, (Յունիս 3.) Կոյիդոյէն ելաւ ու Սարդինիայի գունդերէն ամենեւին նեղութիւն մը չկրելով՝ սկսաւ դէպ ի Վիչենցա քաղաքը քալել, ուր Հռոմայեցւոց գունդերը Տուրանտոյ զօրապետին հրամանին տակ ամրացած թշնամւոյն գալուն կը սպասէին։ Աւստրիացիք (Յունիս 9.) Վիչենցա հասան ու երկրորդ օրը կէսօրէն առաջ Ռատեցքի հրաման տուաւ զօրաց քաղքին բոլորտիքն ըլլող պատնէշները, բարձրաւանդակներն եւ ուրիշ ամրութիւնները յարձակմամբ առնուլ։ Աս յարձակման ատեն զօրաց հարկ եղաւ շատ մեծ դժուարութիւններու եւ արգելքներու յաղթել. իրարու մօտ շարուած թնդանօթներով ամրացած բարձր հողաբլուրներուն կամ պատնէշներուն վրայ պարզ ու շուտ յարձակմամբ չէին կրնար ելլել, պէտք էր որ հանդարտ ու մեծ աշխատութեամբ մագլելով՝ անոնց վրայ ելլեն, մանաւանդ թէ տեղ տեղ մէկը մէկալը վեր հանելով ուզած տեղերնին հասնին։ Վիչենցա այսպէս աղէկ ամրացած ըլլալով՝ թէ որ իր մէջն ըլլող զօրքը բաւական քաջութիւն ունեցած ըլլային, դիւրաւ կրնային թշնամին տկարացընել ու հեռացընել. սակայն Տուրանտոյ քիչ մը աշխատելէն ետքը աւելի ընտրեց պայմանադրութեամբ մը այն ամուր տեղը Աւստրիացւոց յանձնել։ Ուստի երեք ամիս Աւստրիացւոց դէմ չպատերազմելու խոստում տալով՝ իր 15,000 զօրքովը Վիչենցայէն ելաւ։ Սոյնպիսի խոստմամբ նաեւ Դրեվիզոյի մէջ ըլլող 4000 Հռոմայեցի զօրքն ալ՝ հոնկից ելաւ ու Փոյի եզերը քաշուեցաւ։

Ասկից ի զատ Վելտէն զօրապետն իր հրամանին տակն ըլլող 12,000ի զօրաց մասովը Վենետիկի երկրին մէջ Բատուա քաղաքը պաշարեց ու առաւ. նա եւ նոյն երկրին ուրիշ տեղերէն ալ թշնամեաց գունդերը դուրս հանելէն ետքը՝ նոյն իսկ Վենետիկ քաղաքն ալ ցամաքի կողմանէ բոլորովին պաշարեց: Իսկ ծովու կողմանէ թէպէտ եւ Աւստրիայի պզտիկ նաւատորմիղը նոյն քաղաքը պաշարելու կ՚աշխատէր, բայց Սարդինիայի ու Նէապոլսոյ միացեալ նաւատորմիղները վրայ հասնելով՝ այն պզտիկ նաւատորմիղը շուտով հեռանալու ստիպեցին: Նոյն միացեալ նաւատորմիղներն աս միջոցին կը պատրաստուէին Իլլիրիայի ծովահայեաց Դրիէստ քաղաքը ռմբակոծելով առնուլ. բայց Գերմանական դաշնակցութիւնը, որուն դաշնակից քաղաքներուն մէկն է Դրիէստ, յարմար ատենին Իտալացւոց զօրաւոր սպառնալիք ընելով՝ մօտաւոր վտանգը հեռացուց:

Աւստրիացի զօրքն իր քաջ ու հմուտ զօրապետներուն հրամանին տակ այլ եւ այլ յաղթութիւններով աւստրիական Իտալիայի երկրին շատ տեղերը ապստամբներուն ձեռքէն առին: Թէպէտ եւ Բեսքիերայի բերդը Սարդինիացւոց ձեռքն ինկած էր. բայց անոր դէմ Աւստրիացիք ալ Ֆրիուլի երկրին մէջ հզօր ու երեւելի Բալմանովա ամրոցը, որն որ ապստամբութեան սկիզբները թշնամեաց ձեռքը մնացած էր, նորէն առին ապահովցուցին: Ֆերրարայի բերդին մէջ ըլլող Աւստրիացի պահակապան զօրքը շատոնցուընէ թշնամիներէն պաշարուած ըլլալով՝ մեծ նեղութեամբ ու վտանգով նոյն տեղն իրենց քաջարտութեամբը կը պահէին. վերջապէս Լիխտէնշտայն իշխանը գունդ մը Գերմանացի ազատական զօրքով Բօ գետն անցնելով ու անոնց պաշար ու օգնական զօրք հասցընելով՝ բերդն ապահովցուց: Համառօ-

տիւ ըսենք՝ Մայիսի 30էն մինչեւ Յունիսի 10 Նեապոլսեցի ու Տոսկանացի զօրքերը ցրուած հեռացած ըլլալով, իսկ Հռոմայեցի զօրքը պատերազմելու կարողութիւն չունենալով, Ռատեցքիին հրամանին տակ ըլլող Աւստրիայի բանակը միայն կար. Այլեւ բուն Սարդինիացի զօրքերուն ու Լոմպարտիայի ապստամբներուն հետ պիտի պատերազմէր:

Նախկին եռեւ եղած պատերազմներուն դէպքերը պատմելէն յառաջ՝ հոս ալ տեսնենք Աւստրիայի կառավարութեան գլուխն ըլլողներուն Իտալիայի նկատմամբ՝ առանձինն Անգղիայի Բալմերսդըն պաշտօնէին գրգռելէն ու ազդեցութիւնէն շարժելով՝ գործածներուն վրայ կարճ ի կարճոյ տեղեկութիւն մը կ'ուզենք տալ: Անգղիա իրեն ռամկական ընթացքին համեմատ օտար տէրութեանց մէջ ծագած խռովութիւններն ու յեղափոխութիւններն աւելի յառաջ տանելու եւ յաջողցնելու քան թէ մարելու ջանալով, Իտալիայի մէջ՝ ինչպէս Սիկիլիացւոց ապստամբութեան ձեռնտու եղած էր, նոյնպէս եւ Լոմպարտացւոց ու Վենետիկցւոց Աւստրիայի իշխանութենէն դուրս ելլելուն խորհրդով ու գործքով կ'օգնէր: Աս կերպ քաղաքականութեան հոգին ու յառաջացուցիչն էր խորամանկ Բալմերսդըն, Անգղիայի խորհրդարանին մէջ (Փետր. 15.) Իտալիոյ ազատութեան կարեւորութեան վրայ երկայն խօսքերով ու սաստիկ եռանդմամբ խօսելէն ետքը, սկսաւ նոյնը յաջողցնելու միջոցներն ալ բանեցընել. Լորտ Մինդոյին միջնորդութեամբը յառաջագոյն Իտալիայի յեղափոխութիւնը դրեթէ սկզբնաբար զարթուցանելէն ետքը, Մածծինիին ալ ամէն կերպ ձեռնտուութիւնը կ'ընէր՝ նոյն յեղափոխութեան կրակը չէ թէ միայն բորբոքած պահելու, հապա նաեւ Իտալիոյ ամէն կողմն ընդհանուր

տարածելու: Երբ որ Վիեննայի յեղափոխութիւնը յաջողեցաւ ու նոյն ժամանակին Հոգւոյն յարմար պաշտօնեաներ կառավարութեան մէջ մտան, Բալմերսդըն Աւստրիա նստող Անգղիայի Լորտ Բոնսոնպի դեսպանին ձեռքովը գիտցուց ու պաշտօնեաներուն անդադար բանակցութեամբ կը ջանար համոզել՝ որ Իտալիայի մէջ պատերազմը լմնցընելու եւ խաղաղութիւն հաստատելու համար Աւստրիա Լոմպարտիայի տէրութենէն հրաժարի ու զանիկայ Իտալացւոց թողու: Աս միջոցին Վիեննայի մէջ Ռատեցքիին (Մայ. 30էն մինչեւ Յունիս 14.) ըրած յաղթութիւններուն լուրը տարածուած չըլլալով՝ խորհրդարանոցին ու պաշտօնէից մէջ (չիգիտցուիր տարապայման վախէն՝ թէ ժամանակին տիրող յեղափոխական խորհուրդներէն շարժելով,) այլ եւ այլ կարծիքներ կը յայտնուէին, եւ Բալմերսդընին խորհուրդին ու ազդեցութեան համաձայն պատրաստութիւն կը ցուցուէր որ Իտալիայի՝ այսինքն Լոմպարտեան-Վենետական երկիրներուն իշխանութիւնը Աւստրիայէն հանուի, կամ՝ ինչպէս պաշտօնեաներէն մէկը նոյն ատեն Բալմերսդընին կը գրէ, "Լոմպարտիա ալ Աւստրիայի իշխանութեան տակ չմնայ ու իրեն ազատ թողուի՝ կամ բոլորովին անկախ մնալ, առանձին տէրութիւն մ'ըլլալ, եւ կամ Իտալիայի ուրիշ մէկ տէրութեան հետ միանալ,,: Աս խորհուրդն այսպէս կայսերական կառավարութեան մէջ հաստատուելէն ու Բալմերսդընին հետ ալ աս նիւթիս՝ ինչպէս նա եւ զինադադար ընելու վրայ բանակցութիւններ ըլլալէն ետքը՝ կառավարութեան կողմանէ վերոյգրեալ որոշման համեմատ Միլանի առժամանակեայ կառավարութեան՝ Հարդիկ կոմսին ձեռքովը՝ առաջարկութիւններ խաւրուեցան: Իսկ Միլանի կառավարութիւնն աս առաջարկութիւններն արհամարհանօք մերժեց ու կը պա-

հանջէր՝ որ Աւստրիա չէ թէ միայն Լոմբարտիան, հապա նաեւ Վենետիկ, Դալմատիա, Իստրիա, Դրիեստ ու հարաւային կամ Իտալական Դիրոլը բոլորովին Իտալացւոց թողու։ Աւստրիա չէր կրնար այսպիսի մեծ զոհ մը յանձն առնուլ. ուստի բանակցութիւնները շարունակուելով՝ իրերն երկայն ատեն անորոշ վիճակի մէջ կը մնային։ Աս միջոցին կայսրմէ Ռատեցքի սպարապետին հրաման եկաւ Կար. Ալբերտոսին ու Լոմբարտացւոց զինադադար առաջարկելու։ Կայսեր թուղթը քաջ սպարապետին ձեռքը հասաւ երբ որ Վիչենցայի յաղթութենէն ետքն իր յաղթական զօրքովը Վերոնա դարձած էր։ Իմացաւ ծերունին որ կայսրն իր պաշտօնէից անխոհեմ խորհուրդէն, ասոնք ալ Բալմերստընին խորամանկ հնարքներէն խաբուած են. ուստի ինք զինադադարն Աւստրիայի զինուց պատուոյն ու տէրութեան շահուն վնասակար ու նախատական որոշում սեպելով, շուտ մը կայսեր թուղթ մը գրեց։ Աս թղթին մէջ մինչեւ ան ատեն կայսերական զօրաց թշնամիներուն վրայ ըրած յաղթութիւնները յայտնի ընելէն ետքը՝ պարտուպատշաճ մեծարանօք, բայց զօրաւոր խօսքերով կ՚աղաչէր որ չյուսահատի, հապա նոր յաղթութիւններու յուսով առջի հրամանն ետ առնէ։ Ռատեցքի իր աս թուղթը անուանի Շուարցէնպէրկ իշխանին ձեռքը տուաւ, որն որ Կոյիդոյի ճակատին մէջ ընդունած վէրքէն դեռ կատարելապէս առողջացած չէր, եւ քիչ մը ետքը պաշտօնէից դահերէց եղաւ, ու անոր հայրենասիրութեան եւ ճարտարմտութեան յանձնեց որ ամէն բան կայսեր հասկըցնելով անոր միտքը փոխէ ու պատերազմն առանց ընդմիջահատութեան յառաջ տանելու հրաման ընդունի։ Իշխանն իրեն յանձնուած գործքը յաջողութեամբ կատարեց ու Ռատեցքի քիչ օրուան մէջ իր բաղձացած

ուրախացուցիչ պատասխանն ընդունելով՝ նոր զօրութեամբ թշնամւոյն դէմ գործելու սկսաւ։ — Հիմա դառնանք սա նոր ճակատամարտներուն պատմութիւնը շարունակելու։

Կար. Ալբերտոս պատերազմին սկիզբէն կը բաղձար ու կ'աշխատէր որպիսի եւ իցէ կերպով Մանդուայի հզօր ու անուանի ամրոցը, որն որ Լոմբարտիայի բալլիքը կը կոչուի, ձեռք բերել։ Խել մը ատեն կաշառով ու մատնութեամբ անոր տիրելու ջանալէն ու իր վախճանին չհասնելէն ետքը՝ հաստատութեամբ միտքը դրաւ իր զօրաց ու զէնքերուն զօրութեամբը զանիկայ պաշարել ու յարձակմամբ առնուլ։ Ուստի իր հրամանաւը Պաւա զօրապետը բազմաթիւ զօրքով (Յունիս 18.) յանկարծ Աւստրիայի զօրաց վրայ հասաւ, որոնք Մինչիոյի ձախ եզերաց վրայ Մանդուայէն մինչեւ Կովեռնոլա բանակած էին, ու զանոնք տեղերնէն հանեց ետ քշեց։ Ասկից ետքը 35—40 հազար Սարդինիացի զօրք Մանդուա ամէն դիաց պաշարեցին։ Այսչափ զօրքը Կար. Ալբերտոս իր Վերոնայի դիմացը Ռատեցքիին բանակին դէմ կեցող գնդերէն կամ գլխաւոր բանակէն բաժնած հեռացուցած, որով զանոնք շատ տկարացուցած էր։ Ռատեցքի թշնամւոյն շարժումն ու նպատակն իմանալով, զանիկայ խափանելու փութաց։ Ռիվոլիի ու Սոմմազամբանեայի բարձրութեանց վրայ ամրացած կեցած Սարդինիայի զօրաց վրայ Թուռն զօրապետին հրամանին տակ (Յունիս 21.) երկու դիաց յարձակում ընել տուաւ. սակայն սա յարձակմամբ թշնամւոյն մեծ վնաս մը չեղաւ։ Ասոր վրայ ինք Ռատեցքի (Յունիս 22.) գիշերանց զարհուրելի մրրկի մը ատեն իր գլխաւոր բանակովը Վերոնայէն ելաւ, առատուանց թշնամեաց բանակին դէմ հասաւ բանակեցաւ ու անհնարին սաստկութեամբ Սո-

նայի ու Սոմմաքամփանեայի բարձրութեանց վրայ յարձակում մ'ըրաւ։ Երեք (ըստ այլոց՝ մէկ ու կէս) ժամ անդադար թշնամւոյն հետ զարնուելէն ետքը, զանոնք կեցած տեղերնէն խախտեց ու փախուց. առաւ Մինչիոյի երեք անցքերուն եւ անոր մօտաւոր ըլլող բարձրութեանց տիրեց. ու շուտ մը նոյն գետափին վրայ՝ թշնամեաց թնդանօթներուն կրակին ու գնդակները բանի տեղ չդնելով՝ երկու կամուրջ գնել տուաւ։ Բայց դեռ գետին անդին կողմը չանցած, ինք նոյն բարձրութեանց վրայ իր բանակովը կեցած ատենը՝ Կար. Ալբերտոս երկու օր ետքը (Յուլիս 25.) հոն հասաւ չէ թէ 40, հապա 70 հազարի՝ բանակով. եւ նոյն օրը Գուստոզզայի քով կէս օրէն երկու ժամ առաջ սաստկալի տապի (ըստ Ռէօմիւրի՝ 28 աստիճան ջերմութեան) մէջ կռիւը սկսաւ. Ութ ժամ երկու կողմերն ալ անհնարին կատաղութեամբ պատերազմեցան։ Աւստրիոյ զօրքէն 50 պաշտօնական ու 600 զինուոր վիրաւորուեցան ու մեռան. խել մը զինուոր ալ անհնարին տապէն խելացնորեցան։ Կար. Ալբերտոս չկրցաւ ոչ բարձրութեանց վրայ յարձակիլ, ուր Աւստրիացւոց գունդերը Գուստոզզայի քով սփռուած էին ու ոչ իր կեցած տեղը հաստատ մնալ. ուստի եւ իրիկուան դէմ ստիպեցաւ ետ քաշուիլ ու աս օրուան յաղթութիւնը Ռատեցքիին թողուլ։

Սակայն երկու բանակները երկայն ատեն իրարու հանգիստ չտուին. Սարդինիացիք Գուստոզզայի քով յաղթուելէն ետքը, (Յուլիս 26.) Վոլդայի քով նորէն թշնամւոյն դիմացը ճակատեցան. երկու բանակներն ալ իրարու դէմ արտաքոյ կարգի կատաղութեամբ կը կռուէին, ու թէպէտ եւ գիշերն եկաւ հասաւ, սակայն կռիւը նոյն սաստկութեամբ կը շարունակէր, Վոլդայի ճամբաներուն վրայ երկու կողման զօրքերը (25,000

զինուորք) մէկզմէկ դիմաւորելով՝ առանց թշնամին բարեկամէն որոշել կարենալու՝ կուրօրէն կը զարնուէին։ Երբ որ առտու եղաւ (Յունիս 27.), սկսան երկու կողման զօրքերն իրարմէ զատուիլ ու կարգի մտնելէն ետքը՝ Նոր զօրութեամբ պատերազմիլ. վերջապէս Սարդինիացիք ի սկզբան աղէկ կարգով եւ քաշուելով՝ յաղթութիւնը Աւստրիացւոց բանակին մնաց։ Բայց քիչ մը ետքը երբ որ Ռատեցքի իր զօրքովը թշնամեաց ետեւէն քալելով՝ Կոյիդոյի ճամբուն վրայ հասաւ, նոյն՝ ի սկզբան աղէկ կարգով փախչող՝ զօրաց ողորմելի վիճակն ու յուսահատութիւնը յայտնի կը տեսնուէր։ Ինչու որ պատերազմին աշխատութիւնն ու ետեւէն հասնող թշնամւոյն վախը զՍարդինիացիներն արտաքոյ կարգի շփոթած ըլլալով՝ աւելի դիւրութեամբ յառաջ երթալու համար իրենց կաշիէ պայուսակները (չանթա), պաշտօնակալաց ուսադիր զարդերը, գլխարկները, զէնքերն ու զինուորական զգեստները իրենց փախած ճամբաներուն վրայ ձգած էին, զորոնք գեղացիները մէկտեղ դիզելով, անոնցմով ծաղրու համար բուրգեր կը կանգնէին։ Այսպէս դէպ ի Պիշիէրոյ փախչելով՝ խեղճ Կար. Ալբերտոս Պրեմոնա հասաւ, ուր իր քովը հազիւ 10,000 զինուոր մէկտեղ ժողված էին։ Իսկ Աւստրիացւոց զօրքը յաղթանակաւ յառաջ գացած ատեննին՝ ամէն դիհաց գեղացիները զիրենք իբրեւ իրենց ազատիչներն ուրախութեամբ բարեւելու կը վազէին։

Քանի որ դեռ Կար. Ալբերտոս այսպիսի պարտութիւններով ընկճած ու իբր թէ Իտալացւոց առջեւն երեսէ ինկած չէր, Միլանի յեղափոխական կառավարութիւնը Յունիսի 14էն սկսելով՝ Լոմբարտիա Բարմայի, Մոտենայի, Բատուայի, Վիչենցայի, Դրեվիզոյի ու Ռովիկոյի երկիրները Սարդինիայի երկիրներուն հետ միա-

ցած Սավոյական տղղատոհմին՝ այսինքն Սարդինիայի Թագաւորներուն իշխանութեան տակ մէկ պետութիւն հրատարակած էր։ Նա եւ Վենետիկի ժամանակեայ կառավարութիւնը (Յուլ. 4.) ժողովրդեան ստորանալեց աղաղակներէն բանադատելով՝ Վենետիկ երկիրն ալ Սարդինիայի հետ միացած ու Կար. Ալբերտոսին իշխանութեան տակ հրատարակեց։ Թէպէտ եւ Լոմբարտացիք այսպէս առատամտութեամբ Կար. Ալբերտոսին իշխանութիւնը կ'ընդունէին, բայց պատերազմներու մէջ դժբախտ Թագաւորին անանցէ գրեթէ ամենեւին զօրք ու օգնութիւն մը չէր ընդուներ։ Աւստրիայի զօրքն իրենց պատերազմներուն առենը՝ դիմացնին երբեք Լոմբարտացի զօրք ու զինուոր չտեսան։ Եւ Թէպէտ այսպէս՝ ինչպէս կ'ըսուի՝ ծայրիւ մասին ծանր գործքերու չէին մօտենար եւ Թագաւորին հետ զէնք շարժելու չէին փութար, սակայն իրենց լրագիրներուն մէջ գրիչներն անոր դէմ շարժելու չէին դանդաղեր։ Որովհետեւ Թագաւորը միօրինակ Թշնամեաց չէր յաղթեր ու արտաքոյ կարգի քաջութեան գործքերով Իտալացիները միշտ յաղթող չէր ըներ, անոր համար ամէն Թերթերու մէջ զինքն անպիտան մարդ, հայրենեաց մատնիչ ու Իտալական ազատութեան Թշնամի կ'անուանէին։ Իսկ երբ որ Գուադոցցայի պատերազմին մէջ Կար. Ալբերտոս բոլորովին յաղթուեցաւ, ալ հասարակապետականք վայրկեան մ'ալ չուզեցին համբերել կենալ. շուտ մը Միլանի ժամանակեայ կառավարութիւնը, որն որ բոլոր ազնուականներէն կազմուած էր, ցրուեցին, եւ իրենց կարծեկից (հասարակապետութիւն ուզող) անձինքներէն նոր կառավարութիւն մը դրին։ Անկից ետքը պատերազմի պատրաստութիւններ կը տեսնէին. գնդակներ կը Թափէին, զէնքեր կը ժողվէին, զանոնք սորին ժողովրդեան մէջ

կը բաժնէին, փողոցները պատնէշներով կը գոցէին կ՚ամ-րացընէին, եւ զիրար եւ զամէնքը կը սրտապնդէին մինչեւ ցվերջին շունչը Աւստրիացւոց ու Թագաւորականաց դէմ կռուելու: Ազնուականք հազիւ ատեն գտան՝ Աւստրիացւոց զօրքը կամ Կար. Ալբերտոսին զէնքն իրենց ու քաղքին օգնութեան չհասած՝ քաղքէն դուրս ելլելու եւ դէպ ի Դիչինոյ կամ Սարդինիայի երկիրը փախչելու, վասն զի կը գուշակէին որ Հասարակապետականաց սուրերն ու հրացաններն ամենէն առաջ իրենց արիւնը թափելու կը պատրաստուէին:

Իսկ Կար. Ալբերտոս Գուստոցցայի պարտութենէն ետեւ իր ցրուած զօրքն ըստ կարի մէկտեղ բերելէն ետքը՝ Լոտիի քով (Օգոս. 3.) հեղ մ՚ալ Ռատեցքիին գունդերուն հետ զարնուեցաւ. բայց հոն ալ նորէն յաղթուելով՝ իր զօրքն յառաջ քշեց ու Միլանի առջեւը բանակեցաւ: Ռատեցքի (Օգոս. 4.) անոր ետեւէն հասնելով՝ զինքը մինչեւ քաղքին պարիսպներուն քովը քշեց եւ հոն ալ կարճ պատերազմէ մը ետքը (Օգոս. 5.) Թագաւորը յաղթուելով՝ ալ բոլորովին վհատեցաւ: Ուստի թէպէտ եւ Գուստոցցայի կռիւէն ետքը Ռատեցքիէն զինադադար խնդրած էր եւ չէր ընդունած, որովհետեւ ան ատեն ծերունի յաղթողին միտքը մինչեւ Միլան երթալ էր, եւ հոն յաղթանակաւ չմտած՝ թշնամւոյն հետ ամենեւին դաշնադրութիւն մ՚ընել չէր ուզեր. բայց հիմայ Թագաւորը կը յուսար որ ալ Ռատեցքի զինադադարը չիմերժեր: Ասոր համար իր զօրապետները խորհուրդի կանչելով, իր վիճակն անոնց յայտնի խօսքերով ծանուցանելէն ետքը՝ հասկըցուց որ ինք Աւստրիացւոց հետ պայմանադրութիւն կամ զինադադար ընելէն ուրիշ պատշաճ միջոց չիգտներ: Իր խորհրդականներն ալ խորհուրդին հաւանեցան ու Կար.

Ալբերտոս նոյնը Ռատեցքիին առաջարկեց։ Ռատեցքի ալ Միլանի տիրած ու ներս մտնելու պատրաստ ըլլալով, Թագաւորին առաջարկութիւնն ընդունեցաւ. բայց այս պայմանները դրաւ, որ Սարդինիայի զօրքը Վենետիկ թողու ելլէ. Սարդինիական նաւատորմիղը Դրիէստի պաշարումը թողու Ադրիական ծովէն դուրս ելլէ. Բէս-քիերայի բերդն եւ ուրիշ ամուր տեղերն Աւստրիացւոց յանձնէ եւ իր բոլոր զօրքովը Թիչինոյ գետին միւս կողմն, այսինքն՝ բուն Սարդինիայի երկիրն անցնի։ Իսկ ինք կայսեր կողմանէ խոստացաւ որ այս պայմանները կատարուելէն ետքը՝ Սարդինիայի երկիրն իր ամբողջութեան ու սահմաններուն մէջ անվնաս կը թողու։ Կար. Ալբերտոս այս պայմաններուն ամէնն ալ յանձն առաւ։

Այս պայմանադրութեան լուրը քանի մը վայրկենի մէջ բոլոր Միլան քաղաքին մէջ տարածուելով, զարհուրելի տեսարան մը, խօսքով չբացատրուելու աղմուկ մը փրթաւ։ Բոլոր տարին ժողովուրդը կատաղէններու պէս ասդին անդին կը ժողվէր, կը պոռար եւ ուժգին սպառնալիքներով կը վազվռտէր։ Ամէնքն ալ խառն ի խուռն ձեռքերնին զէնքով վազած ատեննին՝ երբ որ զինադադար ընել ուզողներէն մէկը դիմացնին կ'ելլէր, կը զարնէին կը մեռցընէին։ Ասով ալ չհանդարտելով՝ տեղ տեղ տուներուն կրակ կու տային ու վառօդ գտնուած տեղերը բռնկցընելով՝ օդը կը հանէին։ Կատաղիներն այս ամէն բռնութեան գործքերն ըրած ատեննին՝ միաքերնին ու ջանքերնին իրենց սրտին դառնութիւնն ու կատաղութիւնը գլխաւորապէս ու ամենէն առաջ խեղճ Կար. Ալբերտոսին վրայ թափել էր։ Ամէն կերպ թշնամութեան խօսքերով, նախատական աղաղակներով զինքը թշնամի Իտալական ազատութեան ու մատնիչ հայրենեաց կը կանչէին։ Իր նստած պալատին մէջ, ուր կատաղի

*բազմութեան վախէն փախած պատսպարած էր, անդա-դար կը լսէր անոնց պոռալը՝ Մա՛հ Մառանչին, որ զմեզ թշնամիներուն ծախեց։ Քանի մը հեղ իր ու իր որդւոց մեկուն վրայ հրացան պարպելէն ետքը՝ բոլոր պալատին պատերը դնդակներով ծակեցին ու վերջապէս անոր տակին ական բանալով՝ կ՚ուզէին զինքն որսալ եւ իցէ կերպով մեռցնել։ Բայց իր պաշտօնակիցներէն մէկը՝ հետը 27 զինուոր առած՝ իր կենաց վտանգովը հնարք մը գտաւ, պալատը մտաւ ու ծածուկ ճամբով մը զինքը հանեց ա-զատեց։ Սակայն թագաւորն ու իր զօրքը կատաղիներուն ձեռքէն բոլորովին ազատելու եւ իրենց երկիրը դառնա-լու համար աւելի եւս օգնեց Ռատեցքի, որ իր գնդերո-վը Միլանի մերձենալով՝ ժողովրդեան կատաղութիւնը հանդարտեցուց ու ամէն բան լմննալէն ետքը, (Օգոս. 6.) յաղթանակաւ Միլան մտաւ, ուսկից չորս ամիս ա-ռաջ դուրս ելած էր, իր զօրաց ըսելով՝ թէ քիչ ատե-նէն նորէն հոս կը դառնանք։*

*Ինչպէս կրնայ մտածուիլ՝ Ռատեցքի իր զօրքովը Միլան մտած ատենը՝ բնակչաց կողմանէ ամենեւին ու-րախութեան նշան մը չցուցուեցաւ. որովհետեւ ժողովր-դեան մէկ մասն իր ազատամտական գործքերուն համար ահուդողի մէջ էր, մէկ մասը վերջին օրերուն դէպքե-րովը շփոթութեան մէջ կը գտնուէր, իսկ մէկ մասն ալ՝ այսինքն ազնուականք՝ որոնք յեղափոխութեան գլուխ ու յառաջացուցիչ եղած էին, Աւստրիացւոց յաղթա-կան դարձովը չէ թէ միայն բոլոր իրենց ջանիցը եւ ա-զատութիւն գտնելու բաղձանաց ոչնչանալը կը տեսնէ-ին, հապա նա եւ ետեւէն իրենց ընդունելու արժանաւ-որ հատուցումը մտածելով՝ ուրիշ տեղ ապաւէն գտնե-լու փութացած էին։ Ուստի յաղթող զօրքը գլխարկնին կանաչ ճիւղերով զարդարուած՝ իրենց ծերունի սպարա-*

պետքին ետեւէն քաղաքին մէջ յառաջ քալած ատեննին բոլոր փողոցներուն վրայ մարդ մ՚ալ չէին տեսներ, տուներուն պատուհանները գոցուած էին. ու զինուորներուն՝ իրենց ահռելի զօրագլուխն իր բնակարանը տարած ատեննին՝ հանած ուրախական ձայներուն ժողովրդեան մէջէն եւ ոչ ձայն մը կը միաբանէր ու կը պատասխանէր: Բայց մեծատիրա ու մարդասէր ծերունին Միլան մտնելով՝ չէ թէ միայն քաղաքացւոց հետ իբրեւ թշնամի չվարուեցաւ, հապա նա եւ աչք գոցեց ու թող տուաւ որ Սարդինիացւոց գունդերն իրենց երկիրը դարձած ատենը՝ ապստամբութեան մասնակից ըլլողներուն մեծ մասն անոնց հետ Լոմբարտիա թողու եւ Սարդինիա անցնի: Իտալացի մատենագիրները, որոնք աս պատերազմներուն պատմութիւնն իրենց ազգային համեմատ տեղ տեղ չափազանց անղեկութիւններով կը ստորագրեն, Գերմանացւոց բռնութիւններէն ազատ մնալու համար (ինչպէս իրենք կ՚ըսեն) Սարդինիայի զօրաց հետ կամօք աքսոր գացողներուն կամ Աւստրիայի իշխանութենէն դուրս ելլողներուն թիւը մինչեւ 100,000ի կը հասցընեն: Բայց իրենք իսկ կը հաստատեն՝ որ աս փախստականներուն երեք մասին երկուքը, որոնց մէջ՝ նոյն պատմչաց խօսքին նայելով՝ շատ ծերեր, տղաք ու կանայք կային, երկու օր ետքը նորէն ետ դարձան, Աւստրիայի երկիրը մտան: Իսկ բուն Սարդինիայի երկիրը մնացողները, որոնց թիւը 30,000էն պակաս չէր, ազնուականներէն ու յեղափոխութեան օգնիչ ըլլողներէն զատ՝ էին Լոմբարտիայի կայսերական գնդերէն ապստամբներուն կողմն անցնող Իտալացի զինուորներ ու պաշտօնակալներ, նաեւ մ՚ալ դատապարտաշրջիկ մարդիկ, որոնք չէ թէ Աւստրիայի վրէժխնդրութենէն վախնալնուն, հապա աւանց աշխատելու հաց գտնելու համար Սարդինիա վազեցին:

Այս փախստականներուն մէջն էր նաև Հռչակաւոր Մաձձինին, որն որ Կար. Ալբերտոս պատերազմի դաշտին վրայ իր զօրքը գլխաւորեան Աւստրիայի իշխանութենէն ազատելու եւ օտարազգի տիրողներէն մաքրելու համար պատերազմած ատենը, ինք (Մաձձինի) Միլանի մէջ Հասարակապետական կառավարութիւնը գովեստներով բարձրացընելէն, բոլոր Իտալիոյ միակ հասարակապետութիւն ընելու քարոզները յաճախելէն, թագաւորական կողմնակցութիւնը զրպարտելէն ու առանձինն զԿար. Ալբերտոս (թագաւոր ըլլալուն պատճառաւ) ամէնդի կասկածելի ընելէն, որով եւ անոր պատերազմին օգնելու արգելելէն չէր դադրեր: Շատ Լոմբարտացիք անոր հետ միաբանելով՝ աւելի լաւ կը համարէին հանգիստ նստիլ, ժողովներ ընել ու հասարակապետութիւն կանգնելու միջոցներու վրայ խօսիլ, քան թէ հայրենեաց շահուն համար զէնք առնուլ ու պատերազմի երթալ: Թէպէտ Մաձձինի Սարդինիոյ զօրաց հետ Լոմբարտիայէն ելաւ, բայց գիտնալով որ Կարիպալտի իր գլուխը խել մը ազատական զինուորներ ժողված լեռներու վրայ Աւստրիացւոց դէմ կը կռուի, գնաց անոր հետ միացաւ, կը կարծէր որ աս ալ մը զօրաց օգնութեամբն իր քարոզած Իտալական հասարակապետութիւնը պիտ՚որ կանգնէ: Սակայն իր այս երազն ալ քիչ ատեն տեւեց, որովհետեւ Աւստրիացիք Մորանցոնէի քով Կարիպալտիին զօրացը հետ զարնուելով, զանոնք Հելուետիայի սահմանը քշեցին: Այսպէս Աւստրիա բոլոր Լոմբարտեան-Վենետական երկիրներէն յեղափոխութիւնը վերջացընելով՝ իր կառավարութիւնը յառաջ տանիլ սկսաւ: Միայն Վենետիկ քաղաքն իր ապըստամբութեան մէջ մնաց. որն որ Կար. Ալբերտոսին Ռատեցքիին զօրքէն յաղթուելն ու զինադադար ընելը

լուծին պէս, զինքն ատոր իշխանութենէն ազատ հրատարակեց ու նորէն իր հասարակապետական կառավարութիւնը սկսելով՝ ամէն պատրաստութիւններն ըրաւ՝ Աւստրիացւոց դէմ կենալու եւ Աւստրիայի տակ չմնալու: Ուստեցի ամէն միջոցներն բանեցուց՝ հայրենասէր ուժերը խանդավառեցընելու եւ ազատութեան սէրն [illegible], բայց երբ որ ամէն խոստումներն ու առաջնորդութիւններն օգուտ մը չըրին, բոլոր քաղաքը ցամաքի կողմանէ իր զօրաց մէկ մասովը պաշարեց:

Կար. Ալպերտոս իր երկիրը մտնելէն ետքը (Օգոս. 9.) զինադադարի դաշինքը հաստատեց, որուն դադրիլը Աւստրիայի հետ պատերազմը շարունակելու սկսելէն ութ օր առաջ պիտի'ր ծանուցանէր: Այս դաշանց համեմատ Լոմպարտիայի մէջ իրեն առած ամէն քաղաքներն ու բերդերն Աւստրիացւոց յանձնեց ու իր նաւատորմիղը Վենետիկի ջրերէն ետ կանչեց: Սակայն իր երկիրը հասնելէն ետքը՝ Աւստրիայի դէմ պատերազմ ընելու խորհուրդը չէ թէ միայն չթողուց, հապա նոյնը նորէն սկսելու միջոցներուն ձեռք զարկաւ: Առջի հեղ պատերազմը սկսելէն առաջ օտար օգնութիւններն արհամարհելով՝ ըսած էր. "Իտալիա ինք իրմէն իր գործքը կը կատարէ*,, բայց աս հեղու Գաղղիայի օգնութեան դիմեց ու ան ատեններն առժամանեայ հասարակապետական կառավարութեան գահերեցէն խնդրեց՝ որ իրեն Աւստրիայի դէմ նոր պատերազմ մը սկսելու համար քանի մը գունդ զօրք խաւրէ՝ Պիւժոյ սպարապետին հրամանին տակ: Գաղղիայի կառավարութիւնն աս խնդիրքը մերժեց**, ուստի եւ աս հեղու ալ պատերազմ սկսելու

* L'Italia farà da se.

** Գաղղիայի հասարակապետութիւնը Կար. Ալպերտոսին՝ առջի հեղ Աւստրիայի դէմ պատերազմ բանալէն առաջ՝ բա-

համար հարկ էր որ ինք իր զօրքն ու զօրութեամբը դարձելու պատրաստուէր: Հիմայ թողունք զԿարլ. Ալբերտոս որ նոր պատերազմին պատրաստութիւնները տեսնէ. Նոյնպէս եւ Վենետիկ ալ առ այժմ իր պաշարման մէջ թող տալով, Միջին Իտալիայի, առանձինն Հռոմայ երկրին անցքերուն պատմութիւնը հիւսենք:

Սարդինիայի թագաւորն Աւստրիայի հետ զինադադար ընելէն ու իր զօրքովը իրեն երկիրը քաշուելէն ետքը՝ ալ Իտալիայի պզտիկ տէրութեանց մէջ Մածծինեանք Աւստրիայի զօրութեան դէմ չէին կրնար հնարքներ բանեցընել ու ժողովրդոց վրայ ազատարար իրենց ազդեցութիւնը ցուցընել: Ուստի եւ Մոտենայի ու

բարեկամական ազդարարութիւն ընելով՝ խորհուրդ տուած էր, որ այնպիսի տարակուսելի վախճան ունեցող, անօգուտ ու յանդուգն գործք մը չընէր: Բայց երբ որ Կարլ. Ալբերտոս՝ ան ատեն իր սեպհական զօրութեան ապաւինելով ու Իտալացւոց շողոքորթական խօսքերէն ու մեծամեծ խոստումներէն կուրնալով՝ պատերազմը սկսաւ, Գաղղիա ալ բոլորովին անգործ չկենալու համար՝ Սարդինիայի տէրութեան սահմանագլուխները Ալպեան լերանց վրայ պզտիկ բանակ մը խաւրեց: Ու իր Թուրին նստող դեսպանին ձեռքովը Կարլ. Ալբերտոսին իմացուց՝ որ եթէ իր աս անխորհուրդ գործքովը կամ պատերազմովը Սարդինիայի տէրութեան անկախութիւնը վտանգի մէջ իյնալու ըլլայ, ան ատենն նոյն պզտիկ բանակն Ալպեան լեռներէն վար իջնալով՝ նոյն երկրին ամբողջութիւնը պահելու համար իրեն օգնէ: Գաղղիայի կառավարութեան աս բարեկամական գործքն ալ Կարլ. Ալբերտոսին անհաճոյ եղաւ, որովհետեւ Գաղղիա աս իր պատրաստութեամբն անոր զօրութեան ու յաղթելու բաւական ոյժ ունենալուն վրայ տարակոյս կը ցուցնէր: Ուստի շարունակ Փարիզ մարդ կը խաւրէր ու կը ջանար զկառավարութիւնը պարտաւորել՝ որ ան Ալպեան բանակը ետ կանչէ: Աս սանկ ըլլալով՝ Գաղղիայի կառավարութիւնն ալ ի հարկէ իր պատուոյն պաշտպանական սկսեց՝ երբ որ Կարլ. Ալբերտոս հեղ մը յաղթուելէն ետքը յառաջուան մերժած օգնութիւնը կը խնդրէր՝ նոյնն անոր գլանալ:

ցած Սավոյական ազգատոհմին՝ այսինքն Սարդինիայի Թագաւորներուն իշխանութեան տակ մէկ տէրութիւն հրատարակած էր։ Նա եւ Վենետիկի առժամանակեայ կառավարութիւնը (Յուլ. 4.) ժողովրդեան սպառնալից աղաղակներէն բռնադատելով՝ Վենետիկի երկիրն ալ Սարդինիայի հետ միացած ու կար. Ալբերտոսին իշխանութեան տակ հրատարակեց։ Թէպէտ եւ Լոմբարտացիք այսպէս առատամտութեամբ կար. Ալբերտոսին իշխանութիւնը կ՚ընդարձակէին, բայց պատերազմներու մէջ դժբախտ Թագաւորն անոնցմէ դրեթէ ամենեւին զօրք ու օգնութիւն մը չէր ընդուներ։ Աւստրիայի զօրքն իրենց պատերազմներուն ատենը՝ դիմացնին երբեք Լոմբարտացի զօրք ու զինուոր չտեսան։ Եւ թէպէտ այսպէս՝ ինչպէս կ՚ըսուի՝ ծայրիւ մասին ծանր գործքերու չէին մօտենար եւ Թագաւորին հետ զէնք շարժելու չէին փութար, սակայն իրենց լրագիրներուն մէջ գրիչնին անոր դէմ շարժելու չէին դանդաղեր։ Որովհետեւ Թագաւորը միօրինակ թշնամեաց չէր յաղթեր ու արտաքոյ կարգի քաջութեան գործքերով Իտալացիները միշտ յաղթող չէր ըներ, անոր համար ամէն թերթերու մէջ զինքն անպիտան մարդ, հայրենեաց մատնիչ ու Իտալական ազատութեան թշնամի կ՚անուանէին։ Իսկ երբ որ Գուսդոցցայի պատերազմին մէջ կար. Ալբերտոս բոլորովին յաղթուեցաւ, ալ հասարակապետականք վայրկեան մ՚ալ չուզեցին հանդարտ կենալ. շուտ մը Միլանի առժամանակեայ կառավարութիւնը, որն որ բոլոր ազնուականներէն կազմուած էր, ցրուեցին, եւ իրենց կարծեկից (հասարակապետութիւն ուզող) անձինքներէն նոր կառավարութիւն մը դրին։ Ասկից ետքը պատերազմի պատրաստութիւններ կը տեսնէին. գնդակներ կը թափէին, զէնքեր կը ժողվէին, զանոնք ստորին ժողովրդեան մէջ

կը բաժնէին, փողոցները պատնէշներով կը գոցէին կ'ամրացընէին, եւ զիրար եւ զամէնքը կը սրտապնդէին մինչեւ ցվերջին շունչը Աւստրիացւոց ու Թագաւորականաց դէմ կռուելու։ Ազնուականք հազիւ տասն գտան՝ Աւստրիացւոց զօրքը կամ Կար. Ալբերտոսին զէնքն իրենց ու քաղքին օգնութեան չհասած՝ քաղքէն դուրս ելլելու եւ դէպ ի Դիչինոյ կամ Սարդինիայի երկիրը փախչելու, վասն զի կը գուշակէին որ Հանրապետականաց սուրերն ու հրացաններն ամէնէն առաջ իրենց արիւնը թափելու կը պատրաստուէին։

Իսկ Կար. Ալբերտոս Գուադոզզայի պարտութենէն ետեւ իր ցրուած զօրքն ըստ կարի մէկտեղ բերելէն ետքը՝ Լոտիի քով (Օգոս. 3.) հեղ մ'ալ Ռատեցքիին գունդերուն հետ զարնուեցաւ. բայց հոն ալ նորէն յաղթուելով՝ իր զօրքն յառաջ քշեց ու Միլանի առջեւը բանակեցաւ։ Ռատեցքի (Օգոս. 4.) անոր ետեւէն հասնելով՝ զինքը մինչեւ քաղքին պարիսպներուն քովը քշեց եւ հոն ալ կարճ պատերազմէ մը ետքը (Օգոս. 5.) Թագաւորը յաղթուելով՝ ալ բոլորովին վհատեցաւ։ Ուստի թէպէտ եւ Գուադոզզայի կռիւէն ետքը Ռատեցքիէն զինադադար խնդրած էր եւ չէր ընդունած, որովհետեւ ան ատեն ծերունի յաղթողին միտքը մինչեւ Միլան երթալ էր, եւ հոն յաղթանակաւ չմտած՝ թշնամւոյն հետ ամէնեւին դաշնագրութիւն մ'ընել չէր ուզեր. բայց հիմայ Թագաւորը կը յուսար որ ալ Ռատեցքի զինադադարը չիմերժեր։ Ասոր համար իր զօրապետները խորհուրդի կանչելով, իր վիճակին անոնց յայտնի խօսքերով ծանուցանելէն ետքը՝ հասկըցուց որ ինք Աւստրիացւոց հետ պայմանադրութիւն կամ զինադադար ընելէն ուրիշ պատշաճ միջոց չիգտներ։ Իր խորհրդականներն ալ խորհուրդին հաւանեցան ու Կար.

Ալբերտոս նոյնը Ռատեցքիին առաջարկեց։ Ռատեցքի ալ Միլանի տիրած ու ներս մտնելու պատրաստ ըլլալով, Թագաւորին առաջարկութիւնն ընդունեցաւ. բայց աս պայմանները դրաւ, որ Սարդինիայի զօրքը Վենետիկ թողու ելլէ. Սարդինիական նաւատորմիղը Դրիէստի պաշարումը թողու Ադրիական ծովէն դուրս ելլէ. Բէսքիերայի բերդն եւ ուրիշ ամուր տեղերն Աւստրիացւոց յանձնէ եւ իր բոլոր զօրքովը Թիչինոյ գետին միւս կողմն, այսինքն՝ բուն Սարդինիայի երկիրն անցնի։ Իսկ ինք կայսեր կողմանէ խոստացաւ որ աս պայմանները կատարուելէն ետքը՝ Սարդինիայի երկիրն իր ամբողջութեան ու սահմաններուն մէջ անվնաս կը թողու։ Կար. Ալբերտոս աս պայմաններուն ամէնն ալ յանձն առաւ։

Աս պայմանադրութեան լուրը քանի մը վայրկենի մէջ բոլոր Միլան քաղքին մէջ տարածուելով, զարհուրելի տեսարան մը, խօսքով չբացատրուելու աղմուկ մը փրթաւ։ Բոլոր տարին ժողովուրդը կատաղիներու պէս ասդին անդին կը ժողվէր, կը պոռար եւ ուժգին սպառնալիքներով կը վազվռտէր։ Ամէնքն ալ խառն ի խուռն ձեռքերնին զէնքով վազած ատեննին՝ երբ որ զինուադար ըսել ուզողներէն մէկը դիմացնին կ՚ելլէր, կը զարնէին կը մեռցնէին։ Ասով ալ չհանդարտելով՝ տեղ տեղ տուներուն կրակ կու տային ու վառօդ գտնուած տեղերը բռնկցնելով՝ օդը կը հանէին։ Կատաղիներն աս ամէն բռնութեան գործքերն ըրած ատենննին՝ միտքերնին ու ջանքերնին իրենց սրտին դառնութիւնն ու կատաղութիւնը գլխաւորապէս ու ամենէն առաջ խեղճ Կար. Ալբերտոսին վրայ թափել էր։ Ամէն կերպ թշնամութեան խօսքերով, նախատական աղաղակներով զինքը թշնամի Իտալական ազատութեան ու մատնիչ հայրենեաց կը կանչէին։ Իր նստած պալատին մէջ, ուր կատաղի

բազմութեան մախէն փախած պատսպարուած էր, անդա-
դար կը լսէր անոնց պոռալը՝ Մա՜հ մատնիչին, որ զմեզ
թշնամիներուն ծախեց։ Քանի մը հեղ իր ու իր որդւոց
մեկուն վրայ հրացան պարպեցին ետքը՝ բոլոր պալատին
պատերը գնդակներով ծակեցին ու վերջապէս անոր տանը
սկսան քանդելով՝ կ՚ուզէին զինքն ողջ ողջ եւ ինչ կերպով
մեռցընել։ Բայց իր պաշտօնակալներէն մէկը՝ հեռու 27
զինուոր առած՝ իր կենաց փրկութիւնը հնարք մը գտաւ,
պալատը մտաւ ու ծածուկ ճամբով մը զինքը հանեց ա-
զատեց։ Սակայն թագաւորն ու իր զօրքը կատաղիներուն
ձեռքէն բոլորովին ազատելու եւ իրենց երկիրը դառնա-
լու համար աւելի եւս օգնեց Ռատեցքի, որ իր գնդերո-
վը Միլանի մերձենալով՝ ժողովրդեան կատաղութիւնը
հանդարտեցուց ու ամէն բան լմննալէն ետքը, (Օգոս.
6.) յաղթանակաւ Միլան մտաւ, ուսկից չորս ամիս ա-
ռաջ դուրս ելած էր, իր զօրաց ըսելով՝ թէ քիչ ատե-
նէն նորէն հոս կը դառնանք։

Ինչպէս կրնայ մտածուիլ՝ Ռատեցքի իր զօրքովը
Միլան մտած ատենը՝ բնակչաց կողմանէ ամենեւին ու-
րախութեան նշան մը չցուցուեցաւ. որովհետեւ ժողովր-
դեան մէկ մասն իր ազատամիտական գործքերուն համար
ահուդողի մէջ էր, մէկ մասը վերջին օրերուն դէպքե-
րովը շփոթութեան մէջ կը գտնուէր, իսկ մէկ մասն ալ՝
այսինքն ազնուականք՝ որոնք յեղափոխութեան գլուխ
ու յառաջացուցիչ եղած էին, Աւստրիացւոց յաղթա-
կան դարձովը չէ թէ միայն բոլոր իրենց ջանքը եւ ա-
զատութիւն գտնելու բաղձանաց ոչնչանալը կը տեսնէ-
ին, հապա նաեւ ետեւէն իրենց ընդունելու արժանաւ-
որ հատուցումը մտածելով՝ ուրիշ տեղ ապաւէն գտնե-
լու փութացած էին։ Ուստի յաղթող զօրքը գլխարկնին
կանաչ ճիւղերով զարդարուած՝ իրենց ծերունի սպարա-

պետքին տեսուէն քաղաքին մէջ յառաջ քալած տուններին՝ բոլոր փողոցներուն վրայ մարդ մ՚ալ չէին տեսներ, տուներուն պատուհանները գոցուած էին. ու զինուորներուն՝ իրենց սիրելի զօրավարին իր բնակարանը տարած տուններին՝ համած ուրախական ձայներուն ժողովրդեան մէջէն եւ ո՛չ ձայն մը կը միաբանէր ու կը պատասխանէր։ Բայց մեծասիրտ ու մարդասէր ծերունին Միլան մտնելով՝ չէ թէ միայն քաղաքացւոց հետ իբրեւ թշնամի չվարուեցաւ, հապա նա եւ աչք գոցեց ու թող տուաւ որ Սարդինիացւոց գունդերն իրենց երկիրը դարձած ատենը՝ ապստամբութեան մասնակից ըլլողներուն մեծ մասն անոնց հետ Լոմպարտիա թողու եւ Սարդինիա անցնի։ Իտալացի մատենագիրները, որոնք այս պատերազմներուն պատմութիւնն իրենց զգացմանց համեմատ տեղ տեղ չափազանց տեղեկութիւններով կը ստորագրեն, Գերմանացւոց բռնութիւններէն ազատ մնալու համար (ինչպէս իրենք կ՚ըսեն) Սարդինիայի զօրաց հետ կամօք աքսոր գացողներուն կամ Աւստրիայի իշխանութենէն դուրս ելլողներուն թիւը մինչեւ 100,000ի կը հասցընեն։ Բայց իրենք իսկ կը հաստատեն՝ որ այս փախստականներուն երեք մասին երկուքը, որոնց մէջ՝ նոյն պատմչաց խօսքին նայելով՝ շատ ծերեր, տղաք ու կանայք կային, երկու օր ետքը նորէն ետ դարձան, Աւստրիայի երկիրը մտան։ Իսկ բուն Սարդինիայի երկիրը մնացողները, որոնց թիւը 30,000էն պակաս չէր, ազնուականներէն ու յեղափոխութեան օգնիչ ըլլողներէն զատ՝ էին Լոմպարտիայի կայսերական գնդերէն ապստամբներուն կողմն անցնող Իտալացի զինուորներ ու պաշտօնակալներ, խել մ՚ալ դատարկաշըջիկ մարդիկ, որոնք չէ թէ Աւստրիայի վրէժխնդրութենէն վախնալնուն, հապա աւանց աշխատելու հաց գտնելու համար Սարդինիա վազեցին։

Աս փախստականներուն մէջն էր նաև հռչակաւ-
որ Մածծինին, որն որ Կար. Ալբերտոս պատերազմի
դաշտին վրայ իր զօրքը զԻտալիան Աւստրիայի իշխանու-
թենէն ազատելու եւ օտարազգի տիրողներէն մաքրելու
համար պատերազմած ատենը, ինք (Մածծինի) Միլանի
մէջ հասարակապետական կառավարութիւնը գովեստնե-
րով բարձրացընելէն, բոլոր Իտալիա միակ հասարակա-
պետութիւն ընելու քարոզները յաճախելէն, Թագաւո-
րական կողմնակցութիւնը զրպարտելէն ու առանձինն
զԿար. Ալբերտոս (Թագաւոր ըլլալուն պատճառաւ) ամէն
դի կասկածելի ընելէն, որով եւ անոր պատերազմին օգ-
նելու արգելելէն չէր դադրեր։ Շատ Լոմբարտացիք ա-
նոր հետ միաբանելով՝ աւելի լաւ կը համարէին հան-
դարտ նստիլ, ժողովներ ընել ու հասարակապետութիւն
կանգնելու միջոցներու վրայ խօսիլ, քան թէ հայրե-
նեաց շահուն համար զէնք առնուլ ու պատերազմի եր-
թալ։ Թէպէտ Մածծինի Սարդինիայի զօրաց հետ Լոմ-
բարտիայէն ելաւ, բայց գիտնալով որ Կարիպալտի իր
գլուխը խել մը ազատական զինուորներ ժողված լեռ-
ներու վրայ Աւստրիացւոց դէմ կը կռուի, գնաց անոր
հետ միացաւ, կը կարծէր որ աս ափ մը զօրաց օգ-
նութեամբն իր քարոզած Իտալական հասարակապետու-
թիւնը պիտ՚ որ կանգնէ։ Սակայն իր այս երազն ալ քիչ
ատեն տեւեց, որովհետեւ Աւստրիացիք Մորանցոնէի
քով Կարիպալտիին զօրացը հետ զարնուելով, զանոնք
Հելուետիայի սահմանը քշեցին։ Այսպէս Աւստրիա բո-
լոր Լոմբարտեան-Վենետական երկիրներէն յեղափո-
խութիւնը վերջացընելով՝ իր կառավարութիւնը յա-
ռաջ տանիլ սկսաւ։ Միայն Վենետիկ քաղաքն իր ա-
պստամբութեան մէջ մնաց. որն որ Կար. Ալբերտոսին
Ռատեցքիին զօրքէն յաղթուիլն ու զինադադար ընելը

լուծին մէջ, զինքն անոր իշխանութենէն ազատ հրատարակեց ու նորէն իր հասարակապետական կառավարութիւնը սկսելով՝ ամէն պատրաստութիւններն ըրաւ Աւստրիացւոց դէմ կենալու եւ Աւստրիայի տակ չմտնելու։ Ռատեցքի ամէն միջոցները բանեցուց՝ հպարտ ա-ռիւծը խոնարհեցընելու եւ աւստրիական արծուին հետ բարեկամացընելու, բայց երբ որ ամէն խոստմունքներն ու առաջարկութիւններն օգուտ մը չըրին, բոլոր քաղաքը ցամաքի կողմանէ իր զօրաց մէկ մասովը պաշարեց։

Կար. Ալբերտոս իր երկիրը մտնելէն ետքը (Օգոս. 9.) զինադադարի դաշինքը հաստատեց, որուն զօրքերը Աւստրիայի հետ պատերազմը շարունակելու սկսելէն ութ օր առաջ պիտի՛ որ ծանուցանէր։ Աս դաշանց համեմատ Լոմպարտիայի մէջ իրեն տուած ամէն քաղաքներն ու բերդերն Աւստրիացւոց յանձնեց ու իր նաւատորմիղը Ադրիական ծովերէն ետ կանչեց։ Սակայն իր երկիրը հասնելէն ետքը՝ Աւստրիայի դէմ պատերազմ ընելու խորհուրդը չէ թէ միայն չթողուց, հապա նոյնը նորէն սկսելու միջոցներուն ձեռք զարկաւ։ Առջի հեղ պատերազմը սկսելէն առաջ օտար օգնութիւններն արհամարհելով՝ ըսած էր. "Իտալիա ինք իրմէն իր գործքը կը կատարէ*", բայց աս հեղու Գաղղիայի օգնութեան դիմեց ու ան ատենուան առժամանակեայ հասարակապետական կառավարութեան գահերեցէն խնդրեց՝ որ իրեն Աւստրիայի դէմ նոր պատերազմ մը սկսելու համար քանի մը գունդ զօրք խաւրէ՝ Պիւժոյ սպարապետին հրամանին տակ։ Գաղղիայի կառավարութիւնն աս խնդիրքը մերժեց**, ինչուն եւ աս հեղու ալ պատերազմ սկսելու

* L'Italia farà da se.

** Գաղղիայի Հասարակապետութիւնը Կար. Ալբերտոսին՝ առջի հեղ Աւստրիայի դէմ պատերազմ բանալէն առաջ՝ բա-

համար հարկ էր որ ինք իր զօրքն ու զօրութեամբը դարձնելու պատրաստուէր։ Հիմայ թողունք զինք. Ալբերտոս որ նոր պատերազմին պատրաստութիւնները տեսնէ. Նոյնպէս եւ Վենետիկ այլ առ այժմ իր պաշարման մէջ թող տալով, Միջին Իտալիայի, առանձինն Հռոմայ երկրին անցքերուն պատմութիւնը հիւսենք։

Սարդինիայի թագաւորն Աւստրիայի հետ զինադադար ընելէն ու իր զօրքովը իրեն երկիրը քաշուելէն ետքը՝ այլ Իտալիայի պզտիկ տէրութեանց մէջ Մածծինեանք Աւստրիայի զօրութեան դէմ չէին կրնար հնարքներ բանեցընել ու ժողովրդոց վրայ ազատարար իրենց ազդեցութիւնը ցուցընել։ Ռոսի եւ Մոնտանելլիի ու

բարեկամական ազդարարութիւն ընելով՝ խորհուրդ տուած էր, որ այնպիսի տարակուսելի վախճան ունեցող, անօգուտ ու յանդուգն գործք մը չսկսի։ Բայց երբ որ Կարլ. Ալբերտոս՝ ան ատեն իր սեպհական զօրութեան ապաւինելով ու Իտալացւոց ժողովրդական խօսքերէն ու մեծամեծ խոստումներէն կուրնալով՝ պատերազմը սկսաւ, Գաղղիա այլ բոլորովին անգործ չկենալու համար՝ Սարդինիայի տէրութեան սահմանագլուխները Ալպեան լերանց վրայ պզտիկ բանակ մը խաւրեց։ Իսկ իր Բուլիէն Նասսող դեսպանին ձեռքովը Կարլ. Ալբերտոսին իմացուց՝ որ եթէ իր աս անխորհուրդ գործքովը կամ պատերազմովը Սարդինիայի տէրութեան անկախութիւնը վտանգի մէջ իյնալու ըլլայ, ան ատեն նոյն պզտիկ բանակն Ալպեան լեռներէն վար իջնալով՝ նոյն երկրին ամբողջութիւնը պահելու համար իրեն օգնէ։ Գաղղիայի կառավարութեան աս բարեկամական գործքն այլ Կարլ. Ալբերտոսին անհաճոյ եղաւ, որովհետեւ Գաղղիա աս իր պատրաստութեամբն անոր զօրութեան ու յաղթելու բաւական ըլլալուն վրայ տարակոյս կը ցուցընէր։ Ռոսի չարունակ Փարիզ մարդ կը խաւրէր ու կը ջանար զկառավարութիւնը պարտաւորել՝ որ ան Ալպեան բանակը ետ կանչէ։ Աս ասանկ ըլլալով՝ Գաղղիայի կառավարութիւնն այլ ի հարկէ իր պատուոյն պատշաճական սեպեց՝ երբ որ Կարլ. Ալբերտոս հեղ մը յաղթուելէն ետքը յառաջուան մերժած օգնութիւնը կը խնդրէր՝ նոյնն անոր զլանալ։

Բարմայի դքսերն այնուհետեւ անոնցմէ վախ չունենալով՝ իրենց երկիրները դարձան ու կառավարութիւննին յառաջ տանելու սկսան։ Իսկ Տոսկանա դեռ չէր կրնար իր հանդիստը գտնել՝ քանի որ սահմանակից քահանայապետական երկրին մէջ յեղափոխութեան փոթորիկը չէ թէ միայն չէր դադրած կամ գոնէ տկարացած, հապա օրէ օր աւելի եւս զայրանալու վրայ էր։

Հռոմայի մէջ քահանայապետին (Մարտ 15.) տուած ազատական սահմանադրութիւնը ժողովրդեան մեծ մասին հաճոյ եղած ու անոր շատ յոյսերը կատարած էր։ Բայց Մածծինեանք ամէն տեղերէն աւելի հոն ամէն խոհեմութեան ու չափաւորութեան օրէնքներն արհամարհելով, իրենց ամէն անդէպ ու յիմարական բաղձանքներուն կատարումը չտեսած՝ հանդարտելու նշան չէին ցուցըներ։ Իրենց կատաղութիւնը Գերմանացւոց, մանաւանդ Աւստրիացւոց դէմ չափ ու սահման չէր ճանչնար. ու "Մա՛հ Գերմանացւոց" պոռացողները՝ իրենց ձայնն օրէ օր աւելի եւս կը բարձրացընէին։ Աս կատաղութենէն շարժած՝ քահանայապետին դէմ կը զայրանային որ Կար. Ալբերտոս Աւստրիայի դէմ պատերազմի ելլելու պատրաստուած ատեն՝ ինք Պիոս Թ. ալ նոյն կայսրութեան դէմ պատերազմ հրատարակել չէր ուզեր։ Այսպիսի զայրոյթով խորհրդոյ սենեակներուն մէջ յայտնի ու համարձակ կը խօսուէր ու խորհուրդ կ'ըլլար՝ որ պէտք է քահանայապետն իր աշխարհական ու վեհապետական իշխանութենէն մերկացընել։ Գերմանացւոց ու Աւստրիացւոց դէմ թշնամութեան գործքերը Մածծինեանք Հռոմայի մէջ սկսան (Մարտ 22.) Աւստրիայի դեսպանին պալատան վրայէն կայսերական արծուենշանը բռնութեամբ վար առնելով ու արհամարհանօք կոխկըռտելով։ Անկից ետքը Լոմբարտիայի ու Վենետիկի

ապստամբութեան յաջողելուն լուրերը (Մարտ. 24.) հասած ատենը՝ քահանայապետը ժողովրդեան գրգռութեան չկրնալով դիմանալ, իր զօրաց մէկ մասին հրաման տուաւ 2000ի չափ ազատական զինուորներուն հետ Հռոմայէն դուրս ելլել ու մինչեւ երկրին սահմանները երթալով՝ զանոնք պահպանել: Քահանայապետին աս զօրքը խառնած ատենը յայտնի խօսքերով Աւստրիայի դէմ պատերազմ չհրատարակելը՝ Մածծինեանց կուսակցութեան նոր նիւթ տուաւ. անանկ որ ալ անկից ետքը սկսան չէ թէ միայն քահանայապետին աշխարհական իշխանութեան դէմ, հապա նա եւ նախ նոյն իշխանութեան պաշտպան ըլլող Յիսուսեանց, ետքը՝ ուրիշ վանականներուն ու վերջապէս բոլոր եկեղեցականաց դէմ լրագիրներու եւ իրենց ժողովականներուն մէջ ամէն կերպ նախատանաց խօսքեր խօսիլ ու զարհուրելի սպառնալիք ընել: Իրենց դրդելովը ժողովուրդը մէյ մը՝ "Մա՜հ Յիսուսեանց,, կը պոռար, ետքը՝ "Մա՜հ վանականաց,, քիչ մը ետքը՝ "Մա՜հ քահանայից,, — Մա՜հ կարդինալաց,,. եւ աս աղաղակները կը վերջացընէր "Մա՜հ Պիոսի Թ.ի,, պոռալով: Ամէն չարեաց առջեւն առնելու համար Յիսուսեանց ընդհանրական վանահայրը քահանայապետին խորհրդովը իր կրօնին ամէն անձինքներուն Հռոմէն ելլելու հրաման տուաւ (Մարտ 30.), մինչեւ որ ժամանակին պարագաները փոխուելով՝ առանց վտանգի կարենան նորէն իրենց վանքը դառնալ: Ասիկայ Մածծինեանց արտաքոյ կարգի մեծ ուրախութիւն պատճառեց, զորն որ իբրեւ իրենց ջանիցը պտուղ ու իրենց կողման յաղթանակ ու փառք կը սեպէին:

Քահանայապետը՝ Մածծինեանց Հռոմայի մէջ ամէն բան տակն ու վրայ ընելովը՝ օրէ օր աւելի նեղութեան ու տառապանաց մէջ կ'իյնար, եւ ձեռքէն եկածը

կ'ընէր որ առանց իր պարտուցը դէմ գործելու զամէնքը գոհ ընէ. բայց ինք ինչ որ կ'ընէր՝ հակառակորդներն անկից խռովութիւն հանելու պատճառ կ'առնուին: Երբ որ (Ապր. 17.) հրաման հանեց՝ որ Հռոմայի մէջ Հրէից փողոցին (Ghetto) դռները բացուին վերցուին ու Հրէայք ազատ բնակին, ժողովուրդը՝ որն որ մինչեւ ան ատեն կերպ կերպ աղաղակներով կը պահանջէր որ Հրէից ազատութիւն տրուի, Մածծինեանց գրգռելովը՝ սկսաւ անոնց դէմ այնպիսի բռնութիւններ ընել, որ կառավարութիւնը հարկադրեցաւ զինուորներով խռովարարները ցրուել ու Հրէաներն անոնց բռնութենէն ապահովցընել: Ուրիշ նոր խռովութիւններու առիթ տուին քահանայապետական (Ապր. 29.) ըրած նոր յայտարարութիւնը՝ թէ ամէն կերպ պատերազմը իրեն ատելի է, եւ ինք իբրեւ ընդհանուր Կաթողիկէ եկեղեցւոյ՝ ոչ ինչ կերպով կրնայ հաւանիլ որ իր որդիքն իրարու դէմ պատերազմին:

Այս խռովութեանց պատճառաւ Անդոնելլի, որն որ պաշտօնէից գահերէցն էր, իր պաշտօնէն հրաժարեցաւ. նոյնպէս միւս պաշտօնեաներն ալ (որոնց ամէնքն ալ աշխարհականք էին,) իրենց հրաժարականը տուին ու (Մայ. 5.) հաշտական Մածծինեան ու արմատական Մամիանիին գահերիցութեամբը նոր պաշտօնարան մը գրուեցաւ: Այս նոր պաշտօնեաներուն առաջին գործքն եղաւ վճիռ տալ՝ որ երկուք ու կէս միլիոն դահեկանի (սկուտ) արժէքով նոր կոխուելու թղթադրամներուն դիմացը եկեղեցականաց ստացուածքները դրաւ դրուին: Անկից ետքն ուրիշ վճիռ մ'ալ տուին՝ որ Իտալիայի ազատութիւնն ապահովցընելու համար՝ ամէն թշնամեաց եւ առանձինն Աւստրիոյ դէմ ամենայն զօրութեամբ պէտք է պատերազմիլ: Այսկայ կառավարութեան կողմանէ յայտնապէս պատերազմի հրատարակութիւն ըլլա-

լով՝ Լիւցով կոմս Աւստրիայի դեսպանին իր դեսպանութեան անձինքը ցրուեց ու ինքն ալ Հռոմայէն ելաւ։ Նոյն օրերը Տուրանտոյի հրամանին տակ ըլլող Հռոմայեցի զօրաց Աւստրիացիներէն յաղթուելուն ու նոյն Տուրանտոյին Ռոսսեցքի սպարապետին հետ դրած դաշինքին լուրը Հռոմ հասնելով՝ Մածծինեանք տրտաքյ կարգի կատղեցան։ Եւ երբ որ լսեցին՝ թէ Աւստրիացիք Ֆերրարայի բերդին պահապան զօրաց պաշար ու օգնութիւն խաւրելու հնարք գտեր են, իրենց կատաղութիւնը Քահանայապետին վրայ թափելով՝ զանիկայ Իտալացւոց ազատութեան հակառակորդ կ՚անուանէին։ Թէպէտ եւ Տուրանտոյ Ռոսսեցքին պայմանն ընդունած էր՝ որ Հռոմայի զօրքն երեք ամիս Աւստրիացւոց դէմ պատերազմ չընէ. սակայն Մամիանի ու իր պաշտօնակիցներն սա պայմանադրութիւնն արհամարհելով՝ նոր զօրաժողովի հրաման հանեցին ու (Յունիս 23.) սենեակներէն չորս միլիոն դահեկան պահանջեցին՝ Աւստրիայի դէմ պատերազմը շարունակելու համար։ Աս կարգաւորութիւններն ընելէն ետքը՝ թէ իրենք պաշտօնեաներն ու թէ խորհրդոյ սենեակները զՔահանայապետն անդադար կը յորդորէին որ ինքն ալ պատերազմ հրատարակէ։ Բայց Պիոս Թ. իր հաստատութեան մէջ անշարժ մնալով՝ պատերազմ հրատարակելը յանձն չառաւ. միայն Աւստրիացւոց Հռոմայի երկրին սահմաններն անցնելով՝ Ֆերրարայի բերդը նոր զօրք ու պաշար խոթելուն վրայ բողոք ըրաւ։

Ասոր վրայ Մամիանի ու իր պաշտօնակիցքը պաշտօններնէն հրաժարեցան ելան ու Պալատեայի մէջ (առանց Քահանայապետին հաւանութեան) պատերազմի խորհրդոյ ժողով մը կազմեցաւ, որն որ տէրութեան եկամուտքն ու գրեթէ ամէն իշխանութիւնն իրեն սեպհա-

կանելով՝ Հրաման հանեց որ Ֆեբրուարէն ետ գործող Աւստրիացւոց դունդերուն վրայ Հաւամայի զօրքը յարձակում ընէ։ — Մահմանիին պաշտօնարանը լուծուելէն ետքը՝ (Օգոս. 6.) ուրիշ պաշտօնարան մը կազմուեցաւ, որուն անդամները մինչեւ ան ատեն եղած պաշտօնեաներէն աւելի խիստ արմատականներէն էին։ Աս միջոցիս խորհրդոյ սենեակները՝ նոր պաշտօնէից ու քահանայապետին մէջ ըլլող կարծեաց այլեւայլութեան պատճառաւ չկրնալով գործ մը կատարել՝ մինչեւ Նոյեմբերի 15 գոցուեցան։ Իրերն այսպէս օրէ օր աւելի խառնակելով ու գէշնալով՝ քահանայապետը վերջին աստիճանի նեղութեան մէջ ինկաւ։ Աս նեղութեան ու շփոթութեան մէջ իրեն մէկ հատիկ ձեռնտու եւ ազատիչ գտաւ Բելլեկրինոյ Ռոսսի կոմսը, զորն որ (Սեպտ. 14.) պաշտօնէից դահերեց անուանեց ու անոր յանձնեց որ նոր պաշտօնարան մը կազմէ*։

* Աս Բել. Ռոսսի յամի 1787 Գարրարա ծնած էր ու քաջ իրաւագէտ ըլլալով՝ իրաւագիտութեան ուսուցչութիւն կ՚ընէր. միանգամայն ուրիշ ձիրքերով ու յաջողակութեամբ երեւելի եղած էր։ Նէապոլսոյ Յովակիմ Միւրա թագաւորին կողմնակից ըլլալուն պատճառաւ իր ուսուցչութեան պաշտօնէն վար ձգուեցաւ ու Իտալիայէն դուրս փախաւ։ Հելուետիոյ Ժընեւրա քաղքին մէջ քիչ մը ատեն իրաւագիտութեան դասատու ըլլալէն զատ՝ նոյն երկրին կառավարութեան շատ գործքերուն մէջ իր յաջողակութեամբը մեծ համարում առաւ։ Երբ որ նոյն կառավարութենէն հեղ մը Փարիզ խաւրուեցաւ, Լուդ. Փիլիպպոս թագաւորին հետ տեսնուելով՝ անոր միտքն անանկ յափշտակեց, որ քիչ ատենէն ետքը հրաւէր ընդունեցաւ Հելուետիա բոլորովին թողուլ ու Գաղղիա անցնիլ։ Հոն քիչ ատենուան մէջ Գաղղիոյ քաղաքացւոց իրաւունք առնալէն ետքը՝ դասատու, ետքը կոմս ու վերջապէս ատենակալ (pair) եղաւ։ Երբ որ Գաղղիոյ մէջ Փետրուարի յեղափոխութիւնն ելաւ, Ռոսսի օր մը չկորընցուցած՝ ելաւ իր հին հայրենիքն Իտալիա գնաց՝ հոն իր յաջողակութեան ու

Ռոսսի ու նոր պաշտօնատանը գործելու սկսած ատենը թէ Հռոմ քաղաքն ու թէ ամէն գաւառները այնպիսի հանգամանաց մէջ կը գտնուէին՝ որ ամէն մարդ կրնար յայտնի տեսնել՝ թէ գլխաւոր իշխանութիւնը բոլորովին անզօր եղած է ու ապստամբութիւնը կամ Մածծինեան կողմնակցութիւնը չէ թէ միայն ամէն քաղաքային կարգերը, հապա նաեւ ամէն մարդու կենաց հանգիստն աւրած է։ Ժողովրդեան ատենախօսներն ու լրագիրներն ուրիշ բանի չէին զբաղեր, բայց եթէ տէրութեան գլուխն՝ այսինքն զքահանայապետը բոլոր իր հպատակներուն ատելի ընելու եւ զիրենք անոր դէմ գրգռելու։ Աս ատենները թէ մայրաքաղաքին մէջ ու թէ դրսերը չարագործներու եւ աւազակներու համար բացարձակ ազատութեան ու անպատժութեան օրեր էին։ Ասոնք Հռոմայի մէջ այնչափ շատցած էին ու այնպիսի համարձակութեամբ իրենց զէնքերն ու հնարքները կը բանեցընէին, որ կառավարութիւնն ամէն մարդու ազդարարութիւն ընելու ստիպեցաւ՝ իրիկունը մթննալու սկսելէն ետքը տուներուն դուները աղէկ գոցել ու աւազակներուն դաշոյններէն զգուշ կենալ։ Իսկ տէրութեան թշնամիներուն ինչ աստիճանի յանդգնութեան հասած ըլլալն անկից յայտնի կ՚ըլլայ՝ որ վերոյգրեալ ազդարարութիւնը հրատարակուելուն երկրորդ օրն առտուանց ամէն դի քաղքին պատերուն վրայ թղթեր կպցուած էին, որոնց վրայ գրուած էր՝ թէ քաղաքա-

գործողութեանց նոր ասպարէզ մը գտնելու համար։ Հռոմ հասնելով՝ քահանայապետին առջեւն իր տաղանդներովն ու վարմունքովը շատ յարգ առաւ. որն որ յառաջուընէ գիտնալով՝ որ Ռոսսի Գաղղիայի մէջ իր յաջողակութեամբը թէ թագաւորին ու թէ անոր հակառակորդներուն սիրելի եղած էր, իր խռովեալ տէրութեան գլխաւոր պաշտօնն անոր խնամոցը յանձնեց։

ցիք իրիկուններն տղայ ու առանց վախի կրնան պտը-տիլ. Ինչու որ մենք տեսած ենք՝ մեր մասնիկներն ու թշնամիները ցորեկուան պայծառ լոյսին մէջ սպաննել: Գաւառներուն մէջ ալ աւազակութիւններն ու սպանութիւնները ամէն օրուան հասարակ լուրեր էին: Ամէն դի ազատակամ զօրքեր կը ժողվէին չէ թէ կառավարութեան հրամանաւ, հապա հասարակապետականաց գըրգռելովը. ասոնց թիւը 40,000ի կը հասնէր: Նա եւ ամէն գաւառ իր սեպհական աւազակաց գունդերն ունէր, որոնք ամէն ճամբաներու վրայ համարձակ կը սպասէին, կը կողոպտէին ու կը սպաննէին:

Ինչպէս եւ բոլոր երկիրն այսպիսի զարհուրելի վիճակի մը մէջ կը գտնուէր, անկայն յաջողակ Ռոսսին չյուսահատեցաւ, հապա պաշտօնարանին կամ կառավարութեան գլուխն անցած օրէն միտքը դրաւ իր համարձակ կարգաւորութիւններովը Մածծինեանները կամ հասարակապետականները սասանեցընելու եւ կամաց կամաց շահելու աշխատիլ: Ամէն դի՝ այլ եւ այլ պզտիկ գունդերու բաժնած ձիաւոր զօրքեր խաւրելով, աւազակներուն դէմ երկիրը կ'ապահովցընէր: Լոմբարտիայէն դարձող Հռոմայեցի կրթեալ գունդերը, որոնք մինչեւ ան ատեն սահմանին վրայ կը կենային, երկրին ներսերն ու Հռոմայի մօտերը բերել տուաւ, քաղաքն աւազակներէն մաքրեց ու ոստիկանութեան անկարգութիւններն ըստ կարի շիտկեց կարգի դրաւ: (Աւստրիայի տէրութեան բանտէն փախած) Ցուգգի զօրապետին ձեռքովը, զոր նոր պատերազմի պաշտօնեայ ըրած էր, Պոլոնեայի մէջ, ուր Մածծինեանց գլխաւորներն իրենց զօրութիւնը ժողված կը գործէին, պատերազմական օրէնք հրատարակելէն ետքը՝ տուները խստութեամբ քննել, ժողված զէնքերն ամէն դիաց առնել վերցընել ու օտար

տէրութիւններէն փախչելով հասարակապետականաց օգնելու եկողները բռնել բանտ դնել տուաւ։

Այսպիսի եղանակով Հռոմայ տէրութեան ներքին կառավարութիւնը ձեռքէն եկածին չափ կարգի դնելէն ետքը, միտքը դրաւ Իտալիոյ միւս տէրութեանց հետ դաշնակցութիւն մը կազմելով՝ բոլոր Իտալիա ազատական օրէնքներով կառավարուելու վիճակի մէջ դնել։ Աս բանիս վրայ ամենէն առաջ Դուրբին գահուստ անուանի Ճոպերդի պաշտօնէին հետ բանակցութիւն ընելով՝ կը ջանար ամէն դի հասարակապետականաց ջանքն ու հնարքները պարապի հանել ու սահմանադրական միապետութիւնն Իտալիոյ մէջ հաստատ պահել։

Ուստի ասանկ ընելով կը կարծէր որ հասարակապետականաց կամ Մաձձինեանց համարձակութիւնը կը սկարացընէ. բայց իր կարծածին հակառակն եղաւ. ասոնք փոխանակ սաստելու՝ աւելի եւս կատղեցան, եւ չէ թէ միայն իրենց դէմ այսչափ խստութիւն բանեցընողին դէմ իրենց վրէժխնդրութեան միջոցները սկսան պատրաստել, հապա նա եւ որոշեցին որ այնուհետեւ ամէն պատրուակները մէկդի դնելով՝ Հռոմայ երկրին մէջ հասարակապետութիւն կանգնելու խորհուրդն ի գործ դնելու միջոցները յայտնապէս ձեռք առնեն։

Նոյեմբեր ամսոյն 15ին, ինչպէս վերը գրեցինք, խորհրդոյ սենեակները պիտ'որ բացուէին. քանի մը օր առաջ Ռոսսի կոմսը Գարապինիէրի ըսուած հրացանակիր ձիաւորները Հռոմ կանչեց ու գոց սրահի մը մէջ իր առջեւը զօրահանդէս ընել տուաւ։ Ետքը բոլոր քաղքին պահպանութիւնն ու ամէն զինուորական ծառայութիւնները 6000 կրթեալ զօրաց ու 1000 Թիքինապահ ձիաւորներուն յանձնեց։ Ասոր վրայ քաղաքային պահապան զօրքը սաստիկ վշտանալով՝ իրենց զօրապետներուն ձեռ-

քամը գահերէցին իրենց ցաւը յայտնեցին՝ որ իրենց վրայ վստահութիւն չունի. բայց գահերէցն անոնց տրտունջը բանի տեղ չդնելով, առջի բռած կարգաւորութիւնը չփոխեց։ Ամսոյն 14ին քաղաքը բոլորովին հանդարտ էր. Նոյն օրը խորհրդոյ սենեակները նախապատրաստական ժողով մ'ըրին. որուն մէջ Սդերպինի արմատականաց գլխաւորներուն մէկը՝ գահերէցին դէմ այնպիսի լրբութեամբ ու կատաղութեամբ խօսեցաւ եւ անոր գիտաւորութիւնն ու ջանից նպատակն անանկ խօքերով կասկածելի ըրաւ, որ ամէն լողներուն աղջեցան ու սասանեցան։ Ասիկայ՝ Մածծինեաններէն Ռոսսիին համար պատրաստուած սպանութեան մէկ յառաջընթաց յայտարարութիւնն էր, որուն վրայ ոմանք ստոյգ տեղեկութիւն ունենալով՝ իրեն հասկըցուցին որ նոյն գիշեր զինքը սպաննելու խորհուրդը պատրաստուած տակ չ՚իյնար. բայց ինք աս ազդարարութիւնը բանի տեղ չդնելով՝ ամենեւին զգուշութիւն մը չըրաւ։

Երկրորդ օրը (Նոյ. 15.) կէսօրուան մօտ գահերէցը կառօք պատգամաւորաց սենեակին ժողված պալատը գնաց, որուն առջեւի հրապարակին արտաքոյ կարգի մեծ բազմութիւն մը ժողված էր, որոնք զինքը տեսած ատեննին՝ սուլելով ու անէծքով կը նախատէին։ Ռոսսի աս բազմութեան մէջէն համարձակութեամբ անցնելով՝ գնաց պալատին դրսի սանդուղներէն վեր ելլել սկսաւ։ Հազիւ թէ երկրորդ աստիճանին վրայ կոխած էր, մէյ մ'ալ Մածծինեաններէն վարձուած սրիկայ մը յանկարծակի անոր մօտենալով իր դաշոյնը փողը խոթեց։ Շուտ մը երկու մարդ զինքն ուսերնուն վրայ առին ու բազմութեան մէջէն անցնելով, մէկն ալ արիւնոտ դաշոյնն առջեւէն տանելով, պալատին վերի դատիկոնը հանեցին պառկեցուցին։ Դաշոյնը խեղճին պարանոցին գլխաւոր

Նռնակը կարած ըլլալուն՝ քանի մը վայրկեաններէն հոգին աւանդեց*։

Այս զարհուրելի սպանութիւնը ո՛չ հոն պալատին մէջ ժողված պատգամաւորներուն ու ո՛չ ժողովրդեան վրայ տխուր ազդեցութիւն մ՚ըրաւ, մանաւանդ թէ ամէն նշաններէն կրնար գուշակուիլ՝ որ նոյնն ամենուն հաճոյ եղած էր։ Աւելի զարմանալին այն է որ գտնուեցան անանկ անձինք, ինչպէս՝ Կարոլոս Պոնաբարդէ Գանինոյ իշխանը, որոնք այն սպանութիւնն իբրեւ հայրենեաց փրկութեան համար հարկաւոր գործ մը կը պաշտպանէին։ Ռոսսիին գլուխն եկածը Մածծինեանք կ՚ուզէին ու որոշած էին Ցուգգի զօրապետին գլուխն ալ հասցընել. բայց անիկայ նոյն օրերը Պոլոնեա գտնուելով՝ այն վտանգէն ազատելու հնարք գտաւ։ Ռոսսիին սպանութիւնն իր դահերիցութեան տակ ըլլող պաշտօնարանին վախճանն ու անկից ետքը զարհուրելի խառնակութեանց ու ոճիրներու սկիզբ եղաւ։ Այս զարհուրելի գործքը կատարուելէն ետքը՝ Մածծինեանց առաջին ու գլխաւոր ջանքն եղաւ ժողովրդեան ժամանակ չթողուլ, որ անոր հետեւութեանց վրայ մտածելով՝ սրտերնին լքանի ու նոր գործքերու ձեռք զարնելէն ետ կենան։ Ուստի նոյն սպանութեան օրն իրիկուան դէմ քաղքին պատերուն վրայ կպցուած թուղթերով ժողովուրդը հրաւիրեցին բազմութեամբ քահանայապետին առջեւն ելլել ու զինքը ստիպել որ իրենց պահանջմունքները

* Ռոսսիին սպանութիւնը Մածծինեանց ժողովականներուն մէջ խորհրդով պատրաստուած գործ մ՚ըլլալը՝ առանձինն հետեւեալ դէպքէն կ՚իմացուի։ Նոյն (Նոյ. 15.) օրը Պոլոնեա քաղաքը մարդ մը սրճանոցի մը մէջ ծոցէն ժամացոյցը հանեց նայեցաւ ու քովի ըլլողներուն ըսաւ. Հիմայ Ռոսսի արդէն սպաննուած է։ — Հռոմայի կառավարութիւնը քիչ մը ատեն ետքը քննութիւն ընելով՝ թէ սպաննողին ու թէ զանիկայ վարձողներուն ով ըլլալը ստուգութեամբ իմացաւ։

կատարէ։ Այս հրաւէրին ամէն կարգի մարդիկ անմիջապէս հետեւելով, նոյն իրիկունը չէ թէ միայն քաղաքացիք անթիւ բազմութեամբ ձեռքերնին զէնքեր առած, հապա նաեւ քաղաքային պահապանները ու բոլոր Հռոմ գտնուող զինուորներն իրենց պաշտօնակալներովը ժողովըրդեան հետ եղբայրակցութիւն ընելով մէկտեղ ժողվըցան։ Այս խառն բազմութիւնն որոշեց քահանայապետէն պահանջել՝ որ Գրիգոր ԺԶ.ին ատենէն մնացած հին խորհրդականներն իր պալատէն հեռացընէ ու ամէն պաշտօններէն հանէ։ Անկից զատ նաեւ որոշուեցաւ՝ որ բոլոր Իտալիոյի անկախութիւնը հոգալու համար ընդհանուր սահմանադրական ժողով (Constituante) մը ու խիստ աշխատականներէն կազմուած պաշտօնարան մը դրուի։ Ասոնք որոշելէն ետքը՝ հաստատեցին որ երկրորդ օրն առտուանց ամէնքը մեծ հանդէսով առանց զէնքի՝ բայց եռանշանական գործիքներով ու դրօշներով քահանայապետին առջեւն երթան ու նոյն որոշմունքներուն անյապաղ գործադրութիւնը պահանջեն։

Այս որոշման համեմատ երկրորդ օրն առտուանց 30,000 հոգւոյ չափ բազմութիւն եկաւ քահանայապետին բնակած Կուիրինալ պալատին առջեւը ժողվուեցաւ ու վերոյգրեալ առաջարկութիւններն անոր առջեւը դնելով՝ խառն աղաղակաւ կը պահանջէին որ զանոնք ընդունի ու հաստատէ։ Իսկ Պիոս Թ. համարձակութեամբ պատասխանեց թէ ինք իր անձին բռնութիւն ընել չկրնար ու իրեն մատուցուած խնդիրները չ՚ընդունիր։ Ասոր վրայ բազմութեան մէջ սոսկալի շփոթութիւն ու աղաղակ մը փրթաւ, ու ամէնքը միաբերան չէ թէ միայն նոյն պահանջմունքները կը կրկնէին, հապա նաեւ կ՚ուզէին որ նոր պաշտօնարանին անդամներն ըլլան Սդերպինի, Մամիանի, Կալլեդդի, Մուծծարելլի ու Գա-

բելլայ։ Շուտ մը պալատին մէջ պաշտպանութիւն ընող Հելուետացի զինուորաց հրաման տուեցաւ՝ աղէկ զինուած՝ ժողովրդեան բռնութեան դէմ պատրաստ կենալ։ Հազիւ թէ աս պատրաստութիւնն եղած էր, կատաղի բազմութիւնը պալատէն ներս մտնելու կը ջանար. ան ատեն Հելուետացիները սկսան դիմացնին եկողը իրենց նիզակներովը վիրաւորել ու արգելուլ ու քիչ մը ետքը բոլոր բազմութեան վրայ հրացան պարպել։ Բազմութիւնը սկսաւ ցրուիլ, բայց չէ թէ բոլորովին տեղի տալու կամ փախչելու համար, հապա զէնք առնելով՝ բռնութեան դէմ բռնութիւն ցուցընելու եւ պատերազմելու համար։ Եւ իրօք քիչ մը ետքը ժողովրդեան կողմանէ ալ հրացաններու կրակը սկսաւ, գնդակները կարկուտի պէս պալատին մէջ ըլլողներուն վրայ կը թափէին եւ աս կռուին երկու ժամի չափ տեւեց։ Քահանայապետին աչքին առջեւն իր անձնական քարտուղարը Բալմա քահանան ու պատուհաններու մօտ գտնուող քանի մը անձինք զարնուեցան ինկան. շատերն ալ վիրաւորեցան։ Վերջապէս երբ որ կատաղի բազմութիւնը թնդանօթներ բերելով՝ դէպ ի պալատը շիտկեց ու զանիկայ կործանել ու կրակի տալ կը սպառնար, ան ատեն քահանայապետը բռնութեան տեղի տալով՝ առաջարկութիւններն ընդունեցաւ ու վերջապէս հինգ Մածծինեաններէն կազմուած պաշտօնարան մը դրաւ։ Բայց մի եւ նոյն ատեն իր քովն ըլլող օտար տէրութեանց դեսպաններուն յայտնի ըրաւ՝ որ աս հրամաններն ազատ կամօք չիտար, հապա մեծագոյն չարեաց առջեւն առնելու համար։ Երբ որ Կալլեգդի հան ժողվուած բազմութեան բարձր ձայնով ծանոյց՝ որ քահանայապետն իրենց պահանջմունքներն ընդունեցաւ, ամէնքն ալ խառնաձայն աղաղակաւ իրենց ցնծութիւնը կը յայտնէին։ Անկից

ետքը Մածծինեանք աւելի եւս համարձակութիւն գըտնելով՝ Հելուետացի զօրքերէն զէնքերն առին ու անոնց գունդը ցրուեցին եւ քահանայապետին պալատներուն պահպանութիւնը քաղաքային պահապան զօրաց յանձնեցին։

Նոյն քահանայապետն իր պալատան մէջ իբրեւ բանտարկուած գերի մը թշնամեաց պահապաններէն պաշարուած կը կենար. իսկ նոր պաշտօնարանն ու ժողովրդենէ դրուած ատեանն իբրեւ օրինաւոր ու հաստատուած իշխանութիւն մը կառավարութիւնը յառաջ կը տանէին։ Այսչափ անկարգութիւններն ու բռնութիւնները Գաղղիայի (1793ին) ահակալութեան օրերն ամենուն յիշեցընելով՝ Հռոմայի մէջ օրինաւոր իշխանութեան կողմն եղողներուն սիրտն ահով դողով կը լեցընէին. անանկ որ ազնուականներուն եւ եկեղեցականներուն մէջէն՝ միջոց ու դիւրութիւն ունեցողները՝ քաղաքը թող տալէն փախչելէն աւելի ապահով ճամբայ չէին գտներ։ Պիոս եւ քահանայապետն այսչափ բռնութեանց դիմանալու ալ կարողութիւն չունենալով ու աւելի եւս զիջանիլն ալ կարելի չըլլալով, իր մայրաքաղաքէն փախչելով հեռանալը՝ խոհեմութեան գործ սեպեց. բայց առ բանս կարելի եղած գաղտնութեամբ ընելու եւ իր թշնամեաց ձեռքը չիյնալու համար՝ ամենայն զգուշութիւնը պէտք էր ի գործ դնել։ Ուստի Գաղղիայի ու Պաւիերայի դեսպաններուն խորհրդովն ու օգնութեամբն ամէն բան յառաջագոյն կարգի դնելէն ետքը՝ Նոյեմբերի 24ին իրիկունը՝ Գաղղիայի Հարգուր կոմս դեսպանին ներկայութեանը Կուիրինալի պալատին մէջ իր հասարակ քահանայապետական ճերմակ հագուստները հանեց ու պարզ քահանայի սեւ հագուստ հագաւ, ակնոց մ՚ալ դրաւ ու մինակուկ միայն հաւատարիմ սենեկապետով մը

իր սենեակին մէկ դռնէն ելաւ, որն որ պալատին չբնակուած սենեակները կը տանէր: Այս սենեակները Հելուետացի պահապանաց հասարակօրէն կեցած նեղ ճամբուն (corridor) հետ մեծ դուռով մը կապակցած էին, որն որ երկայն ատենէ վեր ամենեւին բացուած չէր: Այս դուռը մեծ դժուարութեամբ բանալէն ետքը՝ պալատին ամէն ճամբաներուն վրայ կեցող քաղաքային պահապաններուն մէջէն առանց ճանչցուելու անցաւ դուրս ելաւ: Լատերանեան Ս. Յովհաննու եկեղեցւոյն մօտերը Պաւիերայի դեսպան Շբաւր կոմսը գտաւ, որն որ իր կառօքն անոր կը սպասէր, անոր մէջ մտաւ ու առանց արգելքի Ալպանոյէն անցաւ մինչեւ Արիչիա գնաց: Հոն նոյն Շբաւր կոմսին ամուսինն իրեն կը սպասէր, կառքը հասածին պէս՝ կոմսը դուրս ելաւ ու կոմսուհին մէջը մտաւ ու բոլոր գիշեր յառաջ երթալով առտուան դէմ Նէապոլսոյ սահմանը հասաւ ապահովցաւ: Փերդինանդոս Բ. Թագաւորը զքահանայապետն իր երկրին մէջ ուրախութեամբ ընդունելով՝ Կայեդայի բերդաքաղաքին մէջը ամէն հանգստեամբ բնակեցուց, ուր կարդինալներուն շատերն եկան իր քովը ժողվեցան. իսկ Հռոմ միայն ութ կարդինալ մնաց:

Հոս մայրաքաղաքին մէջ պատգամաւորաց սենեակին անուամբն ու վերոյգրեալ պաշտօնեաներուն գլխաւորութեամբն ժամանակեայ կառավարութիւն մը դրուեցաւ, որն որ մինչեւ ընդհանուր սահմանադրական ժողովոյն գումարուիլը պիտ՚ որ գործէր: Պաշտօնեաներուն դահերէցը Մամիանի արտաքին տէրութեանց ծանուցագիր մը խաւրեց, որուն մէջ ամէն անցած դէպքերը բարեքելու եւ արդարացընելու կը ջանար, եւ կը ծանուցանէր որ կառավարութիւնը՝ Հռոմայի իրողութեանց մէջ ամենեւին արտաքին միջամտութիւն չ՚ուզեր ու չ՚ըն-

դանիր։ Իսկ Պիոս Թ. Կայէթա հաստատուելուն պէս՝ հրովար-տակ մը հանեց, որով կը ծանուցանէր՝ թէ Նոյեմբեր ամսոյն 16էն սկսելով Հռոմայ մէջ եղած կարգադրու-թեանց դէմ կը բողոքէ։ Նոյնպէս եւ այսպէս խօսքերով կը յայտնէր՝ որ ինք Հռոմէական երկրին աշխարհական իշ-խանութիւնն ինչպէս որ իր նախորդէն ընդունած էր, անանկ ալ կ՚ուզէ ամբողջ ու կատարեալ իր յաջորդին աւանդել։ Ասով Մածծինեանք աւելի եւս գրգռուելով՝ Նոր պաշտօնարանին միջնորդութեամբ (Դեկտ. 7.) բոլոր Հռոմայի երկրին ժողովրդոց հրովարտակ մը հանեցին, որուն մէջ Պիոս Թ.ին Կայէթայէն ըրած կարգադրու-թիւններն ու յայտարարութիւններն անզօր ու ոչինչ կը հրատարակէին։ Անկից ետքը կառավարութեան կողմանէ քանի մը պատգամաւորներ Կայէթա խաւրուեցան՝ որ զՊիոս Թ. աղաչեն նորէն իր երկիրը դառնալու. բայց սահմանէն ներս մտնելու հրաման ընդունիլ չկրնալով՝ ետ դարձան։ Երբ որ աս հնարքը չյաջողեցաւ, կառավարութիւնը քանի մը հեղ գրով զՔահանայապետը յորդորեց որ ետ դառնայ, ապա թէ ոչ, կ՚ըսէր, իր աշխարհական իշխանութեան ամէն իրաւունքները կը կորսնցընէ. բայց աս սպառնալիքն ալ ազ-դեցութիւն մը չըրաւ։ Աս միջոցին Հռչակաւոր Կարի-պալտի, որն որ Աւստրիացիներէն իր ազատական զօր-քովը Հելուետիայի երկիրը քշուած էր, Հռոմ եկաւ ու նորէն ազատական զօրք ժողվելով՝ Հռոմայի հասարա-կապետական կառավարութեան պաշտպան ու պահապան ըլլալու կը ջանար։

Մածծինեանք ժողովուրդներն իրենց օրինաւոր վեհապետներուն դէմ գրգռելով՝ զանոնք օրէ օր աւելի համարձակ ու յանդուգն ըլլալու վարժեցուցած էին. աս բանիս փաստաւկար հետեւանքը պէտք էր որ իրենց ալ

ուշ կամ կանուխ զգային։ Իրօք Հռոմայի ժողովուրդը հեղ մը սկսած ըլլալով իր ամէն ուզածները կատարել տալ, ա՛լ ետեւէ ետեւ նոր նոր պահանջմունք ընելէն չէր դադրեր. մանաւանդ որ նոր պաշտօնարանը զանոնք չկըրնալով կատարել, լուծուեցաւ, եւ Կալլեդդի հրամանապետ (dictateur) անուանեցաւ։ Եւ որովհետեւ աս մարդը ո՛րչափ ալ յանդուգն էր՝ աս բարձր ու դժուարին պաշտօնը մինակ յանձն առնուլ չէր ուզեր, անոր համար ժողովրդեան սիրելի ըլլող երկու անձինք ալ՝ Գորաբինի ու Գամմերադա իրեն ընկեր տրուեցան ու աս երեքը (հին Հռոմայեցւոց սովորութեան համեմատ) եռապետք (triumviri) անուանեցան, որոնցմով նոր կառավարութիւն մը սկսաւ։ Նա եւ երկու սենեակները (Դեկտ. 28.) լուծուեցան ու անկից ետքը կառավարութիւնը հրաման հանեց՝ որ բոլոր Իտալիայի համար գումարուելու ընդհանուր սահմանադրական ժողովոյն անդամները սկսին ընտրուիլ. եւ աս ժողովն իր նիստերն ու գործողութիւնները յաջորդ (1849) տարին փետրուար ամսոյն 5ին սկսի։ — Աս ժողովոյն անդամ պիտի՛ որ ընտրուէին չէ թէ միայն Հռոմայի երկրին բնակիչներուն մէջէն, հապա նա եւ բոլոր Իտալիայի բնակիչներէն ընտիր ու հայրենասէր անձինք։ Թէպէտ եւ վերոգրեալ եռապետները կառավարութեան գլուխն էին, սակայն Հռոմայի մէջ բուն իշխանութիւնը կը բանեցնէր ռամկապետական ատեանը կամ ժողովակը (circolo popolare), որուն գլուխն էր Մամիանի։ Աս ժողովակը 1848 տարւոյն վերջը հրատարակեց որ քահանայապետին աշխարհական իշխանութիւնք դադրած է։ Աս ու այսպիսի յանդգնական գործքերն ու վճիռները նոյն իսկ Մամիանիին շատ չափազանց ու անխոհեմ երեւնալով՝ ան ժողովոյն գլխաւորութենէն ելաւ։ Նոյնպէս եւ Ցուգգի զօրապետը՝ Հռոմայի գործ-

քերուն օրէ օր աւելի խառնակութիւնը ու գէշնալը տեսնելով, Երկիրը Թողուց ու Կայեդա քահանայապետին քովը գնաց, որուն միշտ հաւատարիմ մնացած էր։ Իսկ կառավարութիւնը Կարիպալտիին հրաման ու իշխանութիւն տուաւ կրցածին չափ ազատական զօրք ժողվել ու տէրութիւնը պաշտպանել։

Թէպէտ եւ քահանայապետը Հռոմ եղած ատենն ալ իրեն կողմնակցութիւն ցուցընողներն ու անոր իրաւունքը պաշտպանողները Մածծինեանց կառավարութեան դէմ կ'ըլլային. բայց անիկայ Հռոմայէն հեռանալէն ետեքը՝ ալ մէկ խօսքով կամ նշանով անոր կողման պաշտպան ըլլալը՝ սաստիկ մահուան պատճառ կ'ըլլար։ Ամէն օր այսպիսի եկեղեցական ու աշխարհական անձանց սպանութեան լուրերը կը լսուէին։ Ամենէն աւելի շատ սպանութիւններն եւ ուրիշ անգթութեան գործքերը Ծամպիանքի անուամբ Պոլոնեացի աւազակապետ մը ու իր ընկերացը ձեռքով կը կատարուէին։ Աս կատաղի մարդն եօթը սպանութեանց համար բանտ դրուած էր. բայց նոյն ատեն կառավարութեան գլուխ ըլլողներուն մարդասիրութեամբը բանտէն ազատած ըլլալով՝ իր շնորհակալութիւնն անոնց կը ցուցընէր իրենց ատելի կամ կասկածելի ըլլող անձինքը՝ մանաւանդ եկեղեցականները կերպ կերպ հնարքներով ձեռք բերելով ու անխնայ սպաննելով։ Աս զարհուրելի աւազակապետին ու իր ձեռաց տակն ըլլող աւազակաց դաշոյններուն զոհ ըլլող անձանց ցուցակը հոս դնելը կարեւոր չենք սեպեր, բայց միայն կը ծանուցանենք՝ որ աս ատենները Հռոմայի մէջ անգթութեան գործքերը կարծես թէ բոլոր ժողովրդեան համար հաճոյական տեսարաններ կամ զբաղմունք եղած էին։ Ասոր ապացոյց ըլլայ հետեւեալ դէպքը։ Կալլեդդի եռապետն օր մը իր զինուորներովը քաղքին

բոլորտիքը պարպուած տանենը՝ երեք գեղացի տեսաւ ու կասկածելով որ ծպտեալ Յիսուսեանք ըլլան, զիրենք բռնեց քշքշելով քաղաք խոթեց ու կատղած ժողովրդեան ձեռքը տուաւ, որոնք զխեղճերը տարին կամուրջի մը վրայ չարաչար սպաննեցին։ Տեսնող մը կը վկայէ՝ որ սպաննողներն իրենց սուրերուն վրայի արիւնը լզելով մաքրեր են։

Թէպէտ եւ զարնել սպաննելն աւազակներու եւ ցած ժողովրդեան գործքն ու զբաղմունքն էր, սակայն առանձնականաց ստացուածներն ու կալուածները յափշտակելն ու (իբր թէ տէրութեան գանձին) առնելը բուն Մածծինեան կառավարութիւնն իրեն սեպհական գործն ու պաշտօնն ըրած էր։ Աս սքանչելի կառավարութիւնն ամէն կերպ սպառնալիքով քաղքին բնակիչներն ահու դողու մէջ խոթելով, անոնցմէ սա նոր տուրքը բռնի առնելէն ետքը՝ լրագիրներու մէջ աս կերպով առնուած ստակները իբրեւ ժողովրդէն հասարակապետութեան յառաջադիմութեան համար ազատ կամօք տրուած ընծաներ հրատարակել կու տար։ Բայց ամենէն աւելի զարմանալին ան է՝ որ ասդիէն անդիէն բռնութեամբ առնուած ու եկեղեցիներէն կողոպտուած միլիոններու արժէքով արծաթ դրամանոց կ'երթար ստակ կոխուելու համար. սակայն դուրսը շրջանի մէջ արծաթ ստակ շատ ցանցառ կը գտնուէր, իսկ նոր կոխուած դահեկան ամենեւին չէր տեսնուեր։ Ասոր բուն պատճառն ան էր՝ որ այսչափ արծաթը կամ ստակը կառավարութեան գլուխն ըլլողներուն ու իշխանութիւնը վարողներուն քսակը կ'երթար աներեւոյթ կ'ըլլար։

Այսպիսի հանգամանքներն ու առանձինն ռամկապետական ժողովականին բռնած ընթացքը նոյն իսկ Մածծինեանց մէջէն քիչ մը չափաւորութեամբ վարուիլ ու-

ղողները ստիպեցին ամէն գործքերէն ետ քաշուելու. Նա եւ վերջացրեալ եռամեաններն իրենց պաշտօնէն հրաժարեցան ու անոնց տեղ ժամանաւոր կառավարիչ ժողով մը դրուեցաւ։ Հռոմայի կառավարութեան անկարգութիւնները նոյն իսկ Գայէտա գտնուող խիստ արմատականաց, որոնք ամէն կերպիւ ռամկապետական իշխանութեան կողմնակից ու պաշտպան էին, չէ թէ միայն իրենց կողման միաստակար, հապա նա եւ բոլորովին բռնաւորական գործքեր երեւնալով, սկսան անատեղաց կառավարութեան գլուխն ըլլողներուն հետ թշնամութեամբ վարուիլ ու անոնց սպառնալիք ընել։

Յառաջագոյն եղած որոշման համեմատ ընդհանուր սահմանադրական ազգային ժողովին անդամներն ընտրուած ըլլալով, նոյն ժողովը (1849. փետր. 5.) բացուեցաւ ու սկսաւ բոլոր Իտալիայի համար խորհուրդ ընել։ Իր գլխաւոր ու առաջին գործքերուն մէկն եղաւ՝ (փետր. 9.) զքահանայապետն իր աշխարհական իշխանութենէն մերկացընել ու Հռոմայի երկրին հասարակապետութեան մը փոխուիլը վճռել ու հետեւեալ խօսքերով հրատարակել։ Հռոմէական տէրութեան վրայ աշխարհական իշխանութիւնը քահանայապետէն իրօք ու ըստ իրաւանց վերցուած է։ Հռոմայի եպիսկոպոսն իր հոգեւոր իշխանութիւնն ազատաբար ու անկախութեամբ բանեցընելու համար ամէն կերպ երաշխաւորութիւնը կ՚ընդունի։ Հռոմէական տէրութիւնը պարզ ռամկապետական կառավարութիւնը կ՚ընտրէ ու Հռոմէական Հասարակապետութեան փառաւոր անունը կ՚ընդունի։ Այս Հռոմէական հասարակապետութիւնն Իտալիայի միացած մասին հետ այնպիսի կապակցութեան մէջ կը մնայ, զոր որ բուն ազգայնութիւնը կը պահանջէ։ Ժողովին 160 անդամներէն միայն 140 հոգի սա վճռոյն հաւանեցան

ու ստորագրեցին։ Աս ետքիններուն՝ այսինքն զքահանայապետն աշխարհական իշխանութենէ զրկելու հաւանողներուն մէջ առաջինն եղաւ Կալլեդդի, որն որ Գրիգոր ԺԶ.ին ժամանակը քաղաքոյն ծանր յանցանաց համար՝ յաւաչ մահուան ու ետքէն մշտնջենաւոր բանտարգելութեան դատապարտուած, բայց Պիոս Թ.ին հրամանաւն իր ազատութիւնն ընդունած էր։ Կ'երեւայ որ աս քաղաքագէտ մարդն իր շնորհակալութիւնն իրեն ազատչին այսպիսի ապերախտութեամբ ցուցընելն ամենէն պարտուպատշաճ ու խոհեմական քաղաքականութեան կերպը սեպած է։

Հասարակապետութիւնը հռչակուելէն ետքը՝ նորէն եռապետներ անուանուեցան ու նոր պաշտօնարան մը դրուեցաւ։ Թէպէտ եւ նոյն իսկ Հռոմայի մէջ, ինչպէս նաեւ ուրիշ տեղեր, ամենուն հասարակապետութիւն չուզողներուն թիւը խիստ մեծ էր․ բայց ասոնք անզօր ըլլալով, կամ աւելի աղէկ ըսենք՝ աշխատութենէ աւելի հանգիստը սիրելով, լռեցին։ Սակայն իրենց լռութեան վնասները շուտով սկսան զգալ, մանաւանդ հարուստները որովհետեւ հասարակապետական կառավարութիւնն անոնցմէ անդադար սակ կը պահանջէր, կէս մը՝ տուրքի կամ հարկի անունով, կէս մ'ալ՝ բռնի փոխառութեան անունով։

Քահանայապետը Հռոմայի մէջ եղածներուն լուրերն ընդունելով, (Փետր. 14.) Կայեդայէն բողոքի գիր մը գրեց իր աշխարհական իշխանութեան յափշտակութեան դէմ ու ամէն արտաքին տէրութեանց խաւրեց․ նա եւ առանձինն Աւստրիայի, Գաղղիայի, Սպանիայի ու Նէապոլսոյ տէրութեանց օգնութիւնը խնդրեց աս իշխանութիւնը պահպանելու համար։ Անկից ետքը երեք կարդինալներու յանձնեց՝ որ իբրեւ իր փոխանորդներն

ու իր անուանքը Հռոմայ մէջ կարելի եղածին չափ իր կառավարութիւնը յառաջ տանին։ Մի եւ նոյն ժամանակ Անդոնելլի կարդինալը քահանայապետին անուամբը յայտարարութիւն մը հանեց, որով եկեղեցական ստացուածոց ծախուիլը ու Հռոմայ մէջ գտնուող ճարտարութեան ու արուեստից հին ու ընտիր յիշատակարանները դուրս հանելը կամ օտարացընելը կ՚արգելուր։ Աս սանկ ընելուն պատճառն ան էր, որ ռամկապետական կառավարութիւնը կ՚ուզէր ատոնք գրաւ դնելով՝ Անգղիայի տէրութենէն փոխ ստակ առնուլ։ Աս արգելքը թէպէտ եւ ծախել կամ օտարացընել ուզողները չէր վախցըներ, սակայն գոնէ գնել կամ իբրեւ գրաւ ընդունել ուզողները վախցընելով ու զգուշացընելով՝ իր նպատակին կը հասնէր։

Նոյնպիսի հրամաններով ու գրութիւններով սահմանադրական ժողովն իր գործողութեանց մէջ ամենեւին չարգելուելով՝ քահանայապետին իրաւանցը դէմ նոր կարգաւորութիւններ ընելու կը փութար։ Նոյն ժողովն իր առջի վճիռէն երեք շաբաթ ետքը՝ (փետր. 28.) Արմելլինի, Սալիչեդդի ու Մոնդեքքի Մածծինեաններուն իշխանութիւն ու հրաման տուաւ Հռոմայ հաւատոյ խնդրոց քննութեան ատեանը (S. Officio) բոլորովին ջնջել վերցընել։ Քահանայապետին ու եկեղեցւոյ թշնամիներն աս ատեանն աւելի եւս ատելի ընելու եւ ժողովուրդը նոյն ատեանին խնամքն ունեցող Դոմինիկեան կրօնաւորներուն դէմ աւելի եւս գրգռելու համար՝ սադիէն անդիէն խել մը դիակներ, կմախքներ, ոսկրտանք ու արիւնաշաղախ մազեր ժողվելով՝ գաղտուկ նոյն ատեանին տեղը բերին։ Ետքը տեսակ տեսակ երկաթէ տանջանարաններ ու գործիքներ, սուր, դանակ, ունելիք ու չուաններ նոյն տեղը բերին դիզեցին։ Ասոնք պատ-

բռնատէրէն ետքը՝ Հրատարակեցին որ սահմանեալ օր մը նոյն տաճարին տեղը պիտի՛ որ բացուի. ուստի ժողովուրդը թող գայ Հոն ժողովի, որպէս զի ամէն մարդ իր աչքովը տեսնէ, կ՚ըսէին, քահանաներուն ու վանականներուն անգթութիւնը։ Եւ յիրաւի որոշուած օրը ցած ժողովուրդը Մինէրուա ըսուած Հրապարակը ժողվեցաւ ու կը սպասէր Հոն ըլլող Դոմինիկեանց գլխաւոր վանքը կրակի տալ ու մէջը գտնուող կրօնաւորները սպաննել։ Բարեբախտութեամբ նոյն ատեն Գարապինիէրի ըսուած զօրաց մէկ մասը վանքին մէջ կը բնակէր, որոնք կատղած բազմութեան սպառնալիքը լսելով, իրենք ալ սպառնացան որ վանքին վրայ բռնութիւն մ՚ընելու սկսուածին պէս՝ իրենց Հրացանները բազմութեան պարպելով՝ զամէնքը կը ցրուեն։

Հռոմայի Մածծինեանները միայն քահանայապետական երկրին Համար իրենց ջանքը ցուցընելը բաւական չսեպելով, ինչպէս Հասարակապետութիւնը Հրատարակելէն առաջ՝ նոյնպէս ետքն ալ բոլոր Իտալիայի անկախութեան ու միութեան Համար Հոգ կը տանէին։ Աս վախճանին Համար ընդՀանուր Իտալական խորՀրդանոց մը Հաստատելու խորՀուրդն յառաջագոյն որոշած ըլլալով, (Մարտ 1.) սկսաւ նոյն խորՀրդանոցին խաւրուելու պատգամաւորաց ընտրութիւնը։ Ընտրուողներուն մէկն եղաւ Երիտասարդ Իտալիոյ Հայրն ու գլուխը Մածծինի, որն որ իր մինչեւ ան ատեն ունեցած բաղձանաց կատարումն ու բանեցուցած Հնարքներուն պտուղը Հռոմէական Հասարակապետութեան Հաստատուելովը տեսած ըլլալով, ա՛լ ամենայն Հոգւով ու զօրութեամբ կառավարութեան գործքերուն մէջ մտաւ, եւ բոլոր Իտալիայի մէջ նոյն ռամկապետական կառավարութիւնը տարածելու կը ջանար։

Այս մարդուն ինչպէս նա եւ իրեն կարծեկից ու թեւակից ըլլող հասարակապետականներուն ջանից առաջին պտուղը Տօսկանայի տէրութեան մէջ երեւցաւ։ Այս երկրին Լէօպոլդոս Բ. մեծ դուքսն ի սկզբանէ հետէ իր հպատակաց օգտին համար ամենայն հոգւով կ՚աշխատէր, եւ իրաւցընէ իր ջանքերն ու իմաստուն կառավարութեամբն երկիրը վերջին աստիճանի կը ծաղկէր ու ամէն բանի մէջ յառաջադէմ կ՚ըլլար։ Բայց Մածծինեաններուն դրդուիչ հնարքներն անոր հպատակներուն միտքը շփոթելով ու տժգոհութեան որոմն անոնց սրտին մէջ տնկելով, զանոնք կը ստիպէին՝ ունեցածներէն աւելի առաւելութիւններ ունենալու բաղձալ ու այս բաղձանքէն դրդուելով՝ իրենց վեհապետին միշտ նոր պահանջմունքներ ընել։ Մեծ դուքսն այս պահանջմունքները կըցածին չափ կատարելու աշխատելով, ազատական նորոգութիւններ ու կարգաւորութիւններ կ՚ընէր. մինչեւ՝ ինչպէս յառաջագոյն գրեցինք իր ժողովրդեան կամքը կատարելու համար՝ իրեն ազգակից ու մտերիմ բարեկամ ըլլող Աւստրիոյի կայսեր դէմ տրուած պատերազմին օգնական զօրք խաւրելն իսկ ուզելով չուզելով յանձն առաւ։ Բայց ասով ալ չկրցաւ իր հպատակաց դրդուեալ միտքը հանդարտեցընել ու գոհ ընել։ Ժողովրդեան դրդուիչներն այնչափ ու այնպիսի հնարքներ բանեցուցին, եւ իր վեհապետին այնչափ զիջմանցը երախտագէտ ըլլալու տեղ՝ աւելի եւս համարձակութիւն գտնելով՝ իր խրատտուներէն խորհած ու հնարած սահմանադրական ժողով մը անոր առաջարկեց, որուն մեծ դուքսն ակամայ հաւանեցաւ։ Սակայն անկից ետքը՝ ալ իր երկրին մէջ մնալով Մածծինեանց ետեւէ ետեւ ընելու չափազանց պահանջմունքն ընդունելու ստիպուիլ չուզելով՝ Տօսկանայէն դուրս ելաւ։ Ինք իր երկրէն հեռացածին պէս՝

Կուերացցի փաստաբանին առաջնորդութեամբը, զոր որ մեծ դուքսը պաշտօնէից փախերէց անուանած էր (Փետր. 18.) նոր կառավարութիւն մը գրուեցաւ, որն որ բոլորովին հասարակապետական էր. ու անոր գլուխն եւ հրամանատարն եղաւ ինք Կուերացցի։

Նոյնպէս Իտալիայի մէջ Մածծինեանց հնարիքն երկու հասարակապետութիւններ հիմնեցան, Հռոմէականը՝ բուն երկրին պապադամաւորաց վճռովը, եւ Տոսկանայինը, որն որ թէպէտ եւ մասնաւոր վճռով մը չգրուեցաւ, բայց իրօք ռամկապետական հասարակապետութիւն մըն էր։ Մածծինի հոն ալ իր բաղձանաց կատարումը տեսնելով՝ ալ ուրիշ վախճանի համար չէր աշխատեր, բայց եթէ սա երկու երկիրներուն կառավարութիւնները միացընելով՝ երկուքէն մէկ հասարակապետութիւն ձուլել կազմել. սա որ ըլլար, կը յուսար որ Իտալիայի ուրիշ մասերուն մէջ ալ ետեւէ ետեւ սատանի հասարակապետութիւններ դուրս հանելով ու զանոնք կամաց կամաց միացընելով՝ բոլոր իր Երիտասարդ Իտալիան միակ մեծ հասարակապետութիւն մ՚ընէ։ Բայց չէր գիտեր որ ինք ու իրեններն այսպիսի խորհուրդներու զբաղած ատեն՝ ուրիշ կողմերէն ինչ փոթորիկներ ու կայծակներ իրենց տնկած հասարակապետութեան ծառը խորտակելու եւ կործանելու կը պատրաստուէին։

Ի վերայ այսր ամենայնի ժամանակին հանգամանաց համաձայն մտածելով՝ կրնար ըսուիլ որ սա երկու հասարակապետութեանց համար ան ցանկալի ու նպատակաւոր ատենն եկած հասած պէտք էր սեպել, որուն մէջ իրենց զօրութիւնը միացընելով՝ Աւստրիայի ուժն ու իշխանութիւնն Իտալիայի մէջ տկարացընելու եւ զանիկայ նոյն երկրէն բոլորովին դուրս հանելու փութային։ Գիտենք՝ որ նոյն հասարակապետութիւններուն հիմնիչ,

գլուխ ու յառաջացուցիչ ըլլողներն ի սկզբանէ հետէ մի միայն բաղձանք ունէին՝ օտարականներն Իտալիայէն վռնտել եւ ի մշտնջենաւորս դուրս հանել: Բայց զարմանք որ նոյն ատեն բոլոր իշխանութիւնք ձեռքերնին ունենալով, ամենեւին շարժում մը չէին ցուցըներ յառաջուան իրենց մեծաբանութեան ու սպառնալեաց դործադրութիւնն ընելու: Ան ստոյգ է՝ որ Հռոմայի հասարակապետութեան գլուխ ըլլողները եկեղեցիներուն զանգակները յափշտակել, հալեցընել ու թնդանօթներ թափել կու տային, ու երբ որ Կար. Ալբերտոս, որն որ Աւստրիայի դէմ երկրորդ անգամ պատերազմ սկսելու կը պատրաստուէր, (ինչպէս հասարակապետականք զինքը կը յորդորէին), իրենցմէ 25,000 օգնական զօրք ու բոլոր պատերազմին ատենն՝ օրը 1000ական դահեկան (ֆրանք) իբր պատերազմի ծախք կը պահանջէր, Հռոմայեցիք՝ 40,000 ու Տոսկանացիք 20,000 զօրք նա եւ պատերազմի տուրքը խուբել խոստացան: Սակայն երբ որ պատերազմելու ժամանակն եկաւ ու կռիւը սկսաւ, ո՛չ Հռոմայեցիք ու ո՛չ Տոսկանացիք զինուոր մ՚ալ օգնութեան խաւրեցին. հապա երկուքն ալ իրարմէ խրատուածի ու խօսք մէկ ըրածի պէս իրենք զիրենք կ'արդարացընէին ըսելով՝ որ ներքին խռովութիւններուն ու թշնամիներուն պատճառաւ իրենց զօրքը երկիրներէն դուրս հանելու չեն համարձակիր:

Անցնինք Սարդինիայի թագաւորութեան երկիրը: Հոն չափաւոր կուսակցութիւն մը, այսինքն հասարակապետութիւն չուզողները՝ Միջին Իտալիայի հասարակապետականներուն ջանիցն ու գործողութեանց մէջ ուրիշ բան չէին տեսներ ու գտներ, բայց եթէ Իտալիայի զօրութիւններուն ցրուիլն ու տկարանալը: Նոյն տէրութեան մէջ աս կուսակցութիւնը շատ զօրաւոր էր ու

անոր կ'առաջնորդէր սրատես ու խոհեմ Ճոպերդի քաղաքագէտը, զորն որ Թագաւորը պաշտօնէից դահերէց ըրած էր: Ասիկայ պաշտօնարանին գլուխն անցնելէն ետքը՝ միտքը դրաւ Տոսկանայի երկիրը քանի մը գունդ զօրք խաւրել ու մեծ դուքսն իր երկիրն ու գահը դարձընել: Աս բանս Մածծինեանց միտքը շփոթեց ու նոյնին մէջ իրենց կողման մեծ վտանգը տեսնելով՝ ամէն հնարքները սկսան ի գործ դնել իրենց գլխուն վրայ պատրաստուող փոթորիկը փարատելու եւ հանելու չարեաց առջեւն առնելու: Թէպէտ եւ չափաւոր (հասարակապետութիւն չուզող) կողմնակցութիւնը շատ բազմաթիւ էր. բայց իրենց մէջ Ճոպերդիի պէս սրտոտ ու համարձակ անձինք չգտնուելուն՝ երբ որ արմատականք կամ Մածծինեանք սկսան Ճոպերդիին խորհուրդին դէմ գայրանալ ու սպառնալիք ընել, անոր կողմնակիցներուն մեծ մասը սասանելով՝ իրմէ բաժնուեցան ու հեռացան: Եւ որովհետեւ ան ատեն Սարդինիայի մէջ գտնուող բազմաթիւ Լոմբարտացի փախստականներն ու Ճոպերդիին ջանքովը պաշտօնէ ձգուած հին պաշտօնեաները՝ Ռեւել, Բինելլի ու իրենց ընկերներն ամէն ուժգնութեամբ նոյն դահերէցին դէմ ելան, անոր համար ինքն ալ հարկադրեցաւ պաշտօնէն ելլել ու երկրէն հեռանալ:

Ան օրէն ետքը՝ ալ Սարդինիայի կառավարութիւնը՝ զարհուրելի ալէկոծութեան մէջ գտնուող նաւու մը պէս՝ անհմուտ ղեկավարներու ձեռաց տակ ժայռէ ժայռ զարնուելու վտանգի մէջ կը տատանէր: Երկրին մէջ ըլլող այլ եւ այլ ժողովականները կառավարութեան իրարու հակառակ խորհուրդներ կու տային. Մածծինեանք համարձակութեամբ ժողովրդեան մէջ սփռելով՝ իրենց ռամկապետական խորհուրդներովը շփոթութիւնները կ'աւելցընէին: Մէկ խօսքով ըսենք, յայտնի կը

տեսնուէր որ անանկ զարհուրելի դէպքեր կը պատրաստուին, զորոնք Թագաւորն իր բոլոր իշխանութեամբը կարող պիտի չըլլայ արգիլել ու կարգի դնել. մանաւանդ թէ նոյներէն գուցէ իր գահին ալ կործանելու պատճառ պիտ՚որ ըլլան: Այսպիսի ջախջախութեան մէջ Կար. Ալբերտոս այլ եւ այլ խորհուրդներով աղմկած ատենը՝ Հանգարիացի յեղափոխութեան յաջողութեամբ յառաջ երթալուն, եւ Աւստրիային՝ նոյն երկրին հետ զբաղելուն լուրն Իտալացւոց ականջը հասաւ: Ասով ի-րենց քաղաքականութիւնը նոր բարբառ մը ստացաւ ու ալ չէին տարակուսեր՝ որ եթէ նոյն կայսերութեան դէմ Իտալիայէն պատերազմի յայտարարութիւն մը գալու ըլլայ, դէմ կենալու բաւական զօրութիւն չունենալով՝ զԻտալիա Իտալացւոց կը թողու: Կար. Ալբերտոս ալ կամ աս եղբայրներուն համոզմանը անսալով, ուստի եւ առջի հեղ կորսնցուցած պատիւը նոր պատերազմով մը ստանալու յուսալով, եւ կամ Իտալացւոց Թախանձանքէն չկրնալով ազատիլ, (ինչպէս իր յայտարարութեան խօսքերէն կրնայ իմացուիլ,) որոշեց հեղ մ՚ալ պատերազմով Լոմպարտիա մտնել:

Աս խորհուրդն ատանկ որոշելէն ու հաստատելէն ետքը՝ (1849. Մարտ 12.) իր զօրապետներուն մէկը Միլան խրկեց, որ Ռատեցքի սպարապետին ծանուցանէ թէ անկից ետքը զինադադարին ժամանակը լմնցած է: Ռատեցքի աս յայտարարութիւնը չէ թէ միայն հանդարտութեամբ, հապա նաեւ հաճութեամբ ընդունեցաւ, որովհետեւ իր հրամանին տակ ըլլող զօրաց պատրաստութիւնը կը ճանչնար եւ Աւստրիայի զէնքերուն համար նոր յաղթանակներ ու փառք ստանալու ժամանակը հասած ըլլալուն վրայ տարակոյս չունէր: Աս բանիս ապացոյց մըն է՝ աս լուրն իր զինուորներուն ծանու-

ցանելու կերպը. ինչու որ նոյն յայտարարութիւնն ըն-
դունելուն պէս՝ իր զօրքը ժողվեց ու ըսաւ. "Զինուորք,
պատերազմը նորէն պիտի՝ որ սկսինք. աս հեղու մեր նպա-
տակն ըլլայ մինչեւ Թուրին յառաջ երթալ"։ Ինչպէս
սպարապետը՝ նոյնպէս բոլոր զօրքն առաջին կարգի ու-
րախութեամբ աս յայտարարութիւնն ընդունելով՝ պա-
տերազմելու եւ յաղթելու եռանդերնին սկսան յայտնել։

Պատերազմը սկսելու ատեն Ռատեցքիին Հրամա-
նին տակ ըլլող զօրաց թիւն էր 60,000, որոնք 120 հատ
ազէկ թնդանօթներ ունէին։ Իսկ Կար. Ալպերտոսին զօ-
րաց բովանդակ թիւն էր 80,000 ու թնդանօթներուն
թիւն 168։ Սարտինիացիք իրենց զօրաց թուոյն առաւե-
լութենէն զատ ուրիշ ամէն նկատմամբ Աւստրիացւոց
վար էին. ինչու որ Ռատեցքիին հրամանին տակ ըլլող
ազէկ կրթուած զօրքը չէ թէ միայն եռանդամամբ պա-
տերազմելու կը բաղձային, հապա նաեւ իրենց զօրա-
վարին ու զօրապետներուն հմտութեան վրայ հաստա-
տուն վստահութիւն ունէին։ Իսկ Սարտինիայի զօրքը՝
նախընթաց տարին աւելի մեծ զօրութիւն ու յարմար
դիրքեր ունենալով՝ կրած պարտութիւններնին միտքե-
լով ու իրենց զօրապետներուն անկարութիւնը կամ
աւելի եւս՝ իրենց ազէկ առաջնորդելու հաստատուն
կամք չունենալը նոյն պարտութիւններուն պատճառ
դնելով, երր սկսանք պատերազմի կ'երթային։ Աս ան-
դամ ուրիշ հանգամանք մ'ալ կար՝ որ զինուորներուն
պատերազմելու փափաքն աւելի եւս կը տկարացընէր, այս-
ինքն իրենց վերին հրամանատարը Քրշանովսքի Լեհացին
ու անոր Լեհացի ընկերները Զամոյսքի ու Ռամորինոյ, ինչ-
պէս նաեւ Անդոնինի, իրենց անծանօթ ու օտար ան-
ձինք էին։ Ասկից ի զատ՝ հասարակապետութիւն ուզող
ու սահմանադրական թագաւորութեան պաշտպան ըն-

լով երկու հակառակ կողմանք իրենց գործակալները զօրաց խառնած էին։ Ասոնց առաջինները զինուորները կը վհատեցընէին, ըսելով որ իրենց Թագաւորն Աւստրիոյ հետ ի ծածուկ ամէն բան յարմարցուցած ըլլալով՝ իր կամքըն անոր զօրքէն այլա՛ որ յաղթուի։ Իսկ եզուիտները զիրենք կը խրատէին՝ որ պատերազմ ուզողներուն հետեւելով կեանքերնին պարապ տեղ չզոհեն, ապա թէ ոչ՝ իրենք գալուրը՝ պատերազմի դադրած ատեն՝ Սարդինիայի մէջ հասարակապետութիւնը կը հաստատուի։ Նոյն իսկ պատերազմը սկսելուն նախընթաց իրիկունը զօրաց մէջ տոմսեր կը պտըտէին, որոնց վրայ գրուած էր. Սարդինիացիք, որո՞ւն համար կը կարծէք որ կը պատերազմիք. ձեր թագաւորին համար. — աս վայրկենիս մէջ Գաղղին հասարակապետութիւնը հրատարակուեցաւ ու թագաւորին եւ իր ազգատոհմին գահէն մերժուիլը հաստատուեցաւ։ Ուստի գիտցէք որ դուք հասարակապետութեան համար պատերազմի կ'երթաք։

Կար. Ալբերտոս զինադադարին վերջանալը հրատարակելէն ետքը՝ իր զօրաց վրայ վերին հրամանատար կարգեց Քրշանովսքի Լեհ զօրավարը, որն որ բոլոր զօրաց կեդրոնը հաստատեց Նովարա, Վիճեւանոյ ու Վերչելլի քաղաքներուն մէջտեղը. իսկ երկու թեւերը Բարմայի դքսութեան սահմանէն սկսած՝ մինչեւ Լակոյ Մաճճորէ լիճին եզերքը սփռեց երկընցուց։ Սարդինիայի զօրավարները հանգարտութեամբ մը կարծէին, որ Ռատեցքի Լոմպարտիայի մէջ նոր ապստամբութեան մը առջեւն առնելու համար (ինչպէս որ Կար. Ալբերտոս կը յուսար կամ կը բաղձար, մանաւանդ թէ գրգռելու կ'աշխատէր,) իր զօրքը բաժնելով՝ երկրին այլ եւ այլ կողմերը մաս մաս կը թողու, ուստի եւ իր բոլոր բանակովն իրենց դէմ չիքալեր։ Բայց քաջ ու հմուտ ծերունին աս անխոհական

ճամբան չըռնեց, հապա Լոմբարտիայի մէջ պատրաստուած ապստամբութիւնը մեծ բանի տեղ չդնելով, իր բոլոր բանակովն անյապաղ Սարդինիացւոց դէմ քալել սկսաւ, որպէս զի անոնց երկայն ատեն Լոմբարտիայի մէջ մնալու ժամանակ չթողու։ Ուստի (Մարտ 20.) Միլանէն ելաւ դէպ ի Լոտի քալեց, Բաւիայի քով առանց դժուարութեան Թէսին գետին վրայէն անցաւ յառաջ գնաց, նոյն օրն իրիկուան Գրիչինոյ գետն ալ անցաւ ու անոր աջ եզերքին վրայ բանակեցաւ։ Հոն հասնելէն ետքը՝ թշնամւոյն յառաջ քալելուն չուզեց սպասել, հապա ինք առաջին յարձակողական շարժումն ընելն աւելի օգտակար սեպելով ու նոյնն աւելի եւս աջողութեամբ ի գործ դնելու դիտմամբ՝ թշնամւոյն կեդրոնը թողուց, (Մարտ 21.) իր յառաջապահ գնդերովն անոր աջ թեւին վրայ յարձակեցաւ։ Սարդինիացիք ամենայն զօրութեամբ ու քաջութեամբ պատերազմեցան. բայց վերջապէս չկրնալով յարձակումը ետ մղել, իրենց կեցած տեղէն ետ քաշուելու հարկադրեցան։ Նոյն իրիկունը Տ'Ասբրը զօրապետը Մոնդարա քաղքին քով թշնամեաց մէկ զօրաբաժնին հանդիպելով՝ անոնց վրայ յարձակեցաւ, դէպ ի նոյն քաղաքը քշեց, վրանին հասաւ, քաղաքն առաւ, 2000 զինուոր գերի ըրաւ ու վեց թնդանօթ ալ ձեռք անցուց։

Ուստեցքի Բաւիայի քով Գրիչինոյ գետին վրայէն անցած օրը (Մարտ 20.), կար. Ալբերտոս ալ Մաճենդայի քով նոյն գետին ձախ կողմն անցաւ ու սկսաւ դէպ ի Միլան յառաջ քալել։ Եւ որովհետեւ ճամբուն վրայ ամենեւին թշնամւոյ չհանդիպելով՝ ապահովութեամբ յառաջադէմ կ'ըլլար, անոր համար զինքը նորէն իբրեւ բոլոր Վերին Իտալիայի թագաւոր երեւակայելով՝ ուրախութեան աւետիսը Միլան խաւրեց ծանուցանելով որ

ջութեամբն ու համարձակութեամբը նոյն զօրաց առջեւն անցնելով պատերազմեցան։ Նախ՝ իրենց բանակին կեդրոնն ու եզերք՝ աջ թեւը սաստիկ զարնուելով քայքայեցան, անկից եզերը գունդ գունդի ետեւէն պատերազմի դաշտը թող տալով կը փախչէր, վերջապէս գիշերուան մութն ալ վրայ հասնելով՝ բոլոր բանակը ցրուեցաւ։ Այսպէս ամէնն ալ ժամ մը խառն ի խուռն ետ քաշուելով՝ կոտորածէն ազատուողները գիշերանց Նովարա մօտեն խռնեցան։ Հոն զինուորներուն շատերը կատաղութեամբ զէնքերնին մէկդի նետելով կը պոռային. «Մատնիչներուն մէջ պատերազմիլ չենք ուզեր»․ ուրիշները խանութներուն դուռները կոտրելով՝ գանձերնին կը կողոպտէին. ոմանք ալ տուներուն կրակ տալով կ'այրէին։

Այսպէս Կար. Ալպերթ (Մարտ 12.) զինադադարը վերջացընելէն կամ Աւստրիայի դէմ երկրորդ պատերազմ մը հրատարակելէն միայն տասն օր ետքը (Մարտ 23.) սոսկալի կոտորածով մը Նովարա քաղքին քով չէ թէ միայն նոյն պատերազմին մէջ բոլորովին յաղթուեցաւ, հապա նաեւ անկից ետքը՝ ալ ամէն բան իրեն համար կորսուած տեսնելով։ Իր բանակը ցրուած, պատերազմելու անկարող եղած էր. Սարդինիա դառնալու համար ալ միայն մէկ ճամբայ կար լեռներու վրայէն, որոնց վրայ ան տկարացած ու վհատած զօրքը յաղթող ու զօրաւոր թշնամւոյն աչքին առջեւը չէր կրնար ելլել յառաջ երթալ։ Ասոր յուսահատիչ հանգամանքն ամէնէն առաջ ու ամէնէն աւելի խեղճ Կար. Ալպերթ տեսաւ ու հասկցաւ. Նովարայի քով պատերազմը շարունակած ատեն՝ ինք մինչեւ ետքի վայրկեանը պատնէշներուն վրայ կեցած՝ գրեթէ կը սպասէր որ գնդակ մը գայ զինքը զարնէ ու յուսահատական վիճակէն ազատէ։ Եւ երբ որ իր զօրապետներուն մէկը զինքն ան վտանգաւոր տեղէն բռնի

հեռացընելու կ՚աշխատէր՝ ըսաւ. Ասիկայ իմ կենացս ետքի օրն է. Թո՛ղ տաք որ մեռնիմ: Վերջապէս բոլորովին յուսահատած քաղքին մէջ տուն մը մտաւ. Հոն իր որդիքն ու զօրապետները ժողվեց եւ անոնց ամէն աղաչանքն ու առաջարկութիւնները մերժելով՝ ըսաւ. Իմ գործելու ժամանակս ա՛լ անցած է. այսուհետեւ չեմ կրնար իմ երկրիս օգտակար ծառայութիւն մ՚ընել, ուստի եւ ի նպաստ իմ Վիկտոր Էմմանուէլ երեց որդւոյս թագէս կը հրաժարիմ: Նոյն գիշերը (Մարտ 24.) Աւստրիացւոց բանակին յառաջապահ գնդերուն մէջ Սարդինիացի զօրապետ մը եկաւ, որն որ Սարդինիայի բանակը ձգած՝ երկրէն դուրս ելլել կ՚ուզէր, ուստի եւ Աւստրիայի հրամանատարէն կը խնդրէր որ զինքն ազատ թողու: Աս զօրապետն ինք Կար. Ալբերտո թագաւորն էր, որն որ ծպտեալ ու օտար անուամբ՝ ամէն բան թողտալով իբրեւ ինքնակամ աքսորեալ Բորդուգալի երկիրը գնաց. ուր եւ քանի մը ամիսէն ետքը (Յուլ. 28.) մեռաւ: Ասանկ օտար երկրի մէջ ու ամէն իշխանութենէ զրկուած վախճանեցաւ աս խեղճ թագաւորը, որն որ ամէն ատեն ժամանակին պարագաներն այլ եւ այլ հնարքներով իր շահուն գործածելու կը ջանար. բայց ոչ երբեք կարող եղաւ բախտին ուրախացուցիչ դէմքը տեսնել ու բաղձացած փառացն ու բարձրութեան հասնիլ:

Կար. Ալբերտոին թագէն հրաժարելովը՝ իր սկսած պատերազմն ալ դադրեցաւ: Նոյն երկրորդ օրը Սարդինիայի Վիկտոր Էմմանուէլ Բ. (ծնեալ 1820, Մարտ 14.) նոր թագաւորն ու Ռատեցքի սպարապետը Նովարայի մօտ գեղացւոյ մը տան մէջ մէկտեղ եկան ու նախ զինադադարի մը պայմանները ու ետքը դրուելու խաղաղութեան դաշին սկզբնական հիմունքն որոշեցին:

Զինադադարին պայմաններն էին. Ա. Աւստրիայի զօրաց մաս մը մինչեւ խաղաղութեան դաշին հաստատուելու ատենը Սարդինիայի սահմանին մէջ Բօ ու Սեսիա գետերուն մէջի երկիրը կը բռնէ։ Բ. Սոյնպէս եւ Աղեքսանդրիայի բերդին պահապան զօրաց կէսն Աւստրիացիներէն կ'ըլլայ։ Գ. Աս զօրաց դարմանն ու ծախքը Սարդինիայի տէրութիւնը կը հոգայ։ Դ. Սարդինիա կը խոստանայ՝ իր նաւատորմիղն Ադրիական ծովէն ետ կանչել ու ան ամէն գնդերը լուծել, որոնք Աւստրիայի կայսեր Լոմբարտացի, Հունգարացի ու Լեհացի հպատակներէն կազմուած են։ Աս զինադադարի դաշինքը (Մարտ 26.) հաստատուելէն ետքը՝ Սարդինիացիք Լոմբարտիայէն ելան հեռացան։ Այսպէս տասն օրուան մէջ լմնցաւ աս Սարդինիական-Աւստրիական երկրորդ պատերազմը, որն որ Իտալիայի պատմութեան մէջ՝ հայրենասիրութեամբ յոխորտացող ու Իտալական ազատութիւնը հաստատելու ձեռնարկող Իտալացւոց մանաւանդ Լոմբարտացւոց համար փառաւոր յիշատակարան մը չէ։

Երբ որ Վիկտոր Էմմանուէլ Բ. նոր թագաւորն իր մայրաքաղաքը հասաւ ու զինադադարին պայմանները հրատարակուեցան, Սարդինիացիք իրենց կրած պարտութիւնը չյիշելով՝ արտաքոյ կարգի շփոթեցան ու խռովեցան ան պայմաններն իրենց համար նախատական սեպելով։ Բայց պէտք է ըսել որ աս խռովութեան պատճառը՝ պայմաններուն նախատական կամ խիստ ըլլալը չէր, հապա Սարդինիայի մէջ ըլլող հասարակապետական կողմնակցութեան յամառութիւնն ու չար կամքը։ Աս կողմնակցութիւնը Նովարայի քով Սարդինիացւոց կրած կոտորածն ու պարտութիւնը բարեբախտ կամ ուրախալի դիպուած մը կը համարէր։ Իրենց կարծեաց համեմատ՝ թագաւորական զօրքը Նովարայի քով միայն յառաջա-

Ռատեցքի իր քաջ զօրքովը Սարդինիացւոց ա-
նանկ շուտով յաղթեց ու սա Սարդինիական-Աւստրիա-
կան պատերազմը այնչափ քիչ օրուան մէջ լմնցաւ, որ
Լոմպարտացիք բաւական ատեն չկրցան ունենալ իրենց
խորհած ու պատրաստած նոր յեղափոխութիւնը սկսե-
լու։ Ծերունի սպարապետին իր զօրքովը միայն տասն օր
Լոմպարտիայէն կամ Միլանէն դուրս մնաց ու Միլանցիք
անոր այնչափ քիչ օրուան մէջ այնպիսի յաղթանակաւ
նոյն քաղաքը դառնալ մտնելը տեսնելով՝ ապշեցան ու
տխրեցան լռել ու գլուխ ծռել։ Միայն Լոմպարտիայի
Պրեշիա քաղաքն իր յեղափոխական բաղձանքը չկրնա-
լով զսպել, ապստամբութեան դրօշը բացաւ, իր դռներն
Աւստրիայի զօրաց դէմ գոցեց, եւ ներսէն ամէն բան
պատրաստելով՝ յայտնապէս սպառնացաւ որ եթէ բեր-
դին հրամանատարը քաղաքը ռմբակոծելու նշան մը տա-
լու ըլլայ, քաղաքացիք քաղքին մէջ գտնուող ամէն
Աւստրիայի գերիներն ու վիրաւորած զինուորները սրէ
կ'անցընեն։ Բայց սա ճանաւոր ապստամբական փորձն
ալ իր վախճանը շուտով տեսաւ, իր գրգռիչներուն կամ
ապստամբներուն հետ մէկտեղ անմեղ քաղաքացւոց մէկ
մասին կոտորածովը։ Ինչու որ Հայնաւ զօրապետը, որուն
պատերազմական քաջութիւնն ու զինուորական (քիչ մը
չափազանց) խստութիւնը նոյն ատենուան պատերազմնե-
րուն մէջ զինքը հռչակաւոր ըրեր, իր գնդերովն եկաւ
(Մարտ 31 — Ապր. 1.) քաղաքը պաշարեց ու յար-
ձակմամբ առաւ։ Քաղքին մէջ ապստամբներուն կանգ-
նած պատնէշները կամ քարակոյտները՝՝ փողոցներու մէջ
եղած կուխեներով ու բերդէն արձակուած ռումբերով
առնուելէն ետքը, ապստամբներն ու անոնց հետ շատ
քաղաքացիներ թէ ճամբաներու վրայ ու թէ տուներու
մէջ զինուորաց զէնքին ու հրամանատարին խստութեան

փորձն առնելով՝ զսպուեցան ու (Ապր. 4.) հոն ալ հանդարտութիւնը հաստատուեցաւ։

Մեծին Իտալիոյ մէջ՝ բաց ի Վենետիկ քաղաքէն՝ յեղափոխական ու հասարակապետական շփոթութիւններն Աւստրիացւոց զէնքովը դադրելէն ետքը՝ Միջին Իտալիոյ, առանձինն Հռոմայ երկրին յեղափոխականաց դէմ ալ պէտք էր ամէն միջոցները բանեցընել ու անոնց ալ գլուխը ջախջախել։ Աս վախճանիս համար ինչպէս Աւստրիա նոյնպէս ուրիշ Եւրոպական տէրութիւնները, մանաւանդ անոնք՝ որոնց օգնութիւնը Պիոս Թ. իր աշխարհական իշխանութիւնը նորէն հաստատելու համար խնդրած էր, իրենց զօրութիւնը բանեցընելու հարկը ճանչցան։ Զարմանալի բան մը չէ՝ որ երեք կաթողիկէական տէրութիւնք՝ Աւստրիա, Սպանիա ու Նէապոլիս քահանայապետին խնդիրքը կատարել ուզելով, միանգամայն իրենց երկիրներուն մէջ ալ սահմանադրական միապետութեան պաշտպան ու պահապան ըլլալով՝ Հռոմայ (ինչպէս նա եւ Տոսկանայի) հասարակապետութիւնը վերցընելէն ու միապետական իշխանութիւնը նորէն հաստատելէն չհրաժարեցին։ Բայց Գաղղիայի նկատմամբ աս բանս շատ զարմանալի էր. հոն սահմանադրական միապետութիւնը (1848) Փետրուարի յեղափոխութեամբ ջնջուած ու հասարակապետութիւն հաստատուած ըլլալով, պէտք էր որ Գաղղիա, որն որ ամէն ատեն իր կառավարութեան կարգին ու կաղապարին վրայ ուրիշ իրեն դաշնակից ըլլող ու իրեն հետեւող կառավարութիւններուն ձեւուելուն ձեռնտու եւ յառաջացուցիչ կ'ըլլայ, Իտալիոյ հասարակապետութիւններուն հաստատուելուն չընդդիմանար, մանաւանդ թէ զանոնք պաշտպանէր։ Ո՛ւր թողունք որ Գաղղիայի սահմանադրութեան մէջ Գաղղիական զօրաց համար յայտնի արգելք դրուած

էր օտար ազգաց ազատութեան դէմ պատերազմելու։ Հռոմայի հասարակապետականք ասիկայ գիտնալով՝ թէ պէտ եւ ուրիշ տէրութեանց քահանայապետին օգնութիւն տալէն վախ ունէին, սակայն Գաղղիայի հասարակապետութեան կողմանէ իրենց հռոմէական հասարակապետութեան համար օգնութիւն ու պաշտպանութիւն հասնելուն վրայ չէին տարակուսեր։ Բայց ինչպէս ուրիշ անգամներ՝ նոյնպէս աս անգամ ալ Իտալիայի հասարակապետականաց Գաղղիայի վրայ դրած յոյսը պարապի ելաւ։ Ինչու որ Գաղղիական հասարակապետութեան ան ատենուան գլուխը կամ գահերէցը Լուդովիկոս Նաբոլէոն Պոնաբարդէ չէ թէ պարզ հասարակապետութեան մը գլուխ ըլլալով՝ Հռոմայի պզտիկ հասարակապետութիւնը յառաջ տանելու խորհրդով, հապա ուրիշ բարձրագոյն գաղափարներով իր միտքը կը զբաղեցնէր։ Ան վախճանաւ ինք աւելի կ՚ուզէր Եւրոպայի ուրիշ մեծ տէրութեանց՝ մանաւանդ Աւստրիայի հետ աս բանիս մէջ միաբանութեամբ գործելով՝ անոնց բարեկամութիւնը ստանալ, քան թէ անոնց բռնած ընթացքին ու ջանիցը հակառակ Հռոմայի հասարակապետութեան օգնելով՝ իր դիտաւորութիւններուն յաջողութիւնը վտանգի մէջ դնել։ Բայց միայն Հռոմայի հասարակապետութիւնը չպաշտպանելով գոհ ըլլալն ալ Գաղղիական՝ մանաւանդ Նաբոլէոնեան պատուոյն հակառակ կը սեպէր, եւ տեսնելով զԱւստրիա որ Իտալիայի մէջ իր զօրքն ու զօրութիւնն ուզածին պէս կը բանեցընէ, պէտք էր որ ինքն ալ Գաղղիական զինուց ազդեցութիւնը Թերակղզւոյն վրայ ցուցընէ, ուստի եւ ինքն ալ քահանայապետական երկրին ազատութեան ու խաղաղութեան համար զօրք խաւրէ։ Լուդովիկոս Նաբոլէոն իր աս որոշումը Գաղղիայի կառավարութեան առջեւն արդարացընելու եւ խորհրդականաց

հաւանութիւնն ընդունելու համար՝ ծանօթացուց որ որ[illegible] Գաղղիա ալ, ուրիշ կաթոլիկէական տէրութեանց քահանայապետական երկրին գործոցը մէջ միջամտութիւն ընելը չէր կրնար արգելել, անոր համար ինք ալ պէտք է որ նոյն միջամտութեան մասնակից ըլլայ, որպէս զի Եկեղեցւոյ տէրութեան աշխարհական սահմանադրութիւնն մէջ պահելուն օգնէ, զոր ոչ Աւստրիա եւ ոչ Նէապոլիս կրնար ուզել ու յաջողցնել։

Հռոմայի մէջ՝ դուրսը եղածներուն, մանաւանդ Սարդինիացւոց բոլորովին յաղթուելուն լուրերը հանելով՝ հասարակապետականաց գլխաւորները մտամուխ մէջ ինկան։ Այդէն (Մարտ 30.) Մաձձինի, Արմելլինի ու Սաֆֆի եռապետ անուանուած էին ու հրամանատարութիւնն անոնց տրուած էր։ Մաձձինիին ու անոր ընկերներուն մինչեւ այն ատեն՝ Գաղղիայի ու Անգղիայի բարեկամութիւնն ու պաշտպանութիւնը ստանալու համար ցուցուցած ջանքը բոլորովին պարապ եղած ըլլալով, իրենք ու իրենց ամէն կարծեկիցներն ալ հասկցան որ այլ դիւրին չէ թէ օգնութեան՝ հապա թշնամութեան ու պատերազմի պէտք են սպասել։ Անոր համար ամէն միջոցներն ի գործ կը դնէին իրենց զօրքը շատցնելու, որուն համար իրենց մեծ օգնութիւն ըրաւ Իտալիայէ ուրիշ կողմերէն Աւստրիացւոց զէնքովը հալածուած փախըստականներուն Հռոմ գալ ժողվիլը ու հասարակապետութեան ծառայելու համար պատրաստակամ զինուոր գրուիլը։ Երբ որ այսպէս Հռոմայեցիք իրենց պատերազմական պատրաստութիւնները կ'ընէին ու ստուգելապէս Հռոմ քաղաքը կարելի եղածին չափ ամրացընելու կ'աշխատէին, չորս տէրութեանց զօրքերն արդէն ճամբայ ելած էին անոնց կանգնած հասարակապետութեան խախտուն շէնքը կործանելու համար։

մէջ շատ հեղ ռմբակոծելով, (Մայ. 16.) անձնատուր ըլլալու ստիպեց։ Ուրիշ քանի մը քաղաքներ ալ առնելէն ետքը, (Մայ. 25.) Անդոնա բերդաքաղաքը ծովու եւ ցամաքի կողմանէ պաշարեց. աս քաղաքն ալ երկայն ատեն ամէն կերպ ճիգն ու ջանքը բանեցուց թշնամին հեռացընելու համար, բայց վերջապէս նեղի մանելով (Յունիս 18.) անձնատուր եղաւ։ Ասանկով Աւստրիոյի զինուց զօրութեամբը՝ որն որ քահանայապետական երկրին խաղաղութեան համար 50,000 զօրաց բանակ մը հոն խաւրած էր, երեք ամսուան մէջ Ֆերրարայի, Պոլոնեայի, Ռավեննայի ու Ֆորլիի կուսակալութիւնները քահանայապետին իշխանութեան տակ մտան։ Աւստրիացիք հիւսիսային կողմանէ քահանայապետական երկրին ապըստամբները զսպած ատեն, հարաւային կողմանէ Նէապոլսոյ 12,000 զօրաց բանակն իրենց Ֆերդինանդոս Բ. թագաւորին հրամանատարութեամբը եւ Սպանիայի 5000 օգնական զօրքը Գոնդա զօրապետին հրամանին տակ Հռոմայի երկրին Տերրաչինա քաղաքին մօտ ցամաք ելլելէն ետքը, սկսան Հռոմայի սահմանին վրայ յառաջ քալել։ Ֆերդինանդոս Բ. Ապրիլ ամսոյն վերջերն իր զօրքովը Հռոմայի սահմանն անցաւ ու հոն Կալլեդդիին ու Կարիպալտիին հրամանին տակ ըլլող հասարակապետական զօրաց հետ զարնուելէն ու անոնց յաղթելէն ետքը՝ Վելլետրի քաղաքն առաւ ու հոն իր բանակը դրաւ։ Թէպէտ եւ հասարակապետութեան զօրքն այսպէս չարաչար յաղթուեցաւ, սակայն Հռոմայի կառավարութեան գլխաւորները ժողովրդեան մէջ սուտ լուրեր տարածեցին՝ թէ Նէապոլսոյ զօրքերը չկրնալով հասարակապետական զօրաց քաջութեան դէմ կենալ՝ փախան, խսկ Հռոմայի զօրքը փառաւոր յաղթութիւն մ'ընելէն ետքը՝ զանոնք սահմանէն անդին հալածեցին։ Ասոր վրայ

գթութեան ու խնամակալութեան վրայ ձգելով՝ իրենք զիրենք արդարացուցին։

Գաղղիոյ Հասարակապետութիւնն Ապրիլ ամսոյն մէջերը Աւստրիոյ զօրաց քահանայապետական երկիրը մտնելուն եւ արդէն քանի մը գաւառներ քահանայապետին իշխանութեան հնազանդեցընելուն լուրն ընդունելով՝ իր պատրաստած զօրքը դէպ ի Իտալիա ճամբայ հանեց։ Աս զօրաց թիւը 7000ի կը հասնէր, որոնց հրամանատար տրուեցաւ Ուտինոյ զօրապետը, առոր հետ իբրեւ Գաղղիոյ Հասարակապետութեան դեսպան կամ գործակալ ընկերացաւ Լէսէպս անուամբ դեսպանագէտը։ Պզտիկ նաւատորմիղ մը աս զօրքը Գաղղիայէն (Ապր. 25.) Հռոմայի Չիվիդա Վէքքիա նաւահանգիստը բերաւ։ Ուտինոյ հոն հասածին պէս՝ քաղքին պաշտօնատէրներէն պահանջեց որ քաղաքն իրեն յանձնեն. քաղաքապետն ու իր պաշտօնակիցներն առանց ընդդիմութեան քաղքին բանալիներն անոր յանձնեցին. որովհետեւ ասոնք կը կարծէին, ինչպէս ետքը յայտնի ըրին, որ Գաղղիացիք իբրեւ Հռոմէական Հասարակապետութեան բարեկամներն ու դաշնակիցները հոն եկած են։ Հռոմայեցի պաշտօնատէրներուն այնչափ յօժարութեամբ ու դիւրութեամբ մայրաքաղաքին բուն նաւահանգիստը Գաղղիացւոց յանձնելը Ուտինոյին ու Լէսէպսին յոյս տուին որ Հռոմէական Հասարակապետութեան գլխաւորները զիրենք իբրեւ միջնորդ ու դաշնակից ամենայն պատրաստութեամբ Հռոմ կ'ընդունին։ Աս յուսոյն վրայ հաստատուած՝ Յայտարարութիւն մը հրատարակեցին, որուն մէջ կ'ըսէին. Գաղղիոյ Հասարակապետութիւնը Հռոմայի երկրին բնակչաց մեծագոյն մասին կամքը կը յարգէ ու չ'ուզեր Հռոմայեցւոց բռնութեամբ այնպիսի կառավարութեան կերպ մը տալ, որն որ իրենց ուզած հասա-

բանակապետութեան հակառակ է։ Գաղղիայի զինուորներն Իտալիա կը մնեն իբրեւ բարեկամ ու միայն ան դիտմամբ՝ որ Գաղղիայի օրինաւոր ազդեցութիւնը Թերակղզւոյն վրայ պահեն։

Գաղղիայի զօրաց Չիվիդա Վեքքիա հասնելուն լուրը Հռոմայի մէջ հրամանատարներուն ինչպէս նաեւ անոնց գործակիցներուն վրայ շատ անհաճոյ ազդեցութիւն ըրաւ ու անոնց գլուխը շփոթեց։ Բայց Մաձձինի իր ընկերներուն գործակցութեամբը հասարակապետական կառավարութիւնն այլ եւ այլ միջոցներով հաստատուն պահելու ճամբան գտած էր, քանի մը հարկերը վերցընելով, ժողովրդեան զուարճութեան համար յաճախ հրապարակական հանդէսներ ընել տալով ու քահանայապետական կառավարութեան բարեկամ ըլլողներն ըստ կարի հալածելով. երբեմն նա եւ չէ թէ միայն Հռոմայի երկրէն՝ հապա նա եւ աշխարհքէն հանելու հնարքը բանեցընելով։ Աս վերջին հնարքը յաջողութեամբ ի գործ դնելու համար իրենց աղէկ կ՚օգնէր Որսինիի կոմսը, որն որ քանի մը տարի ետքը (1858ին) նշանաւոր եղաւ Նաբոլէոն Գ. կայսրը սպաննելու համար հնարած նոր տեսակ ռումբովն ու անով ըրած փորձովը։ Հասարակապետութեան գլուխներն ասանք ընելով ու եկեղեցականաց կառավարութիւնը ժողովրդեան ատելի ընելու համար ամէն ջանքը բանեցընելով՝ կը յուսային որ եթէ օտար տէրութեանց դեսպաններուն ու սուրհններուն զօրութեամբը քահանայապետին աշխարհական իշխանութիւնը Հռոմայի երկրին մէջ նորէն հաստատուելու փորձերը շարունակեն, ժողովրդեան ատելութիւնն ու հասարակաց հակառակութիւնն ամէն միջոցները ձեռք առնել կու տայ ան փորձերն անօգուտ ու անպտուղ ընելու համար։ Իրօք ալ ամէն մարդ աս փորձերուն սկիզբը

տեսնելով, իր բանսարկուներէն գրգռուած՝ յայտնի Համարձակ կ'աղաղակէր որ աւելի կ'ուզենք Գաղղիացւոց դէմ որպիսի եւ իցէ կերպիւ պատերազմիլ, քան թէ դերբիններու պէս եկեղեցականաց կառավարութեան վրէժխնդրութեան զոհ ըլլալ։

Այս առենները Հասարակապետութիւնը Հռոմայի մէջ իր տրամադրութեան տակ 16,000 զօրք ունէր, որոնց գրեթէ ամէնն ալ իրենց ազատ կամքովը զինուորութիւնը յանձն առած էին. եւ իրենց մէջ շատ մը օտար երկիրներէն եկած բախտախնդիրներ կային. ինչպէս նա եւ բուն Հռոմայեցի երիտասարդներ, զորոնք միայն Հասարակապետութեան անունը զէնք առնելու եւ զանիկայ պաշտպանելու յորդորած էր։ Թէպէտ եւ Հռոմայեցիք այսչափ եռանդուն պատերազմողներուն թիւը շատցընելով ալ չէին կրնար ապահովութեամբ յուսալ որ անոնք օտար տէրութեանց կրթեալ զօրաց ու բանակներուն դէմ շատ մեծ քաջութիւն մը ցուցընեն կամ երկայն ատեն կարող ըլլան պատերազմիլ, սակայն ուրիշ կողմանէ ալ անկարելի բան մը կը համարէին՝ որ Աւստրիայի, Գաղղիայի, Նէապոլսի ու Սպանիայի զօրքն իրարու հետ միաբանելով ու ձեռք ձեռքի տալով՝ Հասարակապետութեան դէմ կարող ըլլան պատերազմիլ։ Մանաւանդ թէ իբրեւ ստոյգ կը սեպէին որ երբ որ ըլլայ՝ ատոնց մէջ հակառակութիւն ու անմիաբանութիւն մը պիտի՛ որ ծագի ու ան ատեն կարելի է որ Ուտինոյ Հռոմէական Հասարակապետութեան կողմը բանէ եւ կամ թէ (զորն որ աւելի հաւանական կը սեպէին,) Գաղղիացի պաշտօնականներն ու զինուորներն իրենց Հասարակապետութեան նման Հասարակապետութիւն մը կանգնողներուն ու պաշտպանողներուն դէմ զէնքերնին գործածել ու պատերազմիլ չուզեն, հապա մանաւանդ անոնց ձեռնտու ըլլան։

Հռոմայեցիք այսպիսի պատրաստութեան մէջ եւ դրած ատեն Ուտինոյ՝ Գաղղիայէն 2000ի չափ այլ նոր զօրք ընդունելէն ետքը՝ 9000ի քանակով Չիվիդա Վէքքի-այէն ելաւ ու «Խաղաղութիւն, կարգի, հաշտութեան ու ճշմարիտ ազատութեան դրօշը բացած կու գամ» ըսելով, սկսաւ դէպ ի Հռոմ յառաջ քալել։ Ճամբայ ելլելէն յառաջ իր զօրապետներուն ըսած էր թէ ինք այնպէս կը կարծէ որ Հռոմայեցիք իրենց դէմ ամենեւին չեն պատերազմիր։ Աս կարծեաց համեմատ՝ իր միտքն ու ջանքն էր, առանց ժամանակ կորսնցընելու՝ դէպ ի Հռոմ երթալ, որ Աւստրիացիք չհասած ու քաղաքը չառած՝ ինք յառաջէ ու գրաւէ։ Բայց Հռոմայեցւոց չպատերազմելուն նկատմամբ ունեցած կարծիքին՝ բոլորովին իր մտաց ցնորքն ըլլալը շուտով իմացաւ։ Ինչու որ հազիւ թէ Գաղղիացի զօրաց յառաջապահ գնդերը Հռոմայի մօտերը հասած էին, անոր պարիսպներուն վրայէն թնդանօթներու գնդակներն ու ռումբերը սկսան իրենց վրայ տեղալ։ Ուտինոյ անմիջապէս իր զօրաց հրաման տուաւ քաղաքին Տիբերիս գետոյն կողմն ըլլող մասին վրայ յարձակում ընել. բայց Հռոմայեցի զօրքն աս առաջին յարձակումը քաջութեամբ ետ մղեց։ Անկից ի զատ Կարիպալտի իր հրամանին տակ ըլլող զօրքով Գաղղիացւոց մէկ գունդը զարկաւ ետ դարձուց, ուրիշ դիւաց ծածուկ տեղ մը դրուած թնդանօթներուն գնդակները շատ մը զինուոր սպաննեցին, խել մը մարդ ալ Հռոմայեցւոց ձեռքը գերի ինկան։ Այսչափ կորուստէն ու կոտորածէն ետքը՝ Ուտինոյ Հռոմայի Հասարակապետութեան հետ (մինչեւ Յունիսի 4.) զինադադարի դաշն գնելով՝ իր զօրքովն ետ քաշուեցաւ ու դէպ ի ծովը սկսաւ հեռանալ։ Հռոմայի մեծերը Գաղղիացի գերիները մարդասիրութեամբ խնամելէն ու առատութեամբ

կերակրելէն ի զատ՝ իբրեւ բարեկամ հիւրեր մայրաքաղա-քին տեսնելու արժանի տեղերը պտըտցուցին, եւ երեւ-ելի յիշատակարաններն անոնց ցուցընելէն ետքը՝ Ուտի-նոյին բանակը խաւրեցին:

Գաղղիայի զօրաց աս առաջին կռիւը ձախող վերջ ունենալէն ետքը՝ Լէսէպս ըսուած Հռոմայի հասարակապե-տութեան մեծերուն հետ բանակցութիւն ընել: Նոյն ատեններուն Գաղղիայի կառավարութեան դեսպանական ծանուցագիրներէն ու սենեակներու մէջ եղած խօսա-կցութիւններէն չիկրնար յայտնապէս իմացուիլ՝ թէ Լէ-սէպսին Հռոմայի հասարակապետութեան նկատմամբ ըն-դունած իշխանութիւնը կամ Գաղղիայի հասարակապե-տութեան գահերեցէն առած հրամաններն ինչ ընդար-ձակութիւն ունէին: Կ'երեւայ թէ ինք Լէսէպս այնպէս կարծած ըլլայ որ իրեն տրուած իշխանութենէն վեր կամ դուրս բան մը չ'ըներ, երբ որ Հռոմայի եռապետ-ներուն հետ (Մայ. 31.) դաշն մը դրաւ, որուն զօրու-թեամբ Գաղղիայի Ուտինոյ զօրապետին հրամանին տակ ըլլող բանակն իբրեւ Հռոմայի հասարակապետութեան բարեկամ ու անոր սահմաններուն պաշտպան ու պահա-պան ըլլալու համար հոն խաւրուած կը սեպուէր, եւ Գաղղիայի հասարակապետութիւնը Հռոմայի հասարա-կապետութեան ամէն օտար յարձակմանց դէմ երաշ-խաւորութիւն կու տար: Աս դաշին գիրն երկու կողմանէ ստորագրուելէն ետքը՝ Ուտինոյին խաւրուեցաւ. բայց Ուտինոյ զանիկայ բոլորովին մերժեց, որովհետեւ ինք Գաղղիայի կառավարութենէն Հռոմէական հասարակա-պետութեան նկատմամբ Լէսէպսին ըրածին բոլորովին հակառակ հրաման ընդունած էր: Իր ընդունած հրա-մանն աս էր՝ որ Հռոմայի քով առջի անգամ ընդունած կոտորածն ու պարտութիւնը նոր յաղթութեամբ մը

պետութեան դրօշները վերցուցին ու մեծ դքսին նշանները Հասարակաց շինուածներուն վրայ դրին։ Կուերացցի Հրամանատարը ժողովրդեան ձեռքն խլնալով բանտ դրուեցաւ, բայց քիչ մը ետքը հնարքով մը իր ազատութիւնը գտաւ. այնպէս անոր ընկերը Մոնդանելլի փախչելով ազատեցաւ։ Այս ամենայն կատարեցաւ առանց կռուոյ, առանց արիւնհեղութեան. միայն պաշտօնակալ մը քարով մը վիրաւորուեցաւ։ Նոյնպիսի եռանդով ու նոյն շուտութեամբ բոլոր երկրին մէջ առանց արիւն թափելու Հասարակապետութիւնը ջնջուեցաւ (Ապր. 11.)։ Աս մեծ գործքն ասանկ շուտ ու յաջողութեամբ գլուխ հանելու համար առանձինն գեղացիները մեծ եռանդ ու ջանք ցուցուցին։ Միայն Լիվոռնոյ քաղաքին բնակիչքն ու Հասարակաց ջանքերն ու եռանդեան չհետեւելով՝ իրենց ապստամբութեան մէջ հաստատ մնալու եւ անխղճ շարունակելու կ'աշխատէին։ Ուստի Աւստրիոյ օգնական զօրքը Տ'Ասբրը զօրավարին հրամանին տակ (Ապր. 4.) Թորմայէն անցնելէն ետքը՝ իր առաջնուան ընթացքը՝ որ դէպ ի Փլորենտիա ուղղած էր, փոխեց ու սկսաւ Լիվոռնոյի վրայ քալել. (Մայ. 11.) յարձակմամբ առաւ ու ապստամբութիւնը զսպեցուց։ Ասանկով Տոսկանայի մէջ յեղափոխութիւնը բոլորովին վերջանալով՝ Լէոպոլդոս Բ. մեծ դուքսը (Յուլ. 29.) իր երկիրն ու մայրաքաղաքը դարձաւ, զորն որ իր հպատակները մեծ ուրախութեամբ ու ամէն կերպ սիրոյ նշաններով ընդունեցան։

Աւստրիացւոց զօրաց մէկ ուրիշ բաժինը՝ 10,000 հոգի՝ Վիմբֆէն զօրավարին հրամանին տակ (Մայ. 8.) քահանայապետական երկրին հիւսիսային մասը մտաւ. (Մայ. 10.) Պոլոնեա քաղաքին առջեւը հասաւ, որն որ Հռոմայէն ետքը հասարակապետականնոց գլխաւոր տեղն էր. (Մայ. 12.) ամէն դիրաց պաշարեց ու երեք օրուան

մէջ շատ հեղ ռմբակոծելով, (Մայ. 16.) անձնատուր ըլլալու ստիպեց: Ուրիշ քանի մը քաղաքներ ալ առնելէն ետքը, (Մայ. 25.) Անդոնա բերդաքաղաքը ծովու եւ ցամաքի կողմանէ պաշարեց. աս քաղաքն ալ երկայն ատեն ամէն կերպ ճիգն ու ջանքը բանեցուց թշնամին հեռացընելու համար, բայց վերջապէս նեղի մանելով (Յունիս 18.) անձնատուր եղաւ: Ասանկով Աւստրիոյի զինուց զօրութեամբը՝ որն որ քահանայապետական երկրին խաղաղութեան համար 50,000 զօրաց բանակ մը հոն խաւրած էր, երեք ամսուան մէջ Ֆերրարայի, Պոլոնեայի, Ռավեննայի ու Ֆորլիի կուսակալութիւնները քահանայապետին իշխանութեան տակ մտան: Աւստրիացիք հիւսիսային կողմանէ քահանայապետական երկրին ապըստամբները զսպած ատեն, հարաւային կողմանէ Նէապոլսոյ 12,000 զօրաց բանակն իրենց Ֆերդինանդոս Բ. թագաւորին հրամանատարութեամբը եւ Սպանիայի 5000 օգնական զօրքը Գոնգա զօրապետին հրամանին տակ Հռոմայի երկրին Դերրաչինա քաղքին մօտ ցամաք ելլելէն ետքը, սկսան Հռոմայի սահմանին վրայ յառաջ քալել: Ֆերդինանդոս Բ. Ապրիլ ամսոյն վերջերն իր զօրքովը Հռոմայի սահմանն անցաւ ու հոն Կալլեդդիին ու Կարիպալտիին հրամանին տակ ըլլող հասարակապետական զօրաց հետ զարնուելէն ու անոնց յաղթելէն ետքը՝ Վելլեդրի քաղաքն առաւ ու հոն իր բանակը դրաւ: Թէպէտ եւ հասարակապետութեան զօրքն այսպէս շարաչար յաղթուեցաւ, սակայն Հռոմայի կառավարութեան գլխաւորները ժողովրդեան մէջ սուտ լուրեր տարածեցին՝ թէ Նէապոլսոյ զօրքերը չկրնալով հասարակապետական զօրաց քաջութեան դէմ կենալ՝ փախան, իսկ Հռոմայի զօրքը փառաւոր յաղթութիւն մ'ընելէն ետքը՝ զանոնք սահմանէն անդին հալածեցին: Ասոր վրայ

զութեան ու խաղաղութեան վրայ ձգելով՝ իրենք զիրենք արդարացուցին։

Գաղղիայի Հասարակապետութիւնն Ապրիլ ամսոյն մէջերը Աւստրիայի զօրաց քահանայապետական երկիրը մտնելուն եւ արդէն քանի մը գաւառներ քահանայապետին իշխանութեան հնազանդեցընելուն լուրն ընդունելով՝ իր պատրաստած զօրքը դէպ ի Իտալիա ճամբայ հանեց։ Այս զօրաց թիւը 7000ի կը հասնէր, որոնց հրամանատար անուանեցաւ Ուտինոյ զօրապետը, ասոր հետ իբրեւ Գաղղիայի Հասարակապետութեան դեսպան կամ գործակալ ընկերացաւ Լեսէբ անուանի դեսպանագէտը։ Պզտիկ նաւատորմիղ մը այս զօրքը Գաղղիայէն (Ապր. 25.) Հռոմայի Չիվիդա Վէքքիա նաւահանգիստը բերաւ։ Ուտինոյ հոն հասածին պէս՝ քաղաքին պաշտօնատէրներէն պահանջեց որ քաղաքն իրեն յանձնեն. քաղաքապետն ու իր պաշտօնակիցներն առանց ընդդիմութեան քաղաքին բանալիներն անոր յանձնեցին. որովհետեւ ասոնք կը կարծէին, ինչպէս ետքը յայտնի ըրին, որ Գաղղիացիք իբրեւ Հռոմէական Հասարակապետութեան բարեկամներն ու դաշնակիցները հոն եկած են։ Հռոմայեցի պաշտօնատէրներուն այնչափ յօժարութեամբ ու դիւրութեամբ մայրաքաղաքին բուն նաւահանգիստը Գաղղիացւոց յանձնելը Ուտինոյին ու Լեսէբին յոյս տուին որ Հռոմէական Հասարակապետութեան գլխաւորները զիրենք իբրեւ միջնորդ ու դաշնակից ամենայն պատրաստութեամբ Հռոմ կ'ընդունին։ Այս յուսոյն վրայ հաստատուած՝ Յայտարարութիւն մը հրատարակեցին, որուն մէջ կ'ըսէին. Գաղղիայի Հասարակապետութիւնը Հռոմայի երկրին բնակչաց մեծագոյն մասին կամքը կը յարգէ ու չ'ուզեր Հռոմայեցւոց բռնութեամբ այնպիսի կառավարութեան կերպ մը տալ, որն որ իրենց ուզած հաստա-

բռնապետութեան հակառակ է։ Գարիպալտիի զինուորներն խաղալիք կը մնեն իբրեւ բարեկամ ու միայն ան դիմամբ՝ որ Գարիպալտիի օրինաւոր ազդեցութիւնը Թերակղզւոյն վրայ պահեն։

Գարիպալտիի զօրաց Չիվիտա Վեքքիա հասնելուն լուրը Հռոմայի մէջ հրամանատարներուն ինչպէս նաեւ անոնց գործակիցներուն վրայ շատ անհաճոյ ազդեցութիւն ըրաւ ու անոնց գլուխը շփոթեց։ Բայց Մածծինի իր ընկերներուն գործակցութեամբը հասարակապետական կառավարութիւնն այլ եւ այլ միջոցներով հաստատուն պահելու ճամբան գտած էր, քանի մը հարկերը վերցընելով, ժողովրդեան զուարճութեան համար յաճախ հրապարակական հանդէսներ ընել տալով ու քահանայապետական կառավարութեան բարեկամ ըլլողներն ըստ կարի հալածելով. երբեմն նաեւ չէ թէ միայն Հռոմայի երկրէն՝ հապա նաեւ աշխարհքէն հանելու հնարքը բանեցընելով։ Աս վերջին հնարքը յաջողութեամբ ի գործ դնելու համար իրենց աղէկ կ՚օգնէր Որսինի կոմսը, որն որ քանի մը տարի առաջ (1858ին) նշանաւոր եղաւ Նաբոլէոն Գ. կայսրը սպաննելու համար հնարած նոր տեսակ ռումբովը ու անով ըրած փորձովը։ Հասարակապետութեան գլուխներն ասանկ ընելով ու եկեղեցականաց կառավարութիւնը ժողովրդեան ատելի ընելու համար ամէն ջանքը բանեցընելով՝ կը յուսային որ եթէ օտար տէրութեանց գնդակներուն ու սուիններուն զօրութեամբը քահանայապետին աշխարհական իշխանութիւնը Հռոմայի երկրին մէջ նորէն հաստատուելու փորձերը շարունակեն, ժողովրդեան ատելութիւնն ու հաստատուն հակառակութիւնն ամէն միջոցները ձեռք առնել կու տայ ան փորձերն անօգուտ ու անպտուղ ընելու համար։ Իրօք ալ ամէն մարդ աս փորձերուն սկիզբը

տեսնելով, իր բանտարկուներէն դրդուած՝ յայտնի համարձակ կ'աղաղակէր որ աւելի կ'ուզենք Գաղղիացւոց դէմ որպիսի եւ իցէ կերպիւ պատերազմիլ, քան թէ դերիներու պէս եկեղեցականաց կառավարութեան վրէժխնդրութեան զոհ ըլլալ։

Աս ատենները Հասարակապետութիւնը Հռոմայ մէջ իր տրամադրութեան տակ 16,000 զօրք ունէր, որոնց գրեթէ ամէնն ալ իրենց ազատ կամքովը զինուորութիւնը յանձն առած էին. եւ իրենց մէջ շատ մը օտար երկիրներէն եկած բախտախնդիրներ կային. ինչպէս նաեւ բուն Հռոմայեցի երիտասարդներ, զորոնք միայն Հասարակապետութեան անունը զէնք առնելու եւ զանիկայ պաշտպանելու յորդորած էր։ Թէպէտ եւ Հռոմայեցիք այսչափ եռանդուն պատերազմողներուն թիւը շատցընելով ալ չէին կրնար ապահովութեամբ յուսալ որ անոնք օտար տէրութեանց կրթեալ զօրաց ու բանակներուն դէմ շատ մեծ քաջութիւն մը ցուցընեն կամ երկայն ատեն կարող ըլլան պատերազմիլ, սակայն ուրիշ կողմանէ ալ անկարելի բան մը կը համարէին՝ որ Աւստրիայի, Գաղղիայի, Նէապոլսի ու Սպանիայի զօրքն իրարու հետ միաբանելով ու ձեռք ձեռքի տալով՝ Հասարակապետութեան դէմ կարող ըլլան պատերազմիլ։ Մանաւանդ թէ իբրեւ ստոյգ կը սեպէին որ երբ որ ըլլայ՝ անոնց մէջ հակառակութիւն ու անմիաբանութիւն մը պիտի՛ որ ծագի ու ան ատեն կարելի է որ Ուտինոյ Հռոմէական Հասարակապետութեան կողմը բռնէ եւ կամ թէ (զորն որ աւելի հաւանական կը սեպէին,) Գաղղիացի պաշտօնակալներն ու զինուորներն իրենց Հասարակապետութեան նման Հասարակապետութիւն մը կանգնողներուն ու պաշտպանողներուն դէմ զէնքերնին գործածելու ու պատերազմիլ չուզեն, հապա մանաւանդ անոնց ձեռնտու ըլլան։

Հռոմայեցիք պայքարի պատրաստութեան մէջ եղած ատեն Ուտինոյ՝ Գաղղիայէն 2000ի չափ ալ նոր զօրք ընդունելէն ետքը՝ 9000ի քանակով Չիվիթա Վեքքիայէն ելաւ ու «Խաղաղութեան, կարգի, հաշտութեան ու ճշմարիտ ազատութեան դրօշը բացած կու գամ» ըսելով, սկսաւ դէպ ի Հռոմ յառաջ քալել։ Ճամբայ ելլելէն յառաջ իր զօրապետներուն ըսած էր թէ ինք այնպէս կը կարծէ որ Հռոմայեցիք իրենց դէմ ամենեւին չեն պատրաստուելիք։ Աս կարծեաց համեմատ՝ իր միտքն ու ջանքն էր, առանց ժամանակ կորսնցընելու՝ դէպ ի Հռոմ երթալ, որ Աւստրիացիք չհասած ու քաղաքը չառած՝ ինք յառաջէ ու զանիկայ գրաւէ։ Բայց Հռոմայեցւոց չպատրաստուելուն նկատմամբ ունեցած կարծիքին՝ բոլորովին իր մտաց ցնորքն ըլլալը շուտով իմացաւ։ Ինչու որ հազիւ թէ Գաղղիայի զօրաց յառաջապահ գնդերը Հռոմայի մօտերը հասած էին, անոր պարիսպներուն վրայէն թնդանօթներու գնդակներն ու ռումբերը սկսան իրենց վրայ տեղալ։ Ուտինոյ անձկանալէն իր զօրաց Հրաման տուաւ քաղքին Տիբերիս գետին կողմն ըլլալ մասին վրայ յարձակում ընել. բայց Հռոմայեցի զօրքն առաջին յարձակումը քաջութեամբ ետ մղեց։ Անկէց ի վեր Գարիպալտի իր Հրամանին տակ ըլլալ զօրքով Գաղղիացւոց մէկ գունդը զարկաւ ետ դարձուց, ուրիշ դիաց ծածուկ տեղ մը դրուած թնդանօթներուն գնդակները շատ մը զինուոր սպաննեցին, խել մը մարդ ալ Հռոմայեցւոց ձեռքը գերի ինկան։ Այսչափ կորուստէն ու կոտորածէն ետքը՝ Ուտինոյ Հռոմայի Հասարակապետութեան հետ (մինչեւ Յունիսի 4.) զինադադարի դաշն գնելով՝ իր զօրքովն ետ քաշուեցաւ ու դէպ ի ծովը սկսաւ հեռանալ։ Հռոմայի մեծերը Գաղղիացի գերիները մարդասիրութեամբ խնամելէն ու առատութեամբ

Կերակրելէն ի զատ՝ իբրեւ բարեկամ հիւրեր մայրաքաղաքին տեսնելու արժանի տեղերը պտըտցուցին, եւ երեւելի յիշատակարաններն անոնց ցուցընելէն ետքը՝ Ուտինոյին բանակը խաւրեցին:

Գաղղիայի զօրաց սա առաջին կռիւը ձախող վերջ ունենալէն ետքը՝ Լեսեբ սկսաւ Հռոմայի հասարակապետութեան մեծերուն հետ բանակցութիւն ընել: Նոյն ատենուան Գաղղիայի կառավարութեան դեսպանական ծանուցագիրներէն ու սենեակներու մէջ եղած խօսակցութիւններէն չէին կրնար յայտնապէս իմացուիլ՝ թէ Լեսեբին Հռոմայի հասարակապետութեան նկատմամբ ընդունած իշխանութիւնը կամ Գաղղիայի հասարակապետութեան գահերէցէն առած հրամաններն ինչ ընդարձակութիւն ունէին: Կ'երեւայ թէ ինք Լեսեբ այնպէս կարծած ըլլայ որ իրեն տրուած իշխանութենէն վեր կամ դուրս բան մը չ'ըներ, երբ որ Հռոմայի եռապետներուն հետ (Մայ. 31.) դաշն մը դրաւ, որուն զօրութեամբ Գաղղիայի Ուտինոյ զօրապետին հրամանին տակ ըլլող բանակն իբրեւ Հռոմայի հասարակապետութեան բարեկամ ու անոր սահմաններուն պաշտպան ու պահապան ըլլալու համար հոն խաւրուած կը սեպուէր, եւ Գաղղիայի հասարակապետութիւնը Հռոմայի հասարակապետութեան ամէն օտար յարձակմանց դէմ երաշխաւորութիւն կու տար: Աս դաշին գիրն երկու կողմանէ ստորագրուելէն ետքը՝ Ուտինոյին խաւրուեցաւ. բայց Ուտինոյ զանիկայ բոլորովին մերժեց, որովհետեւ ինք Գաղղիայի կառավարութենէն Հռոմէական հասարակապետութեան նկատմամբ Լեսեբին ըրածին բոլորովին հակառակ հրաման ընդունած էր: Իր ընդունած հրամանն աս էր՝ որ Հռոմայի քով առջի անգամ ընդունած կոտորածն ու պարտութիւնը նոր յաղթութեամբ մը

չխափելու եւ Հռոմ քաղաքը որպիսի եւ իցէ կերպով առնելու ջանայ։ Այս գործողութիւններէն կրնայ գուշակուիլ՝ որ Լէսէբ Հռոմայի հասարակապետութեան կողմը բռնելով՝ կամ իրեն տրուած հրամանները ճշդութեամբ չէ կատարած, եւ կամ իբրեւ ստոյգ համարած է որ երկու հասարակապետութեանց իրարու հետ բարեկամութիւնը Գաղղիոյ գահերէցին կամաց դէմ չէ։ Ի՛նչ եւ իցէ Հռոմայեցիք Գաղղիացւոց հետ բանակցութիւն ըրած ատեն եւ կամ զինադադարի դաշը դրուելէն ետքը, Հռոմայի զօրքն ազատ ժամանակ գտնելով՝ ուրիշ թշնամեաց հետ կրցան զբաղիլ։ Ուտինոյ զինադադարին դաշնադրութեան մէջ Սպանիոյ ու Նէապոլսոյ զօրքն յիշելու կամ բովանդակելու մոռցած կամ յիշել չուզած ըլլալով, Կարիպալտի իր ազատական զօրքովն առաջ Սպանիայի զօրաց վրայ քալեց, որոնք իրենց քիչութիւնն ու տկարութիւնը ճանչնալով՝ պատերազմիլ չուզեցին ու ետ քաշուեցան։ Կարիպալտի անոնց կողմանէ ապահով ըլլալով, զիրենք թողուց ու Վելլետրիի քով ըլլող Նէապոլսեցի զօրաց վրայ դարձաւ, անոնց հետ զարնուեցաւ ու յաղթեց։ Ֆերդինանդոս Թագաւորն այս պարտութեամբ չվհատելով՝ կ՚ուզէր պատերազմը շարունակել, բայց Ուտինոյին հետ չկրնալով միաբանիլ՝ անոր բաղձանացը համաձայն Հռոմայի սահմաններէն ելաւ իր երկիրը դարձաւ։

Գաղղիոյ կառավարութեան համար դժուար բան մը չէր Հռոմայի երկիրը խաւրած զօրքը շատցընելով ու զօրացընելով՝ իր դիտած նպատակին հասնիլ ու Հռոմ առնուլ։ Եւ իրօք ալ քիչ ատենուան մէջ նոր գնդեր Իտալիա հասնելով՝ Ուտինոյին բանակը 30,000 զինուոր, շատ մը թնդանօթներ ու ամէն տեսակ պատերազմի պաշար եւ պաշարման հարկաւոր գործիքներ ունեցաւ։

Այսչափ զօրքով ու այսպիսի պատրաստութեամբ կրնար Ուտինոյ ապահով ըլլալ՝ որ ալ Հռոմայեցւոց դիւրութեամբ կը յաղթէ ու մէկ յարձակումով մայրաքաղաքը կ'առնու։ Պատերազմի օրէնքն ու ազգաց իրաւունքն ինչպէս նա եւ հասարակաց սովորութիւնը կը պահանջէ որ դաշնամբ որոշուած զինադադարի ժամանակը չլմնցած՝ նոր կռիւ մը չսկսի։ Բայց Ուտինոյ աս օրէնքն ու կարգը չնըկատելով՝ զինադադարին ժամանակը չլրացած ու չանցած, այսինքն Յունիս ամսոյն չորսը չանցած (Մայ. 31.) եկաւ Մոնդէ Մարիոյ բռնեց ու (Յունիս 3.) կռիւը սկսաւ։ Նոյն օրն առաւօտուանց Հռոմայի Տիբերիս գետին աջ եզերաց վրայ ըլլող մասին, կամ Վիլլա Բամֆիլի ըսուած կողման վրայ քալեց ու հոն կեցող Հռոմայեցի գնդերուն վրայ յարձակելով՝ երկու դասակ (իբր 250) զօրք գերի առաւ։ Բայց անկէց ետքը Հռոմայեցի զօրքերն՝ ամենուն անկնկալութեան դէմ՝ այնպիսի քաջութեամբ ու հաստատութեամբ թշնամւոյն հետ զարնուեցան ու պատերազմեցան, որ տասնուեօթը ժամու սաստիկ կռուէ մը ետքը՝ Գաղղիացիք հազիւ կրցան միայն Վիլլա Գորսինի ըսուած կողման վրայ տիրել։ Երկրորդ օրը (Յունիս 4.) Հռոմայի Սան Բանգրացիոյ դրան քովերուն պարիսպը թնդանօթներով ծակծկելէն ու տկարացընելէն ետքը՝ յաջորդ օրը քաղաքին վրայ նոր յարձակում մ'ալ ըրին։ Երեք հեղ աս դրան կողմն առին ու երեք հեղ ալ Հռոմայեցի զօրքը զիրենք դուրս քշեցին. վերջապէս կռիւն այնչափ սաստկացաւ, որ երկու կողմանք իրարու հետ երես առ երես գալով՝ ալ միայն սուիններով, սուրերով ու հրացաններու կոթերով մէկը մէկալը կը զարնէր կը վիրաւորէր։

Ուտինոյ հասկըցաւ ու համոզուեցաւ թէ մինչեւ որ մայրաքաղաքը կարգաւորեալ կերպով պաշարելու

հալածոյ՝ պէտք չկարենայ տիրել։ Արտաքին քաղաքին բոլորտիքն երեք կարգ խրամէ հաւասար հեռաւորութեամբ պատնէշներ կանգնել տուաւ ու իրեն գլխաւոր յարձակելու եւ ամենէն առաջ առնելու կէտ սահմանեց Գրիսօսալոփ կարդինալին Վաշելլայ բնակած գեղը կամ ամարանոցը։ Աս տեղը՝ որուն վրայ 600 Հռոմայեցի զինուոր պահապան դրուած զանիկայ կը պաշտպանէին, երկք շաբաթի չափ պաշարողներուն ամէն ճգանցն ու զինուորականի հնարքներուն կրցաւ դէմ կենալ։ Գաղղիացիք հեղ մը բոլոր գիշեր մը (Յունիս 25—26.) անոր վրայ անդադար յարձակումներ ըրին, սակայն չկրցան առնել։ Վերջապէս բոլոր կալուածը թնդանօթներու զօրութեամբ աւերակի մը դարձընելէն ետքը՝ կարող եղան անոր տիրել։ Ի վերայ այսր ամենայնի թէ ան կողմն ըլլող ու թէ ալ ուրիշ բոլոր Հռոմայեցի զինուորներն իրենց կեցած գիրքերը կամ տեղերը զարմանալի քաջութեամբ կը պաշտպանէին. թշնամւոյն կրկին անգամ ըրած յարձակումը՝ անոնց թնդանօթներուն ու պատնէշներուն վրայ յարձակելով ու թնդանօթները գործելէն արգելելով՝ ետ կը մղէին ու կորսնցուցած տեղերնին նորէն կ'առնէին։ Բայց այսչափ տառապանք կռիւներ չէ թէ միայն իրենց թիւը կը քիչցընէր, հապա նաև գիշեր ցորեկ անհանգիստ ի գործ դրուած աշխատութիւնք զիրենք տրտաքեղ կարգի կը յոգնեցընէր ու կը տկարացընէր. մանաւանդ որ պաշտպանողներուն մէկ մասը փափկութեան ու բարեկեցութեան սորված երիտասարդներ էին։ Աս կռիւներուն ատենը Հռոմայի ժողովուրդը թէպէտ եւ կը տեսնէր Գաղղիացւոց գնդակներուն ու ռումբերուն գիշեր ցորեկ քաղաքին վրայ իյնալը՝ անոր պզանչելի յիշատակարաններուն քանդիլն ու այրելը, սակայն իրենց պաշտպանող քաղաքականներուն ու բարե-

կամաւորներուն աշխատասիրութեանը մասնակից ըլլալու եւ թշնամւոյն ըրած վնասները նորէն արգիլելու ոչ համարձակութիւն ու ոչ ջանք մը կը ցուցընէր։

Գաղղիացիք շարունակեցան կռիւներնին ու ամբարձութենէ ետքը, (Յունիս 29.) պարսպին Սան Բանգրացիոյ դրան ու կողմանս վրայ տիրեցին, որով եւ Հռոմայեցւոց համար ոչ ամէն բան կորսուած էր. որովհետեւ աս բարձր դիրքէն թշնամին ռումբեր արձակելով՝ բոլոր քաղաքը կրնար մոխիր ու աւերակ դարձընել։ Ասանկ ըլլալով՝ սահմանադիր ժողովը զԿարիպալտին կանչեց ու անկից խնդրեց՝ թէ անկից ետքը կարելի՞ է քաղաքը պաշտպանել։ Կարիպալտի ասանկ պատասխանեց. թէ որ քաղաքին Տիբերիս գետոյն անդին կողման վրայ ըլլող մասը (Տրասդեվերէ) թշնամւոյն կը թողունք ու նոյն գետոյն վրայ եղած ամէն կամուրջները կ'աւրենք կը կտրենք, դուցէ կրնայ քաղաքը պաշտպանուիլ։ — Ի՞նչչափ ատեն։ — Քանի մը օր ալ։ Ասանկ ըսելէն ետքը՝ Կարիպալտի ժողովոյն հասկըցուց Գաղղիացւոց ունեցած նպաստաւոր դիրքն եւ ուրիշ հանգամանքը, իսկ իրենց վառօդի պակասութիւնը, զինուորաց յոգնածութիւնն ու ժողովրդեան մէջ տարածուած մատնութեան նշանները։ Ժողովը աս ամէն պարագաներուն վրայ խորհուրդ ընելէն ետքը՝ որոշեց որ քաղաքը թշնամւոյն յանձնուի։ Եռապետներն աս որոշումը լսածնուն պէս՝ իրենց պաշտօնէն հրաժարեցան, որպէս զի անոնց գլուխն ու հասարակապետութեան կանգնիչը Մածծինի կարող ըլլայ փախչելու պատրաստութիւններն ընել ու իր անձն ատենին ապահովցընել։ Եւ իրօք ալ դեռ Գաղղիացի զինուոր մը քաղաքը չմտած՝ Մածծինի արդէն անկից ելած աներեւոյթ եղած էր։ Նոյնպէս եւ Կարիպալտի աս հեղու ալ իր բոլոր աշխատանացն անօգուտ մնալը տես-

նելէն ետքը՝ փախչելու ատեն դատա. իրեն հետ իր ձեռ-քին տակին ըլլող ազատական զինուորներէն շատերը քաղաքէն ելած հեռացան: Կարիբալտի կ'ուզէր ասոնցմով եւ ուրիշ ազատական զօրք ժողվելով՝ Նէապոլսոյ երկիրին մէջ կամ ուրիշ տեղ մը հասարակապետութիւն հաս-տատելու փորձ ընել: Բայց ամէն դի չէ թէ միայն իրեն ուզածը կատարելու հնար եւ յառաջ երթալու իսկ արգելքներ գտնելով ու անոնց չկրնալով յաղթել՝ վեր-ջապէս Ս. Մարինոյի երկիրին մէջ իր զօրքը ցրուեց, որոնցմէ ոմանք Աւստրիացւոց ձեռքը գերի ինկան, իսկ ինք Կարի-բալտի փախաւ ազատեցաւ:

Ուտինոյ Հռոմայի մեծերէն կամ քաղաքացւոց կողմանէ անձնատուր ըլլալնուն լուրն առնելէն ետքը (Յուլ. 3.) իր զօրքին գլուխն անցած՝ հանդարտութեամբ ու պաշտպանական կարգով մայրաքաղաքը մտաւ: Գաղ-ղիական զօրաց քաղաքին մէջ յառաջ գացած ատենն ամէն դի տուներուն պատուհանները սկսան գոցուիլ, փո-ղոցները դատարկանալ ու լռութիւնը տիրել: Միայն կրկէսին (կօրսօ) վրայ մեծ բազմութիւն մը երեքգոյ-նեան դրօշին բոլորտիքը ժողվեցաւ ու կը պոռար. "Կեց-ցէ Հռոմէական հասարակապետութիւնը: Կեցցէ Իտա-լիան: — Մա՜հ քահանայից: Մա՜հ Ուտինոյ զօրա-պետին": Բայց այսպիսի թշնամական ցոյցերն ու ձայ-ները շուտով լռեցին. փողոցներուն վրայէն քարակոյ-տները վերցուեցան ու հանդարտութիւնը սկսաւ տիրել: Ուտինոյ իր զօրքը քաղաքին պաշտպանական կողմերը բաժ-նեց ու բոլոր քաղաքն իրենց պահպանութեան յանձնեց: Թէպէտ եւ Գաղղիացի զօրքը բազմութեամբ Հռոմ մտնե-լէն ու հոն իրենք, իսկ անկէց դուրս՝ Աւստրիացիք, քա-հանայապետական երկրին ամէն կողմերը Հռոմէական հասարակապետութիւնը վերջացուցին ու բոլոր երկիրն իր

օրինաւոր վեհապետին իշխանութեան տակը դրին. սակայն բնակչաց մէջ ամէն դի հանգիստը, կարգն ու կատարեալ խաղաղութիւնը մէկանց ու շուտով չհաստատուեցաւ։

Պիոս Թ. քահանայապետն իր երկրէն| հասարակապետական կառավարութիւնը վերջանալէն ետքը՝ շուտ մը հոն չդարձաւ. հապա ինք Կայետա մնալով՝ Ցելլա Ճէնկա, Ալթիերի ու Պաննիչելլի կարդինալներն իբրեւ իր փոխանորդները Հռոմ խրկեց՝ որ մինչեւ իրեն հոն դառնալու ատենը՝ կառավարութեան գործքերը հոգան։ ասոնք սկսան Գաղղիացի զօրքն իբրեւ ոստիկանութեան պաշտօնեաները գործածելով՝ անոնց ձեռքովը ամէն պատժապարտներն ու կասկածելի մարդիկը բռնել ու բանտ դնել։ Նոյն երեք կարդինալները ոչ Ուտինոյին ու ոչ անոր յաջորդող Ռոստոլան զօրապետին թող կու տային իրենց կառավարութեան գործքերուն խառնուելու կամ անոնց վրայ խօսելու. իրենց բոլոր ջանքն ան էր՝ որ մինչեւ ան ատեն քահանայապետական իշխանութեան դէմ յանցաւոր գտնուողներուն կամ հասարակապետականաց որպիսի եւ իցէ կերպով ընկեր ու օգնական ըլլողներուն հետ ամենայն խստութեամբ վարուին եւ զանոնք առանց պատժոյ չթողուն։ Այսչափ խստութեան վրայ Գաղղիայի հասարակապետութեան գահերէցը Լ. Նաբ. Պօնաբարդէ վշտանալով՝ իր դեսպանին ձեռքովը քահանայապետին առաջարկեց որ մինչեւ ան ատեն յանցաւոր գտնուողներուն խնայէ ու ընդհանուր թողութիւն հրատարակէ։ Պիոս Թ. աս առաջարկութիւնը կատարելը յանձն առաւ. բայց ընդհանուր թողութենէն 2000 հոգի դուրս հանեց, որոնք իր աշխարհական իշխանութեան դէմ գործողներուն գլխաւորներն էին։ Ասկից ի զատ բոլոր իր հպատակաց համար քանի մը նոր սահմա-

նախադրական կարգադրութիւններ ըրաւ, որոնցմով դատաւորական ժողովներու համար ժողովրդեան ընտրուելու անձանց եւ ուրիշ այսպիսի դատաստանական ու քաղաքային գործոց նկատմամբ հարկաւոր եղող կարգերը կ'որոշուէին :

Պիոս Թ. իր մայրաքաղաքէն այնչափ ատեն ալ դուրս մնաց մինչեւ որ իր երեք փոխանորդներն այլ եւ այլ նոր ատեաններով ամէն յանցաւոր ու կասկածելի անձինքը դատան ու հեռացուցին ու հասարակապետութեան եւ ետքի պատերազմին ատենն եղած ամէն խառնակութիւններուն ու աւերակներուն նշանները վերցան: Անկից ետքը (1850. Ապրիլ 13.) դարձաւ իր մայրաքաղաքը մտաւ. ուր ժողովուրդը զինքն ամենայն ծանրութեամբ ու լռութեամբ ընդունեցաւ :

Աւստրիոյ ու Գաղղիոյ զէնքերովը Միջին Իտալիոյ մէջ ամէն բան իր հին կարգերուն մէջ մտնելէն ու ինչպէս քահանայապետը՝ նոյնպէս եւ Տոսկանայի մեծ դուքան ու մէկալ փոքր վեհապետներն իրենց օրինաւոր իշխանութեան մէջ հաստատուելէն ետքը, կը մնար միայն Վենետիկ քաղաքը, ուր դեռ Իտալիոյ երեքգոյնեան դրօշը բացուած ու բարձրացած կը կենար, եւ Ս. Մարկոսեան հասարակապետութեան առիւծն իրեն դէմ արձակուող թնդանօթի գնդակներուն վրայ հեռուանց կը նայէր: Ինչպէս յայտնի է՝ Վենետիկ քաղաքը ծովու մէջ այնպիսի դիրք ունի, որ ցորչափ իր մէջը գտնուողները պարէնի պակասութիւն չեն ունենար, դրսէն պաշարմամբ ու պատերազմով նեղի խոթելն ու առնուլը վերջին աստիճանի դժուար կ'ըլլայ: Թէպէտ եւ Աւստրիայի տէրութիւնը ծովակներու մէջ շինուած քաղաքը մեծագործ երկաթուղիով մը ցամաքին հետ կապած էր, բայց նոյն ատեն Վենետացիք անոր մէկ մասն աւրած ու

անպիտանացուցած, միանգամայն անոր չորս դին ըլլող պզտիկ կղզիներն ամրացուցած էին, եւ անոնց վրայէն նոյն կամուրջն անանկ դիւրութեամբ կը պաշտպանէին՝ որ Աւստրիացւոց արտաքոյ կարգի դժուար կ՚ըլլար անոր վրայէն անցնիլ ու քաղքին վրայ յարձակում ընել։ Ուստի Ռատեցքի այլ եւ այլ փորձերէն ետքը՝ քաղաքն ըստ կարի ամէն դիաց պաշարել տուաւ. բայց աս պաշարումն ալ դիտուած վախճանին չհասցուց. վասն զի Աւստրիա բաւական նաւ չունէր՝ որ կարենար ամէն դիաց քաղքին պաշար բերող նաւերուն վրայ հասնիլ ու զանոնք արգելուլ։ Վերջապէս որոշուեցաւ որ քաղաքը յարձակմամբ առնուն կամ անձնատուր ըլլալու ստիպեն։ Աս վախճանաւ պէտք էր ամէն բանէն առաջ Վենետիկի երկաթուղւոյ կամրջին գլուխն ըլլող Մալկերա բերդը ձեռք անցընել։ Ցիրաւի Վենետացիք, որոնց հասարակապետութեան գահերէց ու հրամանատարն էր յառաջագոյն յիշուած Մանին փաստաբանը, ամէն կերպով պատերազմելու պատրաստուած էին, տեղացիներէն զէնք առնուլ կրցողը զինուած էր, նաեւ շատ մը օտար զինուորներ՝ մանաւանդ Նէապոլեցիք Բեբէ զօրապետին հրամանին տակ՝ եկած հասարակապետականաց օգնելու համար ժողված էին։ Ի վերայ այսր ամենայնի ատոնց դէմ Աւստրիայի զօրքը դիւրաւ կրնար պատերազմիլ ու յաղթել թէ որ քաղքին ու առանձինն Մալկերա բերդին դիրքն արգելք չըլլար։

Բոլոր աս ետքի տարիներու Իտալիայի պատերազմներուն մէջ Աւստրիայի զօրքն այնչափ մեծ նեղութիւն չէր քաշած, այնչափ դժուարին արգելքներու չէր հանդիպած, որչափ որ աս բերդը ձեռք բերելու համար քաշեց ու գտաւ։ Արդէն՝ բերդը լճերուն մէջ ըլլալուն՝ ծովուն ջուրն անոր մօտենալու երկայն ատեն արգելք կու

տար. բայց նոյն ատեն չորս շաբաթի չափ գրեթէ անդադար անձրեւ եկած ու լիճերուն ջրերն առատացած ու ցեխն ալ խորունկցած ըլլալով, բոլոր բերդին բոլորտիքը խորունկ ճահիճ (պաթաք) մը եղած էր։ Խեղճ զինուորները բոլոր գործողութեանց ու պատերազմելու ժամանակն օրերով մինչեւ ծնկուընին՝ շատ հեղ նա եւ մինչեւ կէս մէջքերնէն վեր ջուրի ու շաղախի մէջ կենալու կը ստիպէին։ Ասով իրենց մէջ այլ եւ այլ հիւանդութիւններ իյնալով՝ թշնամեաց գնդակներէն աւելի հիւանդութենէ կը փտաէին ու կը մեռնէին ու պաշարումը կը դժուարնար կ'երկըննար։ Բայց ամէն հնարաւոր միջոցները բանեցընելով, առանձինն՝ աւազով լեցուն տոպրակներ ջուրին մէջ նետելով ու անոնց վրայէն պատերազմելով, թնդանօթներն ալ իրենց գնդակները բերդին վրայ արձակելով՝ (1849. Մայ. 27.) մէջի պահապանները ստիպեցին թող տալ հեռանալ ու կայսերական զօրքն անոր մէջ մտաւ։ Ասկից ետքը ուրիշ բերդ մ'ալ ձեռք անցընելով՝ կարող եղան քաղքին աւելի եւս մօտենալ ու զանիկայ մօտանց պաշարելով նեղի խոթել, որովհետեւ ա՛լ գնդակներն ու ռումբերն այնպիսի մօտաւորութենէն իրենց ազդեցութիւնն աւելի եւս կը ցուցընէին։

Աս ու ասոր նման հանգամանքն ու օրէ օր աւելի եւս սաստկացող սովը պաշարեալ Վենետիկցոց ուժը կոտրելով, վրանին վհատութիւն բերաւ, մինչեւ ա՛լ յաջողութիւն մ'ունենալու յոյսը բոլորովին կորսնցուցին։ Վերջապէս մէկ ու կէս տարի պաշարուած ու շատ դիմաց՝ մանաւանդ ետքի երեք չորս (Մայիս — Օգոստոս) ամիսներուն մէջ աւերած ու ապականած քաղքին բնակիչներն իրենց գլխաւորները ստիպեցին կայսերական տէրութեան անձնատուր ըլլալ. որ եւ քանի մը պայմաններով կատարեցաւ։ Թէպէտ եւ կայսերական տէրութիւնը՝ գլխաւո-

րապէս ապստամբութեան գլուխ ըլլողներուն յամառութեամբն՝ աս քաղքին պաշարման ատենը 20,000 զօրք կորանցուցած էր, սակայն նոյնը նորէն իր իշխանութեան տակ առնելու ժամանակն ապստամբներուն հետ գթութեամբ վարուեցաւ։ Վասն զի ասոնց հետ՝ անձնատուր եղած ատեններին՝ (Օգոստ. 24.) դաշն դնելով թոյլ տուաւ՝ որ օտարական զօրքերը, Մանին հրամանապետը, անոր օգնականը Թոմազէնոյ ու յեղափոխականաց գլխաւորներէն քառասուն հոգի ազատութեամբ քաղքէն ելլեն ու կայսերութեան երկիրներէն դուրս ուզած տեղերնին երթան։ Իսկ ուրիշ ամէն մնացածներուն համար ընդհանուր թողութիւն հրատարակուեցաւ, միայն հարկ եղաւ՝ այնչափ պատերազմներու ատեն տէրութեան ըրած անբաւ ծախքերուն ու կրած վնասներուն համար երկրին կամ բնակչաց վրայ քանի մը ծանր տուրքեր դնել։

Հռոմայի ու Վենետիկի հասարակապետութեանց խախուտ շէնքերուն կործանուելովն Իտալիայի երկու երեք տարեկան յեղափոխութեան վերջին ամբարտակներն ալ ինկան կործանեցան ու երկիրը խաղաղցաւ. եւ ինչպէս քանի մը տարի առաջ եղած էր՝ նոյնպէս 1850 տարւոյն կամ իննեւտասներորդ դարուն երկրորդ կէսին սկիզբը բոլոր թերակղզին իր օրինաւոր վեհապետներուն իշխանութեան տակ մտնելով իր հանգիստը գտաւ։ Նոյն տարիներուն մէկ մատենագիրն ան ատեն պատշաճ համարեցաւ հետեւեալ խօսքերը գրել. "Հռոմայի ու Վենետիկի պաշարմանց ատենն Իտալացւոց ըրած ճիգը վախճանելու յեղափոխութեան ետքի շնչերն էին։ Անկից ետքը Իտալիայի մէջ լռութիւնը նորէն սկսաւ տիրել, ինչպէս որ Պիոս Թ.ին գահ ելլելէն առաջ եղած էր։ Աս եղածները խռովեցուցիչ երազ մըն էին, որն որ Իտալիայի ժողովուրդները շփոթեց։ Աս շփոթութեան

մէջ քիչ մը ատեն ալեկոծուելէն ետքը արթնցած ու ըրած ճգունքներնուն պատճառաւ կրած ատատիկ աշխատութենէն ու յոգնութիւնէն հանգչելով՝ իրենց գտած հանդարտութեան մէջ ան խռովեցուցիչ երազին վրայ սկսան խորունկ մտածել։ — Արդեօք ասկից ետքն ալ միշտ սանկ հանդարտ ու հանգիստ պիտի՞ որ մնան. արդեօք ան խորունկ լռութիւնը՝ որն որ այնչափ խռովութիւններու եւ յեղափոխական շարժումներու ասպարէզ ըլլող երկրին վրայ կը տիրէ, երկարատե՞ւ պիտի՛ որ ըլլայ։ Աս հանգամանքը նախախնամութեան գաղտնեաց մատեանին մէջ գրուած է. մահկանացու մարդը կարող չէ ածածուկ մատենին բովանդակածը կարդալու։ Մահկանացուն միայն անցածները գիտէ, որոնց մէջ երկու կողմանք ալ, այսինքն թէ յաղթողներն ու թէ յաղթուողները, օգտակար խորհրդածութիւններ ընելու համար առատ նիւթ կը գտնեն,,։

Միայն աս խօսքերը կրնար գրել ու աս խորհըրդածութիւնն ընել 1852ին մատենագրող պատմիչ մը։ Բայց մենք՝ որ մեր առաջիկայ պատմութիւնն անկից տասը տարի ետքը կը գրենք, չենք կրնար նոյն մատենագրին ըրած հարցումն ընել ու ան հարցման պատասխանը չտուած՝ պատմութիւննիս վերջացընել։ Ինչու որ անկից ետքը տասը տարուան ընթացքին մէջ հանդիպող մեծ մեծ դէպքերը յայտնապէս կը վկայեն՝ որ Իտալիա ան (1850ին) գտած խաղաղութիւնը շատ կարճ ատեն կրցաւ վայելել։ Աս դէպքերուն շատերը թէպէտ եւ դեռ իրենց վերջնական կատարումը չեն ընդունած, սակայն Իտալիայի ընդհանուր պատմութեան մէջ նշանաւոր հատուած մը կացուցանելնուն՝ չենք կրնար մատեաննիս կնքել՝ առանց անոնց պատմութեան գլխաւոր մասերը հոս ստորագրելու՝ իբրեւ

# ՇԱՐՈՒՆԱԿՈՒԹԻՒՆ

## Ը. Շրջանին:

## 1850—1860.

Մինչեւ Իտալիայի յեղափոխական հասարակապետութիւններուն օտար զէնքերու զօրութեամբ ջնջուելովն ու իւրաքանչիւր տեղւոյ օրինաւոր վեհապետին նորէն իր գահն ու իրաւունքն ընդունելովը՝ երկիրը խաղաղացած էր, ըսինք վերը: Բայց ասով պէտք չէ իմանալ որ այնչափ հազարաւոր անձինք՝ որոնք հասարակապետութեան խորհուրդն ու Իտալական անկախութեան գաղափարը շատ տարիներէ ի վեր մտքերնուն մէջ հաստատած էին, բոլորովին մտքերնին փոխած, ամէն ազատութեան բաղձանքը մէկդի թողուցած ու անկից ետքը ալ միշտ հանդարտ կենալու հաստատուն առաջադրութիւն ըրած էին: Եւ ոչ պէտք է կարծել՝ թէ քանի որ Աւստրիայի կայսրը՝ այսինքն Գերմանացի իշխող մը Իտալիոյ մէկ մասն իր ձեռքին տակ կը բռնէր, ամէն Իտալացւոց սրտին մէջ ըլլող այն մեծ վէրքը՝ զոր որ Գերմանացւոց դէմ ունեցած ատելութիւննին միշտ կը սնուցանէր, բժշկուելու սկսած էր: Աս ասանկ ըլլալով, պէտք է խոստովանիլ՝ որ թէպէտ եւ 1850էն ետքը Իտալիա արտաքուստ քանի մը տարի խաղաղութեան մէջ կ՚երեւար. սակայն ներսէն յեղափոխութեան կրակը մոխրոյ տակ ծածկուած անշէջ մնացած էր:

Ամէն տեղերէն առաջ քահանայապետական երկրին հանգամանաց վրայ պատմութիւննիս շարունակելով, զանիկայ նկատած ատեննիս՝ անցած յեղափոխու-

թեան (հետքերը չըսենք ալ՝ գոնէ) հետեւութիւնները կը գտնենք։ Աւստրիայի կայսեր զօրքը 1849ին քահանայապետական երկրին մէկ մասին մէջ հասարակապետականներուն յաղթելէն ու հասարակապետութիւնը ջնջելէն ետքը՝ նոյն զօրաց մէկ մասը քանի մը ատեն. Քահանայապետին կամօքը հարկաւոր սեպուող տեղերուն մէջ իբրեւ պահապան մնաց։ Իսկ Գաղղիայի զօրքը Հռոմայի մէջ հասարակապետութիւնը վերցընելէն ետքը՝ գրեթէ տեղացի զօրաց պէս մայրաքաղաքին մէջ ու անկից դուրս ալ հաստատեցան մնացին, ու Զիվիդա Վեքքիա իրենց դիտած նպատակին համար ամրացընելէն ետքը՝ ալ Գաղղիայի կառավարութիւնն իբրեւ իր ժառանգած երկրին մէջ կամ իբրեւ երկրին բուն իշխողը հոն կը վարուէր։ Աս հանգամանքը Պիոս Թ. այնչափ յօժար կամօք ու հաճութեամբ չէր տեսներ. բայց իր երկրին ու հպատակաց հանգամանքը մտածելով՝ անոր դէմ յայտնապէս բողոքելու չէր համարձակեր։ Թէպէտ եւ կը բաղձար իր հպատակներէն երկրին պահպանութեան ու ապահովութեան համար բանակ մը կազմել. սակայն ամէն դի ժողովրդոց մէջ երեւցող ապստամբական հոգին զինք աս բաղձանքը կատարելէն ետ կը բռնէր։ Ուստի իրեն ուրիշ բան չէր մնար՝ բայց եթէ աչք գոցել ու թողուլ որ Գաղղիայի զօրքը Հռոմայի մէջ մնալէն զատ՝ Հելուետիայի զօրքն ու ասդիէն անդիէն եկած ժողված բախտախնդիրներէն ազգային զօրք անուամբ գունդեր կազմուելով՝ մայրաքաղաքին ու գաւառներուն պահպանութեանը ծառայեն։

Բուն երկրին մէջ յիրաւի յեղափոխութիւն չկար, բայց ներքուստ երկու հակառակ կողմնակցութիւնք քահանայապետին կառավարութեան հանգամանաց վրայ իրենց տժգոհութիւնն այլ եւ այլ ցոյցքերով կը յայտնէ-

ին, ուստի եւ ներքին խաղաղութեան ամէն կերպիւ հաստատուելուն արգելք կ'ըլլային։ Աս կողմնակցութեանց մէկը Պիոս Թ.ին կառավարութեան վրայ անոր համար գոհ չէր ըլլար որ քահանայապետը Գրիգոր ԺԶ.ին բանեցուցած խիստ միջոցները չէր ուզեր բանեցընել. իսկ միւս կողմնակցութիւնն անոր համար կը տրտնջէր ու կը խռովէր՝ որ քահանայապետն իր գահակալութեան սկիզբներն ըրած ազատական կարգադրութիւնները նոյն եռանդմամբ ի գործ չէր դներ, մանաւանդ թէ ժամանակին պարագաներէն ու անցած յեղափոխութեան յիշատակէն ստիպուելով՝ անոնցմէ շատը կը փոխէր կը վերցընէր։ Աս ետքի կողմնակցութեան բաղձանքն ու պահանջումն ան էր՝ որ կառավարութիւնը բոլորովին աշխարհականաց՝ այսինքն աշխարհական պաշտօնէից ձեռքն ըլլայ։ Նոյն կողմնակցութիւնը քահանայապետական կառավարութեան կու տար չէ թէ միայն երկրին ելեւմտից մէջ տեսնուած անկարգութիւնները, հապա նա եւ հողատէրերուն ու ազնուականաց կալուածներուն ու ստացուածներուն մէջ եղած զրկանքն ու յափշտակութիւնները։ Ինչու որ 1850էն ետքը գաւառներու մէջ շատ տեղեր գեղացիք ու աղքատ բնակիչները ազնուականաց անտառներուն ու հունձերուն վրայ գունդ գունդ կը յարձակէին ու կրցածնին կը յափշտակէին։ Քաղաքային ապստամբներ ու խռովարարներ ալ պակաս չէին, որոնք կը ջանային քահանայապետական բերդապահներուն օգնութեամբը կամ մատնութեամբը բերդերու վրայ յարձակիլ ու զանոնք առնուլ։ Բայց ամենէն աւելի տխուր հանգամանքն ան էր՝ որ քահանայապետական երկրին մէկ կողմը յանդուգն աւազակապետ մը իր գնդովն ամէն դի կը քալէր, գաւառներէն տուրք կը պահանջէր կ'առնէր, փոքր քաղաքները կը կողոպտէր ու բնակիչները կը

խռովէր։ Սակայն աս աւազակութեանց վախճան եղաւ՝ երբ որ հեղ մը ալ աւազակապետն իր գնդովը Աւստրիոյ զօրաց պահպանութեան տակ ըլլող գաւառ մը հանելով՝ նոյն զօրաց ձեռքն ինկաւ ու սպաննուեցաւ. որով եւ երկիրն անոր վախէն ու վնասներէն ազատեցաւ։ —

Սարդինիա արտաքին պատերազմներէն ու հասարակապետականաց գրգռութիւններէն հանգչելէն ետքը՝ իր Վիկտոր Էմմանուէլ Բ. թագաւորին տկար կառավարութեան տակ ուրիշ դժբախտ ընթացք մը բռնել սկսաւ, որուն ձեռնտու կամ աւելի եւս գրգռիչ կ'ըլլար առանձինն Անգղիա։ Սարդինիայի մէջ արմատականները չէ թէ միայն բոլորովին անհետ եղած չէին, հապա նաեւ անոնցմէ շատերը կառավարութեան գործքերուն ու պաշտօններուն մէջ կը գտնուէին։ Ասոնց ազդեցութիւնը Վիկտոր Էմմանուէլին պաշտօնարանին մէջ յայտնի կը տեսնուէր, որուն անդամները երկրին մէջ հին ատեններէ ի վեր եկեղեցականաց ու եկեղեցիներու արուած ազատութեանց ու առաւելութեանց դէմ ամէն հնարքներով գլուխ վերցուցին։ Աս բանիս մէջ գրեթէ առաջին քայլն եղաւ՝ Սիկկարդի արդարութեան պաշտօնէին (1850. փետր. 22.) առաջարկած երկու օրէնքները։ Աս օրէնքներուն առջինին գլխաւոր որոշմունքները հետեւեալներն էին. Եկեղեցականաց՝ իրենց մէջ կամ աշխարհականի մը հետ ունեցած վէճերը դատելու համար ըլլող եկեղեցական ատեանը վերցուի. թէ եկեղեցականք՝ երբ որ աշխարհական օրինաց դէմ յանցանք մը կ'ունենան ու թէ եկեղեցական ստացուածներն աշխարհական ատեաններու իշխանութեան տակ ըլլան, ուստի եւ եկեղեցական անձինք յանցաւոր գտնուած ատեննին՝ պատժական օրինաց գրքին մէջ աշխարհականներուն համար սահմանուած պատիժներն ընդունին. Նուիրական

տեղերը, եկեղեցիներն ու վանքերը՝ ապաստանի կամ ապաւինութեան տեղի ըլլալէն դադրին, տօնի օրերը (սուրբ) չպահողներուն համար սահմանուած պատիժները ջնջուին ու միայն կիրակի օրերն ու տարուայն եօթը գլխաւոր տօները բռնուին, այսինքն սուրբ պահուին։ Ամէն եկեղեցական անձ նոր (եկեղեցական) պաշտօն մը չկարենայ ընդունիլ՝ մինչեւ որ թագաւորական հրովարտակով մը իրեն նոյն պաշտօնն ընդունելու հրաման չտրուի։ Երկրորդ օրէնքին գլխաւոր որոշումն աս էր՝ որ ամուսնական դաշին վաւերականութեան համար հարկ է քաղաքային պաշտօնէին կամ կառավարութեան հաւանութիւնը խնդրել եւ ընդունիլ։

Այս երկու օրէնքները, որոնք Սիկկարդեան օրէնք անուամբ նշանաւոր եղան, ստորին կամ պատգամաւորաց սենեակին մէջ առանց հակառակութեան ու դժուարութեան անփոփոխ ընդունուեցան։ Իսկ վերին կամ առաջին սենեակին մէջ, ուր յատկապէս ամէն օրէնքները կը հաստատուէին, աս երկու նոր օրէնքները շատ մեծ հակառակութեան հանդիպեցան, որովհետեւ հոն այլ եւ այլ կողմնակցութիւնք ու եպիսկոպոսներ կային, նա եւ բոլոր երկրին բնակչաց կողմանէ նոյներուն դէմ բողոքներ եկած էին. բայց վերջապէս աս սենեակին մէջ ալ ընդունուեցան ու հաստատուեցան։ Բայց երբ որ կառավարութիւնը նոյները հրատարակել տուաւ ու անոնց գործադրութիւնն ընելու սկսաւ, Դուրինի արքեպիսկոպոսն ամէն կերպ միջոցներով կ՚աշխատէր անոնց անիրաւ ու կաթողիկէ եկեղեցւոյ կարգացն ու իրաւանցը հակառակ ըլլալը ցուցընել, ուստի եւ զանոնք ընդունելէն հրաժարեցաւ։ Բայց իր ջանիցը պտուղն ան եղաւ՝ որ կառավարութիւնը զինքն իբրեւ յանցաւոր ու օրինաց չհնազանդող քաղաքացի մը բռնեց ու բանտարգել ըրաւ։ Իր

օրինակին հետեւեցան երկրին եպիսկոպոսներուն շատերն ալ, ուստի եւ անոր պէս բանադրկուեցան կամ քշուեցան։ Սակայն եկեղեցականաց մեծ մասը նոյն օրինաց դէմ չդառնալուն՝ նոյները հաստատ մնացին ու հասարակ քաղաքային օրինաց հաւասար կը գործադրուէին։

Նոյնպէս կաթողիկեական տէրութեան մը մէջ կաթողիկէ եկեղեցւոյ իրաւանց ու կարգերուն դէմ կառավարութեան բռնած ճամբան ու գործածած հնարքները գրեթէ հալածանքի մը կերպարանքն ու նմանութիւնն ունենալով, Հռոմայի քահանայապետին անոր վրայ չէ թէ միայն խռովիլը՝ հապա նա եւ անոր ուղղուելուն ու փոփոխուելուն համար խիստ միջոցներու դիմելն ու զանազան սպառնալիք ընելը հարկաւոր ու իրաւացի էր։ Բայց քահանայապետին ամէն ազդարարութիւններն ու սպառնալիքն ոչ թագաւորին ու ոչ անոր պաշտօնէից վրայ այն ազդեցութիւնը կ'ընէին, զորն որ պէտք էին ու կրնային ընել, թէ որ Անգղիայի կողմանէ խրատիչներ ու փորձիչներ ամէն միջոցները չքանեցընէին Սարդինիայի երկիրն Իտալացիներուն համար կաթողիկէ եկեղեցւոյ թշնամեաց ապաստանարան մ'ընելու։ Աս բաներն աւելի եւս համարձակութեամբ ու խնամքով ի գործ կը դրուէին հռչակաւոր Գաւուր կոմսին Սարդինիայի պաշտօնարանին գահերէց ըլլալէն ետքը, որուն ջանիւքը երկրին ամէն կողմերն ըլլող վանքերուն շատերը ջնջուեցան ու անոնց ստացուածները տէրութեան գանձը մտան (1855)։

Սարդինիայի մէջ արմատական պաշտօնեաներն իրենց տկար թագաւորին ու անով բոլոր կառավարութեան այսպիսի եւ ուրիշ ազատական կամ յեղափոխական խորհուրդներով ու կարգաւորութիւններով առաջնորդած ատեննին՝ իրենց գլխաւոր նպատակ դրած էին

Իտալիայի միութիւնը, այսինքն անոր այլ եւ այլ կառավարութիւններն ու թագերը Սարդինիայի գահին ու թագին հետ միացընելով՝ բոլոր թերակղզին միակ Իտալական թագաւորութեան դարձընելը։ Աս խորհուրդն ամէն դի յայտնուելով ու տարածուելով՝ Սարդինիայի երկիրն՝ ուրիշ տէրութիւններու մէջ ընդունելութիւն ու ապահովութիւն չգտնող արմատականաց, յեղափոխականաց ու քաղաքային յանցաւորաց շատ ցանկալի ու պատշաճական տեղի ապաւինի եղաւ, ուր եւ ամէն դիաց կու գային կը ժողվէին։

Ըսանկով աս տէրութեան մէջ արմատականք կամ Մածծինեանք օրէ օր հաստատուելով ու գործելու դիւրութիւն գտնելով, անոնց գլուխը Մածծինի ալ Հելուետիա եկաւ, որն որ ան ատենները ամէն ազատականաց ապաստանարան եղած էր։ Ինք հոն նստած՝ ամէն հնարքները կը բանեցընէր՝ բոլոր Իտալիայի մէջ ջնջուած յեղափոխութեան կայծերն անշէջ պահել ու կարելի եղածին չափ արծարծել։ Թէպէտ եւ Լոմբարտիայի մէջ աս յեղափոխական հնարքներուն տեղի ու յաջողութիւն գտնելը դժուարին կ՚երեւար, որովհետեւ ծերունի Ռատեցքին իր յաղթող զօրքովը միշտ հոն կը գտնուէր. ի վերայ այսր ամենայնի Իտալացւոց անկախութեան անպայման բաղձանքն՝ ամէն խոհեմութեան օրէնքներուն դէմ՝ հոն ալ ժողովուրդն Աւստրիայի դէմ գրգռելու միջոցները ձեռք առնել կու տար։ Առանձինն Մածծինի Հելուետիայի մէջ իր գլխաւոր աջակիցներէն շատերն իր քովը ժողված՝ հոնտեղաց լրագիրներուն միջնորդութեամբը կայսերական կառավարութեան դէմ ամէն թշնամական խօսքերն անդադար գրելէն զատ՝ իր արբանեակները Լոմբարտիա՝ մանաւանդ Միլան կը խաւրէր, ուր եւ անոնց ջանքովը վերջապէս նոր խռովութիւն մը

նալու։ Միլանի մէջ (1853 փետր. 6.) խել մը երիտասարդներ դաշոյններով զինած՝ փողոցներու վրայ կեցող զինուորաց վրայ յարձակեցան, 20 հոգի սպաննեցին, 100 հոգիի չափ ալ վիրաւորեցին։ Ռատեցքի այս յանդուգն խռովիչները շուտով զսպելէն ետքը, որովհետեւ գիտէր որ Հելուետիայի Դեսին (Դիչինոյ) նահանգին իտալացի ժողովրդեան մէջ այս խռովութիւնները կը պատրաստուէին ու անտեղաց խաւրուած միջնորդներու ձեռքով Լոմպարտիայի բնակիչքը կը գրգռուէին, խիստ հրամանով մը բոլոր Լոմպարտիայի մէջ գտնուող Դեսինցիները դուրս հանեց քշեց։ Ասով Լոմպարտացիք քիչ մը ատեն սաստելով՝ Մածծինեանց գրգռութիւններէն չէին յորդորուեր յայտնի խռովութիւն հանելու։

Բայց շիտակը խօսելով՝ աւստրիական Իտալիոյ մէջ՝ մանաւանդ թէ բոլոր թերակղզւոյն վրայ յեղափոխութեան կայծերն արծարծողները ան ատենները միայն Մածծինեանք չէին, հապա ուրիշ՝ աւելի մեծ զօրութիւն ու ազդեցութիւն ունեցող՝ գրգռիչ մը, այսինքն Գաղղիա կամ լաւ եւս ըսենք՝ Նաբոլէոն Գ. կայսրը հոն ամէն բան կը շարժէր, եւ Իտալացւոց անկախութեան բաղձանքն այլ եւ այլ յոյսերով անշէջ պահելէն զատ՝ աւելի եւս կենդանացընելու ալ ճամբաները կը հարթէր։ Յայտնի կը տեսնուէր՝ որ Սարդինիայի դաշինքն ուրիշ տէրութիւններէն շատ աւելի Գաղղիայի կայսեր պահանջածներուն համեմատ կը շարժէր. ու այս բանս անտարակոյս առանց մասնաւոր պատճառի, կամ թէ ըսենք՝ առանց մեծ օգուտ մը յուսալու չէր ըներ։ Ժամանակին քաղաքագէտներն այս բանս նշմարած էին՝ երբ որ Գաւուր կոմսը Սարդինիայի գործոց համար Փարիզ գտնուած ատենը՝ դեսպանաց ժողովոյն մէջ (1856) բոլոր Իտալիոյ անուամբը խօսելով՝ նոյն երկրին քանի մը տէրութեանց,

առանձին Աւստրիայի ու Նէապոլսոյ կառավարութիւններուն վրայ ամբաստանութիւններ ըրաւ։ Գաղղիա ալ նոյն ատեն Սարդինիայի կառավարութեան Իտալիայի մէջ բանեցուցած քաղաքականութիւնը պաշտպանելով, անոր համեմատ Նէապոլսոյ կառավարութեան հետ բանակցութիւն ընելու սկսաւ ու կը պահանջէր՝ որ Փերդինանդոս Բ. Թագաւորն իր կառավարութեան կերպին մէջ փոփոխութիւններ ընէ։ Երբ որ Թագաւորն աս պահանջումը մերժեց, Նաբոլէոն ալ՝ քիչ մը Սարդինիայի ազատական սկզբանց յառաջացուցիչ ըլլալու, քիչ մ'ալ Անգղիայի պաշտօնաբանին կամ Բալմերսդոնին բարեկամութիւնն աւելի եւս շահելու համար, (որովհետեւ գիտէր՝ որ Բալմերսդոն պաշտօնեան Սիկիլիա կղզին Նէապոլսոյ կառավարութենէն զատել չկրնալուն համար Փերդինանդոս Բ.ին բարեկամական աչքով չէր նայեր,) Անգղիական կառավարութեան հետ մտերիմ խորհրդակցութեան մէջ մտաւ։ Աս խորհրդակցութեամբ Անգղիա Գաղղիայի հետ միաբանելով՝ Նէապոլսոյ Թագաւորին այլ եւ այլ առաջարկութիւններ ըրին. ու երբ որ ուզածնին չկատարուեցաւ, իրենց դեսպանները Նէապոլսէն ետ կանչեցին։ Աս բաներն եղան 1856 տարւոյն մէջ ու նոյն եւ յաջորդ տարին անոնց վրայ ուրիշ անյաջող դէպքեր ու խռովութեան ցոյցքեր աւելցան։

Սիկիլիայի մէջ Պենչիվեննեա ապստամբին առաջնորդութեամբը (1856. Նոյ.) ապստամբութիւն մը ելաւ. բայց մեծ յառաջադիմութիւն մը չըրած՝ կառավարութեան զօրաց ձեռքովը բոլորովին զապուեցաւ։ Թէպէտ եւ Նէապոլսեցիք ու Սիկիլիացիք իրենց Թագաւորին վրայ գոհ չէին, որովհետեւ Սարդինիայի Թագաւորին պէս ազատականներուն ամէն պահանջմանցն ականջ չէր դներ ու իր կառավարութիւնը ճիշդ հսկողութեամբ յառաջ կը

տանէր։ Սակայն թէ Նէապոլսեցիք ու թէ Սիկիլիացիք որչափ ալ կառավարութեան վրայ տժգոհութիւն ունէնային՝ ան ատեններն այնչափ դիւրութիւն ու միջոցներ չունէին ապստամբութիւն մը հանելու։ Ի վերայ այսր ամենայնի Անգղիայի Բալմերսդոն պաշտօնեան ամէն հնարքները կը բանեցընէր ու Սարդինիայի օգնութիւնն ալ ձեռք կ՚առնէր որ երկու Սիկիլիայի տէրութեան մէջ ապստամբութեան հրդեհը ժամ մը յառաջ բորբոքի։ Աս ջանից պտուղը կրնայ սեպուիլ՝ (1856 Դեկտ. 8.) Փերդինանդոս Թագաւորը սպաննելու համար եղած փորձը։ Որսորդաց գնդերէն Ագ. Միլանոյ անուամբ հասարակ զինուոր մը զօրահանդէսի մ՚ատեն իր կարգէն դուրս ելլելով Թագաւորին մօտեցաւ ու իր հրացանն անոր վրայ պարպեց. բայց ուզածը չկրցաւ կատարել ու ինք զինուորական դատաստանով մահուան դատապարտեցաւ ու սպաննուեցաւ։ Աս զինուորին այսպիսի անօրէն խորհուրդը շատ Իտալացւոց եւ առանձինն Սարդինիացւոց մէջ չէ թէ միայն զարհուրանք կամ տհաճութիւն մը չպատճառեց, հապա նաեւ իբրեւ քաջութեան, անձնուրացութեան ու դիւցազնական հայրենասիրութեան գործ մը շատ մեծ հաճութիւն ու մեծամեծ գովեստներ գտաւ։ Անանկ որ Սարդինիացիք իրենց հաճութիւնն ու իբր երախտագիտութիւնը յայտնի ընելու համար (անտարակոյս կառավարութեան հրամանաւը կամ թոյլտուութեամբը) Դուրինի փողոցներուն մէկը նոյն զինուորին անուամբը՝ Միլանոյ անուանեցին։

Աս բանիս հետեւութիւն ու վերը գրածներնուս ապացոյց մը կրնանք սեպել յաջորդ տարին (1857, Յունիս) Նիգոդերա ու Բիսագանէ անուամբ երկու յեղափոխական Իտալացիներու առաջնորդութեան տակ խել մը երդմնակցաց Սարդինիայի տէրութեան մէկ շոգենաւ-

տալը Նէապոլսոյ ծովեզերքը ցամաք ելլելն ու երկրին մէջ նոր ապստամբութիւն մը հանելը։ Բայց Նէապոլսոյ կառավարութիւնը շուտ մը պաշտպանական միջոցներ բանեցընելով՝ ապստամբութիւնը զսպելէն ետքը, նոյն շոգենաւն իր մէջը գտնուող նաւաստիքով գերի առաւ։ Իսկ Սարդինիայի տէրութիւնն առանց ժամանակ կորսնցընելու շոգենաւն ու նաւաստիքը ետ պահանջեց ըսելով՝ որ անոնք անմեղ են, որովհետեւ երդմնակիցները յանկարծակի իբրեւ հասարակ խաղաղ ճամբորդներ նաւը մտեր, նաւաստիքն ու նաւապետը ստիպած էին շուտ մը ճամբայ ելլել ու զիրենք իրենց ուզած տեղը տանիլ։ Աս խնդրոյն մէջ Գաղղիայի կառավարութիւնն ալ մտնելով ու Սարդինիայի կողմը բռնելով, նոյն պահանջման կատարումը կ՚ուզէր։

Նոյնպէս թէ Նէապոլսոյ խիստ միապետական կառավարութեան դէմ գործելու եւ թէ առ հասարակ Իտալիայի ազատութիւնը յաջողցընելու համար Իտալացիք ու մանաւանդ Սարդինիա Գաղղիայի կառավարութեան՝ առանձինն Նաբոլէոն կայսեր բարեկամութենէն ու օգնութենէն քիչ շատ օգուտ կը գտնէին. Ի վերայ այսր ամենայնի նոյն Իտալացիք Հռոմայ հասարակապետութեան ուստի եւ Իտալիայի անկախութեան ջնջուելուն գլխաւոր պատճառը Նաբոլէոն Գ. կայսրն ըլլալը չէին կրնար մոռնալ ու անոր համար իրեն քէն չպահել։ Ուստի թէպէտ եւ նոյն հասարակապետութեան ջնջուելէն ետքը խել մ՚ատեն Մածծինեաններէն կամ առ հասարակ Իտալացիներէն ոչ ոք այսպիսի ոխակալութեան կամ վրէժխնդրութեան նշան մը տուաւ. բայց տարիներ անցնելէն ետքն այնպիսի մեծ դէպք մը հանդիպեցաւ, որ յայտնի ցըցուց՝ թէ իրենք միշտ զբաղած էին աս վրէժխնդրութիւնը պատրաստելու։ — Նաբոլէոն կայսրը

կայսրուհւոյն հետ (1858, Յունու. 14.) իրիկուան կառքը թէատրոն գացած ատենը սոսկալի թնդիւն մը լսուեցաւ, որուն ետեւէն անմիջապէս ուրիշ երկու թնդիւն ալ հետեւեցաւ. ու նոյն վայրկենին՝ կայսեր կառքին բոլորտիքն ըլլող զինուորներէն ու ժողովուրդէն վիրաւորուողներով ու մեռնողներով գետինը ծածկուեցաւ։ Իսկ կայսրն ու կայսրուհին իրենց վրայ շիտկուած վառօդով լեցուն ռումբերէն ազատ ու բոլորովին անվնաս մնացին։ Փարիզի ոստիկանութիւնն առանց ժամանակ կորսնցընելու կարեւոր քննութիւններն ընելով երկրորդ օրը չարագործները գտաւ, որոնք բոլոր Իտալացիք էին. իրենց գլխաւորն էր Որսինի կոմսը, իսկ իր ընկերներն էին Բիերի, Ռուտիօ ու Կոմեց։ Որսինի քննութեան ատեն յայտնապէս խոստովանեցաւ՝ որ իրենք անոր համար Նաբոլէոն կայսրը մեռցընել ուզեցին՝ որ համոզուած էին՝ թէ Իտալիա միայն անոր մահուամբն իր ազատութիւնն ու անկախութիւնը գտնելու կրնար յուսալ։ — Նաբոլէոն Գ. աս չարագործներուն երեքը (Որսինի, Բիերի ու Ռուտիօ) սպաննել՝ իսկ զԿոմեց աքսորել տալէն ետքը, Գաղղիայի մէջ կենաց ապահովութեան համար քանի մը նոր կարգաւորութիւններ կամ օրէնք սահմանել տուաւ։ Նաեւ ուրիշ դրացի տէրութիւններէն ալ պահանջեց՝ որ Իտալացի փախստականներուն վրայ աղէկ հսկողութիւն ընել տան։ Աս պահանջման համեմատ Հելուետիայէն զատ առանձինն Սարդինիայի կառավարութիւնը սկսաւ նոր կարգաւորութիւններ ընել, երդուելոց ատեանները փոխեց ու մասնաւոր օրէնք մը հրատարակեց օտար վեհապետներու կենաց դէմ դաւաճանութիւն պատրաստողներուն համար։

Որսինին ու անոր ընկերներն իրենց պատիժն ընդունելէն ետքը՝ Գաղղիայի լրագիրները նոյն Որսինիին մէկ

թուղթը հրատարակեցին, որն որ Աւստրիայի դէմ նախատական խօսքերով լեցուն էր ու գլխէ ի գլուխ ուրիշ բան չէր բովանդակեր՝ բայց եթէ Սարդինիայի քաղաքականութեան ու բռնած ընթացքին գովեստներ: Անկից կ'իմացուէր որ Իտալացիք Որսինիին կարծեկից ըլլալով կ'ուզէին որ Գաղղիայի տէրութիւնը (իբրեւ ազգաց ազատութեան կամ ազգայնութեան պաշտպան) զԱւստրիա ոտնակոխէ եւ իջէ կերպով մը ստիպէ զԻտալիան Իտալացւոց թող տալու եւ անկից բոլորովին դուրս ելլելու: Իրօք ալ Գաղղիա սկսած էր Աւստրիայի հետ աս նկատմամբ դիւանագիտական բանակցութիւններ ընել. բայց յայտնի կ'երեւար որ աս բանակցութիւնները բաղձացուած նպատակին պիտի՛ որ չկարենան հասցընել: Ինչու որ թէպէտ եւ Աւստրիա կ'ընդունէր՝ որ Իտալիայի ու մանաւանդ Նէապոլսոյ ու Հռոմայի կառավարութեանց մէջ շատ անկարգութիւններ կան, միանգամայն ինք զինք ալ պատրաստ կը ցուցընէր իր Իտալական գաւառներուն (Լոմբարդեան-Վենետական) կառավարութեան մէջ քանի մը փոփոխութիւններ ու նորոգութիւններ ընելու: Բայց ուրիշ տէրութիւններուն մէկն ալ աս Գաղղիական-Աւստրիական խորհուրդներուն ու ջանից օգնելու կամ հաւանելու պատրաստականութիւն չէր ցուցըներ: Աւստրիա ալ աս տեսնելով Գաղղիայի կառավարութեան միշտ աս պատասխանը կու տար՝ թէ ինք ինչչափ ալ աշխատի Իտալիայի կառավարութեանց համգամանքը լաւագունացընելու գործակից ըլլալ, ի վերայ այսր ամենայնի ոչ ինք ոչ ուրիշ տէրութիւն մը կրնայ Նէապոլսոյ ու Հռոմայի վեհապետները ստիպել որ իրենց կառավարութեանց կարգերը փոխեն:

Աս միջոցներուն Գաղղիայի ու Սարդինիայի մէջ՝ պաշտօնեաներուն իրարու երկիրն երթալ գալուն ու ի-

բարու հետ խորհրդակցելովը՝ բարեկամական կապերն օրէ օր աւելի եւս կը հաստատուէին։ Ու թէպէտ եւ նոյն ատենները Արեւելքի եւ առանձինն Դանուբեան իշխանութեանց (Վալաքիայի ու Մոլտաւիայի) եւ Սերբիայի վրայ ազդեցութեանց մէջ եղած խնդիրներն ու վէճերը ամէն մարդու կարծել կու տային՝ որ սա պատճառաւ պատերազմ մը սկսելով Եւրոպայի ընդհանուր խաղաղութիւնը պիտ'որ տակնուվրայ ըլլայ։ Սակայն 1859 տարւոյն սկիզբն եղած դէպք մը ամէն բան պարզեց ու ամենուն յայտնի ըրաւ՝ որ չէ թէ Արեւելեան խնդիրները հապա Իտալական խնդիրը կամ Գաղղիական-Սարդինիական դաշնակցութիւնը պատերազմի կրակը պիտ'որ բորբոքէ։ Անշանաւոր դէպքն ուրիշ բան չէր՝ բայց եթէ Գաղղիայի վեհապետին մէկ քանի խօսքը։

Նաբոլէոն Գ. (1859, Յունու. 1.) արտաքին տէրութեանց դեսպաններուն նոր տարւոյ շնորհաւորութեան համար իր քովը ժողված ատենը՝ Աւստրիայի կայսեր դեսպան Հիւպներ ասպետին դարձաւ ու քանի մը ծանր խօսքերով հասկըցուց՝ որ իր (Նաբոլէոնին) ու Աւստրիայի կառավարութեանց մէջ եղած յարաբերութիւնները հիմայ յառաջուան պէս աղէկ ու բարեկամական չեն։ Աս խօսքերէն ամէն մարդ իմացաւ ու գուշակեց որ Նաբոլէոն իրեն դաշնակից ըլլող Սարդինիային կամ յատկապէս Իտալիային Աւստրիայի դէմ ունեցած տրտունջներուն իրաւունք տալով՝ նոյնին հետ մէկտեղ զէնք առնուլ ու խնդիրները պատերազմով որոշել կ'ուզէ։ Աս բանս աւելի եւս յայտնի եղաւ՝ երբ որ տասն օր ետքը (1859. Յունու. 10.) Սարդինիայի Վիկտոր Էմմանուէլ Բ. Թագաւորը երկու սենեակները բանալու ատենն ըրած գահախօսութեան մէջ բացայայտ խօսքերով հասկըցուց որ հաւանական է թէ իր տէրութիւնը մօտ օրերը պատերազմի մը

ձեռք զարնելու սովորոյթի։ Ասոր համեմատ նաեւ զօրա-հանդէսի մը ատեն զօրաց պաշտօնակալներուն առջեւն ըրած խօսակցութեան մէջ զիրենք զօրաւոր խօսքերով քաջ հանդիսանալու յորդորելը մօտաւոր պատերազմ մը գուշակել կու տար։ Նա եւ պաշտօնէից դահերէց Ռա-տացցիին՝ Թագաւորին դահախօսութեան տուած պա-տասխանին մէջ ըսած հետեւեալ խօսքերը մօտաւոր պա-տերազմի յայտարարութիւն մը կրնայ սեպուիլ. “Սարդի-նիայի տէրութիւնն ազգային դրօշը բարձրացուցած է, ըսաւ, բոլոր Իտալիա իր աչուըները մեր վրայ անկած իր տխուր ձայնը մեզի կը լսեցընէ, բայց միանգամայն մեզի խորհուրդ կու տայ՝ որ մի սիրտ ու մի հոգի ըլլանք„։

Նոյնպիսի ուրախութեան աւետիքներն Իտալացի հայրենասիրաց ու ազատականաց յոյսերը զարթուցին ու գրեթէ ամէնքն ալ իրենց մէջ մինչեւ ան ատեն եղած այլ եւ այլ կողմնակցութիւններն ու չափազանց ակնկա-լութիւնները մէկդի թող տալով իրարու հետ միաբանե-ցան. միայն ռամկապետական հասարակապետութեան բաղձացող կողմնակցութիւնն ու Իտալիոյ ամէն կար-գերը փոխել ուզողներն անոնց միաբանութենէն զատուած մնացին։ Այսպէս հայրենասիրաց մեծ մասն իրարու հետ միանալով՝ Դուրինի մէջ տէրութեան պաշտպանութեան տակ՝ Իտալիոյ ազատութիւնն ու անկախութիւնը յա-ջողցընելու համար կազմուած (կէս մը հրապարակական) մեծ ընկերութեան մը առաջնորդութեան տակ մտան։ Կամաց կամաց Մածծինեանք ալ աս ընկերութեան հետ եկան միացան ու իրենց շատ տարիներէ վեր բանեցուցած կարգաւորութիւնները կամ ընկերական կանոնները նոյն ընկերութիւնն ընդունելով զանոնք ի գործ դնելու սկսաւ։ Ամէն դի մասնական ընկերութիւններ ու գործակալներ դրուեցան, որոնք իրենց գաղտուկ հնարքներովն ամէն տեղ

կը մնանէին, մինչեւ Թագաւորաց պալատներուն մէջ իրենց ծածուկ խորհրդակցութիւններ ու գործակցութիւններ գտնելով՝ ամէն բան կ՚իմանային. ասանկով ալ ազգային ընկերութիւնն ամէն բանի վրայ տեղեկութիւն կ՚ունենար:

Այս ամէն համաձայնութիւնները չէ թէ միայն բոլոր Իտալիոյի հասարակաց եւ բոլոր Եւրոպայի մէջ յայտնի եղած էին ու անոնց մասնաւոր հետեւանքներն ալ գուշակելը դիւրին բան մըն էր: Պիոս Թ. քահանայապետն ու Նէապոլսոյ Ֆերդինանդոս Բ. Թագաւորը, որոնք այս ամենայն լսելով կրնային իրենց կողմանէ ժամանակին պարագայից համաձայն քանի մը փոփոխութիւններ կամ զիջումներ ընելով՝ ծագելու պատերազմը ու անոր հետեւութիւնները գուցէ իրենց երկիրներէն հեռու բռնել: Բայց երկուքն ալ զիրենք նոյնէն բոլորովին ապահով ու զանիկայ միայն Սարդինիոյի ու Աւստրիական Իտալիոյի սահմաններուն մէջ փակուած կարծելով՝ ամէն զիջումներու եւ նորոգութիւններու հաստատամտութեամբ կ՚ընդդիմանային: Սակայն իրենց աս քաղաքականութիւնն ըստ մասին պատճառ եղաւ՝ որ Վերին Իտալիոյի մէջ ըլլալու պատերազմին վնասներն ու հետեւանքը քիչ մը ետքը մինչեւ իրենց երկիրները հասան ու շատ չարիք պատճառեցին, ինչպէս ետքը պիտ՚որ տեսնենք:

Իսկ Գաղղիա ու Սարդինիա մէկ կողմանէ, Աւստրիա ալ մէկալ կողմանէ (1859. փետր.) սկսած էին ամէն կերպ պատերազմական պատրաստութիւններն ընել, թէպէտ եւ դեսպանական բանակցութիւններն Եւրոպայի տէրութեանց մէջ կը շարունակէին, որոնց մէկ քանիին ջանքն էր՝ կերպով մը միջնորդ ըլլալ ու ծագելու պատերազմը խափանել: Ռուսիոյի ջանքն ու առաջարկութիւնն ան էր՝ որ աս վախճանին համար ժողով մ՚ըլլայ ու բաներն առանց պատերազմի լմնցընելու ճամբայ մը գտա-

նուի: Անգղիա այլ եւ այլ առաջարկութիւններ կ'որոշէր ու կը պատրաստէր՝ որ ատանկ ժողով մը գումարուելու ըլլայ՝ անոնց վրայ խորհուրդ ըլլուի: Աս առաջարկութիւններն էին. Պէտք է որ Իտալիա անկախ տէրութիւն մ'ըլլայ. — չէ թէ միայն օտարազգի իշխողներէն ազատուի, հապա նա եւ Աւստրիայի հետ իրեն նկատմամբ եղած դաշինքներէն ազատ մնայ. — այնպիսի կառավարութեանց տակ ըլլայ՝ որոնք յառաջադիմութեան հակառակորդ ու թշնամի չեն. — վերջապէս Իտալիա ինք իրեն թող տրուի, ինք զինք կառավարէ:

Աւստրիա մինչեւ ան ատեն Իտալիայի մէջ ամենէն հզօր ու ամենէն աւելի ազդեցութիւն ունեցող տէրութիւնն էր, ուստի եւ այնչափ չէր յօժարեր Անգղիայի առաջարկութեանց առանց պայմանի հետեւելով՝ իր մինչեւ ան ատեն ունեցած բարձրութենէն վար իջնալ: Նոյն ատենները Աւստրիայի բարեկամներուն կարծիքն աս էր, որ Սարդինիա ու Գաղղիա յեղափոխական սկզբամբք կը շարժին ու կը գործեն, ուստի թէ որ ինք Աւստրիա ալ անգղիական առաջարկութիւններուն համեմատ գործելու ըլլայ՝ մինչեւ ան ատեն Եւրոպայի տէրութեանց մէջ հաստատուն պահուող դաշինքը խանգարելով, ամենէն առաջ ինք Աւստրիա աս բանիս վնասները պիտ'որ կրէ: Բայց անկից ետքը կարգն ուրիշ տէրութիւններու ալ գալով՝ ամէն մէկն ալ նոյն վնասները պիտ'որ զգայ, մինչեւ վերջապէս Գաղղիա (ինչպէս Նաբոլէոն Ա.ին ատենը) նորէն ընդհանուր կայսրութիւնն իրեն սեպհականելու փորձերն ընելու պիտ'որ սկսի:

Աս կարծիքը, որն որ իրաւացի ու շատ հաստատուն էր, թէ որ ուրիշ Եւրոպական տէրութեանց մէջ ընդունելութիւն գտած ըլլար, պէտք էր որ ամէնքն ալ Աւստրիայի կողմը բռնէին ու թող չտային որ Գաղղիայի զօ-

րութիւնն ու ազգեցութիւնը Եւրոպայի մէջ օրէ օր աւելնայ ու ընդարձակի: Բայց այն ատեններուն Եւրոպայի հանգամանքը պետութիւններն՝ Աւստրիայի հետ անձկագոյն դաշնակցութիւն մ՚ընելէն ու բոլորովին անոր հետ միաբան գործելէն ետ բռնեցին: Նոյն ատեն Ռուսիա իր շահուն համար աւելի կ՚ուզէր որ Աւստրիա պզտիկնայ տկարանայ, քան թէ մեծ մնայ ու զօրանայ: Անգղիա, ինչպէս ուրիշ ատեններ՝ նոյնպէս աս միջոցիս մէջ ալ Իտալիայի անկախութիւնը կամ ինքնօրինութիւնն ամէն կերպիւ կ՚ուզէր, ու քահանայապետական երկրին եւ Նէապօլոյ տէրութեան կառավարութեանց վրայ չէ թէ միայն գոհ չէր, հապա նաեւ զանոնք կը մերժէր ու կ՚ատէր, ուստի եւ ոչ ինչ կերպիւ կ՚ուզէր աս ատենները Սարդինիայի ու Գաղղիայի ջանից ընդդիմանալ, մանաւանդ որ կը կարծէր թէ Սարդինիայի ջանիւքն Իտալիա իր ազատութիւնը պիտի՛ որ գտնէ: — Ասանկ աս երկու մեծ տէրութիւնները (Ռուսիա ու Անգղիա) Աւստրիայէն բաժնուելէն ետքը՝ կը մնար միայն Պրուշի տէրութիւնը, զորն որ Աւստրիա միւս Գերմանական տէրութիւններուն օգնութեամբը (որոնց մեծ մասն իրեն կողմն էին,) շահելու եւ իրեն հետ միաբանելու կը ջանար: Պրուշի դահլիճն ինք զինք պատրաստ ցըցուց՝ Գերմանական դաշնակցութեան պատիւն ու մեծութիւնը պահելու աշխատիլ: Բայց Իտալիայի մէջ Աւստրիայի կայսեր, ինչպէս նաեւ անոր ազգակիցներուն (Տոսկանայի ու Մոտենայի վեհապետներուն), միանգամայն քահանայապետական երկրին ու Նէապօլոյ տէրութեան վէճերուն համար պատերազմի մէջ մտնելը՝ ո՛չ Գերմանական դաշնակցութեան ու ո՛չ Պրուշի տէրութեան օգտակար գործողութիւն մը սեպեց: Սակայն բոլորովին անգործ չմնալու համար ալ՝ ուզեց միջնորդ ըլլալ ու պատերազմի պատրաստուող տէրութիւններուն

մէջը գտնելու եւ զանոնք հաշտեցընելու աշխատեցաւ. բայց աս ջանքն ալ օգտակար վախճանի մը չհասաւ:

Իրերն աս վիճակի մէջ կը գտնուէին 1859 տարւոյն սկիզբները: Սարդինիայի տէրութիւնն իր ներքին բարեկամներուն, այսինքն Իտալացի հայրենասիրաց ու Մածծինեանց հետ ու արտաքին դաշնակցին ու պաշտպանին՝ այսինքն Գաղղիայի կառավարութեան կամ Նաբոլէոն կայսեր հետ Աւստրիայի դէմ բանալու թշնամական ընթացքին վրայ ի ծածուկ կը խորհէր ու հարկաւոր պատրաստութիւնները կը տեսնէր: Եւ մի եւ նոյն ատեն պաշտօնէից դահերէց Գաւուր կոմսը քաղաքավարական ծանուցագիրներով տէրութիւնները կ՚ապահովցընէր՝ որ Սարդինիա պատերազմ չ՚ուզեր, միայն կը բաղձայ որ Իտալիայի ուրիշ տէրութիւններն ալ իրենց հպատակաց համար ազատական նորոգութիւններ ընելու սկսին: Ինք Գաւուր այսպիսի խաղաղական յայտերով ու խօսքերով տէրութիւնները խաբելու ջանք ցուցըցած ատենը՝ նոյն իսկ Սարդինիայի լրագիրներուն մէկ մասն ամէն տարակոյսը կը փարատէր ու յայտնի խօսքերով կը քարոզէր՝ որ Աւստրիան Իտալիայէն դուրս հանելու համար Սարդինիա պատերազմելու չէ թէ միայն յօժարութիւն ու խորհուրդ ունի, հապա նա եւ նոյն վախճանին համար պատրաստութիւններ կ՚ընէ, առանց յայտնի ընելու թէ պատերազմը երբ ու որո՞ւն դէմ պիտ՚որ սկսի: Մէկ քանի լրագիրներ ալ՝ դեռ 1859 տարւոյն սկիզբները շատերուն անանկ կը կարծեցընէին՝ որ ան պատերազմ գուշակող խօսքերը միայն Իտալիայի յեղափոխականաց, կամ Իտալիայի անկախութիւնն երազող Իտալացւոց բաղձանքներն են ու ոչ ալ իրօք նոր պատերազմ սկսելու հաստատուն կամք ունի: Բայց աս եղքի կարծիքը կամ յոյսը՝ որն որ միայն տէրութեանց դահլիճներուն խորհրդոցը տեղեակ չըլ-

լողներուն սիրտը կը հանդչեցընէր, շուտով փարատեցաւ ու պատերազմի սեւ ամպերը Եւրոպայի երկնից վրայ երեւալու սկսան։

Թողունք պատերազմելու միտք ու վտանգ կամ հարկաւորութիւն չունեցող տէրութիւններն ու նկատենք Աւստրիան, Սարդինիան ու Գաղղիան։ Աւստրիայի կառավարութիւնն ալ գրեթէ համոզուած ըլլալով՝ որ դեսպանական բանակցութիւններն օգուտ մը պիտի՛ որ չունենան, սկսած զօրաժողովը յառաջ տանելու կը փութար, ու 1859ին սկիզբներն իր Իտալական գաւառներուն մէջ ըլլող զօրաց թիւն օրէ օր աւելցընելով՝ Մարտ ամսոյն մէջ հոնտեղաց բանակին թիւը 300,000ի հասուց. որոնցմէ 150,000ի չափ զօրք Սարդինիայի սահմաններուն վրայ խաւրեց։ Գաղղիա իր զօրաց թիւն աւելցընելէն զատ նա եւ նոր զօրքերն Ալճերիա խաւրելով՝ հոն գտնուող կրթեալ զօրաց մէկ մասը Գաղղիա բերել տուաւ, անանկ որ իր ներքին պիտոյից համար բաւական զօրք պահելէն զատ՝ 400,000էն աւելի զօրք պատերազմի խաւրելու պատրաստ ունէր։ Իսկ Սարդինիական կառավարութիւնն այնպիսի եռանդմամբ ամէն տեսակ պատերազմական պատրաստութիւնները կը տեսնէր եւ երկրին ամէն դիէն աղէկ ամրացընելէն զատ բոլոր Աւստրիայի սահմաններուն վրայ այնչափ զօրք կը խաւրէր՝ որ նոյն իսկ Անգղիա ալ գործքին չափազանց ու դրդուիչ ըլլալն անոր հասկըցընելու ստիպեցաւ։ Անգղիա ասկից զատ իր մասնակցութիւնը երեք՝ պատերազմի պատրաստուող՝ տէրութեանց գործքերուն մէջ բանեցընելու համար՝ Լորտ Գաուլի քով քաղաքագէտը մասնաւոր գործակալութեամբ այլ եւ այլ տեղեր խաւրելով՝ խաղաղութիւնը պահելու կ՚աշխատէր։ Բայց Գաղղիա կամ Նաբոլէոն Գ. ու Սարդինիա կամ Վիկտոր Էմմանուէլին խորամանկ պաշտօնեան Գաւուր

իրենց պատերազմական խորհուրդները փոխելու կամ Աւստրիայի հետ չպարտուած զօրքերնին ցրուելու համաձայն կարելի չեղաւ։ — Սարդինիայի մէջ Աւստրիայի դէմ նոր պատերազմի պատրաստութիւն տեսնուած ատենը պէտք էր որ Իտալիոյ անկախութեան համար պատերազմիլ ուզող Իտալացի ազատական զօրաց հոգին ու այն բազուկը Կարիպալտի, որն որ 1850էն ետքն իր եւրոպական կամ իտալական թատերատեղէն ու ասպարէզէն աներեւոյթ եղած էր, նորէն յերեւան գայ։ Իրօք ալ 1859ին կը տեսնենք որ սա Իտալացի ախոյեանը Սարդինիայի մէջ Գաւուրին պաշտպանութեան տակ ու անոր ձեռնտուութեամբն ամէն տեսններէն աւելի գործունէութիւն ցուցընելով՝ ազատական զինուորներ կը ժողվէ, կը կրթէ ու ժամէ ժամ սկսելու մօտեցող պատերազմին մէջ գործելու վիճակի մէջ կը դնէ։

Պատերազմի պատրաստութիւններն այսպիսի եռանդմամբ եղած ատենը՝ Աւստրիա ուրիշ բարեկամ տէրութեանց բաղձանքին համաձայն նոր պատերազմը խափանելու բառ կարի ջանալով՝ ետքէն միջոցն ալ ձեռք առնել ուզեց։ Ուստի վերջնագրով մը (1859. Ապր. 23.) Սարդինիայի դահլիճին ազդարարութիւն ըրաւ՝ որ իր զօրքը սահմաններէն ետ քաշէ ու անոնց մեծ մասը զինաթափ ընէ։ Միանգամայն ալ սպառնացաւ որ եթէ Սարդինիա երեք օրուան մէջ որոշ ու նպաստաւոր պատասխան մը չտայու եւ սա առաջարկութիւնն ալ մերժելու ըլլայ, ան կայսրն ուրիշ բանի չսպասելով իր զօրաց հրաման պիտ'որ խաւրէ՝ որ Թիչինոյ գետն անցնին ու Սարդինիայի երկիրը մտնեն։ Սարդինիա սա անգամ Աւստրիայի դէմ պատերազմ ընելու ատենը Գաղղիայէն օգնութիւն գտնելուն վրայ առջէն ապահովցած ըլլալով, վերոգրեալ առաջարկութիւնը մերժեց ու ղրկած պա-

մանաժամը չանցած (Ապր. 26.) պատասխան տուաւ՝ որ զանիկայ չ'ընդունիր: Այս պատասխանին համեմատ իր բանակը զօրացընելն ու սահմաններուն վրայ զօրքը շատցընելը կը շարունակէր: Աւստրիայի կայսրը Սարդինիայի վերջին պատասխանն առնելէն ետքը՝ իր Իտալական բանակին վերին հրամանատար Ճիւլայ կոմսին հրաման խաւրեց որ իր զօրքովը Դիչինոյ գետն անցնի ու Սարդինիայի երկիրը մտնէ պատերազմը սկսի:

Այսպէս այս հրամանը խաւրելէն ետքը՝ Սարդինիայի դէմ պատերազմ բանալուն պատճառները (Ապր. 28.) ընդհանուր հրովարտակով մը հրատարակեց: Այս հրովարտակին մէջ այսպէս կը խօսի. “Ես (1849ին պատերազմներուն ատենը) Սարդինիայի թագաւորին երկիրներէն եւ ոչ ափ մը տեղ ինծի սեպհականեցի. Սարդինիայի թագին աշխարհքիս վրայ ունեցած իրաւանցն եւ ոչ մէկուն դպայ ու իրմէն ալ՝ այնուհետեւ թշնամական գործքեր չընելուն համար՝ նոյն ատեններն երաշխաւորութիւն մը չպահանջեցի: . . . Այս իմին՝ պատմութեանց մէջ օրինակը չունեցող՝ մարդասիրութեանս փոխարէնն եղաւ՝ (Սարդինիայի կողմանէ) սկսուած թշնամութիւնն անդադար շարունակելը ու տարուէ տարի սաստկացող եւ ամէն կերպ հաւատադրժութեան միջոցներով իմ Լոմբարտեան-Վենետական թագաւորութեանս դէմ ի գործ դրուող գրգռութիւնները: Իսկ ես գիտնալով՝ որ միշտ պարտական եմ իմ ժողովրդոցս ու բոլոր Եւրոպային խաղաղութիւնը պահելու ջանալ, այնչափ նորանոր թշնամական գործքերուն երկայնմտութեամբ համբերեցի: Նա եւ ան ատենն ալ իմ համբերութեանս մէջ հաստատ կեցայ, երբ որ ան ընդհանուր ու աւելի ազդու կարգաւորութիւնները, զորոնք նոր ատեններս՝ իմ Իտալական երկիրներուս սահմաններուն վրայ ու անոնց մէջ բանե-

ցուած չափազանց գրգռութիւններէն ստիպուելով՝ Նոյ-
ներուն ապահովութեան համար սահմանեցի, առիթ ե-
ղան նոր թշնամութեան գործքեր հնարելու։ Ինծի բա-
րեկամ ըլլող մեծ տէրութեանց բարեկամական միջնոր-
դութիւնը յօժարութեամբ ընդունելով՝ հինգ մեծ տէ-
րութեանց գումարելու դեսպանաժողովոյն մասնակից ըլ-
լալը յանձն առի։ Մեծին Բրիտանիայի կառավարութեան
կողմանէ նոյն դեսպանաժողովոյն մէջ խորհրդեան նիւթ
ըլլալու համար իմ կառավարութեանս առաջարկուած
կէտերը կամ խնդիրներն այնպիսի պայմաններով ընդու-
նեցայ՝ որոնք ճշմարիտ, հաստատուն ու տեւական խաղա-
ղութեան նպաստաւոր էին։ Բայց մի եւ նոյն ժամանակ
բոլորովին համոզուած ըլլալով՝ որ իմ կառավարութեանս
կողմանէ խաղաղութիւնը խռովելու համար եւ ոչ փոքր
գործ մը եղած է՝ իմ բաղձանքս յայտնեցի որ ան կառա-
վարութիւնն իր զօրքը զինաթափ ընէ, որուն յանցան-
քովն այնչափ շփոթութիւններ կը պատճառէին ու խա-
ղաղութիւնը կը խռովէր։ Ի վերայ այսր ամենայնի բարե-
կամ տէրութեանց պահանջմանը դէմ չդնելու համար՝
հաւանեցայ որ ընդհանուր զինաթափութիւն ըլլայ,
(այսինքն՝ թէ Ասորիայի ու թէ Սարդինիայի զօրքն ի-
րարու սահմաններէն հեռացուին ու իրենց թիւը քիչցուի։)
Սակայն Սարդինիայի կառավարութեան կողմանէ իմ պայ-
մաններս ընդունելու համար դրուած թէութիւններն
ընդունելն ինծի կարելի չըլլալով՝ տէրութեանց միջնոր-
դութիւնն օգուտ մը չըրաւ։ Ասկից ետքը ալ խաղաղու-
թիւնը պահելու համար մէկ հատիկ միջոց մնաց, զորն որ
ի գործ դրի, այսինքն առանց ժամանակ կորսնցընելու
Սարդինիայի կառավարութենէն պահանջեցի՝ որ իր զօրքը
խաղաղութեան վիճակի մէջ դնէ ու ազատակամ զօրքերը
ցրուէ։ Սարդինիա աս պահանջումը չկատարեց. ասով

եկաւ հասաւ այն ժամանակը, որուն մէջ խրատունքն ինք զինք զինուց յաղթութեամբը սկսաւ՝ որ յայտնէ։ Եւ արդէն իմ բանակիս՝ Սարդինիոյի երկիրը մտնելու հրաման հա-նեցի,,։

Ընդհասարակ՝ Եւրոպայի մէջ նոր պատերազմի մը հրատարակութիւնը․ ամէնց եաքը ալ լսուած լուրերն ու լրագիրներուն խօսքերը արագագոյն պատերազմի վախերու եւ պատրաստութիւններու անստոյգ լուրերը չէին, հապա սկսուած պատերազմի ու սոսկալի արիւնհեղութեան գոյ-ժերն էին։ Մենք այս նոր պատերազմին դէպքերը պատմ-մելէն առաջ նոյնին երկրորդական պատճառ ու գրգռիչ ըլլող Իտալական խնդիրներուն վրայ ալ լաւ կարգի քանի մը խօսք պէտք ենք գրել։ Յառաջագոյն գրեցինք՝ որ Գաղղիոյ զօրքը (1849) Հռոմայ հասարակապետու-թիւնը ընկճելէն ետքը քահանայապետական երկրին՝ մա-նաւանդ Հռոմայ՝ մէջ մնացին, նա եւ Աւստրիոյ զօրաց մէկ մասն Անքոնայի բերդին մէջ պահպանութիւն կ՚ընէր։ Այս բանս քահանայապետական կառավարութեան այն-չափ հաճոյական հանգամանք չէր կրնար սեպուիլ․ բայց աւելի եւս Իտալացւոց մէկ մեծ մասին շատ անհաճոյ էր ու տրտունջ եւ գրգռութիւն պատճառել կու տար որ օտար զօրք՝ մանաւանդ Աւստրիացիք երկրին մէջ պահ-պանութիւն կ՚ընեն։ Այս տրտունջին ուսկից յառաջ գալն ամէն մարդ դիւրաւ կրնար գուշակել, այսինքն տարակոյս չկար՝ որ Իտալիոյ անկախութիւնը հաստատելու գաղա-փարներով զբաղող մարդիկ՝ օտար զօրքերուն Իտալիոյ մէջ գտնուելովը իրենց մտածած հնարքները չէին կրնար յաջողութեամբ բանեցընել, ուստի եւ ի հարկէ չէին կրնար այն զօրաց իրենց գլխուն վրայ կենալուն ու հանդար-տութիւն ընելուն անտարբեր աչքով նայել։ Ըստ մասին այս տրտունջներէն շարժելով, կամ նա եւ ուրիշ պատճառ-

Ներքու համար քահանայապետական կառավարութիւնն օտարազգին զօրաց պաշտօնեայ Անտոնելլի կարդինալին ձեռքովը թէ Գաղղիոյ ու թէ Աւստրիոյ դաշնակիցնե-րուն քանի մը տարէն ի վեր կ'առաջարկէր՝ որ երկուքն ալ իրենց զօրքերը Հռոմայի երկրէն դուրս հանեն։ Գաղ-ղիոյ տէրութիւնը թէպէտ եւ Նաբոլէոնեան բաղձանաց ու ջանից համեմատ Իտալիայէն բոլորովին հեռանալը չէր կրնար այնպէս դիւրաւ յանձն առնուլ, մանաւանդ որ նոյն ատենները Սարդինիոյ հետ դաշնակցութեան ու խորհրդակցութեան մէջ գտնուելով՝ աւելի եւս պատ-շած կը սեպէր Հռոմայի մէջ իր զօրութիւնը հաստա-տուն պահել։ Ի վերայ այսր ամենայնի՝ Աւստրիոյ զօրաց ալ քահանայապետական երկրէն հեռանալու ստիպուիլը բաղձալով, Անտոնելլիին առաջարկութիւնը բոլորովին չմերժեց, ուստի եւ յոյս տուաւ՝ որ իր զօրքը Հռոմայէն ու անոր երկրէն ետ կը քաշէ։ Իսկ Աւստրիա բացայայտ խօսքերով նոյն կարդինալին պատասխան տուաւ՝ որ ինք պատրաստ է իր զօրքը քահանայապետական երկրէն դուրս հանելու՝ թէ որ Իտալիոյ մէջ խաղաղութեան հաստատուն միայն ապահովութիւն կ'ունենայ։ Ասան-կով մինչեւ Աւստրիոյ ու Սարդինիոյ պատերազմին սկիզբները քահանայապետական երկրին մէջ ըլլող աւս-տրիական զօրքը հոն մնացին։

Քանի մը տարէն ի վեր Իտալիոյ պզտիկ տէրու-թեանց նկատմամբ ուրիշ խնդիր մ'ալ կար։ Ուրիշ տեղ գրած ենք՝ որ Աւստրիոյ կայսրը՝ Տոսկանայի, Մոտենայի ու Բարմայի մէջ՝ անոնց վեհապետներին իր ազգականներին ըլլալուն համար եւ մանաւանդ 1815ին Վիէննայի աշ-խարհաժողովին դաշանցը զօրութեամբ՝ հարկաւոր եղած կամ՝ քաղաքային խռովութիւն մը ծագած ատենը՝ զօր-քով միջամտութիւն ընելու եւ օգնութեան հասնելու

իրաւունք ունի: Եւ ետքի տարիններու (1848) խռովութեանց ժամանակը յայտնի տեսնուեցաւ՝ թէ ինչպէս Աւստրիա նոյն տէրութեանց մէջ ըլլող յեղափոխութիւններն իր զօրքովը շուտ ու յաջողութեամբ զսպեց վերջացուց: Անկից ի զատ՝ Աւստրիա Լոմբարտիայի ու Վենետիկի երկրին իշխողն ըլլալով՝ իր զօրութիւնն Իտալիոյ մէջ ուրիշ ամէն տէրութիւններէն աւելի էր. աս երկրորդական տէրութիւններուն մէջ ալ իր զօրքն ու զօրութիւնը բանեցընելու իրաւունք ունենալով, չէ թէ միայն Սարդինիայի հապա նաեւ Գաղղիոյ ու մանաւանդ Նափոլէոն Գ. կայսեր նախանձ ու անհանգստութիւն կը պատճառէր: Եւ որովհետեւ Նափոլէոն Որսինիին ու անոր հետ համամիտ ըլլողներուն սպանութեան փորձերէն ապահով ըլլալու համար Իտալիոյ անկախութիւնը պաշտպանելու ստիպուած էր, անոր համար (գոնէ արտաքուստ) ամէն միջոցներն ի գործ դնելու կը ջանար՝ որ Աւստրիոյ ուժն ու ազդեցութիւնը Իտալիոյ մէջ տկարացընէ: Աս վախճանաւ չէր ուզեր իր զօրքը Իտալիայէն կամ Հռոմէն հեռացընել, որպէս զի Իտալիա բոլորովին Աւստրիոյ ազդեցութեան տակ չմնայ ու միանգամայն պզտիկ տէրութիւններն ալ (Իտալացւոց բաղձանացը դէմ) ամէն տեսն դիւրութեամբ Աւստրիայէն օգնութիւն չգտնեն:

Ասոնց վրայ աւելցընենք նաեւ Անգղիոյ դահլճին ինչպէս ուրիշ ժամանակ նոյնպէս աս տարիններն ալ ցուցուցած բաղձանքը՝ որ Իտալիա ազատ ու անկախ ըլլայ. Աւստրիա Լոմբարտիան թողու, քահանայապետական երկրին մէջ աշխարհական իշխանութիւնը բոլորովին ուրիշ կերպարանք մը առնու, որ է ըսել՝ քահանայապետէն վերցուի, վերջապէս պզտիկ տէրութիւններն ալ ամէն առթի մէջ Աւստրիայի զէնքերուն կամ զինեալ

օգնութեան չգիմեն։ Աս խորհուրդներն ու բաղձանքները յայտնի ընողն առանձինն Անգղիայի Բալմերսդոն պաշտօնեան էր, որուն վարպետական հնարքներովը Անգղիա մէկ դիհաց Աւստրիայի հետ բարեկամական կապերն ու յարաբերութիւնները պահելով ու մէկալ դիհաց անոր Իտալիայի մէջ ունեցած տեղերն ու իշխանութիւնը եւ ազդեցութիւնը պակսեցընելը հարկաւոր ցուցընելով՝ Աւստրիայի գործքերուն ու զէնքերուն յաջողութեանը շատ վնաս տուաւ։

Գաղղիայի ու Անգղիայի կառավարութեանց Աւստրիայի տէրութեան վրայ Իտալիայի նկատմամբ այսպիսի խորհուրդներ ունենալուն, անկից ի զատ Սարդինիական-Աւստրիական պատերազմին պատրաստութիւններուն եւ միանգամայն Նաբոլէոն Գ. կայսեր չէ թէ միայն Սարդինիայի հապա բոլոր Իտալիայի բարեկամ ու օգնական ըլլալուն լուրերը ամէն դի տարածուելով, Միջին Իտալիայի տէրութեանց մէջ ալ դրգռութիւնները, մանաւանդ թէ իւրաքանչիւր տեղւոյ վեհապետին դէմ ապստամբական շարժումները երեւան գալու սկսան։ Տոսկանայի մէջ (1859. Ապր. 20—24.) դրգռութիւններն ան աստիճանի հասան որ Թէպէտ եւ Լէոբոլտոս Բ. մեծ դուքսը ժողովըրդեան կամքը կատարելու համար նոր պաշտօնարան մը դրաւ, սակայն ասով ալ հանդարտութիւն չեղաւ։ Երկրին զօրքը ամէն կերպով յայտնի կ'ըներ՝ որ մեծ դուքսին կամքը կատարելու համար ժողովրդեան դէմ զէնք շարժել չ'ուզեր. Նոր պաշտօնեաներն ալ ազատականներուն կամ յեղափոխականներուն հետ միաբանելով զմեծ դուքսը կը յորդորէին՝ որ երկրին խաղաղութեան համար գահէն ու իշխանութենէ հրաժարի։ Բայց մեծ դուքսն իր իրաւունքէն ոչինչ կերպով հրաժարիլ ուզեց ու աս բանը ծանուցագրով մը օտար տէրութեանց յայտնելէն

ետքը, (Ապր. 24.) իր երկրէն ելաւ ու առաջ Պոլոնիա, ետքն ալ Աւստրիայի երկիրը գնաց: Այս յեղափոխութեան կամ ապստամբութեան Տոսկանայի մէջ յառաջ երթալուն ու յաջողելուն Նաբոլէոնին գործակալները շատ օգնեցին, որովհետեւ ասոնք ազատութեան զօրաց ու պաշտօնակալներուն խօսք տուած էին՝ որ ապստամբութիւնը յառաջ տանին ու թէ որ անիկայ չյաջողելու ըլլայ, Նաբոլէոն զիրենք Գաղղիայի զօրաց մէջ կ'ընդունի ու պաշտօնակալներն իրենց ունեցած աստիճանին մէջ կը պահէ:

Մեծ դուքսն իր երկրէն հեռանալէն ետքը ապստամբութիւն հանողներն ազատ գործելու դիւրութիւն գտնելով՝ ամէն բանէն առաջ՝ Բերուցցի, Տանցինի ու Մալենքինի քաղաքացիներուն գլխաւորութեան տակ ժամանակեայ կառավարութիւն մը հաստատեցին: Այս կառավարութեան առաջին գործքն եղաւ՝ Սարդինիայի Վիկտոր Էմմանուէլ թագաւորը Տոսկանայի հրամանատէր անուանել, որն որ սա պայմանին ու պաշտօնն ընդունելով՝ իրեն տեղակալ խաւրեց Պոնքոմբանէի մարկեզը, ասոր ալ թագաւորին անուամբը պաշտօնարան ու խորհրդարանոց (consulta) մը դրաւ, ու երկիրն սկսաւ ասոնց հրամաններովը կառավարուիլ: Պաշտօնեաներն Ուլլոա զօրապետին հրամանին տակ ազատութեան զօրաց թիւը 20,000ի հասուցին ու ասոնցմէ գունդ մը՝ խել մ'ալ աշխատակամ զօրք՝ պատերազմի օգնութեան համար (Ապր. 29.) Սարդինիայի բանակը խաւրեցին: Նաեւ բոլոր երկրին բնակչաց վրայ՝ իբր պատերազմի տուրք՝ քսան միլիոն Ֆրանգի հարկ դրուեցաւ: Այս ամենայն Աւստրիայի կայսեր դէմ յայտնի թշնամութեան գործքեր ըլլալով՝ անոր դեսպանն իր դեսպանատունը գոցեց ու երկրէն դուրս ելաւ: Նաեւ մեծ դուքսն իր երկրին մէջ իրեն կամաց ու իշխանութեան դէմ եղած գործքերուն դէմ բողոք ըրաւ.

բայց ապստամբները Նաբոլէոնին օգնութեան վրայ վստահ ըլլալով՝ իրենց սկսած գործքերն անխափան յառաջ կը տանէին։ Ուստի եւ իրենց կողմը զօրացընելու համար ամէն քաղաքային յանցաւորներուն ընդհանուր թողութիւն հրատարակեցին ու երկրին մէջ իրենց հակառակորդներէն ապահով ըլլալու եւ խաղաղութիւնը պահելու համար առանձին ժողով մը դրին։

Տոսկանայի մէջ տանը եղած ատենը Մոտենայի, Պարմայի ու Լուգգայի մէջ ալ նոյնպիսի ապստամբական փորձեր եղան ու յաջողեցան, անանկ որ աս երկիրներուն վեհապետները չկրնալով ապստամբաց յաղթել՝ օտար երկիրներ քաշուեցան։ Մոտենայի Փրանկիսկոս Ե. դուքսն ի սկզբան՝ քանի որ իր զօրքն իրեն հաւատարիմ մնացած էր՝ ապստամբութեան ու յեղափոխութեան փորձերուն յաջողութեանը դէմ կը դնէր, մինչեւ Սարդինիայի կողմանէ Մոտենայի մէջ ապստամբութիւն դրդուելու համար խառնուած պատգամաւորներուն պատճառաւ չէ թէ միայն ուրիշ տէրութիւններուն բողոք ըրաւ, հապա նաեւ Սարդինիայի դէմ պատերազմ հրատարակեց։ Բայց քիչ մը ետքը դրդուութիւններն աւելնալուն՝ չարեաց առջեւը չկրնալով առնուլ՝ տեղի տալու ստիպեցաւ։ — Պարմայի դքսուհին իր երկրին մէջ ապստամբութիւնը հաստատուելու սկսելէն ետքը իր անչափահաս դուքս որդւոյն երկրէն դուրս ելած էր։ Բայց երբ որ Աւստրիայի զօրքը Լոմբարտիայէն Սարդինիայի երկիրն անցնելէն ետքը Պարմայի երկիրը մտան, ապստամբաց մէկ մասը՝ մանաւանդ զօրաց պաշտօնականներուն շատը ապստամբութիւնը թող տալով իրենց օրինաւոր վեհապետին կողմը դարձան ու զանիկայ պաշտպանելու կը ջանային։ Ասոր վրայ դքսուհին Պարմա դարձաւ, իսկ ապստամբութեան մէջ հաստատ մնացողները Սարդինիայի երկիրը փախան։ — Անանկ Ի-

տալիայի շատ կողմերը խռովութիւնն ու ապստամբու-
թիւնը զօրանալու առենը՝ հնարաւոր չէր որ Հռոմայի մէջ
ալ ամենեւին անկարգութիւն ու շփոթութիւն չըլլէր։
Եւ թէպէտ ի սկզբան (Ապրիլի մէջ) իրօք ապստամբու-
թիւն մը չփրթաւ, սակայն իրերն անանկ դէշ վիճակի
մէջ էին՝ որ քահանայապետը սկսաւ նորէն Հռոմ թող-
տալու եւ օտար երկիր երթալու պատրաստուիլ։ Միան-
գամայն տէրութեան պաշտօնեայ Անդոնելլի կարդինալը
(Մայ. 5.) Աւստրիայի ու Գաղղիայի դեսպաններուն ծա-
նուցագիր մը տուաւ, որուն մէջ քահանայապետին կամքը
կը յայտնէր ըսելով՝ թէ քանի որ Հռոմայի երկրին խա-
ղաղութիւնը շփոթած չէ՝ ինք (քահանայապետը) նոր
սկսելու պատերազմին մէջ բոլորովին չէզոք պիտ՚որ
մնայ։

Աւստրիայի կայսրը, ինչպէս գրեցինք, իր Իտալա-
կան բանակին Սարդինիայի երկիրը մտնելու հրաման տա-
լէն ետքը՝ Ճիւլայ սպարապետը, որն որ բոլոր բանակին
վերին հրամանատարն էր, (Ապր. 29.) սկսաւ զօրքը դէպ
ի Դիչինոյ գետը յառաջ տանիլ։ Անգղիա նորէն միջնոր-
դութիւն ընել ուզելով՝ իր դեսպանին ձեռքովը զԱւս-
տրիա յորդորեց որ քանի մը օր ալ զօրաց գործողու-
թիւններն ի կախ թողու։ Աւստրիա աս միջնորդութիւնն
ալ ընդունեցաւ ու Ճիւլայ իր չուն քանի մը օր ալ ուշա-
ցուց։ Նոյն առեն Գաղղիա ալ ուզեց որ Աւստրիա իր
վերջնագրովը Սարդինիայի համար դրած պայմանաժամը
երկնցընէ ու պատերազմը չսկսի։ Աս պահանջումն ըրած
առենն իր զօրքը յառաջ կը քշէր ու Սարդինիայի սահ-
մանը կը հասցընէր։ Անգղիայի միջնորդութեան փորձն
աս հեղու ալ չյաջողելով՝ Ճիւլայ իր զօրաց չուն յառաջ
տարաւ ու Բաւիայի վրայէն դէպ ի Դիչինոյ գետը քալե-
լով՝ երեք տեղերէն զօրքն անոր վրայէն անցուց։ Աս զօ-

րաց աջ թեւը Պէնէտէք զօրապետին հրամանին տակ 30,000 հոգի էր, ձախ թեւը Ցոպէլ զօրապետին հրամանին տակ՝ նոյնպէս 30,000 հոգի էր. իսկ կեդրոնը Ճիւլայ սպարապետին անմիջական հրամանին տակ 60,000 հոգի էր. ասոնցմէ ի զատ Աւստրիա սահմաններուն վրայ 60,000 ալ պահեստի զօրք ունէր:

Նաբոլէոն Գ. Իտալիա խաւրուելու դաշնակցի զօրաց վերին հրամանատարութիւնն իրեն պահած ըլլալով՝ քանի մը երեւելի զօրագլուխներով (Մայ. 10.) Փարիզէն ելաւ ու Մարսիլիայէն նաւ մտաւ Գենուա երթալու համար: Փարիզէն ելլելէն առաջ՝ (Մայ. 3.) Գաղղիայի տէրութեան Աւստրիայի դէմ աս նոր պատերազմը բանալուն վրայ յայտարարութիւն մը հանեց, որուն մէջ կ'ըսէ. "Աւստրիա իր բանակը մեզի դաշնակից ըլլող Սարդինիայի թագաւորին երկիրը խոթելովը մեզի դէմ պատերազմ կը հրատարակէ: Ինք ասով՝ հաստատուած դաշինքն ու արդարութիւնը կը խախտէ ու մեր սահմանները վտանգի մէջ կը դնէ: . . . Գաղղիա թող զէնք առնու եւ ըսէ. ես ամենեւին աշխարհակալութիւն ընել չեմ ուզեր, հապա մեր ազգային աւանդութեամբ հաստատուած քաղաքականութիւնն առանց տկարութիւն մը ցուցընելու պահել կ'ուզեմ: Ես դաշինքը կը պահեմ՝ ենթադրելով որ ուրիշներն ալ զանոնք ի վնաս իմ խախտել չեն ուզեր: Չեզոք տէրութեանց սահմաններն ու իրաւունքը կը յարգեմ. բայց միանգամայն համարձակ կը յայտնեմ իմ համակրութիւնս այնպիսի ժողովրդեան մը վրայ՝ . . . որն որ օտար լծոյ տակ կը հեծէ: Գաղղիա անիշխանութեան դէմ ունեցած ատելութիւնը յայտնի ըրաւ . . . բայց քաղաքակրթութեան պաշտպան ըլլալու պաշտօնէն ալ չհրաժարեցաւ: Իր հիմակուան ընելու պատերազմին նպատակն է՝ Իտալիան իրեն (Իտալիայի =

Իտալացւոց) եւ դարձընել եւ ոչ թէ անոր իշխանը փոխել: Մեր բաղձանքն է մեր սահմանադրութեան վրայ բարեկամ ժողովուրդ մ'ունենալ, որն որ ճանչնայ թէ իր անկախութիւնը մեր ձեռքը ստացած է: Մենք Իտալիա կ'երթանք չէ թէ անկարգութիւնը յառաջ տանելու կամ Ս. Հօրը (քահանայապետին) իշխանութիւնը խորտակելու համար, զոր որ մենք նորէն իր գահին վրայ նստեցուցինք, հապա զինքը այն օտար ճնշումէն (լուծէն) ազատելու համար, որն որ բոլոր թերութիւններին վրայ կը ծանրանայ ու միանգամայն կ'ուզենք ձեռնտու ըլլալ այն կարգերը հաստատելու՝ որոնք միայն օրինաւոր շահերու պահպանողութիւնը կրնան յաջողել.... ն:

Այս Իտալական պատերազմին համար սահմանուած Գաղղիայի զօրաց թիւը 200,000էն աւելի էր. որոնց մէկ մասը Նաբոլէոն իշխանին հրամանին տակ Տոսկանա գնաց, մէկ մասն Ալպեան լերանց վրայէն Բիէմոնդէ մտաւ ու դէպ ի Դուրին քալեց. իսկ մէկ մասն ալ Մարսիլիայէն ծովով Գենուա հասաւ: Ասանց այսպէս ծովու ու ցամաքի վրայէն Սարդինիայի երկիրը մտած ատենը՝ Աւստրիացւոց զօրքը (մինչեւ Մայ. 4.) նոյն երկրին մէկ քանի քաղաքները (Մորդարա, Նովարա, եւ այլն,) առած ու Բօյ գետին վրայէն անցնելով Դորդոնա քաղաքը հասած էին: Քանի մը օր ետքը (Մայ. 8.) Վերչելլի մտան ու բնակիչներէն իրենց բարեկամ ուրախութեամբ ընդունուեցան: Սարդինիացիք ալ քաղքին մօտ Սեզիա գետին կամրջին տակն ական պատրաստած էին Աւստրիացւոց անցած ատենը զիրենք օդը հանելու համար, բայց Աւստրիացիք ալ հնարքը յառաջագոյն իմանալով՝ ականն անգործ ըրին: Ասոնք Աւստրիացւոց համար փոքր ու սկզբնական նպաստաւոր դէպքեր էին, որոնք շատ նշանաւոր հետեւութիւն ու օգուտ մը չունեցան:

էին։ Թէ որ ատոնք իրարու հետ միանալէն առաջ Աւստրիայի զօրքերն անոնց զատուած գունդերուն վրայ քալած ու իրենց ընթացքն ու իրարու մօտենալն արգելած ըլլային, ապագայ ընդհանուր յաղթութեան համար շատ մեծ առաւելութիւններ ու դիւրութիւններ պատրաստուած կ'ըլլար, եւ բոլոր Իտալիայի հանգամանքը՝ հիմակ եղածէն շատ տարբեր կերպարանք մը կ'ունենար։ Ի վերայ այսր ամենայնի Աւստրիացւոց բանակին հրամանատարին դանդաղութիւնը պատերազմին շուտով ու յաջողութեամբ յառաջ չերթալուն պատճառ դրուած ատենը, պէտք է միանգամայն յիշել՝ որ Ճիւլայ իր հրամանին տակ ըլլող զօրքը Սարդինիայի երկիրը խոթելէն ետքը Անգղիայի նոր միջնորդութեան փորձը սկսելով՝ հրամանատարն իր զօրաց ընթացքը քանի մը օր ուշացընելու ստիպուած էր, եւ աս միջոցին Գաղղիայի զօրքն անխափան յառաջ կու գային ու Սարդինիայի երկիրը կը մտնէին։

Նաբոլէոն Գ. (Մայ. 14.) Աղեքսանդրիա հասնելէն ետքը իր զօրացը հրաման տուաւ բոլոր Բոյի դէմը կամ թշնամւոյն դէմ ըլլող եզերքը պաշտպանելու կարգի մէջ շարուիլ։ Գլխաւոր կռիւները (Մայ. 20.) սկսան Մոնդեպէլլոյ ու Գասդեճճիոյ գեղերուն քովերը։ Աւստրիայի զօրաց մաս մը զինուորական լրտեսութեան կամ քննութեան (reconnaissance) պատճառաւ նոյն կողմը յառաջ քալած էր. բայց հոն գաղղիական-սարդինիական զօրաց մէկ բաժնին հանդիպելով, հարկ եղաւ սաստիկ կռուէ մը ետքը Մոնդեպէլլոյ թողուլ հեռանալ։ Աս կողմերը նոյն կռիւն եղած ատեն՝ դաշնակցաց զօրքերուն վերի ծայրին մօտ Կարիպալտի իր քանի մը հազար ազատական զօրքովը, առանց ձիաւոր զօրաց ու առանց թնդանօթի, յառաջ երթալով վերին Լոմպարտիա մտաւ եւ հոն Վարեզէի ու Գոմոյի առնելով՝ (Մայ. 25.) Աւս-

տրիացւոց Ուրպան զօրապետին տակ պատերազմող զօրքը երեք ժամ շարունակ կռուելէն ետքը՝ ետ քշեց ու Լոմպարտիայի բնակչաց սիրտ կու տար ապստամբութեան դրօշը բանալ, իրենց հետ միանալ, Աւստրիայի իշխանութենէն դուրս ելլել ու Սարդինիայի թագաւորին հպատակաց ընկերանալ։

Նաբոլէոն՝ իր ամէն զօրքը Իտալիա հասնելէն ետքը գլխաւոր պատերազմը ծածուկ ընթացքով մը սկսելու որոշեց։ Եւ որովհետեւ Աւստրիացիք իրենց գլխաւոր զօրութիւնը ժողված պատրաստուած էին Թուրին, Սդրատելլա, Բիաչենցա եւ Գրեմոնա տղէկ պաշտպանելու, անոր համար Նաբոլէոն աս կողմերէն հեռանալու ջանալով իր զօրութիւնը դէպ ի հիւսիս դարձուց եւ Նովարայի վրայէն Լոմպարտիա մտնելու համար (Մայ. 28.) զօրքը յառաջ քշեց։ Արդէն Սարդինիայի բանակն աս կողմերը Վերչէլլիի մօտ Վիկտոր Էմմանուէլին վերին հրամանին տակ հաստատուած ըլլալով, Նաբոլէոնին խորհրդովը կը ջանար փոքր կռիւներով զԱւստրիացիները զբաղեցընել, որպէս զի Գաղղիայի բանակին ընթացքը յայտնի չըլլայ։ Վիկտոր Էմմանուէլ (Մայ. 31.) զԱւստրիացիները Բալեսդրոյէն դուրս հանեց։ Նաբոլէոն ալ կասկածելով որ Աւստրիացիք իր դիտաւորութիւնն իմանալով՝ իր ընթացքին արգելք ըլլան, իր զօրաց չուն շուտցուց ու (Յունիս 1—2.) Նովարա մտաւ, ուսկից Աւստրիացիք քանի մը օր առաջ դուրս ելած էին։ Երկու օր ետքը (Յունիս 4.) իր զօրաց մէկ մասովը Դիչինոյ գետին միւս կողմն անցնելով՝ յանկարծակի Աւստրիայի բանակին գըլխաւոր բաժնին հանդիպեցաւ։ Վասն զի Աւստրիացւոց վերին հրամանատարը Ճիւլայ դաշնակցաց շարժմունքն ու ընթացքը գիտելով՝ վերջապէս անոնց դիտումն իմացած էր, ուստի եւ առենին իր զօրաց մէկ մասը Դիչինոյին

Աւստրիացիք թշնամւոյն թնդանօթներուն գնդակներէն ջարդուելով սկսան գիշերուան մութին ետ քաշուիլ: Երկրորդ օրը քաղքէն քիչ մը հեռացած ըլլալով՝ Ճիւլայ թշնամին զբաղեցընելու եւ իր զօրաց մեծ մասին ետ քաշուիլը դիւրինցընելու համար՝ անոնց մէկ բաժնին հրամայեց քաղքին վրայ նորէն յարձակում մ'ընելու պէս յառաջ քալել. սակայն աս փորձով թշնամւոյն վնաս մը չեղաւ:

Մաճենդա Միլանէն հազիւ քանի մը մղոն միայն հեռու ըլլալուն՝ Աւստրիայի հակառակ ըլլող Միլանցիք թնդանօթներուն ձայնը լսելով՝ իմացան որ հոն Աւստրիացւոց ու Գաղղիացւոց մէջ սաստիկ կռիւ մը սկսած է, եւ որովհետեւ այսպիսի պատերազմի մը յաջող ելքին իրենց համար Աւստրիայէն ազատուելու մեծ յոյս կու տար, անոր համար ահով դողով անոր վերջը առնելու կը սպասէին: Մէկ մ'ալ գիշերանց քաղաքը լուր հասաւ՝ որ Աւստրիացիք յաղթուած են. քիչ մը ետքը թշնամիէն փախչող զօրաց գնդերն ալ նոյն քաղաքը դառնալով՝ ա՛լ ամէն տարակոյս փարատեցաւ ու Աւստրիացւոց յաղթուիլը յայտնի եղաւ: Հոն հասնող զօրքերը քաղքէն դուրս քանի մը ժամ հանգչելէն ետքը ամէնքն ալ քաղաքը թողուցին ու սկսան դէպ ի Մինչիոյ գետը քալել. անոնց հետ մէկտեղ շատ մը վիրաւորեալներ ալ կառքերով գացին: Եւ երբ որ Միլանի մէջ ամենեւին Աւստրիացի զօրք չմնաց, ժողովուրդն անմիջապէս ազատութեան երեքգունեան դրօշը տնկեց ու նոր ժողով մը կազմելով՝ (1848ին Միլանի մէջ Իտալացիներէն որոշուած վճռոյն համեմատ) Վիկտոր Էմմանուէլ Սարդինիայի թագաւորը՝ Լոմբարտացւոց ալ թագաւոր հրատարակեց: Երիտասարդները մէկ եղան քաղաքացւոց պահապանաց գունդ մը կազմեցին ու բոլոր ժողովուրդն ուրախութեան

նշաններով դաշնակցաց զօրքերուն յաղթանակաւ քաղաքը մտնելուն կը սպասէին: Երեք օր ետքը (Յունիս 7.) Գաղղիայի զօրքը Մագ-Մահոնին հրամանին տակ Միլան հասան ու երկրորդ օրը Նաբոլէոն կայսրը Վիկտոր Էմմանուէլ թագաւորին հետ յաղթանակաւ հոն մտաւ, զորոնք Միլանցիք արտաքոյ կարգի մեծ ուրախութեամբ ընդունեցան: Նոյն օրը Նաբոլէոն բոլոր Իտալիայի ժողովուրդոց յայտարարութիւն մը հանեց, որուն մէջ կը ցուցնէր թէ ինք իր փառացը կամ Գաղղիայի շահուն համար աս պատերազմը յանձն առած չէ, հապա միայն Իտալիայի ազատութեան համար, ուստի եւ ամեն Իտալացիները կը յորդորէր որ զէնք առնեն ու իրենց հայրենեացն անկախութեան համար պատերազմին: “Զինուորական օրինաց համաձայն գնդեր կազմեցէք, կ'ըսէր, վազեցէք մտէք Վիկտոր Էմմանուէլին դրօշին տակը„:

“Նաբոլէոն ու Վիկտոր Էմմանուէլ Միլանի մէջ երկայն չմնացին, որովհետեւ գիտէին՝ որ թէպէտ եւ Աւստրիացիք Մաճենդայի կռուոյն մէջ յաղթուեցան, բայց անով իրենց մեծ կորուստ մը չեղաւ, ուստի եւ Լոմբարտիան միայն աս մէկ պարտութեամբ առանց ուրիշ պատերազմի՝ ձեռքէ հանելու միտք չունէին: Ասոր համար Նաբոլէոն վերոյգրեալ յայտարարութիւնը հանելէն ետքը գաղղիական-սարդինիական բանակով Միլանէն ելաւ ու յառաջ քալեց: Հազիւ երկու մղոն տեղ յառաջ գացած ըլլալով՝ Մարինեանոյ քաղքին քովերն Աւստրիայի զօրաց հանդիպեցաւ ու մասնական բայց սաստիկ կռիւ մը եղաւ, որն որ երկայն չքաշեց, որովհետեւ Աւստրիացիք մասնական կռիւներով առեն չկորսնցուցած Մինչիոյ հասնելու կը ջանային, չէ թէ միայն Բաւիայի, Բիաչենցայի, Բարմայի ու Բիցցիկեդդոնէի մօտ ըլլող գնդերը, հապա նաեւ Անգոնա ու Պոլոնեա գտնուող բերդապահ զօր-

քերն ալ մէկտեղ ժողվելով։ Ինչու որ իրենց վերին հրամանատարը Մաճենդայի քով կրած պարտութեամբը չվհատելով՝ բոլոր իր հրամանին տակն եղող զօրքերը կեդրոնացընելու եւ ընդհանուր պատերազմ մը տալու խորհուրդը հաստատած էր։ Նաբոլէոն ասիկայ իմանալով, ինքն ալ սկսաւ՝ որչափ որ Աւստրիացիք Մինչիոյի կը մօտենային՝ այնչափ աւելի իր զօրքը մէկտեղ պատերազմելու կարգի մէջ պահել։ Ինք կարծելով որ զԱւստրիացիները Մինչիոյին քովը կը գտնէ՝ անոր համեմատ կը յառաջէր. բայց քիչ մը աւելի մօտենալով իմացաւ՝ որ անոնք արդէն նոյն գետին միւս եզերքն անցեր են։ Սակայն ետքը յայտնի եղաւ՝ որ աս անցքը միայն թշնամին խաբելու համար էր, որովհետեւ քիչ մը վերջը բոլոր բանակը նորէն գետին ասդի կողմն անցաւ ու (Յունիս 23.) սկսաւ Մոնդէքեարոյի դաշտին վրայ թշնամւոյն հետ զարնուելու պատրաստուիլ։

Աւստրիացիք նոյն տեղը պատերազմելու համար շատ յարմար գտած ըլլալով կ'ուզէին հոն թշնամւոյն յարձակումն ընդունիլ կամ իրենք հոնկից անոր վրայ յարձակում ընել։ Նաբոլէոն որոշած էր (Յունիս 24.) Մինչիոյի մօտերն եղող բարձր տեղերը բռնելով Աւստրիացւոց դիւրաւ յառաջելու եւ պատերազմելու արգելք դնել։ Երբ որ Աւստրիացիք կարծելով որ թշնամին դեռ այնչափ մօտ չէ՝ սկսան իրենց գունդերը յառաջ քշել ու տարածել, յանկարծակի բոլոր գաղղիական-սարդինիական բանակին իրենց մօտենալը տեսան, ուստի եւ հարկ եղաւ մեծ կռիւը սկսիլ։ Աս կռիւը, որն որ Լոմբարտիայի Սոլֆերինոյ աւանին քովերը (Յունիս 24.) Աւստրիացւոց բանակին ու Գաղղիայի եւ Սարդինիայի միացեալ զօրքերուն մէջ եղաւ, ետքի ատեններու պատերազմներուն մէջ ամենէն զարհուրելին, սաստիկն ու նշանաւորը կրնայ սեպուիլ։

(որովհետեւ աս միջոցին Գաղղիացւոց ձիաւոր զօրքը վրայ հասած էր,) հոն ալ հարկ եղաւ պատերազմը դադրեցընելով ետ քաշուիլ։

Թէպէտ եւ Աւստրիացւոց ճակատին մեծ մասը մեծ կորուստներէն ետքը պատերազմելէն դադրելու վրայ էր, սակայն աջ թեւին վրայ, ուր Սարդինիացիները՝ Պենետեք քաջ սպարապետին Հրամանին տակ պատերազմող Աւստրիացւոց գնդերուն դէմ կը կռուէին, ամենեւին դադարելու նշան մը չկար։ Հոն ի սկզբան Սարդինիացիք քիչ մը ատեն իրենց հակառակորդներուն յաղթելու պէս կ'երեւային, բայց կռուին երկննալով՝ Աւստրիացիք զանոնք ետ քշելէն ի զատ կ'աշխատէին զիրենք Գաղղիացւոց գնդերէն զատել ու Կարտայի լճին վրայ յառաջ քշելով կռիւը լմնցընել։ Աս միջոցիս Աւստրիայի կայսրը պատերազմին ամէն կողմանէ դադրեցընելու հրաման տուած ըլլալով՝ Պենետեք սպարապետն ալ ակամայ ու շատ դժուարութեամբ (ու արտասուելով) ստիպեցաւ գրեթէ արդէն ստացած յաղթութիւնն անկատար թողուլ ու կռիւը դադրեցընել։ Այսպէս մէկ օրուան մէջ ասանկ մեծ պատերազմ մը երկու պատերազմող կողմանց մէջ զարհուրելի կոտորած ըլլալէն ետքը դադրեցաւ կամ թէ բանենք լմնցաւ։ Սոլֆերինոյի ճակատը երեք կէսերու կամ բաժիններու վրայ գրեթէ միայն 14—16 ժամ տեւողութիւն ունեցաւ ու այսչափ քիչ ատենուան մէջ մեռնողներուն թիւը թէպէտ ճշդիւ չգրուեցաւ, բայց մէկանց 50,000էն պակաս չըլլալը տարակուսի տակ չ'իյնար։ Աւստրիացւոց կորուստը կամ կոտորածը բուն պատերազմած ատեններնին այնչափ մեծ չէր, որչափ որ եղաւ ետ քաշուած ատեննին, որովհետեւ Գաղղիացւոց թընդանօթներուն գնդակները բարձր դիրքերէն վար արտաքոյ կարգի հեռաւորութեամբ յառաջ երթալով Աւստրիա-

ցւոց զօրքին անհնարին ջարդ կու տային։ Իսկ Գաղղիացւոց ու Սարդինիացւոց մեծ կորուստը կամ կոտորածը ճակատուած պատերազմելու եւ առանձինն Սոլֆերինոյի ու Գուարիանայի վրայ յարձակած ատեննին եղաւ, որովհետեւ Աւստրիացւոց զօրքը չէ թէ միայն ճակատուն վրայ հաստատուն կը կենային, հապա նա եւ ամէն մէկ քայլ տեղը անհնարին կոտորած ընելէն ետքը կը թողուին։

Սոլֆերինոյի արիւնահեղ պատերազմէն ետքը Աւստրիայի բանակը Մինչիոյ գետէն անցաւ ու մինչեւ Վերոնայի ամուր բերդին թնդանօթներուն հասնելու սահմանը յառաջացաւ։ Նոյնպէս եւ Գաղղիացւոց ու Սարդինիացւոց միացեալ զօրքը նոյն բանակին ետեւէն քալելով՝ Վերոնայի, Մանդուայի ու Բեսքիերայի բերդերուն մէջտեղը բանակեցան։ Ի սկզբան կ՚երեւար որ պատերազմը պիտի շարունակուի. եւ իրօք ալ տեղ տեղ, ինչպէս Բեսքիերայի բերդէն քովը, նա եւ Ադրիական ծովուն վրայ Լուսին Բիքքօլոյ կղզւոյն ու Դալմատիոյ ծովեզերեայ Ծառա քաղքին դէմ թշնամութեան գործողութիւններ կ՚ըլլային։ Բայց Գաղղիացւոց կայսրը հասկընալով որ անկից ետքը պատերազմը շարունակել ուզելու ըլլայ, պէտք է որ ամուր բերդերու դէմ՝ զանոնք պաշարելով ու տկարացընելով՝ բաց դաշտի վրայ բանեցուցած զօրքէն ու զօրութենէն զատ հնարքներու ձեռք զարնէ, միանգամայն ալ մինչեւ ան ատեն ըրած կորուստն աչքին առջեւն ունենալով՝ Աւստրիայի կայսեր (Յուլիս 7.) զինադադարի առաջարկութիւն ըրաւ։ Կայսրը քանի մը պայմաններով հինգ շաբաթուան համար (Յուլիս 8.) զինադադարն ընդունեցաւ ու հաստատեց։

Թէպէտ եւ Նաբոլէոնին այսպէս շուտով զինադադար ուզելուն պատճառն իր զօրաց կրած մեծ կոտորածն,

անոնց մէջ երեւցող վտանգաւոր հիւանդութիւններն ու օդին սաստիկ տաքութիւնն էր։ Բայց քանի մը օր ետքը խաղաղութիւն ընելու խօսքերը սկսան տարածուիլ եւ յայտնի եղաւ՝ որ Նաբոլէոն ուրիշ աւելի ստիպիչ քաղաքային պատճառներէն շարժելով հարկադրուած էր չէ թէ միայն քանի մը շաբաթուան համար զինադադար ընելու, հապա բոլոր պատերազմին վերջ տալով խաղաղութեան դաշինքը հաստատելու եւ ժամանակ չկորսնցուցած Փարիզ դառնալու։ Ասոր համար երկու կայսերք (Յուլ. 11.) Վիլլաֆրանգայի մէջ իրարու հետ տեսութիւն ընելով՝ քանի մը ժամ խօսակցութիւն ընելէն ետքը՝ խաղաղութեան գլխաւոր պայմաններն որոշեցին ու իրենց ստորագրութեամբը հաստատեցին։ Երկու կայսերք իրենց մէջ աս պայմանները սահմանելէն ետքը՝ անոնցմէ անուանուած պաշտօնեաներ նոյն պայմաններուն համեմատ խաղաղութեան դաշինքը (Յուլ. 12.) գրեցին ու հաստատեցին։ Աս պայմաններուն գլխաւորներն էին. Ա. Աւստրիայի կայսրը Լոմբարտիան Գաղղիացւոց կայսեր կը յանձնէ, աս ալ նոյնը Սարտինիացւոց թագաւորին կը պարգեւէ. Բ. Աւստրիայի կայսրը Վենետական գաւառները մինչեւ Մինչիոյ գետն իրեն կը պահէ. Գ. Մինչիոյ գետէն անդին Բեսքիերա, Մանդուա ու Պորկոյ Ֆորդէ ամրոցներն ալ իր ձեռքը կը մնան. Դ. Նոյն կայսրն Իտալիայի մէջ աս երկիրներն ունենալով՝ կազմուելու Իտալական դաշնակցութեան (confédération) մէջ կը մտնէ, որ դաշնակցութեան ալ դահերէց կ'ըլլայ Հռոմայի քահանայապետը. Ե. Տոսկանայի մեծ դուքսն ու Մոտենայի դուքսն իրենց երկիրները կը դառնան. Զ. Վերոյիշեալ դաշնակցութեան մէջ կը մտնէ նա եւ Նէապոլսոյ տէրութիւնն ալ. Է. Հռոմայի երկրին մէջ կարեւոր նորոգութիւններ կամ փոփոխութիւններ ըլլան։ Ասոնցմէ ի զատ երկու

կայսերաց մէջ ահմանադրուածին համեմատ հաստատուեցաւ՝ որ պատերազմին անկարգութեան ատենը եղած քաղաքային յանցանաց ընդհանուր թողութիւն տրուի։

Երբ որ Մաճենդայի ու Սոլֆերինոյի մեծ յաղթութիւնները բոլոր անկախութեան փափագող Իտալացիները կը յուսացընէին՝ որ իրենց համար ալ ազատութեան օրերն եկած հասած են, յանկարծակի այսպիսի պայմաններով հաստատուած խաղաղութեան լուրը զամենքն ալ չափէ դուրս խռովեցուց ու տրտմեցուց։ Վասն զի աս խաղաղութեան պայմաններուն Իտալիայի մէջ՝ Աւստրիայի կայսեր ձեռքը Վենետիկն ու Լոմպարտիայի բերդերը թող տալով, Տոսկանայի ու Մոտենայի մեհապետաներուն իրենց գահը դարձընելով ու Հռոմայի քահանայապետական աշխարհական իշխանութիւնը չվերցընելով, ինչպէս նաև Նէապոլսոյ թագաւորն ալ իր գահին վրայ հաստատ պահելով՝ չէ թէ Իտալիայի ազատութիւնը չէին ապահովցըներ, հապա մանաւանդ բոլոր թերակղզին իր առջի քաղաքային հանգամանաց մէջ ու օտար իշխաներու ձեռքին տակ կը թողուին։ Իսկ աս ամէն Իտալական տէրութեանց ու Սարդինիայի տէրութեան ալ անոնց հետ մէկտեղ դաշնակցութիւն մը կազմելով՝ միաբան խորհիլն ու գործելը Իտալացւոց ազատութեան աւելի կապ քան թէ յառաջացուցիչ պիտի՛որ ըլլայ, կ՚ըսէին անկախութեան բաղձացող հայրենասէրները։ Նոյն իսկ Վիկտոր Էմմանուէլ Բ. Սարդինիոյ թագաւորը Վիլլաֆրանքայի խաղաղութեան դաշինն վրայ բոլորովին գոհ չէր. ուստի անոր պայմաններուն իր անունը ստորագրելէն առաջ աս խօսքերը գրեց. "Ինծի վերաբերածը կ՚ընդունիմ,,։ Սակայն ոչ Սարդինիա եւ ոչ ուրիշ Իտալացիք՝ Գաղղիայի կայսրէն այնչափ օգնութիւն ու օգուտ առնենելէն ետքը՝ կրնային ի սկզբան այնչափ համարձակու-

թեամբ անոր որոշմանցը դէմ յայտնի բողոքել։ Բայց ամէն դի ազատասէր Իտալացիք Սարդինիայի աջակցութեան տակ որոշեցին որ բոլոր Իտալիայէն՝ ուրիշ ամէն տէրութիւնները վերցընելով, Վիկտոր Էմմանուէլին իշխանութեան տակ Իտալիայի թագաւորութիւն անուամբ միապետութիւն մը հաստատելու համար ամէն ջանքն ու հնարքը ի գործ դնեն։

Վիլլաֆրանգայի դաշին պայմաններուն Իտալացւոց ամենեւին ընդունելի չըլլալուն առջի յայտնի ցոյցքերը Տոսկանայի երկրին մէջ սկսան երեւան գալ։ Աս երկրին Լէոբոլտոս Բ. մեծ դուքսը ժողովրդեան ու անոր գրգռիչներուն տրտնջելու առիթները խափանելու համար իր դահէն հրաժարած ու անիկայ իր Ֆերդինանդոս Դ. որդւոյն տուած էր։ Աս նոր մեծ դուքսն ալ իր հպատակաց սիրտը շահելու համար խաղաղական յայտարարութիւն մը հանեց, որուն մէջ կը խոստանար իր երկրին նոր սահմանադրութիւն մը տալ, Իտալական գոյները (երեքգունեայ դրօշն) ընդունիլ ու Սարդինիայի հետ դաշնակից ըլլալ։ Բայց Տոսկանացիք Իտալացի հայրենասէրներուն գրգռութեամբը միտուընին հաստատած էին Լոթարինգեան-Աւստրիական ազգատոհմին իշխանները հեղ մը Տոսկանայի դահէն հեռացընել։ Ուստի երբ որ իմացան որ Վիլլաֆրանգայի դաշինքը նոյն մեծ դուքսին նորէն Տոսկանայի դահը դառնալը որոշած է, Ռիգազօլի պաշտօնէին առաջնորդութեամբը յայտնի ըրին որ Տոսկանա զմեծ դուքսը չ'ընդունիր ու կ'ուզէ Սարդինիայի հետ միանալով՝ անոր թագաւորին իշխանութեան տակ մնալ։ Թէպէտ եւ Նաբոլէոն Գ. իր Փլօրենտիա նստող դեսպանին ձեռքովը Տոսկանացւոց ծանոյց որ Վիլլաֆրանգայի դաշին համաձայն պէտք է որ վարուին, սակայն Ռիգազօլի ու անոր խորհրդակիցներն աս ազդարարութեան ականջ

չջնելով՝ (Օգոստ. 10ին) սահմանադիր ժողով մը գումարեցին, ուր եկան ժողվեցան երկրին երեւելի մեծամեծներէն 168 հոգի իբրեւ պատգամաւորներ. Ռիգասոլի խօսակցութիւն մը ըրաւ ու իշխաններէն մէկը ժողովոյն առջեւը դրաւ Լոթարինգեան-Աւստրիական իշխաններուն կամ արքիդուքսերուն Տոսկանայի գահէն մերժուելուն վճիռը։ Քանի մը օր ետքը (Օգոստ. 16.) նորէն ժողվեցան ու նոյն վճռոյն վրայ խօսուելէն ետքը՝ քուէ ձգուեցաւ ու ամենուն քուէներովը նոյն մերժման վճիռն ընդունուեցաւ։ Անկից ետքը քանի մը օրուան մէջ խորհուրդ ընելով հաստատուեցաւ որ Տոսկանայի երկիրը Սարդինիայի տէրութեան հետ միանայ ու Վիկտոր Էմմանուէլ Բ. թագաւորին իշխանութեան տակ ըլլայ։

Տոսկանայի մէջ եղածներուն նման նաեւ Մոտենայի ու Բարմայի դքսութիւններուն մէջ ու քահանայապետական երկրին Ռոմանեա գաւառին (Ռաւեննա, Ֆորլի) ու Պոլոնեայի մէջ ալ եղան։ Աս երկիրներուն մէջ քաղաքացիք Վիլլաֆրանգայի դաշին պայմաններուն վրայ գոհ չըլլալով՝ առանձին ժողովներով որոշեցին՝ իրենց մինչեւ ան ատենուան օրինաւոր վեհապետները մերժել ու Սարդինիայի հետ միանալով Վիկտոր Էմմանուէլ թագաւորին իշխանութեան տակ մտնել։ Գաղղիայի կայսրն այս ամենայն իմանալով եւ ուզելով ի սկզբան անդ կամ արտաքուստ ցուցընելով որ կ'ուզէ Վիլլաֆրանգայի դաշին պայմանները ճշդութեամբ պահել տալ, Դուրինի դահլճին ազդարարութիւն ըրաւ՝ որ չըլլայ թէ դքսութիւններուն ու Ռոմանեայի ժողովրդոց ընտրութիւնն ընդունի եւ զանոնք Սարդինիայի հետ միացած սեպէ։ Աս պատճառաւ Վիկտոր Էմմանուէլ թագաւորը չկրնալով իր հզօր դաշնակցին կամացը յայտնապէս հակառակիլ՝ ուրիշ ճամբայ մը ընտրեց, որ կարենայ միջին Իտալիայի տէրութեանց

ժողովուրդներուն դատը վարելով կամ անոնց ուղածն օրէնաւոր ցուցընելով՝ զանոնք իր իշխանութեան տակ առնուլ։ Ուստի Եւրոպայի տէրութեանց այսպէս գրեց։ “Եւրոպա չիկրնար Տոսկանայի, Բարմայի, Մոտենայի ու Ռոմանեայի համար նորոգութեան գործքը կատարելէն հրաժարիլ, զորն որ ուրիշ աւելի աննպաստաւոր պարագաներու մէջ՝ Յունաստանի, Բելգիայի ու Դանուբեան իշխանութեանց՝ Վալաքիայի ու Մոլտաւիայի՝ համար կատարեց։ Իտալիայի բնակիչներն այն առաքինութիւններուն վրայ՝ զորոնք տառապանաց դպրոցին մէջ սորվեցան, պիտ՚որ աւելցընեն նա եւ այն առաքինութիւնը՝ որն որ շատ դժուարին փորձերուն ալ կրնայ յաղթել, որ է՝ յարատեւութիւնը, եւ ասով պիտ՚որ ապահովցընեն իրենց ամէն արդար ձեռնարկութիւնները,,։

Տոսկանայի սահմանադրական ժողովը Վիկտոր Էմմանուէլին այսպիսի խօսքերն իբրեւ իրենց ըրած ընտրութեան ու առաջարկութեան ընդունելութիւնը սեպելով՝ սահմանեց որ հրապարակական ուրախութեան հանդէսներ կատարուին։ Անկից ետքը սկսաւ իր ամէն վճիռներն ու հրամանները նոյն Վիկտոր Էմմանուէլին անուամբը հրատարակել, հիւսիսային Իտալիայի (Սարդինիայի տէրութեան) հետ եղած, մաքսի կարգերը ջնջեց, Սարդինիայի մաքսական օրէնքները հաստատեց, Տոսկանայի դրամները ժողվեց վերցուց եւ Վիկտոր Էմմանուէլին անուամբն ու պատկերովը նոր դրամներ կոխեց։

Իտալիայի այլ եւ այլ կողմերն այսպէս Վիլլաֆրանգայի խաղաղութեան դաշին պայմաններն արհամարհուած ու մերժուած ատենը, յառաջագոյն երկու կայսերաց մէջ եղած խօսակցութեան համաձայն՝ Աւստրիայի, Գաղղիայի ու Սարդինիայի կողմանէ նշանաւոր անձինք լիազօր իշխանութեամբ Հելուետիայի Զիւրիխ

Աւստրիայի Փրանչիսկոս Յովսէփ Ա. կայսրն աս տակաւին պատերազմը սկսելէն առաջ Վիէննայէն քանի մը մեծամեծ իշխաններով (որոնց մէջն էր նաեւ իր փեսը. Մաքսիմիլիանոս եղբայրն, որն որ ետքը Մեքսիկոյի կայսր եղաւ,) ու երեւելի զօրապետներով իր բանակին եկաւ ու ամէն զօրաց վերին հրամանատարութիւնը վրան առաւ։ Աւստրիացւոց ճակատը երեք բաժնի եղած ատալքոյ կարգի երկայնութեամբ տարածուած էր. բայց աւելի զօրաւոր բաժինները էին Սոլֆերինոյի բարձր երկրին վրայ ու Գաւրիանա գեղին քովերը, ուր Աւստրիայի կայսրն անմիջապէս կը հրամայէր։ Գաղղիացիք ամենէն առաջ Սոլֆերինոյի վրայ յարձակեցան, զորն որ շատ աշխատութեամբ ու երկու կողմանէ ալ անհնարին կատաղած ըլլալէն ետքը վերջապէս առին։ Անկից ետքը բոլոր իրենց ուժովը Գաւրիանա պատերազմող գնդերուն վրայ յարձակեցան, ուր երկու կայսերաց հրամանին տակ երկու կողմանք ալ անհանգիստ կը պատերազմէին։ Աւստրիայի կայսրն իր առաջուան տուած հրամանին համեմատ իր ձիաւոր պահեստի զօրաց մէկ բաժնին կը սպասէր թշնամիոյն յարձակումն արգելելու համար. բայց աս զօրքը (իր հրամանատարին անհոգութեամբը՝ կամ թէ այլոց՝ անհաւատարմութեամբը) տեղնին չհասնելով կայսրը հարկադրեցաւ կռիւը դադրեցընելու։ Բայց Աւստրիացւոց ձախ թեւին վրայ Վիմփֆէն սպարապետին հրամանին տակ դեռ կռուին անհնարին սաստկութեամբ կը շարունակէր, ուր եւ կոտորածն ալ ուրիշ տեղերէն աւելի մեծ էր։ Մէկ մ՚ալ իրիկուան դէմ սոսկալի մրրիկ մը ելաւ, որն որ ի սկզբան սաստիկ փոշի հանելով պատերազմողներուն շատ արգելք կ՚ըլլար, սակայն անկից աւելի վնաս տուաւ հեղեղի պէս անձրեւը, որն որ շատ երկայն չքշեց, բայց Գաղղիացւոցմէ աւելի Աւստրիացւոց վնաս տալով,

(որովհետեւ ատ միջոցին Գաղղիացւոց ձիաւոր զօրքը վրայ հասած էր,) հոն ալ հարկ եղաւ պատերազմը դադրեցընելով ետ քաշուիլ:

Թէպէտ եւ Աւստրիացւոց ճակատին մեծ մասը մեծ կորուստներէն ետքը պատերազմելէն դադրելու վրայ էր, սակայն ալ Թեւին վրայ, ուր Սարդինիացիները՝ Պենետէք քաջ սպարապետին հրամանին տակ պատերազմող Աւստրիացւոց գնդերուն դէմ կը կռուէին, ամենեւին դադարելու նշան մը չկար: Հոն ի սկզբան Սարդինիացիք քիչ մը ատեն իրենց հակառակորդներուն յաղթելու պէս կ'երեւային, բայց կռուին երկընալով՝ Աւստրիացիք զանոնք ետ քշելէն ի զատ կ'աշխատէին զիրենք Գաղղիացւոց գնդերէն զատել ու Կարտայի լճին վրայ յառաջ քշելով կռիւը լմնցընել: Առ միջոցիս Աւստրիայի կայսրը պատերազմին ամէն կողմանէ դադրեցընելու հրաման տուած ըլլալով՝ Պենետէք սպարապետն ալ ակամայ ու շատ դժուարութեամբ (ու տրտունջով) ստիպեցաւ գրեթէ արդէն ստացած յաղթութիւնն անկատար թողուլ ու կռիւը դադրեցընել: Այսպէս մէկ օրուան մէջ սաստիկ մեծ պատերազմ մը երկու պատերազմող կողմանց մէջ զարհուրելի կոտորած ըլլալէն ետքը դադրեցաւ կամ թէ ըսենք լմնցաւ: Սոլֆերինոյի ճակատը երեք կէտերու կամ բաժիններու վրայ գրեթէ միայն 14—16 ժամ տեւողութիւն ունեցաւ ու այսչափ քիչ ատենուան մէջ մեռնողներուն թիւը թէպէտ ճշդիւ չգրուեցաւ, բայց մէկանց 50,000էն պակաս չըլլալը տարակուսի տակ չ'իյնար: Աւստրիացւոց կորուստը կամ կոտորածը բուն պատերազմած ատեններին այնչափ մեծ չէր, որչափ որ եղաւ ետ քաշուած ատեններին, որովհետեւ Գաղղիացւոց Թընդանօթներուն գնդակները բարձր դիրքերէն վար արտաքոյ կարգի հեռաւորութեամբ յառաջ երթալով Աւստրիա-

ցւոց զօրքին անհնարին ջանք կու տային ։ Իսկ Գաղղիա-ցւոց ու Սարդինիացւոց մեծ կորուստը կամ կոտորածը ճակատառած պատերազմելու եւ առանձինն Սոլֆերինոյի ու Գաւրիանայի վրայ յարձակած ատեննին եղաւ, որով-հետեւ Աւստրիացւոց զօրքը չէ թէ միայն ճակատամարտ վրայ հաստատուած կը կենային, հապա նա եւ ամէն մէկ քայլ տեղը անհնարին կատաղած ընելէն ետքը կը թո-ղուին ։

Սոլֆերինոյի արիւնահեղ պատերազմէն ետքը Աւստրիոյի բանակը Մինչիոյ գետէն անցաւ ու մինչեւ Վերոնայի ամուր բերդին Թնդանօթներուն հասնելու առհասարակ յառաջացաւ ։ Նոյնպէս եւ Գաղղիացւոց ու Սարդինիացւոց միացեալ զօրքը նոյն բանակին ետեւէն քալելով՝ Վերոնայի, Մանդուայի ու Պեսքիերայի բերդե-րուն մէջտեղը բանակեցան ։ Ի սկզբան կ'երեւար որ պա-տերազմը պիտի շարունակուի. եւ իրօք ալ տեղ տեղ, ինչպէս Պեսքիերայի բերդին քովը, նա եւ Ադրիական ծովուն վրայ Լուսին Պիքքոլօյ կղզւոյն ու Դալմատիայի ծովեզերեայ Ծառա քաղաքին դէմ թշնամութեան գոր-ծողութիւններ կ'ըլլային ։ Բայց Գաղղիացւոց կայսրը հասկընալով որ անկից ետքը պատերազմը շարունակել ուզելու ըլլայ, պէտք է որ ամուր բերդերու դէմ՝ զանոնք պաշարելով ու տկարացընելով՝ բաց դաշտի վրայ բանե-ցուցած զօրքէն ու զօրութենէն զատ հնարքներու ձեռք զարնէ, միանգամայն ալ մինչեւ ան ատեն ըրած կորուստն աչքին առջեւն ունենալով՝ Աւստրիոյի կայսեր (Յուլիս 7.) զինադադարի առաջարկութիւն ըրաւ ։ Կայսրը քանի մը պայմաններով հինգ շաբաթուան համար (Յուլիս 8.) զինադադարն ընդունեցաւ ու հաստատեց ։

Թէպէտ եւ Նաբոլէոնին այսպէս շուտով զինադա-դար ուզելուն պատճառն իր զօրաց կրած մեծ կորուստն,

անոնց մէջ երեւցող վտանգաւոր հիւանդութիւններն ու օդին սաստիկ տաքութիւնն էր։ Բայց քանի մը օր ետքը խաղաղութիւն ընելու խօսքերը սկսան տարածուիլ եւ յայտնի եղաւ՝ որ Նաբոլէոն ուրիշ աւելի ստիպիչ քաղաքային պատճառներէն շարժելով հարկադրած էր չէ թէ միայն քանի մը շաբաթուան համար զինադադար ընելու, հապա բոլոր պատերազմին վերջ տալով խաղաղութեան դաշինքը հաստատելու եւ ժամանակ չկորսնցուցած փարիզ դառնալու։ Ասոր համար երկու կայսերք (Յուլ. 11.) Վիլլաֆրանգայի մէջ իրարու հետ տեսութիւն ընելով՝ քանի մը ժամ խօսակցութիւն ընելէն ետքը՝ խաղաղութեան գլխաւոր պայմաններն որոշեցին ու իրենց ստորագրութեամբը հաստատեցին։ Երկու կայսերք իրենց մէջ աս պայմանները սահմանելէն ետքը՝ անոնցմէ անուանուած պաշտօնեաներ նոյն պայմաններուն համեմատ խաղաղութեան դաշինքը (Յուլ. 12.) գրեցին ու հաստատեցին։ Աս պայմաններուն գլխաւորներն էին. Ա. Աւստրիայի կայսրը Լոմբարտիան Գաղղիացւոց կայսեր կը յանձնէ, աս ալ նոյնը Սարտինիացւոց թագաւորին կը պարգեւէ. Բ. Աւստրիայի կայսրը Վենետական գաւառները մինչեւ Մինչիոյ գետն իրեն կը պահէ. Գ. Մինչիոյ գետէն անդին Բեսքիերա, Մանդուա ու Պորկոյ Ֆորդէ ամրոցներն ալ իր ձեռքը կը մնան. Դ. Նոյն կայսրն Իտալիայի մէջ աս երկիրներն ունենալով՝ կազմուելու Իտալական դաշնակցութեան (confédération) մէջ կը մտնէ, որ դաշնակցութեան ալ գահերէց կ'ըլլայ Հռոմայի քահանայապետը. Ե. Տոսկանայի մեծ դուքսն ու Մոտենայի դուքսն իրենց երկիրները կը դառնան. Զ. վերոյիշեալ դաշնակցութեան մէջ կը մտնէ նաեւ Նէապոլսոյ տէրութիւնն ալ. Է. Հռոմայի երկրին մէջ կարեւոր նորոգութիւններ կամ փոփոխութիւններ ըլլան։ Ասոնցմէ ի զատ երկու

կայսերաց մէջ սահմանադրութեան համեմատ հաստատուեցաւ՝ որ պատերազմին անկախութեան ատենը եղած քաղաքային յանցանաց ընդհանուր թողութիւն տրուի։

Երբ որ Մաճենտայի ու Սոլֆերինոյի մեծ յաղթութիւնները բոլոր անկախութեան փափագող Իտալացիները կը յուսացընէին՝ որ իրենց համար ալ ազատութեան օրերն եկած հասած են, յանկարծակի այսպիսի պայմաններով հաստատուած խաղաղութեան լուրը դամէնքն ալ չափէ դուրս խռովեցուց ու տրտմեցուց։ Վասն զի աս խաղաղութեան պայմաններն Իտալիոյ մէջ՝ Աւստրիոյ կայսեր ձեռքը Վենետիկին ու Լոմպարտիոյ բերդերը թող տալով, Տոսկանայի ու Մոտենայի միապետաներուն իրենց գահը դարձընելով ու Հռոմայի քահանայապետական աշխարհական իշխանութիւնը չվերցընելով, ինչպէս նաեւ եւ Նէապոլսոյ թագաւորն ալ իր գահին վրայ հաստատ պահելով՝ չէ թէ Իտալիոյ ազատութիւնը չէին ապահովցըներ, հապա մանաւանդ բոլոր թերակղզին իր առջի քաղաքային հանգամանաց մէջ ու օտար իշխաներու ձեռքին տակ կը թողուին։ Իսկ աս ամէն Իտալական տէրութեանց ու Սարդինիոյ տէրութեան ալ անոնց հետ մէկտեղ դաշնակցութիւն մը կազմելով՝ միաբան խորհրդով ու գործելը Իտալացւոց ազատութեան առջեւը կապ քան թէ յառաջացուցիչ պիտի՛ որ ըլլայ, կ՚ըսէին անկախութեան բաղձացող հայրենասէրները։ Նոյն իսկ Վիկտոր Էմմանուէլ Բ. Սարդինիոյ թագաւորը Վիլլաֆրանգայի խաղաղութեան դաշինս վրայ բոլորովին գոհ չէր. ուստի անոր պայմաններուն իր անունը ստորագրելէն առաջ աս խօսքերը գրեց. "Ինծի վերաբերածը կ՚ընդունիմ"։ Սակայն ո՛չ Սարդինիա եւ ո՛չ ուրիշ Իտալացիք՝ Գաղղիոյ կայսրէն այնչափ օգնութիւն ու օգուտ առնենելէն ետքը՝ կրնային ի սկզբան այնչափ համարձակու-

թեամբ անոր որոշմանցը դէմ յայտնի բողոքել: Բայց ամէն դի ազատատէր Իտալացիք Սարդինիայի ազդեցութեան տակ որոշեցին որ բոլոր Իտալիայէն՝ ուրիշ ամէն տէրութիւնները վերցընելով, Վիկտոր Էմմանուէլին իշխանութեան տակ Իտալիայի Թագաւորութիւն անուամբ միապետութիւն մը հաստատելու համար ամէն ջանքն ու հնարքը ի գործ դնեն:

Վիլլաֆրանգայի դաշին պայմաններուն Իտալացւոց ամենեւին ընդունելի չըլլալուն առջի յայտնի ցոյցքերը Տոսկանայի երկրին մէջ սկսան երեւան գալ: Աս երկրին Լէոբոլտոս Բ. մեծ դուքսը ժողովրդեան ու անոր գրգռիչներուն տրտունջելու առիթները խափանելու համար իր գահէն հրաժարած ու անիկայ իր Փերդինանդոս Դ. որդւոյն տուած էր: Աս նոր մեծ դուքսն ալ իր հպատակաց սիրտը շահելու համար խաղաղական յայտարարութիւն մը հանեց, որուն մէջ կը խոստանար իր երկրին նոր սահմանադրութիւն մը տալ, Իտալական գոյները (երեքգունեայ դրօշն) ընդունիլ ու Սարդինիայի հետ դաշնակից ըլլալ: Բայց Տոսկանացիք Իտալացի հայրենասէրներուն գրգռութեամբը միտուընին հաստատած էին Լոթարինգեան-Աւստրիական ազգատոհմին իշխանները հեղ մը Տոսկանայի գահէն հեռացընել: Ուստի երբ որ իմացան որ Վիլլաֆրանգայի դաշինքը նոյն մեծ դուքսին նորէն Տոսկանայի գահը դառնալը որոշած է, Ռիքասոլի պաշտօնէին առաջնորդութեամբը յայտնի ըրին որ Տոսկանա զմեծ դուքսը չ'ընդունիր ու կ'ուզէ Սարդինիայի հետ միանալով՝ անոր թագաւորին իշխանութեան տակ մնալ: Թէպէտ եւ Նաբոլէոն Գ. իր Փլորենտիա նստող դեսպանին ձեռքովը Տոսկանացւոց ծանոյց որ Վիլլաֆրանգայի դաշին համաձայն պէտք է որ վարուին, սակայն Ռիքասոլի ու անոր խորհրդակիցներն աս ազդարարութեան ականջ

չգնելով (Օգոստ. 10ին) առհմանադիր ժողով մը գումարեցին, ուր եկան ժողվեցան երկրին երեւելի մեծամեծներէն 168 հոգի իբրեւ պատգամաւորներ. Ռիգազոլի խօսակցութիւն մը ըրաւ ու իշխաններէն մէկը ժողովոյն առջեւը դրաւ Լօթարինգեան-Աւստրիական իշխաններուն կամ արքեդուքսերուն Ցոսկանայի գահէն մերժուելուն վճիռը։ Քանի մը օր ետքը (Օգոստ. 16.) նորէն ժողվեցան ու նոյն վճռոյն վրայ խօսուելէն ետքը՝ քուէ ձգուեցաւ ու ամենուն քուէներովը նոյն մերժման վճիռն ընդունուեցաւ։ Անկէց ետքը քանի մը օրուան մէջ խորհուրդ ընելով հաստատուեցաւ որ Ցոսկանայի երկիրը Սարդինիայի տէրութեան հետ միանայ ու Վիկտոր Էմմանուէլ Բ. թագաւորին իշխանութեան տակ ըլլայ։

Ցոսկանայի մէջ եղածներուն նման նա եւ Մոտենայի ու Բարմայի դքսութիւններուն մէջ ու քահանայապետական երկրին Ռոմանեա գաւառին (Ռաւեննա, Ֆորլի) ու Պոլոնեայի մէջ ալ եղան։ Աս երկիրներուն մէջ քաղաքացիք Վիլլաֆրանգայի դաշին պայմաններուն վրայ գոհ չըլլալով՝ առանձին ժողովներով որոշեցին՝ իրենց մինչեւ ան ատենուան օրինաւոր վեհապետները մերժել ու Սարդինիայի հետ միանալով Վիկտոր Էմմանուէլ թագաւորին իշխանութեան տակ մտնել։ Գաղղիայի կայսրն այս ամենայն իմանալով եւ ուզելով ի սկզբան անդ կամ արտաքուստ ցուցընելով որ կ'ուզէ Վիլլաֆրանգայի դաշին պայմանները ճշդութեամբ պահել տալ, Դուրինի դահլճին ազդարարութիւն ըրաւ՝ որ չըլլայ թէ դքսութիւններուն ու Ռոմանեայի ժողովրդոց ընտրութիւնն ընդունի եւ զանոնք Սարդինիայի հետ միացած սեպէ։ Աս պատճառաւ Վիկտոր Էմմանուէլ թագաւորը չկրնալով իր հզօր դաշնակցին կամացը յայտնապէս հակառակիլ՝ ուրիշ ճամբայ մը ընտրեց, որ կարենայ միջին Իտալիայի տէրութեանց

ժողովուրդներուն դատը վարելով կամ անոնց ուզածն օրինաւոր ցուցընելով՝ զանոնք իր իշխանութեան տակ առնուլ։ Ուստի Եւրոպայի տէրութեանց այսպէս գրեց։ “Եւրոպա չիկրնար Տոսկանայի, Բարմայի, Մոտենայի ու Ռոմանեայի համար նորոգութեան գործքը կատարելէն հրաժարիլ, զոր որ ուրիշ աւելի աննպաստաւոր պարագաներու մէջ՝ Ցունաստանի, Բելգիքայի ու Դանուբեան իշխանութեանց՝ Վալաքիայի ու Մոլտաւիայի՝ համար կատարեց։ Իտալիայի բնակիչներն այն առաքինութիւններուն վրայ՝ զորոնք տառապանաց դպրոցին մէջ սորվեցան, պիտ՚որ աւելցընեն նա եւ այն առաքինութիւնը՝ որն որ շատ դժուարին փորձերուն ալ կրնայ յաղթել, որ է՝ յարատեւութիւնը, եւ առով պիտ՚որ ապահովցընեն իրենց ամէն արդար ձեռնարկութիւնները ,,։

Տոսկանայի սահմանադրական ժողովը Վիկտոր Էմմանուէլին այսպիսի խօսքերն իբրեւ իրենց լրած ընտրութեան ու առաջարկութեան ընդունելութիւնը սեպելով՝ սահմանեց որ հրապարակական ուրախութեան հանդէսաներ կատարուին։ Անկից ետքը սկսաւ իր ամէն վճիռներն ու հրամանները նոյն Վիկտոր Էմմանուէլին անուամբը հրատարակել, հիւսիսային Իտալիայի (Սարդինիայի տէրութեան) հետ եղած մաքսի կարգերը ջնջեց, Սարդինիայի մաքսական օրէնքները հաստատեց, Տոսկանայի դրամները ժողվեց վերցուց եւ Վիկտոր Էմմանուէլին անուամբն ու պատկերովը նոր դրամներ կոխեց։

Իտալիայի այլ եւ այլ կողմերն այսպէս Վիլլաֆրանգայի խաղաղութեան դաշին պայմաններն արհամարհուած ու մերժուած ատենը, յառաջագոյն երկու կայսերաց մէջ եղած խօսակցութեան համաձայն՝ Աւստրիայի, Գաղղիայի ու Սարդինիայի կողմանէ նշանաւոր անձինք լիազօր իշխանութեամբ Հելուետիայի Զիւրիխ

քաղաքը (Օգոստ. 8.) եկան դեսպանաժողովը սկսան՝ նոյն Վիլլաֆրանգայի խաղաղութեան դաշինն պայմաններուն վրայ խորհելու եւ զանոնք հաստատուն հիմանց վրայ ամրացընելու համար։ Ժողովքին քննութիւններն ու խորհուրդները այլ եւ այլ կնճռոտ խնդիրներու հանդիպելով, մանաւանդ Իտալիոյ դքսութեանց ու Թոսքանեայի իրենց օրինաւոր վեհապետներուն ետ դարձուելուն նկատմամբ, սկսած գործքերնին չէին կրնար յառաջ տանիլ ու շուտով լմնցընելու յոյսն օրէ օր աւելի կը տկարանար։ Վերջապէս ամբողջ երեք ամիս խորհուրդ ընելէն ու Աւստրիոյ եւ Գաղղիոյ վեհապետաց ու դաշնակիցներուն կարծիքն ու հրամաններն ընդունելէն ետքը՝ վերջապէս (Նոյ. 10.) երեք տէրութեանց երեսփոխանները կամ դեսպանները խաղաղութեան դաշինքն իրենց ստորագրութեամբը հաստատեցին ու դեսպանաժողովին վերջ տուին։ Աս դաշանց գլխաւոր յօդուածն է՝ Լոմպարտիոյ մեծ մասին՝ բաց ի Մանդուա ու Բեսքիերա բերդերէն իրենց սահմաններովը մէկտեղ՝ Աւստրիոյ կայսրէն Գաղղիոյ կայսեր տրուիլը, որն որ զանիկայ (Լոմպարտիա) Սարդինիոյ թագաւորին կը պարգեւէ։ Այսպէս Լոմպարտիոյ գլխաւոր մասը Սարդինիոյ թագաւորին անցնելէն ետքը՝ Աւստրիոյ կայսեր Իտալիոյ մէջ ունեցած երկրին սահմանները կ'ըլլան Լոմպարտիոյ կողմանէ Կարտա լճին կէտէն սկսած դէպ ի Բոյ եղած տեղերը՝ Մինչիոյ գետին ձախ եզերքաց վրայ գտնուած քիչ մը երկիրով մէկտեղ։ Աւստրիա իրեն տուած երկրին գինովը իբրեւ հատուցում Սարդինիոյէն հարիւր միլիոն Փրանգ պիտ՚որ ընդունի. որուն վճարման համար Գաղղիոյ տէրութիւնը երաշխաւոր կ'ըլլայ։ Միւս յօդուածներէն մէկ քանին Իտալիոյ դուքսերուն իրենց գահերը դառնալուն վրայ էին, եւ աս բանիս գործադրութիւնն Աւստրիոյ ու Գաղղիոյ

տէրութեանց խնամոցը յանձնուեցաւ։ Քանի մը յօդուածներ ալ ամէն իտալական տէրութեանց դաշնակցութեան վրայ էին, որուն գլուխ ելլելը դուքսերուն իրենց գահերը դառնալէն կախում ունենալուն՝ մի եւ նոյն պայմանով ապագայ դեսպանաժողովի մը մէջ պիտ'որ որոշուէր։ Ինչպէս աս նկատմամբ՝ նոյնպէս ուրիշ քանի մը Իտալիայի ներքին կառավարութեան վերաբերող խնդիրներուն նկատմամբ ալ դաշինքն ամէն բան ապագայ դեսպանաժողովին կը թողուր։ Մինչեւ հիմայ գրածներնէս, ինչպէս նա եւ յաջորդ դէպքերէն յայտնի կը տեսնուի՝ որ Վիլլաֆրանգայի դաշին ու անոր համեմատ Զիւրիխի դեսպանաժողովին որոշմունքներէն Իտալիայի խաղաղութեան մեծ օգուտ մը չըլլալէն ի զատ, Իտալացւոց մեծ մասը նոյն դաշանց պահպանութեան ամենեւին փոյթ չէր տաներ։ Գաղղիայի կամ Նաբոլէոն կայսեր կողմանէ ալ դաշանց պայմաններուն ճշդութեամբ պահուելուն համար հարկաւոր եղած խնամքը չէր ցուցուեր. աս պատճառաւ ոչ դուքսերուն իրենց գահերը դառնալուն եւ ոչ քահանայապետական իշխանութեան Ռոմանեայի՝ մանաւանդ Պոլոնեայի մէջ ճանչցուելուն ու հաստատուելուն յոյս մը կ'երեւար։ Իտալիայի հայրենասէրներն ալ տեսնելով՝ որ գահերնէն հեռացած դուքսերուն նպաստելու համար դաշինք դնող տէրութիւնները խիստ միջոցներ չեն բանեցըներ, Անգղիայի ինչպէս Գաղղիայի մէջ քանի մը կողմնակցութիւններ Իտալիայի անկախութեան յաջողելուն կը բաղձան ու ձեռնտու կ'ըլլան, գումարուելու դեսպանողովին ալ անստոյգ բան մըն է, ամէն վախն ու զգուշութիւնը մէկդի կը թողուն ու Իտալիայի այլ եւ այլ տէրութիւնները Սարդինիայի թագին տակ ժողվելու եւ միակ թագաւորութիւն կազմելու խորհուրդն ու ջանքը յառաջ կը տանէին։

Թէպէտ եւ պատերազմը լմննալէն ետքը Գաղղիացւոց զօրքերուն մեծ մասն իրենց երկիրը դարձած էր, բայց 60,000ի չափ զօրք Լոմպարտիայի, Սարդինիայի ու Հռոմայ երկրին մէջ մնաց՝ ըստ երեւոյթի Իտալացւոց յանկարծական գրգռութիւններն արգելելու համար. բայց անոնց՝ Իտալիայի անկախութիւնը յառաջ տանելու ջանքն ամենեւին չէին խափաներ։ Նոյն վախճանի համար Կարիպալտին ալ իր ձեռաց տակ խել մը ազատակամ զօրք ժողված պատրաստ կը կենար՝ որ յարմար ատեն գտնելուն պէս Հայրենասէր Իտալացւոց բաղձանացը համաձայն յառաջ քալէ, Հռոմայ երկրին եւ Նէապոլսոյ տէրութեան վրայ յարձակի ու հոն ալ Իտալիայի միութեան խորհուրդը յաջողցընելու աշխատի։ Տոսկանայի կառավարութիւնը զինուորական կարգաւորութեանց նկատմամբ դքսութիւններուն ու Ռոմանեայի հետ նիզակակցութիւն (ligue) մը հաստատելով՝ Ֆանդի զօրապետին առաջնորդութեամբը 50,000ի բանակ մը պատրաստեց։ Դուրինի կառավարութիւնն ալ՝ Թէպէտ եւ Նաբոլէոնին ազդարարութեան համաձայն դքսութիւնները Սարդինիայի հետ միացած չէր բռներ, սակայն անոնց ամենուն վրայ Գարինեանի իշխանը գլուխ կամ կառավարութեան գահերէց դրաւ։ Բայց Գաղղիա ու նոյն իսկ Տոսկանայի պաշտօնարանն աս բանիս ընդդիմանալուն՝ հարկ եղաւ որ Դուրինի դահլիճը դքսութիւններուն ու Ռոմանեայի նիզակակցութեան ընդհանուր կառավար դնէ Պոնգոմբանեի ասպետը. սակայն Ռիգազոլին միշտ Տոսկանայի պաշտօնէից գահերէց մնաց, իսկ Ֆարինի միւս երեք դքսութիւններուն վրայ հրամանատար եղաւ. եւ ամէնքը միատեղ Իտալիայի տէրութիւնները միացընելու խորհուրդն այնպիսի եռանդմամբ կը տարածէին՝ որ գեղացիներն իսկ Իտալիայի միակ թագաւորութիւն ըլլալն

իրենց երջանկութեան լուծը կարծելով իրենք ալ նոյնին յաջողութեան ձեռնտու կ'ըլլային։

Քահանայապետական երկրին մանաւանդ Ռոմանեայի գաւառներուն մէջ օրինաւոր վեհապետը թող տալու եւ Սարդինիայի հետ միանալու ջանքը օրէ օր այնչափ կը սաստկանար՝ որ Անգոնայի եւ Ումպրիայի ժողովուրդն ալ ոտք ելլելով՝ Ռոմանեայի հետ միանալ ու Սարդինիայի իշխանութեան տակ մտնել կ'ուզէր։ Աս գրգռութիւններուն ու ջանքին համեմատ ու Հռոմայեն բազմութեամբ եկող փախստականներուն յորդորանքէն շարժելով Կարիպալտի կը պատրաստուէր իր ազատական գունդերովը Հռոմայի երկիրը մտնել ու մայրաքաղաքին վրայ քալել. բայց Դուրինի կառավարութիւնն իրեն հրաման խաւրեց որ աս խորհուրդէն ետ կենայ։ Քահանայապետական կառավարութեան ամէն յորդորանքն ու ջանքը եւ նոյն իսկ ապստամբութիւն գրգռողներուն վրայ քահանայապետին բանադրանք կարդալը տաքցած գլուխներն աւելի կը գրգռէին քան թէ կը հանդարտեցընէին։ Աս միջոցիս կամ 1859 տարւոյն վերջերն Եւրոպայի մանաւանդ Իտալիայի մէջ ամէն մարդ կը սպասէր շատոնցուընէ ի վեր խօսուած դեսպանաժողովոյն, որն որ յաջորդ (1860) տարւոյն սկիզբը Փարիզի մէջ պիտ'որ գումարուէր՝ Իտալիայի վրայ ըլլող խնդիրները կարգի դնելու համար։ Աս վախճանաւ Եւրոպայի հինգ մեծ տէրութիւններն իրարու հետ խորհուրդ ու բանակցութիւն ընելով՝ կը ջանային գլխաւոր նիւթերու մէջ իրարու հետ միաբանիլ։ Եւ ի սկզբան կ'երեւար որ դժուարութիւններն ըստ մեծի մասին դիւրինցած են, անանկ որ նոյն իսկ քահանայապետին գլխաւոր պաշտօնեան Անդոնելլի կարդինալը Փարիզ գումարուելու դեսպանաժողովին երթալու կը պատրաստուէր։ Մէյ մ'ալ Փարիզ փամֆ-

Պապականն ու դեսպանաժողովը* անունով տետրակ մը հրատարակուեցաւ, որուն խօսքերուն ընթացքն ու ոճը, պաշտպանած սկզբունքն ու բոլոր դիտումը՝ յայտնի կ՚ընէր՝ որ քահանայապետին աշխարհական իշխանութիւնը ալ չկրնար հաստատուն մնալ. պէտք է որ քահանայապետը միայն Հռոմ քաղաքն ունենայ ու իրեն տարեկան եկամուտք մը կազմուի ու նոյն իսկ Հռոմ քաղքին ալ աշխարհական կառավարութիւնը բնակչաց մէջէն ընտրուած անձինքներուն ձեռքն ըլլայ։ Աս էր նոյն նշանաւոր տետրակին գլխաւոր նիւթն ու նպատակը, եւ այս գրուածքն՝ ինչպէս ամէն մարդ յայտնի իմացաւ՝ Նափոլէոն կայսեր խորհրդովը ու հաւանութեամբը յօրինուած ըլլալուն՝ ամէն տեղ հազարաւոր խորհրդածութեան ու խօսքերու առիթ տուաւ։ Բայց տետրակին ամենէն աւելի մեծ ազդեցութիւնն ան եղաւ որ Հռոմայի կառավարութիւնն ու Աւստրիայի դաշնակիցը Նափոլէոնին ներքին խորհրդոցը թափանցելով՝ գումարուելու դեսպանաժողովին մասնակից ըլլալէն բոլորովին հրաժարեցան, ուստի եւ անկից ետքը ալ այնպիսի ժողովի մը խօսքը վերջացաւ։

Անկից ետքը սկսաւ Սարդինիայի գլխաւոր պաշտօնեան Գավուր կոմսը միջին Իտալիան Սարդինիայի հետ միացընելու խորհուրդը սաստկութեամբ պաշտպանել ու ի գործ դնելու ջանալ։ Աւստրիա թէպէտ եւ նոյն խորհրդին բոլորովին հակառակ էր, բայց Իտալիայի մէջ իր ձեռքը մնացած տեղերն ամէն հսկողութեամբ պահելէն ի զատ՝ դքսութիւններուն ու Ռոմանեայի՝ ինչպէս նա եւ Հռոմէն դուրս քահանայապետական բոլոր երկրին՝ իրենց օրինաւոր վեհապետներուն ձեռքը յանձնուելուն համար ալ չէր ուզեր նոր պատերազմ մը բանալ ու արիւնհեղութիւնները նորոգել։ Այնպէս եւ Ռուսիա ու

* Le Pape et le Congrès.

Պրուշ բուն խնդիրն իրենց համար մտադրութեան արժանի չսեպելով՝ եղածներուն ու ըլլալիքներուն դրեթէ լռութեամբ հանդիսատես կ'ըլլային։

Գրանք Գաղղիայի կամ Նաբոլէոն կայսեր ու Անգղիայի կառավարութեանց. աս երկու տէրութիւններն իրարու հետ Իտալիայի նկատմամբ բանակցութիւններ ընելով՝ իրենց կարծիքը մէկմէկու հաղորդած էին։ Անգղիա Վիլլաֆրանգայի դաշինքէն ետքը իր քաղաքականութիւնն Իտալիայի նկատմամբ անմիջամտութեան սկզբանց վրայ հաստատ պահելով՝ յայտնի կը ցուցընէր որ Իտալիայի տէրութեանց Սարդինիայի թագին տակ մէկ թագաւորութիւն ըլլալն իրեն շատ հաճոյական դէպք մըն է։ Նոյն տէրութիւնն Իտալիայի վրայ ունեցած խորհուրդները չորս յօդուածի մէջ կը բովանդակէր, Ա. անմիջամտութեան սկիզբը հաստատ բռնուի, Բ. Հռոմայէն ու Հռոմայի երկրէն օտար զօրքերը դուրս ելլեն, Գ. Աւստրիայի իշխանութեան տակ մնացող Վենետական երկրին նոր սահմանադրութիւն մը տրուի ու Գ. միջին կամ կենդրոնական Իտալիան (ամէն մէկ տէրութեան բնակչաց նորէն քուէարկութիւն ընել տալէն ու բաղձանքներն իմանալէն ետքը) միացուի, — Սարդինիայի հետ մէկ թագաւորութիւն ըլլայ։ Գաղղիան արդէն մէկ քանի զիջմունքներով Վիլլաֆրանգայի դաշինն պայմաններէն խոտորած ըլլալով Անգղիայի աս վերջիշեալ առաջարկութիւններուն կամակից եղած էր. միայն Տոսկանայի մեծ դքսութեան նկատմամբ թէութիւն մը կը դնէր՝ որ եթէ նոյն երկիրը բնակչաց միաբան քուէներովը Սարդինիայի հետ միանալ կ'ուզէ, մերժուած մեծ դքսին ուրիշ երկիրով մը հատուցում ըլլայ։

Գաղղիայի այսպիսի խորհուրդներն ու որոշումը տէրութեան արտաքին գործոց պաշտօնեան Թուվընէլ

ծանուցագրով մը (1860. փետր. 24.) Դուրինի դահլճին յայտնի ըրաւ։ Այս գրին վերջը պաշտօնեան հետեւեալ յայտարարութիւնն ալ աւելցուց. «Իտալիայի այլ եւ այլ տէրութիւնները միանալով՝ Գաղղիայի հարաւային սահմանագլխոյն վրայ հզօր թագաւորութիւն մը կանգնուիլը կը պարտաւորէ զկայսերական կառավարութիւնն որ իր պաշտպանութեան ու ապահովութեան համար սահմանին խնամ տանի, ուստի եւ Սաւոյայի ու Նիսայի բնակչաց յայտնի բաղձանացը համեմատ՝ կը պահանջէ որ Սարդինիայի տէրութեան սա երկու երկիրները Գաղղիայի երկրին հետ միանան,,։ Գաղղիա կամ Նաբոլէոն կայսրն Իտալիայի թագաւորութեան կանգնուելուն հաւանելու համար Սարդինիայի երկրէն մէկ մասն ուզելովը՝ իր զէնուց զօրութեամբը նոյն երկրին ըրած օգնութեան հատուցումը կը պահանջէր, կամ ինչպէս ոմանք ըսին, ասով տեսակ մը տուրեւառ կ՚ընէր։

Սարդինիա Գաղղիայէն ընդունած օգնութիւնը յիշելով՝ չէր կրնար Նաբոլէոնին առաջարկած կամ պահանջած վարձքը զլանալ. անոր համար կառավարութեան գլխաւոր պաշտօնեան Գաւուր կոմսը յանուն թագաւորին Գաղղիայի պաշտօնէին (Մարտ 2.) պատասխանեց՝ որ եթէ Սաւոյայի ու Նիսայի բնակիչքը միաբանութեամբ կը բաղձան Գաղղիայի հետ միանալ՝ Սարդինիայի կառավարութիւնը ժողովրդեան կամքը յարգելով պէտք է որ իր հաւանութիւնը տայ։ Թէպէտ եւ Գաւուր Սաւոյայի ու Նիսայի Գաղղիացւոց տրուելուն վրայ սա խոստումն ըրաւ, բայց ետքը Դուրինի խորհրդանոցին մէջ ասոր վրայ սաստիկ վէճեր եղան, նա եւ Իտալացւոց մէջ ալ հասարակ մեծ տրտունջներ լսուեցան՝ Իտալիան օտար իշխողներէն ազատելու եւ միակ անկախ թագաւորութիւն ընելու ջանացուած ատեն՝ անոր մէջէն այսպէս ամբողջ նահանգի

մը (Սաւոյայի) ու նշանաւոր քաղքի մը (Նիսայի) օտար տէրութեան մը տրուելուն վրայ։ Սակայն բոլոր Իտալիա բնաւական ոյժ կամ համարձակութիւն չունենալով Գաղղիայի կամ Նաբոլէոնի պէս հզօր հարկապահանջի մը կամացը դէմ կենալու, հարկ եղաւ ամէն իրաւունքէն հրաժարելով այն ուզուած տեղերն Իտալիայի ազատիչ անպուող Գաղղիային յանձնել։ Ուստի եւ (Մայ. 25.) Դուրինի խորհրդարանցին երկու հարիւր ութսուն ու եօթն անդամներուն մէջէն երկուհարիւր քսան ու ինը հոգի նոյն պահանջման գիջանելով՝ տուչութեան դաշինքը հաստատեցին։ Իսկ Տոսկանայի մէջ (Մարտ 11. 12.) նորէն քուէարկութիւն ըլլալով՝ գրեթէ 250,000 քուէով բոլոր ժողովուրդն իր կամքը յայտնեց՝ որ Տոսկանայի երկիրը Սարդինիայի հետ միանալով մէկ թագաւորութիւն ըլլայ։ Ասոր վրայ Վիկտոր Էմմանուէլ Բ. այլ եւ այլ վճիռներով (Մարտ 11—25.) կեդրոնական Իտալիային չորս տէրութեանցն իրարու հետ միանալը (annexion) վաւերացուց ու հրատարակեց։ Քանի մը օր ետքը աս նոր միացեալ թագաւորութեան խորհրդարանը Դուրինի մէջ (Ապր. 2.) բացուեցաւ, ուր եկան Փլորենտիայի (Տոսկանայի), Պոլոնեայի, Բարմայի ու Մոտենայի պատգամաւորները՝ իբրեւ խորհրդանոցի անդամներ։

Հիւսիսային կամ վերին ու միջին Իտալիայի մէջ վերջին մեծ պատերազմէն առաջ ու ետքը եղած շփոթութեանց, փոփոխութեանց ու մեծամեծ դէպքերուն իրարու յաջորդած ատենը՝ հարաւային կամ ստորին Իտալիայի՝ այսինքն Նէապոլայ ու Սիկիլիայի երկիրներուն կամ երկու Սիկիլիայի թագաւորութեան մէջ ալ շփոթութիւններ պակաս չէին ու աւելի եւս շփոթութեանց ու մեծամեծ դէպքերու պատրաստութիւնները կ'երեւային։ — Տեսանք՝ որ Իտալիայի երեք դքսութեանց ու

Ռոմանեայի երկիրներուն Սարդինիայի հետ միանալուն վրայ իւրաքանչիւր տեղւոյ ժողովրդոց մէջ մեծ հակառակութիւն մը չելլելով՝ ամէն բան առանց զինուց լմնցաւ: Նա եւ Սաւոյայի ու Նիսայի երկիրներուն Գաղղիացւոց տրուելուն վրայ ի սկզբան մեծ շփոթութիւն չելլած՝ տուչութիւնը գրեթէ լռութեամբ կատարուեցաւ: Սակայն աս վերջին դէպքն՝ այսինքն Սաւոյայի ու Նիսայի՝ Իտալիայի նոր թագաւորութեան երկրէն դուրս ելլելը Հայրենասիրաց սրտին մէջ մեծ վէրք բանալով՝ զիրենք խիստ զայրացուց ու նոր խռովութիւններ պատճառեց:

Բոլոր 1859 տարին կամ մեծ պատերազմին ատենները Մածծինի Իտալիայի տեսարանէն ետ քաշուած լուռ կը կենար. բայց Իտալիայի երկրին քանի մը գաւառներուն՝ Սարդինիայի կառավարութեան հաւանութեամբն ու վճռովն օտարացուիլը զինքն ու իր գործակիցները ոտք հանեց: Ասոնք բարձրաձայն կ'աղաղակէին թէ ան մարդիկը՝ որոնք օտարականներուն կը նպաստեն ու իտալական գաւառներն օտարի կու տան եւ իրենց այսպիսի ակարութեամբը զԻտալիա կը ցածցընեն ու կ'անպատուեն, հայրենասէր չեն հապա ծպտեալ Պոնաբարդեանք ու դեսպանագիտաց շողոմաքորթներն են: Աս մարդիկը հեղ մը այսպէս ոտք ելլելէն ետքը՝ ալ անգործ մնալ չէին ուզեր. բայց վերին ու միջին Իտալիայի մէջ միութիւնը բաւական յառաջացած ըլլալով ու Նաբոլէոնին եւ Անգղիայի դիտաւորութիւնն ու ջանքն ալ ճանչնալով՝ որ ստորին կամ հարաւային Իտալիայի իշխողներուն, այսինքն Հռոմայի քահանայապետին ու Նէապոլսոյ թագաւորին երկիրներուն ալ նոյն միութեան մէջ մտնելուն հակառակ չէին, սկսան յեղափոխութիւնը նոյն հարաւային գաւառներուն մէջ ալ տարածելու հնարքները բանեցընել:

Աս գործքին ու ջանքին մէջ Մածծինիին ու Կարիպալտիին կողմնակցութիւնները միաբանած էին*. Սարդինիայի մէջ ալ շատերը՝ նոյն իսկ խորհրդանոցին անդամներուն մէկ մասը՝ անոնց կողմը բռնելով կը կարծէին որ մինչեւ որ բոլոր Թերակղզին չմիանայ մէկ տէրութիւն չըլլայ, Իտալիայի նոր Թագաւորութիւնն ամբողջ չիտեւուիր ու չիկրնար հաստատ ըլլալ, ուստի եւ պէտք է ջանալ, կ'ըսէին, հարաւային Իտալիան ալ աս Թագաւորութեան մասն ընել: Արդէն աս նոր Թագաւորութեան երկրին մէջ շատ մը Հռոմայեցի, Նէապոլսեցի ու Սիկիլիացի փախստականներ եկած լեցուած էին ու ամենուն սիրտ կու տային՝ հարաւային Իտալիան ալ որպիսի եւ իցէ միջոցներով Իտալիայի Թագաւորութեան մէջ առնուլ: Ի վերայ այսր ամենայնի երբ որ Կարիպալտի, որն որ միջին Իտալիայի Նիզակակցութեան զօրաց մէկ մասին հրամանատարն էր, իր զօրքը քահանայապետական երկրին մէջ Անդոնայի մարզը մտնելու կը պատրաստուէր, Սարդինիայի դահլիճը նոյն ատեն պատշաճ չսեպեց անոր աս բանիս հրաման տալ: Ասոր վրայ ինքն ալ հրամանատարութիւնը թող տալով՝ իր կողմնակիցներէն Զինեալ ազգ անուանով կազմուած ընկերութեան գահերէց եղաւ ու յարմար ժամանակի կը սպասէր իր ազատական զօրքովը զինուորական գործողութիւնները սկսելու, այսինքն դէպ ի Հռոմայ երկիրը կամ նա եւ Նէապոլսոյ սահմանէն անդին ալ արշաւանք ընելու:

* Մածծինի թէպէտ եւ իր սկզբնական գաղափարին՝ այսինքն բոլոր Իտալիա միակ հասարակապետութիւն ընելու վրայ միշտ հաստատ էր. բայց աս ատեններս անոր միակ սահմանադրական Թագաւորութիւն ըլլալուն չէր ուզեր հակառակիլ, որովհետեւ կը յուսար՝ որ բոլոր Իտալիա մէկ տէրութիւն ըլլալէն ետքը՝ ատենօք նոր յեղափոխութեամբ մը զանիկայ հասարակապետութեան փոխելը դիւրին կ'ըլլայ:

‘Նէապոլսոյ տէրութեան վրայ Իտալիոյ ուրիշ կողմերն եղած դէպքերուն՝ վերջի (1859ին) մեծ պատերազմէն ալ առաջ՝ մնայական ազդեցութիւն ընելն անտարակուսելի բան մըն է. սակայն իր մէջն ալ անհանդարտութեան ու տժգոհութեան նշանները պակաս չէին։ Բարձրագոյն կարգի ժողովուրդը քիչ մը Փերդինանդոս Բ. Թագաւորին բռնած խիստ ընթացքէն ու ամէն դի Թագաւորական պաշտօնատէրներուն՝ գեղացւոց ու ցած ժողովրդեան ձեռքովն ի գործ դրած հարստահարութիւններուն պատճառաւ, քիչ մ՚ալ Իտալացի հայրենասիրաց դրդութիւններէն շարժած՝ ապստամբելու բաղձանքէն բոլորովին ազատ չէր։ Իրերը կամ օդիններն աս վիճակի մէջ գտնուած ատենը՝ Փերդինանդոս Բ. Սոլֆերինոյի պատերազմին օրերը (1859. Մայիս 22.) վախճանեցաւ ու իր գահը նստաւ իր անդրանիկ որդին Փրանկիսկոս Բ. (Ծն. 1836. Յունու. 16.) որն որ հազիւ չորս ամիս առաջ (1859. փետր. 2.) Պաւիերայի Մաքսիմիլիանոս դուքսին Մար. Սոփ. Ամալիա դստեր հետ (Ծն. 1841. Հոկտ. 4.) ամուսնացած էր։ Ամէն մարդ կը կարծէր ու կը յուսար՝ որ երիտասարդ Թագաւորն իր հօրը բռնած խիստ ընթացքէն օտար ընթացք մը պիտ՚որ բռնէ ու չափաւոր ազատասէր Իտալացւոց կողման նպաստելով տէրութիւնը նոր ու ազատական կարգերով պիտ՚որ կառավարէ։

Մեծ պատերազմը լմննալէն ետքը Վիկտոր Էմմանուէլ Սարդինիայի Թագաւորն իրեն թուղթ մը գրեց ու զինքը կը յորդորէր՝ որ իրեն հետ միաբանի ու Իտալիան նոր եռանդեամբ օտարաց (Աւստրիայի) ձեռքէն ու ազդեցութենէն բոլորովին ազատէ։ Բայց երիտասարդ Թագաւորն այսպիսի խորհուրդներուն ու յորդորանքներուն ամենեւին ականջ չդնելով՝ ի սկզբան իր հօրը դրած կարգերէն ամենեւին հեռանալ չէր ուզեր։ Սակայն Փեր-

դինանդոս Բ. մեռնելէն ետքը իր հզօր ազդեցութիւնն ու ամենուն սիրտը դրած վախը տկարացած ըլլալով, յեղափոխական խլրտմունքը հպատակաց մէջ յաճախելու սկսած էին։ Ստորին ժողովուրդն իսկ այնչափ մեծ սէր չէր ցուցըներ Թագաւորական տան վրայ, ինչպէս ուրիշ ատեններ։ Ասով հարուստ քաղաքացիներուն, ազնուականաց ու մանաւանդ ազնուապետաց սիրտը մեծ վախ ինկաւ՝ որ յեղափոխութիւն մը փրթելով՝ իրենք ամենէն առաջ վնաս կրեն։ Զինուորականաց մէջ ալ սկսան շփոթութիւններ ելլել. Հելուետացի վարձկան զօրքը քանի մը անկարգ պահանջումներ ընելուն՝ Թագաւորը ստիպեցաւ զիրենք իր ծառայութենէն հանել արձակել։ Այսպէս օրէ օր ապստամբութեան վախն աւելնալով՝ պաշտօնեաններն անոր առջեւն առնելու համար խիստ միջոցները սաստկացընելու կը ջանային։

Աս նոր խստութիւնն այլ եւ այլ տէրութեանց՝ մանաւանդ Գաղղիոյ ու Անգղիոյ՝ Նէապոլիս նստող դեսպանները ստիպեց Թագաւորին յայտնի ընել՝ որ այսպիսի խիստ միջոցներն իր գահն ու Թագը վտանգի մէջ կը դնեն։ Իսկ Թագաւորն իր ներքին խրատիչներուն խորհրդին հետեւելով դեսպաններուն յուսալից ու հանդարտեցուցիչ պատասխաններ կու տար։ Բայց սակայն օրէ օր աւելի յայտնի տեսնուող թշնամական ցոյցերն ու բերնէ բերան պտըտող տժգոհութեան՝ նա եւ սպառնալեաց խօսքերն արքունիքը վախի մէջ ձգելու սկսան։ Աս պատճառաւ տէրութեան մէջ նոր զօրք ժողվելէն զատ, նոր Թագուհին Գերմանացի ըլլալուն՝ Գերմանիայի մէջ ալ Նէապոլսոյ համար ազատակամ զինուորներ կը ժողվուէին ու կը խաւրուէին. նա եւ օտարազգի պաշտօնեականեր բանակին մէջ կ'առնուէին։ Ասանկով քիչ ատենւան մէջ 120,000ի բանակ մը կազմուելով՝ Թագաւորը

հրաման հանեց որ զօրաց մեծ մասն իր տէրութեան Ապրուցցի նահանգին մէջ կեդրոնանան։ Այս նահանգը Հռոմայ երկրին սահմանակից ըլլալուն՝ Ռոմանեայի բնակիչքը մեծ վախի մէջ ինկան կարծելով որ Նէապոլսոյ Թագաւորն իր բանակովը յառաջ պիտի քալէ՝ քահանայապետին իշխանութենէն դուրս ելած գաւառները զինուց զօրութեամբ անոր հնազանդեցընելու համար։ Բայց Թագաւորին միտքն աս չէր, հապա իր երկրին մէջ ելլելու ապստամբութիւնը խափանել ու դրսէն գալու Իտալացի խռովիչներուն դէմ պատրաստ գտնուիլ։

Այս ամէն պատրաստութիւնները Նէապոլսոյ ցամաք երկրին վրայ եղած ատենը՝ Սիկիլիա կղզւոյն վրայ շատոնցուընէ ի ծածուկ պատրաստուած ապստամբութիւնը հասուննալու կը մօտենար։ Հոն՝ (1859) սարդինիական-աւստրիական պատերազմը սկսելու ատենը՝ երիտասարդները սկսած էին պատերազմի պատրաստուիլ ու ապստամբութեան դրօշը տնկելու ճամբայ բանալ։ Երբ որ Վիլլաֆրանգայի խաղաղութեան դաշինքը դրուեցաւ՝ Սիկիլիացիք կ՚ուզէին ալ ապստամբութեան դրօշը յայտնապէս բանալ. բայց Սարդինիայի երկիրէն եկող խրատիչները նոյն ատեն իրենց խորհուրդ տուին որ քիչ մը ժամանակ ալ համբերեն մինչեւ որ միջին Իտալիայի գործքերը կարգի գրուին։ Սիկիլիացիք աս խորհուրդին համաձայն քիչ մը ատեն հանդարտ կեցան, բայց իրենց պատրաստութիւնները կը շարունակէին. իրենց դիտաւմն էր՝ Ապրուցցի նահանգին մէջ կեցող Նէապոլսոյ բանակին դէպ ի միջին Իտալիա յառաջ քալելու ատենը՝ բոլոր Սիկիլիա կղզւոյն վրայ ապստամբութիւնը սկսիլ “Կեցցէ Վիկտոր Էմմանուէլ ու Իտալիա„ պոռալով։ Եւ որովհետեւ տէրութիւնն ամէն դի իր լրտեսներն ունէր, անոր համար աս պատրաստութիւններուն վրայ տեղեկութիւն

տանելով՝ Սիկիլիայի ոստիկանութեան դաւերեցին ու անդրոյն զինուորական հրամանատարին ձեռքովը քըննութիւններ ընելով շատ մարդ-դուներց բանտ դրաւ, քանի մը հոգի ալ սպաննել տուաւ ու բոլոր կղզեցւոց սպառնացաւ որ ազատամտութեան նշաններ տեսած ատենը անխնայ կոտորած պիտի՛ որ ընէ։

Այս խիստ միջոցները քիչ ատեն կըցան ազատամտութիւնը խափանել. որն որ միշտ սկսելու վրայ էր, եւ վերջը (1860, Ապր. 3.) Պալերմոյի մէջ գիշերանց շշնկոց մը սկսաւ լուսին ու առաւուան դէմ բնակիչներն ազատամտաց դրօշակներուն հրամանաւ զարնուած զանգակներու ձայնով՝ յառաջագոյն որոշուածին համեման՝ ոտք ելան ու կ՚ուզէին քաղքէն դուրս վազելով գունդեր կազմել։ Բայց կառավարութիւնը բանն իմանալով շուտ մը զինուորները յառաջ քալեցուց ու խել մը մարդ ջարդել տուաւ։ Ասով ժողովուրդը ատանելով հանդարտեցաւ, բայց երիտասարդները չորս դին վազելով գեղացիները ոտք հանեցին ու զինուած քաղքին ու զինուորաց վրայ կը քալէին։ Զինուորներն ասոնք ալ, ինչպէս նա եւ ճամբան հանդիպող ուրիշ ապստամբներն ալ ջարդելով՝ ապըստամբութեան յառաջ երթալը առ ժամս խափանեցին։ Քիչ մը ետքը տէրութիւնը ցամաքէն շատ մը զօրք Սիկիլիա կղզին խաւրեց ու Պալերմոյ քաղաքը ամէն դիհաց պաշարեց, նա եւ նաւատորմիղն ալ նաւահանգստէն դուրս ելաւ ու կղզւոյն բոլորտիքը կը պտըտէր դրսէն ապստամբաց գալու օգնութիւնն արգելելու համար։

Այս ապստամբութեան լուրը Գենուայի մէջ գըտնուող յեղափոխականաց ժողովը լսելով՝ շուտ մը Կարիպալտիին աղաչեց իր ազատական գունդերովը Սիկիլիա անցնիլ ու ապստամբներուն օգնել։ Կարիպալտի ալ արշաւանքը յանձն առաւ ու քանի մը օրուան մէջ իրեն հետ

Մէկտեղ խել մը ազատական զօրք Գենուա ժողվուեցաւ։ Դուրինի կառավարութիւնն աս հեղու ալ արտաքուստ ուզեց Կարիպալտիին արշաւանքն արգելել. բայց Կարիպալտի գրեթէ ստոյգ գիտնալով՝ որ տէրութեան բուն բաղձանքը Նէապոլսոյ երկիրն ալ Իտալիոյ Թագաւորութեան մէջ առնել է՝ ընդունած հրամաններն չհնազանդեցաւ ու ձեռաց տակէն իր պատրաստութիւնը յառաջ տարաւ։ Հնարքով մը երկու սարդինիացի շոգենաւ ձեռք անցընելէն ետքը (Մայիս 6.) գիշերանց իբր 1500 ազատական զինուորներով ան շոգենաւներուն մէջ մտաւ ու Գենուայի նաւահանգստէն դուրս ելաւ։ Ճամբան Տոսկանայի երկրին Դալամոնէ նաւահանգիստը հանդիպելով խել մը զէնք ու չորս թնդանօթ ու քիչ մ՚ալ զօրք առաւ։ Վերջապէս Նէապոլսոյ նաւերուն հսկողութիւնը խաբելու համար Անգղիոյ դրօշ բանալով ու Սիկիլիոյ մօտեցած ատենը երկու անգղիացի նաւերէն պաշտպանուելով՝ (Մայ. 12.) կղզւոյն Մարսալա նաւահանգիստը հասաւ ու իր զօրքովը ցամաք ելաւ։ Բայց պատերազմի պաշարը շոգենաւներէն չհանած՝ Նէապոլսոյ պատերազմական նաւերը վրայ հասան՝ նաւուն մէկն ընկղմեցին մէկալն ալ գերի առին։

Կարիպալտի Սիկիլիոյ վրայ տեղացիներէն յուսացած ընդունելութիւնը գտնելով անոնց օգնութեամբը սկսաւ թագաւորական զօրաց պզտիկ բաժիններուն հետ զարնուիլ։ Քանի մը օր պզտիկ կռիւներով անցընելէն ետքը՝ (Մայիս 27.) Բալերմոյ քաղքին վրայ քալեց. եւ առտուան դէմ անոր մէկ դրան պահապաններուն յաղթելով ներս վազեց ժողովրդեան ձայն տալով որ շուտ մը ճամբաներուն վրայ պատնէշներ շինեն ու իրեն զօրացը հետ մէկտեղ թագաւորական զօրքը մերժեն։ Բնակիչքն ուրախութեամբ անոր ուզածը կատարելով սկսան պատնէ-

րազմիլ. Երկու օր Բալերմոյի փողոցներուն վրայ Թագաւորական զօրաց ու Կարիպալտեանց եւ բնակչաց մէջ սասկալի կռիւ ու կոտորած ըլլալէն եւ քաղքին շատ տեղերը կործանելէն ու այրելէն ետքը, օտար տէրութեանց բդեշխներուն միջնորդութեամբը (Մայիս 30.) քանի մը օրուան համար զինադադար եղաւ։ Կառավարութիւնք Բալերմոյի մէջ եղածներուն տխուր լուրն առնելէն ետքը պատշաճ սեպեց Թագաւորական զօրքը (իբր 20,000 հոգի) անկէց դուրս հանել, որովհետեւ զօրաց մէջն ալ անհնազանդութեան նշաններ կ'երեւային։ Կարիպալտիին աս յաջողակ գործքը Գենուա եւ ուրիշ տեղեր իրեն համար զօրք ժողվող գործակալներուն եռանդն աւելցուց, որոնք քիչ ատենուան մէջ 15,000էն աւելի ազատակամ զօրք ժողվեցին ու դէպ ի Սիկիլիա ճամբայ հանեցին։ Քանի մը հազար զօրք ալ պատրաստուեցան Հռոմայի երկիրը խառնելու համար։ Կարիպալտիին անունը չէ թէ միայն Իտալացի երիտասարդները հապա նա եւ Հունգարացի, Լեհ, նա եւ Անգղիացի ու Գաղղիացի բախտախնդիրները կը շարժէր իր ազատակամ զօրաց մէջ մտնելու եւ Իտալիայի ազատութեան համար պատերազմելու։ Կարիպալտի քիչ մը ատեն Բալերմոյ մնաց ու հոն բնակիչներէն հրամանատէր անուանուելէն ետքը քաղաքային կառավարութեան գործքը Սարդինիայէն եկող պաշտօնէի մը յանձնեց, որն որ (Օգոստ. 3.) հոն Սարդինիայի օրէնքը հաստատել ու հրատարակել տուաւ։ Իսկ ինք Կարիպալտի Բալերմոյէն ելաւ ու Մեսսինայի վրայ քալեց, հոն Թագաւորական զօրաց դէմ սաստիկ պատերազմ մը տալէն ետքը քաղաքն առաւ. բայց Մեսսինայի հզօր բերդը Թագաւորականաց ձեռքը մնաց։

Սիկիլիայի վրայ Կարիպալտիին ձեռքովն եղած տակնուվրայութիւնն ու փոփոխութիւնք Նէապօլսոյ կա-

ռազմավարութեան վրայ մեծ տրտմութիւն պատճառելէն զատ Նա եւ մեծ լքում ու վախ բերաւ։ Թագաւորը մեծ տէրութեանց դիմեց՝ որ իր դաշնին համաձայն միացեալ ձեռնտու ըլլան։ Նաբոլէոն կայսրը զինքը յորդորեց՝ որ Սարդինիայի հետ դաշնակցութիւն ընէ, Նէապոլսոյ ժողովըրդեան ազատութիւններ տայ ու Սիկիլիայի համար զատ կառավարութիւն մը սահմանէ։ Տէրութեան մէջ խիստ թագաւորականք սկսան ազատասիրաց կողման նպաստել ու թագաւորէն հեռանալու եւ անոր կողմը թող տալու նշաններ կը ցուցընէին։ Ասոր վրայ թագաւորն իր խորհրդականներուն խրատովը որոշեց իր մինչեւ ան ատեն բռնած կառավարութեան ընթացքը փոխել. ուստի (Յունիս 25.) յայտարարութիւն մը հրատարակեց, որով կը ծանուցանէր՝ թէ իր հպատակաց նոր սահմանադրութիւն մը կու տայ, Սիկիլիայի համար ալ զատ կարգեր ու առանձին փոխարքայ մը կը դնէ։ Ասկից ի զատ կը յայտնէր որ որոշած է Իտալական երեքգունեան դրօշը բանալ ու Գուրբին երկու հոգի խաւրած է որ իր անուամբը Վիկտոր Էմմանուէլին հետ դաշնակցութիւն ընեն։ Թագաւորին աս յայտարարութիւնն ու զիջումները ժողովրդեան վրայ ամենեւին ազդեցութիւն մը չըրաւ, գոհութիւն եւ ուրախութիւն մը չպատճառեց, որովհետեւ ազատասէրք ու յեղափոխականք յայտնի կը քարոզէին որ թագաւորն աս խոստմունքները ժամանակ վաստըկելու համար կ՚ընէ ու զանոնք պիտ՚որ չպահէ։ Նա եւ Գուրբինի դահլիճն իր առաջարկութիւնը չընդունեցաւ ու պահանջեց որ ինք առաջ իր տէրութեան մէջ խոստացած կարգերը հաստատէ ու անկից ետքն ուզած դաշնակցութեան վրայ խորհուրդ ըլլայ։ Ուրիշ կողմանէ ալ Նէապոլսեցի փախըստականք ամէն դի կ՚աշխատէին որ Նէապոլսոյ թագաւորն իր գահէն մերժուի ու տէրութիւնն Իտալիոյ թագա-

ութեան հետ միանայ։ Թէպէտ եւ Թագաւորին դրած նոր սահմանադրական պաշտօնեաները կը ջանային այլ եւ այլ ազատական նորոգութիւններու վճիռներ դուրս տալով ժողովուրդը գոհ ընելու, բայց աս վճիռներուն միտ դնող չկար։ Թագաւորը միշտ վախի ու տարակուսանաց մէջ ըլլալով ընելիքը չէր գիտեր, միայն իր զօրաց հաւատարմութիւնը քիչ մը զինքը կը զօրացընէր, որովհետեւ ինքն ալ միշտ կ'աշխատէր անոնց սիրելի ըլլալու, սակայն աս դիհաց ալ իր յոյսն ըստ մեծի մասին պարապի ելաւ։

Կարիպալտի, զորն որ Սիկիլիացիք կղզւոյն վրայ հրամանատէր դրած էին, իր ձեռաց տակ ըլլող զօրքը երեք բաժին ընելէն ու երեք հրամանատարներու տակ դնելէն ետքը, անոնցմով Նէապոլսոյ ցամաք երկիրն անցնելու պատրաստուեցաւ։ Աս զօրաց մէկ բաժինը (Օգոստ. 21.) նաւերով Սիկիլիայէն ելան ու Մելետոյի քով երեք հազար հոգի ցամաք հանեցին։ Ասոնք քիչ մը յառաջ երթալէն ետքը Ռիջջոյի քով եօթը հազար Թագաւորական զօրաց հանդիպեցան, որոնք (ինչպէս կ'երեւայ յառաջագոյն յեղափոխականներէն շահուած ըլլալով,) զէնքերնին թողուցին ու Կարիպալտեանք դիւրութեամբ Ռեճճիոյ քաղաքն առին։ Երկու օր ետքը (Օգոստ. 23. 25.) Կարիպալտիին բոլոր զօրքը Գալապրիայի եզերքը ցամաք ելան, որովհետեւ Նէապոլսոյ նաւատորմիղն ան կողմերէն ետ քաշուելու սկսած էր։ Բոլոր Գալապրիա ու շրջակայ տեղերն ապստամբութեան դրօշը բացին եւ թշնամւոյն հետ միաբանեցան ու երեւելի քաղաքներու մէջ առժամանակեայ կառավարութիւններ ու հրամանատարի փոխանորդներ դնելով՝ ամէն գործքերը ‘‘յանուն Վիկտոր Էմմանուէլի Իտալիայի Թագաւորին եւ յանուն Կարիպալտիի՝ հարաւային Իտալիայի հրամանատարին,, կը կատարէին։ Քիչ ատենուան մէջ ապստամբած տեղերու

մէջ զօրք ժողվուեցան ու Կարիպալտեանց հետ միաբանելով Թագաւորական զօրաց դէմ կռուելու կ'երթային։ Իսկ Թագաւորական գնդերն ամէն դի Թշնամիներուն յարձակմամբն իրարմէ բաժնուելով կամ կը ցրուէին եւ կամ յուսահատած դէպ ի Նէապոլիս ետ կը քաշուէին. որով եւ Կարիպալտեանք դիւրութեամբ բոլոր Գալապրիա գրաւեցին։ Եւ Թէպէտ Թագաւորական նաւատորմիղը Գալապրիայի եզերքին մօտ գտնուելով կրնար իր ռումբերովը Թշնամեաց շատ վնաս տալ, բայց հրամանատարներն իրենց Թագաւորին հաւատարիմ մնալու միտք չունենալով՝ Թշնամւոյն առջին ամենեւին արգելք մը չէին դներ դէպ ի Նէապոլիս յառաջ քալելու։ Այսնկով Կարիպալտի ամէն դի բնակիչներէն ուրախութեամբ ընդունուելով, (Սեպտ. 6.) Սալեռնոյ քաղաքը մտաւ։

ՙՆէապոլսոյ մայրաքաղաքին մէջ ալ ապստամբութիւնն ու անհաւատարմութիւնը սկսաւ ուրիշ տեղերու պէս շուտ շուտ յառաջադէմ ըլլալ։ Լածծարոնի ըսուած ցած ժողովուրդն իսկ, որն որ Նէապոլսոյ մէջ շատ բազմաթիւ է ու ամէն ատեն Թագաւորին հաւատարիմ մնալով՝ խռովութիւն եղած ժամանակն անոր կողմը կը բռնէ ու զանիկայ կը պաշտպանէ, աս հեղու խեղճ Փրանկիսկոս Բ. Թագաւորը Թող տալով՝ բազմութեամբ ապստամբներուն կողմն անցաւ։ Ասոնք ու ստորին ժողովրդեան մէջէն շատերը կատաղութեամբ ոստիկանութեան զինուորներուն վրայ յարձակելով զանոնք կը սպաննէին ու ոստիկանութեան պաշտօնարանները կ'այրէին։ Սարդինիայէն եկող ծածուկ գործակալներն աս միջոցիս ամէն հնարքները կը բանեցընէին Թագաւորը ժողովրդեան առջին ատելի ընելու եւ Կարիպալտիին ու Վիկտոր Էմմանուելին կողմը դարձընելու։ Անկից ետքն ալ սկսան ստուգիւ դառնութեան ու տառապանաց օրերն երիտա-

սարդ Թագաւորին համար. Նոյն իսկ պաշտօնեաներն անոր դէմ ամէն Թշնամութեան հնարքները ձեռք կ՚առնէին. քանի մը մտերիմներէն զատ ամէն մեծ պալատականները Թագաւորէն հեռանալու կը փութային: Նա եւ բանակին մեծ զօրագլուխները մէկիկ մէկիկ ապստամբաց կողմը կ՚անցնէին: Ամենէն աւելի Թագաւորին վիշտ ու տրտմութիւն պատճառեց Նունցիանդէ սպարապետին հաւատադրժութիւնը. աս մարդը, որն որ մինչեւ ան ատեն Թագաւորական տան խիստ հաւատարիմ բարեկամներուն ու պաշտպաններուն մէկն էր, իր հրաժարումը տալէն ու իր շքանշանները Թագաւորին խաւրելէն ետքը՝ ինք իր գլխուն յայտարարութիւն կամ հրաման մը հանեց զօրաց՝ որ անկէց ետքը ա՛լ Թագաւորին համար պէտ՚որ չպատերազմին, հապա Իտալական ազգին համար: Երբ որ Կարիպալտիին Գալապրիա հասնելուն լուրը Նէապոլիս հասաւ, գրեթէ ամէն մեծ պաշտօնատէրները պաշտօննին Թողուցին ու փախչելու ճամբայ կը փնտռէին: Պաշտօնեաները (Սեպտ. 1.) իրենց հրաժարումը տուին. Նոյնպէս ոստիկանութեան գլուխն եւ ուրիշ բարձրագոյն պաշտօնի մէջ գտնուողներն իրենց պաշտօններէն հրաժարեցան: Նոյն իսկ Թագաւորին երկու հօրեղբարքը՝ Սիրակուսայի դուքսն ու Ագուիլայի կոմսը Թագաւորէն հեռացան ու Թշնամեաց կողմն անցան. Նա եւ մինչեւ ան ատեն Թագաւորին կողմն ըլլող ազնուականներն օտար երկիրներ գացին:

Թագաւորն իրաց այսպիսի յուսահատիչ հանգամանքը տեսնելով՝ ի սկզբան կը մտածէր իրեն հաւատարիմ մնացող զօրքը Նէապոլսոյ ու Սալեռնոյի մէջ կեդրոնացընել. բայց ետքէն որոշեց որ Գաէթայի ամուր բերդին քովը զանոնք ժողվէ: Իսկ զօրքը քաղքէն դուրս ելլելէն առաջ՝ (Սեպտ. 6.) հրաման տուաւ՝ որ իր պալա-

ախն բոլոր ազնիւ ու թանկագին կահ կարասիքն ու իր բոլոր ընտանիքը դուրս հանուին ու Կայետայի ամուր դղեակը տարուին։ Ասոնք նաւ գրաւած ատենը արքին ժողովուրդը հոն ժողված ամէն կերպ նախատական ու անվայելուչ խօսքերով իրենց թշնամութիւնը կը յայտնէին։ Իրիկուան դէմ ինք Թագաւորը մեծ դժուարութեամբ նաւ մը գտնելով մէջը մտաւ ու Կայետա գնաց։ Հազիւ թէ ինք քաղաքէն հեռացաւ, ժողովուրդն ամէն դի թագաւորական նշանները վար առաւ կոտրատեց ու անոնց տեղը Սաւոյայի թագաւորական նշանը կախեց։ Սալեռնոյէն գացող թագաւորական զօրքը լաւութեամբ մայրաքաղաքին մէջէն անցնելով ու ժողովրդեան նախատական խօսքերը մտիկ ընելով դէպ ի Գաբուա գացին։ Թագաւորական նաւատորմիղն արդէն ապստամբներուն կողմն անցած էր։

Կարիպալտի Սալեռնոյ եղած ատենը՝ Նէապոլսէն (Սեպտ. 6.) պատգամաւորներ եկան զինքը հոն հրաւիրելու. ինքն ալ հոն գտնուող թագաւորական զօրքէն ամենեւին վախ մը չունենալով՝ երկաթուղւոյ վրայէն միայն քանի հոգւով (Սեպտ. 7.) հոն գնաց, ուր ազգային պահապանաց գլխաւորներն ու մեծամեծները դիմացն եկան ու զինքը յաղթանակաւ քաղաքը տարին։ Ժողովուրդն երեք օր չափազանց ուրախութեամբ ու հանդէսներով իր գալուստը փառաւորեց. Կեցցէ Կարիպալտի, կեցցէ միակ Իտալիան, կեցցէ Վիկտոր Էմմանուէլ ձայները գիշեր ու ցորեկ չէին դադրեր։ Կարիպալտի այսչափ ու այսպիսի փառաւորութեան ցոյցքերը տեսնելէն ետքը ալ սկսաւ Նէապոլսոյ մէջ այլ եւ այլ կարգաւորութիւններ ընել, բայց ամէն բանի մէջ կը ցուցնէր որ միայն Վիկտոր Էմմանուէլին անուամբն ու անոր թագաւորութեան համար կը գործէ։ Նէապոլսոյ տէրութեան նաւա-

տարմիղին համար հրաման հանեց որ անկից ետքը ա՛լ Վիկտոր Էմմանուէլին իշխանութեան տակն է ու անոր հրամաններուն համեմատ պիտի՛ որ շարժի։ Քիչ մը ետքը կառավարութիւնը յառաջ տանելու համար նոր պաշտօնարան մը դրաւ քանի մը սահմանադրութիւն ուզող անձինքներէ կազմած ու անոնց ձեռքովը խել մը ազատական վճիռներ դուրս տուաւ։

Բայց Կարիպալտիին ըրած կարգադրութիւններն ու դրած պաշտօնարանը հաստատութիւն մը չունեցան. որովհետեւ ապստամբած ու անգլուխ երկրի մը մէջ հաստատուն կարգ մը չիկրնար դրուիլ ու յեղափոխականաց ձեռքովն ամէն անկարգութիւնները մուտ ու յաջողութիւն կը գտնեն։ Ասդիէն անդիէն յեղափոխականաց գլխաւորները, որոնք իրենց հանճարովն ու յաջողութեամբը Կարիպալտիէն վեր կը սեպուէին, վազեցին Նէապոլիս եկան, նոր պաշտօնարան մը կազմեցին, նոր նոր վճիռներ դուրս կու տային, նոր օրէնքներ կը դնէին, իրաւանց կարգերը կը փոխէին ու հարկերը կը ջնջէին։ Երկրին ամէն դին քաղաքային կառավարութեան նկատմամբ ամէն տեսակ անկարգութիւնները կը տեսնուէին, մէկ գաւառի մէջ սարդինիական օրէնքները կամ սահմանադրութիւնը կը հրատարակուէր, ուրիշ գաւառի մը մէջ 1820ին (Նէապոլսոյ) սահմանադրութիւնը կը քարոզուէր. մէկ խօսքով ըսենք՝ Իտալիայի ուրիշ մասերուն հետ ամբողջ միութիւն ու կէս կամ մասնական միութիւն ուզողները, հասարակապետականք, սահմանադրականք ու արձակապետականք խառն ի խուռն իրարու հետ կ'իյնային ու շփոթութիւն շփոթութեան վրայ կ'աւելցընէին։ Նոյն ատեն Մածծինին ալ Նէապոլիս եկաւ եւ ի ծածուկ իր հասարակապետական գաղափարներովը կը գործէր ու շատերուն միտքը կը շփոթէր։

Թէպէտ բոլոր Նէապոլսոյ տէրութիւնն այսպէս շփոթութեանց մէջ կը ծփար ու թագաւորը մէկ դիաց օգնութիւն չէր առնէր. սակայն իր բանը բոլորովին լմընցած չէր, իր դաՀը կորսնցուցած չէր ու երկրին մէկ մասը դեռ իր ձեռքն էր: Ինք իր Հաւատարիմներովը Գաբուա ու Կայեդա քաշուած՝ իրեն քովը ունէր 50,000 զօրք: Աս զօրքն ի սկզբան երկրին մէջ եղածները առնելով սասանած ընելիքնին չէին գիտեր. բայց շուտ մը առաջին սասանութենէն սթափելով ու Գալապրիայի մէջ իրենց ցուցուցած տկարութեան վրայ զղջալով, դարձան իրենց թագաւորին բոլորտիքը ժողվեցան, պատրաստ ըլլալով անոր իրաւունքն ու թագն իրենց արեամբը պաշտպանելու եւ պաՀելու օգնել: Կարիպալտի ասոնց պատրաստութիւնն իմանալով իր բոլոր ազատական զօրքը Նէապոլսէն դուրս Հանեց ու Գաբուայի մօտ շարեց աս քաղաքը պաշարելու Համար: Թագաւորական զօրքին մէկ մասը (Սեպտ. 22.) թագաւորին եղբօրը Հրամանին տակ քաղքէն դուրս ելաւ, կարիպալտեանց վրայ յարձակեցաւ ու անոնց մէկ մասին աղէկ ջարդ մը տուաւ: Քանի մը օր ետքը (Հոկտ. 1.) նորէն դուրս ելլելով աւելի եւս սաստկութեամբ յարձակում ըրաւ, ի սկզբան յաջողութեամբ կարիպալտեանները զարկաւ ու դէպ ի Նէապոլիս ետ քշեց, անանկ որ զանոնք բոլորովին տկարացընելով մայրաքաղաքը ձեռքերնէն պիտ'որ առնէր: Բայց իրիկուան դէմ կարիպալտեանք նոր զօրք ընդունելով զօրացան ու թագաւորական զօրքը ստիպեցին արտորնօք ետ դառնալ ու Գաբուա մտնել: Աս կռիւներուն մէջ թագաւորականք 2000 մարդ, իսկ կարիպալտեանք 1500 մարդ կորսնցուցին: Ասկից ետքը Կարիպալտի թագաւորական զօրաց դէմ ուրիշ կռիւ մը չկրցաւ սկսիլ, որովՀետեւ ասոնք ամուր բերդերով պաշտպանուած ըլլալով անոր ամէն փորձերը

պարապի կը հանէին։ Նա եւ Ապրուցցի գաւառին մէջ
բնակիչք Թագաւորին հաւատարիմ մնալով՝ զէնք առած
ու պզտիկ գնդեր բաժնուած ասդին անդին կը քալէին ու
ապստամբներուն դրած ազգային պահապանները կը զար-
նէին զինաթափ կ՚ընէին։

Աս ասանկ ըլլալով՝ Նէապոլսոյ մէջ ապստամբնե-
րուն կառավարութիւնը կը տեսնէր որ միայն Կարիպալ-
տիին ազատական զօրքովը պատերազմը լմնցընելը կարելի
բան չէ. ուստի կը սպասէին ու կը յուսային որ Վիկտոր
Էմմանուէլ իր բանակէն Նէապոլսոյ երկիրը բաւական
զօրք խաւրէ ու զանիկայ բոլորովին գրաւէ։ Իսկ Դուրինի
կառավարութիւնն օտար տէրութեանց ազդարարու-
թեան հետեւելով քիչ մը ատեն չէր ուզեր Կարիպալ-
տիին Նէապոլսոյ տէրութեան մէջ ըրածները յայտնապէս
հաստատել ու կառավարութեան հաւանութեամբ եղած
գործքեր սեպել։ Բայց վերջապէս Իտալացի հայրենասի-
րաց թախանձելէն ստիպելով, միանգամայն վախնալով
որ Մածծինեանք հարաւային Իտալիայի մէջ հասարա-
կապետութիւն հաստատելու ջանքերնին յաջողցընեն,
որոշեց որ Սարդինիայի բանակին մէկ մասը Նէապոլսոյ եր-
կիրը պատերազմով գրաւելու խաւրէ։ Աս որոշման համե-
մատ Վիկտոր Էմմանուէլ Թագաւորը (Հոկտ. 9.) յայտ-
արարութիւն մը հանեց, որուն մէջ Իտալացւոց մանաւ-
անդ Նէապոլսեցւոց կը ծանուցանէր՝ որ ինք իր զօրաց
գլուխն անցած յառաջ կը քալէ իբրեւ Իտալիայի Թա-
գաւոր իր պարտքը կատարելու եւ անով Իտալիայի մէջ
յեղափոխութիւնը վերջացընելու։ Նոյն օրը (Հոկտ. 9.)
Վիկտոր Էմմանուէլ 20,000 զօրքով Ապրուցցի գաւառը
մտաւ. իսկ 10,000 սարդինիացի զօրք ալ ծովով Նէա-
պոլիս հասաւ։ Թէ որ Նէապոլսոյ Թագաւորական զօրաց
գլուխները հարկաւոր ջանքն ի գործ դրած ըլլային, ան-

շուշտ կղզւոյն Սարդինիայի զօրաց ընթացքն արգելել. սակայն անոնք այնպէս վարուեցան՝ որ Սարդինիացիք քանի մը փոքր կախիչներէ ետքը՝ առանց մեծ պատերազմի մը՝ Նէապոլսոյ զօրքը ցրուեցին։ Անոնցմէ 17,000 հոգի քահանայապետական երկիրը փախան ու զէնքերնին թողուցին։ Ասոր վրայ Սարդինիացիք (Նոյ. 1.) սկսան Գաէթայի բերդը գնդակոծել. մէջի զօրքը բոլոր օր պատերազմելէն ետքը իրիկուան դէմ բերդը Սարդինիացւոց յանձնելով իրենք Կայէտա քաշուեցան, ուր որ Փրանկիսկոս Բ. Թագաւորն իր մնացած զօրքովը պատըսպարած էր։

Կարիպալտի Սարդինիայի գահըճին՝ իրեն ըրած գործքերուն վրայ գոհ չըլլալուն պատճառաւ վշտացած էր ու չէր ուզեր Նէապոլսոյ մէջ ձեռնտու ըլլալ որ բնակիչքը բոլոր երկիրը Սարդինիայի տէրութեան հետ միացընելով Իտալիայի թագաւորութեան մաս ընելու հաւանութեան քուէ տան։ Բայց վերջէն Բալլաւիչինի մարկիզին յորդորանքովը հաւանելով՝ (Հոկտ. 21.) Նէապոլսոյ տէրութեան համար ընդհանուր քուէարկութիւն ընել տուաւ ու իբր մէկ ու կէս միլիոն քուէով որոշուեցաւ՝ որ Նէապոլսոյ երկիրը Սարդինիայի ու միջին Իտալիայի հետ միանալով Իտալիայի թագաւորութեան մասն ըլլայ։ Յայտնի է ու չիկրնար ուրացուիլ՝ որ թէպէտ եւ ժողովրդեան գրգռիչներն ու Նէապոլսոյ թագաւորական տան թշնամիներն իրենց ծածուկ հնարքովը՝ վերջիշեալ թիւը յառաջ բերին, այսինքն Նէապոլսոյ տէրութեան առանձին թագաւորութիւն ըլլալէն դադրիլը ուզող բնակչաց թիւն այսպէս մէկ ու կէս միլիոնի հասցուցին։ Բայց իրօք ոչ ժողովուրդն էր որ այսչափ բազմութեամբ ու միաբանութեամբ ու ըրածնին խորհրդով ու խոհեմութեամբ որոշելով տէրութեան ապագայ վիճակին վրայ

քուէ ձգեցին ու կամքերնին յայտնեցին, եւ ոչ Կարիպալտիին ազատական զօրքն ու Սարդինիացւոց գնդերը Նէապոլսոյ Թագաւորն իր Հայրենական գահէն վար առին, Հապա տէրութեան ներքին ապականութիւնն ու անկէց յառաջ եկած ընդհանուր հաւատադրժութիւնն ու մատնութիւնը Թագաւորն ու Թագաւորութիւնը օտարաց ձեռքը տուին։ Տեսանք թէ ինչպէս ծանր ու վտանգաւոր վայրկեանի մէջ Թագաւորին հօրեղբայրքը, տէրութեան մեծամեծները, պաշտօնեաները, զօրապետներն ու զօրաց մէկ մասը պարսաւելի տկարութեամբ իրենց օրինաւոր տէրը թող տալով՝ ապստամբաց ու օտարաց կողմն անցան ու անոնց ճամբայ բացին՝ իրենց ուզածին պէս յառաջ քալելու եւ երկիրն ու իշխանութիւնը գրաւելու։

Վիկտոր Էմմանուէլ Թագաւորը քանի մը օր առաջ (Հոկտ. 26.) Կարիպալտիին հետ տեսնուելէն ետքը՝ վերջիշեալ քուէարկութեան զօրութեամբ Նէապոլսոյ տէրութիւնն իր իշխանութեան տակ առածի պէս՝ նոյն Կարիպալտիին հետ (Նոյ. 7.) Նէապոլիս քաղաքը մտաւ եւ ուրախութեան ձայներով ժողովուրդէն ընդունուեցաւ։ Այսպէս հեղ մը Թագաւորը հոն մտնելէն ու իբր թէ իր տէրութեան աս նոր մասն իր անմիջական հրամաններովը կառավարելու սկսելէն ետքը՝ ալ Կարիպալտի իր հրամանատարութեան պաշտօնը թող տալով՝ գործելէն դադրեցաւ ու իր Գաբրերա կղզին քաշուեցաւ։ Հոն՝ Իտալիայի մնացած մասերն ալ՝ Հռոմայի բոլոր երկիրը նոյն իսկ Հռոմ քաղաքով մէկտեղ, Վենետիկ ու Լոմպարտիայի Աւստրիացւոց ձեռքը մնացած մասը՝ միակ Իտալական Թագաւորութեան հետ միացընելու համար սպասել առանձին ու իր համախոհներուն հետ պատրաստութիւն տեսնել եւ շատոնցուընէ աս նիւթիս վրայ ու-

նեցած խորհուրդին գործադրութեան միջոցներուն վրայ խորհիլ։

Իսկ Նէապոլսոյ երկրին մէջ ըլլող Սարդինիոյ զօրքը (Նշ. 5.) սկսաւ Կայետա քաղաքն ու բերդը պաշարել։ Փրանկիսկոս Բ. Թագաւորը դեռ հոն իր քովը շատ զօրք ունէր. բայց որովհետեւ ալ ասոնցմով չէր կրնար դուրս յարձակիլ ու բաց դաշտի վրայ պատերազմ տալ, իսկ զամէնքը բերդի մէջ պահելն ալ պարէնի պակասութեան պատճառաւ շատ դժուարին էր, անոր համար անոնց մէկ մասն իրենց տեղը խաւրեց։ Նա եւ իր բոլոր ընտանիքն ու իր քովն ըլլող բարեկամ տէրութեանց դեսպանները ապահով ճամբով Հռոմ խաւրեց։ Կ'ուզէր նա եւ իր Թագուհին ալ անոնց հետ Հռոմ խաւրել. բայց ասիկայ յանձն չառաւ այսպիսի նեղութեան ժամանակ խեղճ Թագաւորը մինակ թողուլ. ուստի եւ հոն բերդին մէջ մնաց ու ինչպէս ականատեսք կը վկայեն՝ բոլոր պատերազմին ժամանակը կամ վտանգաւոր տեղերը կենալով պատերազմողներուն այրաբար կ'օգնէր ու սիրտ կու տար եւ կամ հիւանդանոցներու մէջ վիրաւորեալները սիրով կը դարմանէր։ Իսկ երիտասարդ Թագաւորը, որ յառաջագոյն այնչափ աշխոյժութիւն ու հաստատութիւն չէր ցուցըներ, Կայետայի բերդին մէջ վերջին աստիճանի դժուարին վիճակի մէջ հասած, իր տէրութեան գրեթէ բոլոր երկիրը թշնամեաց ձեռքն ըլլալը գիտնալով ու արտաքին տէրութիւններէն ուրիշ նպաստ մը չունենալով՝ բայց միայն Գաղղիացւոց նաւատորմիղը, որն որ Սարդինիացիները ծովու կողմանէ Կայետա պաշարելէն քիչ մը ատեն արգելելու աշխատեցաւ, այսպիսի յուսահատիչ հանգամանաց մէջ հաստատութեամբ միտքը դրաւ ու ջանաց իր արդար իրաւունքն ամէն կերպ միջոցներով պաշտպանելու։ Արտաքին տէրութեանց ատի-

պիչ խօսքերով ծանուցագիրներ խաւրեց, անոնց յիշեցընելով տէրութեանց համապարտութիւնը (solidarité) կամ իրարու նկատմամբ ունեցած կապն ու պարտքը, ուստի եւ ցուցընելով որ եթէ իր գահը յեղափոխականաց ձեռքը թող տալու ըլլան՝ բոլոր Եւրոպական կարգերը խախտուելու վտանգի մէջ կ'իյնան։ Նոյնպէս եւ իր հպատակներուն ալ այլ եւ այլ սիրալիր յայտարարութիւններ հանեց, որոնցմէ իրեն հաւատարիմ ըլլողները յորդորեցան ասդին անդին զէնք առնելով կրցածնուն չափ անոր իրաւունքը պաշտպանելու։ Սակայն աս արտաքին փոքր ու մասնական օգնութիւնը զթագաւորը թըշնամեաց զէնքերէն չէին կրնար ու չկրցան պաշտպանել ու ապահովցընել։ Կայեդայի պաշարումը երկու ամիսէն աւելի քշեց. որ ատեն ներսէն ու դրսէն գնդակներն ու ռումբերը մեծամեծ կոտորածներ ու վնասներ ըրին։ Երկու ամիս բերդէն ամէն վնասներուն նորոգութիւն կ'ըլլար ու բերդին մէջ ըլլողները զիրենք կը պաշտպանէին։ Բայց վերջապէս (1861. Յունու. 7էն սկսելով) Սարդինիացիք արտաքին պատուարները բոլոր ակարացուցին։ Անկից ի զատ Գաղղիացւոց նաւատորմիղն ալ (Յունու. 19.) Կայեդայի մօտերէն հեռանալով Սարդինիայի կամ Իտալիայի միացեալ նաւատորմիղը եկաւ բերդն ու քաղաքը ծովու կողմանէ ալ պաշարեց։ Այսպիսի սաստիկ պաշարմանէ ու անդադար ռմբակոծութենէ զատ բերդին մէջ ըլլողներուն տառապանքն ու նեղութիւնն իրենց մէջ յաճախող սաստիկ տենդով ու պարենի պակասութեամբ ալ ծանրացաւ։ Երիտասարդ թագաւորն իր քսան տարեկան դիւցազնուհի ամուսնովը իրենց թագին իրաւունքն ամէն ճգամբ պաշտպանելէն ետքը երբ որ ամէն դիհաց վրանին եկած հասած թշուառութիւնը տեսան, ա՛լ չուզեցին իրենց հետ ըլլող հաւատարիմ հպատակներուն

կեանքն ու հանգիստը վտանգի մէջ դնել։ Ուստի Թագաւորը (Մարտ 13.) Թշնամեաց գլխաւորներուն հետ բանակցութիւն ընելով բերդն անոնց յանձնեց եւ ինքն ու Թագուհին քանի մը հոգւով անկից ելան Հռոմ գացին, ուր Փրանկիսկոս Բ. ամենէն իբրեւ օրինաւոր Թագաւոր Նէապոլսոյ կը պատուէր։ Իրեն բարեկամ ըլլող տէրութիւններն իր քովն իրենց դեսպանները դրած են ու ինքն ալ անոնց քովն իր դեսպաններն ունի։ Իր երկրին շատ տեղերն իր իրաւանցը պաշտպանութեան համար հպատակներէն հազարաւոր հոգի զէնք առած կը ջանան անոր նորէն իր հայրենական գահը դառնալու ճամբայ պատրաստել։ Սարդինիայի տէրութիւնն ասոնց դէմ ամէն զգուշութիւնը կը բանեցընէ, երբեմն պզտիկ կռիւներ ալ կ'ըլլան ու շատ մարդիկ ալ բռնուելով՝ կը սպաննուին։

Իտալացւոց մէկ մեծ մասին համար, որոնք բոլոր Իտալիա Սարդինիայի Թագաւորին տակ միակ սահմանադրական Թագաւորութիւն կամ միապետութիւն ընելու կը բաղձային, որոնց գլխաւորներն էին Սարդինիայի դահլճին ու պաշտօնէից գլուխը Գաւուր, Կարիպալտի, Ռիգասոլի եւ ուրիշները, Նէապոլսոյ տէրութեան երկիրը նոյն Իտալիայի Թագաւորութեան հետ՝ իրենց ուզածին պէս միացընելէն ետքը, կը մնային Հռոմայի բոլոր երկիրն ու Վենետական գաւառները։ Կարիպալտի Նէապոլսոյ երկիրն անհաւատալի շուտութեամբ նուաճելէն ետքը կ'ուզէր անմիջապէս իր ազատակամ գնդերովը Հռոմայ երկիրը մտնել, մայրաքաղաքին վրայ քալել, քահանայապետն աշխարհական իշխանութենէ մերկացընել ու անկէց բոլոր Իտալիայի միութիւնը հրատարակել։ Աս ըլլալէն ետքը միտքը դրած էր Վենետիկն ալ առնուլ, ոչ Գաղղիայի ու Աւստրիայի զօրքերուն բազմութիւնն ու ոչ

Լոմպարտիայի մէջ Աւստրիայի ձեռքը մնացած բերդերուն ամրութիւնն իր յանդուգն խորհուրդներուն արգելք ու արտին վախ մը կը պատճառէին։ Բայց Հռոմայի երկիրն ու տէրութիւնը բոլորովին առնուլն ու Իտալիայի թագաւորութեան հետ միացընելը Նէապոլսոյ երկիրը գրաւելու պէս դիւրաւ չէր կրնար յաջողիլ։ Եւ ոչ Սարդինիայի գահլիճը կրնար այնպէս դիւրութեամբ հաւանիլ որ Կարիպալտիին ազատակամ գնդերն իրենք իրենցմէ Հռոմի երկիրը մտնեն։ Քահանայապետին ժառանգութիւնը գրաւելու համար ամենուն դիմացը մեծամեծ ու դժուարաւ յաղթուելու արգելքներ կ'ելլէին ու ամենուն ձեռքն ու զէնքը կը կապէին։

Գաղղիայի կայսրն ետքի մեծ պատերազմէն ետեւ պատշաճ սեպած էր Հռոմ քաղաքին ու Չիվիդա Վեքքիայի մէջ քանի մը տարիէ ի վեր կեցող Գաղղիացի զօրաց թիւն աւելցընել՝ որ քահանայապետական քաղաքին ու քահանայապետին անձին պահապան ու պաշտպան ըլլան։ Բայց աս զօրքը Հռոմէն դուրս քահանայապետական հպատակաց ապստամբելուն ամենեւին արգելք մը չէին դներ։ Ասով քահանայապետական երկրին մէկ մասն այսինքն Ռոմանեա դիւրութեամբ իր վեհապետէն ապըստամբած ու երեք դքսութեանց հետ մէկտեղ Սարդինիայի թագաւորին վճռովն Իտալիայի թագաւորութեան մէկ մասն եղած էր, ինչպէս վերը գրեցինք։ Նոյնպէս եւ յիշեցինք՝ թէ Անգոնայի եւ Ումպրիայի բնակիչքն ալ ոտք ելլելով կ'ուզէին նոյն թագաւորութեան տակ մտնել. իսկ Սարդինիայի կառավարութիւնը թէպէտ նոյն շարժման ու ջանից հակառակ չէր, սակայն ըստ մասին օտար տէրութեանց բարեկամական խորհուրդներն ու ըստ մասին Նաբոլէոն կայսեր աս բանին յայտնապէս կամակից չըլլալը զինքն ի սկզբան կը խափանէին նոյն գաւառներն

ալ գրաւելու եւ Իտալիոյ Թագաւորութեան մէջ առ-
նելու։ Ի վերայ այսր ամենայնի Կարիպալտին իր ազատա-
կամ զօրքովը Սիկիլիոյ տէրութիւնը դիւրութեամբ
նուաճելէն ետքը՝ Իտալացի Հայրենասէրք ամէն դի կ'ե-
ռային ու Գուրինի դաՀլիճը կը պարսաւէին՝ որ ազգային
միութեան օգնելու մէջ այնպէս դանդաղ կը շարժի։ Աս
պատճառաւ Գաւուր պաշտօնեան սկսաւ վախնալ որ չա-
փազանց Հայրենասէրք, որոնք արդէն զինքն ու իր պաշ-
տօնարանը կը նախատէին թէ Նաբոլէոնին կամացը գերի
եղած է, Սարդինիայի կառավարութեան Հրամանին
չսպասելով Կարիպալտիին ձեռաց տակ յառաջ քալեն
ու վերյիշեալ գաւառները գրաւելով՝ աս նոր յաղթու-
թեան պատիւն ալ Կարիպալտիին տրուի։ Ասիկայ խա-
փանելու Համար դաՀլճին մէջ իր խորՀրդովն որոշուեցաւ՝
որ Ումպրիայի ու Անգոնայի գաւառներն ալ նոյն թա-
գաւորութեան մէջ առնելու միջոցներն ի գործ դրուին,
եւ աս բանիս մէջ ալ ամէն նկատումն ու վախը մէկդի
դնելով կարեւոր պատրաստութիւններն ըլլան։

Իսկ Հռոմի կառավարութիւնն ու առանձինն Պիոս
Թ. քաՀանայապետն իր գաւառներուն նկատմամբ Սար-
դինիայի դաՀլճին ու Թագաւորին բռնած վարմունքին
վրայ վշտացած ու նեղացած ըլլալով անոր Հետ բարե-
կամական Հաղորդակցութիւնը կտրելէն ի զատ՝ նոյնին
դէմ յայտնապէս բողոք ու սպառնալիք ըրած էր։ Գաղ-
ղիայի կայսրն իբրեւ Սարդինիայի դաշնակից աս բանիս
մէջ միջնորդ ըլլալ ուզելով, Պիոս Թ.ին խորՀուրդ կու
տար ու կ'առաջարկէր՝ որ (ինչպէս Քահանայապետն ու
դեսպանաժողովը անուամբ նոյն կայսեր ազդեցութեան
տակ յօրինուած տետրակը կը նշանակէր,) Ռոմանեայի
երկրին անմիջական իշխանութենէն Հրաժարելով՝ զանի-
կայ Վիկտոր Էմմանուէլին իբրեւ իր աշխարհական փո-

խանորդին յանձնել, նոյնպէս եւ Հռոմայի երկրին ուրիշ գաւառներուն վրայ իր վերին իշխանութիւնը պահել, որուն ապահովութեան համար Գաղղիա երաշխաւոր ըլլայ։ Պիոս Թ. ինչպէս իրեն կը վայլէր՝ չէ թէ միայն աս ու ասոր նման առաջարկութիւններուն չզիջաւ ու չհաւանեցաւ, հապա իր երկիրներուն յափշտակուիլ սկսելու ատենէն սպառնացած բանադրանաց վճիռը վերջապէս (1860. Մարտ 29.) հրատարակեց։ Աս վճռով Հռոմայի երկիրները գրաւողներն ու նոյնին խորհրդով ու գործքով օգնական ու գործակից ըլլողները բանադրանաց տակ կը դրուէին. բայց յանուանէ ոչ ոք կը յիշատակուէր։ Թէպէտ ժամանակին հոգին աս եկեղեցական պատժոյն նոյնին արժանի ըլլողներուն սրտին մէջ յառաջ բերելու օգուտն ու զգաստութիւնը՝ կամ անոնց վրայ ընելու ազդեցութիւնը խափանեց. սակայն կրնայ ըսուիլ որ գոնէ անոնց յանդգնութեան քիչ մը չափ դրաւ։ Գաղղիայի կառավարութիւնը նորէն գրեց քահանայապետին ու խոստացաւ՝ որ եթէ քահանայապետական կառավարութիւնն իր իշխանութեան տակ ըլլող տեղերուն մէջ քանի մը ազատական ու օգտակար նորոգութիւններ ընելու ըլլայ, Գաղղիա կը ջանայ ու միջնորդ կ՚ըլլայ՝ որ կաթոլիկէական տէրութիւններն իրեն հաստատուն եկամուտք կապեն, երկրորդ կարգի կաթողիկէական տէրութիւններն ալ իրեն անձնապահ զօրք տան։ Ասոր Անտոնելլի կարդինալը պատասխան գրեց՝ որ քահանայապետը մինչեւ որ իրմէն ապստամբած գաւառներն իրեն չհնազանդին՝ ամենեւին նորոգութիւն մը չհրատարակեր։

Քահանայապետին աշխարհական իշխանութեան դէմ ու անոր տակն ըլլող երկիրները իր ձեռքէն առնելու համար Իտալացի հայրենասէրներն ամէն ճիգերնին բանեցուցած ատենը՝ կաթուղիկէական երկիրներու, մա-

Նաւանդ Գաղղիայի, Բելգիայի ու Հարաւային Գերմանիայի բնակիչքը սկսան իրենց զինուորական ու դրամական օգնութիւնն անոր ընծայել: Աս սիրոյ ցոյցը զքահանայապետական կառավարութիւնը շարժեց կաթողիկէական ազգերէն իրեն օգնութեան եկած զօրքերով բանակ մը կազմել ու անով Գաղղիայի կայսեր Հռոմայի մէջ պահած Գաղղիացի գնդերն արձակել: Քիչ ատենուան մէջ ամէն դիհաց, Աւստրիայի, Պաւիերայի, Հելուետիայի, Բելգիայի ու Գաղղիայի երկիրներէն բազմաթիւ ազատակամ զինուորներ քահանայապետական երկիրն եկան ժողվեցան: Աս ազատակամ զինուորներուն, մանաւանդ Գաղղիայէն եկածներուն մէջ շատ երիտասարդներ կային անուանի ու ազնուական տներէ, որոնք իրենց զէնքովը ու ստակովը քահանայապետին իրենց սէրն ու հպատակութիւնը ցուցընելու կը փութային: Իսկ մնացած ազատակամ զօրաց մեծ մասն իրենց տէրութիւններուն դրամովը ու զէնքովը քահանայապետին ծառայութեան կու գային: Բոլոր աս գնդերուն վրայ հրամանատար դրուեցաւ Լամորիսիէր Գաղղիացի զօրապետը, որն որ Ճեզայիրի մէջ իր զինուորական քաջութեամբը մեծ անուն ստացած էր ու Գաղղիայի մեծ զօրապետներուն կարգը կը սեպուէր. բայց Նաբոլէոն Գ. իշխանութեան հանելէն ետքը՝ անոր կողմը չըլլալով ամէն զինուորական գործքերէն ետ քաշուած էր: Ասիկայ թէպէտ եւ Գաղղիայի կառավարութեան մասնաւոր հրամանաւը վերյիշեալ հրամանատարութիւնը չէր ընդունած, սակայն Նաբոլէոն կայսրը հաւանեցաւ՝ որ Լամորիսիէր Գաղղիայի հպատակ մնալով՝ կարենայ Գաղղիայէն դուրս քահանայապետին ծառայութեան մէջ մտնել:

Լամորիսիէր՝ քահանայապետին ծառայութեան համար այլ եւ այլ երկիրներէն եկած ժողվուած զինուոր-

ներուն վերին հրամանատարութիւնը (1860․ Ապր․ 4․) ընդունելէն ետքը, անոնցմով պատերազմելու սկսելէն առաջ՝ որչափ որ ժամանակը կը ներէր՝ իրենց կարգ կանոն դնելու եւ կարգաւորեալ բանակ մը կազմելու աշխատեցաւ։ Անկից ետքը քահանայապետական կառավարութիւնը համարելով որ այսչափ զօրաց բանակ մը բաւական է Հռոմ ու անոր երկիրը պաշտպանելու՝ Գաղղիայի կառավարութեան ծանոյց՝ որ ա՛լ Գաղղիացի զինուորներուն Հռոմայի մէջ մնալը հարկաւոր չէ։ Գաղղիա աս յայտարարութիւնն ընդունելէն ետքը կը պատրաստուէր իր Հռոմ կեցող զօրացը հրաման խաւրել որ բաժին բաժին Հռոմայի երկրէն ելլեն ու Գաղղիա դառնան։ Մէյ մ'ալ Կարիպալտիին իր ազատական զօրքովը Սիկիլիա հանելուն ու զանիկայ գրաւելուն եւ Տոսկանայի ու Գենուայի մէջ Իտալացի ազատական զօրաց անհնարին շուտութեամբ ու բազմութեամբ ժողվուելով հարաւային Իտալիայի վրայ քալելու պատրաստուելնուն լուրը Գաղղիա հասնելով՝ կառավարութիւնը պարտաւորեցաւ տալու հրամանը մէկդի թողուլ ու Գաղղիացի գնդերը քիչ մը ժամանակ ալ Հռոմայի երկրին մէջ ձգել։ Եւ իրաւցընէ՝ արտաքին տէրութիւններէն քահանայապետական երկրին պաշտպանութեան համար եկող հասնող հազարաւոր օտարական զօրքերն օրէ օր Իտալացի հայրենասէրներուն աւելի եւս գրգիռ կ'ըլլային իրենց սկսած Իտալական միութեան գործքն աւելի եւս եռանդմամբ յառաջ տանելու ջանալ ու փութալ։ Տոսկանայի ու Ռոմանեայի մէջ ազգային գործակալները Հռոմայէն եկած բազմաթիւ փախստականներուն գրգռութեամբն ու օգնութեամբը խել մը զէնք, պատերազմի պաշար ու նոր ազատական զօրք ժողված՝ օտար զօրաց դէմ խաւրելու սկսան։ Տոսկանայէն (1860․ Օգոստոս ամսոյն սկիզբները) պզտիկ գունդ մը

350 ազատական զօրք Հռոմայի երկիրը մտաւ ու սկսաւ հասած տեղերն ապստամբութեան գրգռել։ Լամորիսիէր զօրապետն անոնց դէմ պզտիկ բաժին մը ձիաւոր զօրք խաւրեց, որոնք անոնցմէ քանի մը հոգի վիրաւորեցին ու սպաննեցին եւ մնացածներն իրենց տեղը ետ քշեցին։ Թէպէտ եւ Լամորիսիէր քահանայապետական երկրին կարեւոր տեղերն ամրացընելու եւ զանիկայ ամէն կերպով ապստամբութենէ ապահովցընելու կը ջանար. բայց բնակիչքը յեղափոխութիւնը յառաջ տանելէն չէին դադրեր. ասդին անդին ապստամբութեան գործքերը կը յաճախէին։ Պէնեւենտ քաղաքը (Օգոստ. 23.) ապըստամբութեան դրօշը տնկելով քաղքին մէջ գտնուող քահանայապետական զօրքը դուրս վռնտեց։

Գուրինի դահլիճը կը տեսնէր որ ա՛լ պիտ՛որ չկարենայ ազատական գնդերը Հռոմայի երկիրը՝ մանաւանդ Ումպրիա ու Անգոնայի մարզը մտնելէն երկայն ատեն արգելուլ, Հռոմայեցիներէն ալ օրէ օր աւելի եւս կը գրգռուէր՝ որ Հռոմայի երկիրը գրաւելու սկսի։ Միանգամայն կը տեսնէր ու կ՚իմանար որ Լամորիսիէր իր օտարական գնդերն ամէն դի՝ մանաւանդ Ումպրիայի ու Անգոնայի մէջ տարածելով ու քահանայապետէն ապստամբողներուն սպառնալիք ընելով՝ ամենուն սիրտն ահով դողով կը լեցընէր։ Ասոնք տեսնելով՝ Հռոմայի երկրին բնակիչներուն իրենցմէ եկող պատգամաւորներուն ձեռքովը ծանոյց՝ որ կը բաղձայ ու կը ջանայ իրենց վիճակը փոխել լաւագունացընել։ Ետքը հաստատութեամբ որոշեց՝ որ ա՛լ ամէն նկատմունքը մէկ դի թող տալով՝ Իտալական բանակին մէկ մասին քահանայապետական երկիրը մտնելու հրաման տայ։ Բայց Սարդինիայի տէրութիւնն առանց Նաբոլէոն կայսեր կամքն ու միտքը ճանչնալու չէր ուզեր ու չէր կրնար Հռոմայի երկիրը զօրք խոթելու զա-

նիկայ գրաւելու համարձակիլ։ Ուստի Վիկտոր Էմմանուէլ թագաւորն իր յատուկ ձեռօքը Նաբոլէոն կայսեր աս նիւթին վրայ նամակ մը գրեց ու զանիկայ երկու յաջողակ անձանց՝ Չալտինիին ու Ֆարինիին ձեռքովը կայսեր խաւրեց, որոնք թագաւորին թուղթն անոր տալէն ետքը իրեն հասկըցուցին՝ որ եթէ Սարդինիայի կառավարութիւնն Իտալիայի յեղափոխութեան ընթացքին չհետեւիր ու հայրենասիրաց ջանքին չնպաստեր՝ բոլոր թերակղզւոյն վիճակը շատ գէշ կ'ըլլայ։ Կ'ըսուի թէ Նաբոլէոն ան ատեն աս երկու պատգամաւորաց պատասխան տուած ըլլայ՝ թէ "Ընելիքնիդ ըրէք, բայց շուտ ըրէք"։ Ասոր վրայ Դուրինի կառավարութիւնը ալ առանց ժամանակ կորսնցընելու սկսաւ ժրութեամբ գործել. առաջ ազատակամ զօրաց գնդերն արձակեց ու իր բանակին մէկ մասը Գենուայի մէջ ու քահանայապետական սահմանին վրայ կեդրոնացուց։ Բայց զօրաց յառաջ քալելու հրաման չտուած՝ (Սեպտ. 7.) քահանայապետական կառավարութեան իր վերջնագիրը Ցելլա Մինեբրուա կոմսին ձեռքովը խաւրեց՝ պահանջելով անկից որ օտար երկիրներէն եկած զօրքն արձակէ, ապա թէ ոչ՝ ինքն ալ կը ստիպի զինուք յառաջ քալել ու գործել։ Աս վերջնագրոյն՝ (Սեպտ. 11.) Անդոնելլի կարդինալը ժխտական պատասխան տուաւ։ Ասկից երկու օր առաջ Իտալական զօրաց վերին հրամանատարը Ֆանդի՝ Լամորիսիէր զօրապետին գրեց՝ որ ժողովրդոց հայրենասիրական շարժումն ու գործողութիւնը քահանայապետական զօրքով զսպելն ու խափանելն ինք պատերազմի դէպք կամ պատճառ սեպելով՝ իր զօրօքը նոյն ժողովրդոց օգնելու պիտ'որ փութայ։

Այսպիսի բանակցութիւնը դեռ շարունակած ատենը, Հռոմ խաւրուած վերջնագրոյն պատասխանը

չհասած՝ Իտալական կամ սարդինիական բանակին մէկ մասը 60,000 (ըստ այլոց՝ միայն 35,000) հոգի (Սեպտ. 10.) երկու բաժին կամ թեւ բաժնուած սկսան Հռոմայ երկիրը մտնել, մէկը Ապենինեան լերանց արեւմտեան կողմանէ դէպ ի Տիբերիս գետին ձորը քալելով, իսկ միւսը՝ Չալտինի զօրապետին հրամանին տակ Ադրիական ծովուն եզերաց շիտկութեամբն Անգոնայի վրայ երթալով։ Սարդինիայի կառավարութիւնն իր զօրքը քահանայապետական երկիրը խաւրելուն պատճառները ցուցընելու համար՝ (Սեպտ. 12.) յայտարարութիւն մը հանեց, որուն մէջ բոլոր աշխարհի կը ծանուցանէր՝ որ Հռոմէական գաւառները քահանայապետին հրամանաւ զինուորաց բազմութեամբ զսպուելով՝ Իտալացւոց բաղձացած միութիւնը կը խափանուի։ Քահանայապետին յորդորանքովը բոլոր Եւրոպայէն եկած զինուորներով Հռոմայեցիներուն կապուիլ կաշկանդուիլը՝ ամէն Իտալացւոց սիրտը դառնացուց։ Սարդինիայի կառավարութիւնն ազատակամ զօրաց քահանայապետական երկիրն արշաւելն երկայն ատենէ ի վեր կ'արգելուր. բայց հիմայ ժողովրդոց գրգռութիւնն արտաքոյ կարգի ըլլալով ու Նէապոլսոյ յեղափոխութիւնն ալ վրայ գալով՝ ալ հնարաւոր չէ պատերազմը խափանել։ Թէ որ Սարդինիայի կառավարութիւնը բոլոր ազգին բաղձանացը դէմ կենալու ըլլայ՝ ան ատեն ալ անիշխանութիւնը գլուխ կը վերցընէ, եւ ասով կառավարութիւնն ազգին ու բոլոր Եւրոպայի առջին յանցաւոր կ'երեւայ։ Աս պատճառաւ Թագաւորն Ումպրիայի ու Անգոնայի մարզին բնակչաց պատգամաւորներն՝ որոնք անոր պաշտպանութիւնը կը խնդրէին՝ ընդունեցաւ ու Հռոմայի դահլճէն պահանջեց որ օտարազգի զօրքերն Իտալիայէն հեռացընէ։ Թէ որ ասիկայ չկատարուելու ըլլայ՝ Թագաւորն ալ իր զօրքը սահմանէն ներս

պիտ՛որ խաւրէ ու ան ատեն գաւառներուն բնակիչքն ազատութեամբ իրենց բաղձանքը պիտ՛որ յայտնեն։ Աս ղենեալ միջամտութիւնը կամ միջնորդութիւնը միայն գաւառներուն համար է. Թագաւորը Հռոմ քաղքին իրաւունքը կ՚ուզէ պահել ու յարգել։

Սարդինիայի կողմանէ աս գործողութիւններն եղած ատենը՝ Հռոմի կառավարութիւնը Նաբոլէոնին այլ եւ այլ խօսքերուն ու խոստմունքներուն վստահանալով կը յուսար որ Գաղղիա քահանայապետին պիտ՛որ օգնէ ու անոր երկիրներուն պաշտպան պիտ՛որ ըլլայ։ Աս ակնկալութեամբ Անդոնելլի կարդինալը Լամորիսիէր զօրապետին գրեց որ Նաբոլէոն կայսրը Վիկտոր Էմմանուէլին գրած է որ եթէ Սարդինիա քահանայապետին երկիրներուն վրայ յարձակելու ըլլայ՝ ինքն ալ զէնքով անոր դէմ պիտ՛որ դնէ։ Հռոմ աս յուսոյ մէջ եղած ատեն՝ Սարդինիայի զօրքը քահանայապետական երկիրը մտնելու սկսած էին։ Լամորիսիէր զօրապետն ան ատեն իր ձեռաց տակն ունէր իբր 20,000 զօրք, զորոնք երեք բաժին ըրած էր. ասոնց մէկը Մաչերադայի դաշտը կը բռնէր, երկրորդը Սբոլէդոյի ու Դեռնիի մէջ կեցած՝ Տիբերիսի ձորին կողմանէ գալու թշնամւոյն կը սպասէր, իսկ երրորդը՝ նոյն իսկ Լամորիսիէրին անմիջական հրամանին տակ՝ Ֆոլինեոյի դաշտին վրայ առջի երկու բաժիններուն մէջտեղը շարուած՝ Ապենինեանց կողմանէ գալու թշնամեաց գնդերուն դէմ ելլելու, կը ջանար անոնցմէ առաջ Անդոնա հասնիլ ու կամաց կամաց իր գլխաւոր զօրութիւնը հոն ժողվելով՝ ուրիշ գաւառներուն վրայ ալ հսկել։ Բայց Չալտինիին հրամանին տակ ըլլող Սարդինիայի զօրաբաժինն անկից յառաջ Անդոնայի մօտենալով՝ նոյն բերդաքաղքին հարաւային կողմը Օզիմոյ ու Գաստելֆիտարտոյ քաղաքներուն բարձրութեանց վրայ հասաւ ու թշնամւոյն

գալուն կը սպասէր։ Լամորիսիէր (Սեպտ. 18.) իր գնդերովը թշնամւոյն մօտեցաւ ու կ'ուզէր անոնց վրայ յարձակելով զիրենք ետ քշել կամ ցրուել ու Անգոնա մտնել։ Գաստելֆիտարտոյի առջեւ կռուին անհնարին սաստկութեամբ սկսաւ, երկու կողմանէ ալ շատ մարդիկ ինկան։ Լամորիսիէր պզտիկ գնդի մը առջեւն անցած քաջասրտութեամբ յառաջ քալեց ու իր բանակէն բաժնուելով առջեւն եկող թշնամիները ջարդելէն ետքը՝ անոնց բանակը պատռեց, յաջողութեամբ Անգոնա մտաւ։ Երկրորդ օրը քահանայապետական բանակն առանց հրամանատարի մնացած ըլլալով ու թշնամիներէն պաշարուելով՝ ամէն զինուորներն ալ զէնքերնին թողուցին ու անձնատուր եղան։ Բանակին մէջ գտնուող քահանայապետական երկրէն ժողվուած իտալացի զինուորները կռուին սկսած ատենն իրենց ընկերները թողուցած իտալացւոց կողմն անցած էին, որոնց հետ մէկտեղ իրենց ընկերներուն դէմ պատերազմեցան։ Լամորիսիէր իբր 8000 հոգւով Անգոնայի բերդին մէջ ամրացած՝ քանի մը օր թշնամեաց պաշարման դէմ կեցաւ, որոնք ծովու եւ ցամաքի կողմանէ բերդը ռմբակոծելով՝ վերջապէս ստիպեցին զԼամորիսիէր բերդն անոնց յանձնել ու իր զօրքով ետ քաշուիլ։ Սարդինիացիք քահանայապետական երկիրը մտնելէն իբր երեք շաբաթ ետքը՝ Հռոմ քաղքէն ու անոր սահմանէն զատ, (որն որ Ժառանգութիւն Ս. Պետրոսի կ'ըսուի,) քահանայապետական երկրին ուրիշ ամէն գաւառները գրաւեցին։ Աս ըլլալէն ետքը քահանայապետին ծառայութեան համար այլ եւ այլ ազգերէն կազմուած բանակը լուծուեցաւ եւ ամէն մարդ իր երկիրն ու տեղը դարձաւ։

Քահանայապետական երկրին գաւառներուն Սարդինիայի զէնքերով առնուելուն վրայ արտաքին տէրու-

*թիւնները, չէ թէ միայն Աւստրիա ու Սպանիա, հապա նոյն իսկ Սարդինիայի բարեկամը Գաղղիա, ինչպէս նա և Ռուսիա ու Պրուշ իրենց տհաճութիւնը ցուցըրցին ու բողոք ըրին, անանկ որ Գաղղիա ու Ռուսիա իրենց դեսպաններին ալ Դուրինէն ետ կանչեցին։ Իսկ Անգղիայի դահլիճը՝ ինչպէս Նէապոլայ բոլոր երկրին նոյնպէս և քահանայապետական երկրին գաւառներուն առնուելուն վրայ չէ թէ միայն տհաճութիւն չցուցուց ու բողոք չըրաւ, հապա նա և արտաքին գործոց պաշտօնէին ձեռքովը նոյնին համար Սարդինիայի կառավարութեան գովութեան և ուրախակցութեան խօսքեր գրեց։ Բայց Թէպէտ և այսպէս ի սկզբան Եւրոպայի տէրութեանց շատերը Հռոմայի երկրին մեծ մասին Սարդինիայի կամ Իտալիայի Թագաւորութեան անցնելուն դժկամակ եղան ու հակառակեցան, սակայն գործունեայ կերպով միջամտութիւն չըրին ու առնուած գաւառներուն իրենց օրինաւոր վեհապետին ետ տրուելուն համար զօրաւոր միջոցներ չբանեցուցին։*

*Իսկ Սարդինիայի դահլիճը կամ յատկապէս պաշտօնէից դահերէցը Գաւուր արտաքին տէրութեանց աս եղածներուն վրայ ցուցըրցած տհաճութիւնն ու ըրած բողոքը չնկատելով, Վիկտոր Էմմանուէլ Թագաւորը Նէապոլիս և ուրիշ նոր առած տեղերին ըրած ճամբորդութենէն իր մայրաքաղաքը դառնալէն ետքը՝ առանց ժամանակ կորսնցընելու ջանք դրաւ Իտալիայի Թագաւորութեան կանգնուիլն ու Վիկտոր Էմմանուէլ Բ. Սարդինիայի Թագաւորին Իտալիայի Թագաւոր ըլլալը հաստատել տալ ու հրատարակել։ Ուստի իր ջանիւքը* (1861. *Յունու.*) *բոլոր մինչեւ ան ատեն Սարդինիայի Թագաւորին իշխանութեան տակ մտած գաւառներուն մէջ պատգամաւորներու ընտրութիւն ըլլալով, Դուրինի մէջ* (*Փետր.* 18.)

թագաւորութեան ընդհանուր խորհրդանոցը ժողվեցաւ։ Այսր մէջ ամէն ժողովելոց հաւանութեամբը Վիկտոր Էմմանուէլ Բ․ Սարդինիայի թագաւորն Իտալիայի սահմանադրական թագաւոր անուանեցաւ ու Իտալիայի թագն իրեն տրուեցաւ։ Նոյնպէս ամենուն միաբան հաւանութեամբը վճռուեցաւ՝ որ Սարդինիայի սահմանադրութիւնն առանց փոփոխութեան բոլոր Իտալիայի թագաւորութեան սահմանադրութիւնն ըլլայ։ Խորհրդանոցին աս երկու որոշմունքը կամ վճիռները (Մարտ 15․) բոլոր Իտալիայի մէջ հրատարակուելով՝ ամէն դի անոնց պատճառաւ ընդհանուր ուրախութեան ցոյցերով մեծամեծ հանդէսներ կատարեցան*։ —

Ահաւասիկ վերջին 1859ին մեծ պատերազմէն ետքը մինչեւ 1861 տարւոյն սկիզբները՝ Սարդինիայի տէրութեան Գաղղիայի կամ Նաբոլէոն կայսեր օգնութեամբն ու ըստ մասին Անգղիայի բարեկամութեամբը՝ քիչ մը Կարիպալտիին ազատական գնդերուն՝ քիչ մ՚ալ բուն Սարդինիայի զօրաց զէնքերովը գրաւած երկիրներուն ու զանոնք իր երկրին հետ միացընելով կազմած ու յօրինած Իտալիայի թագաւորութեան նկարագիրը։ Թէպէտ եւ Իտալացի հայրենասէրներն իրենց այնչափ ջանքովը թերակղզւոյն մեծագոյն մասն անոր թագաւորութեան տակն առին. բայց այսչափով ո՛չ իրենք գոհ են ու ո՛չ Իտալիայի մի միայն թագաւորութիւնը կատարեալ

* Աս ուրախութեան ցոյցերն ամէն տեղաց աւելի Դուրինի մէջ տեսնուեցաւ. բայց նոյն ուրախութեան օրերը դեռ չլմնցած՝ Իտալացի հայրենասիրաց համար շատ տխուր դէպք մը ամէն բան տակնուվրայ ըրաւ։ Պաշտօնէից գահերէցն ու Իտալիայի նոր թագաւորութիւնը կանգնողներուն գլխաւոր նեցուկն ըլլող Գաւուր կոմսը յանկարծակի ուղեղի հիւանդութեամբ անկողին ինկաւ ու քանի մը ամիսէն ետքը (1861․ Յունիս 6․) վախճանեցաւ։

ու ամբողջ կը սեպուի, որովհետեւ Վիկտոր Էմմանուէլէն զատ ուրիշ տիրողներ Իտալիայի Թերակղզւոյն ու Իտալացւոց մէկ մասին վրայ կ'իշխեն: Դեռ Հռոմ քաղաքը կայ իր սահմաններովը. Վենետիկ ու Վենետական գաւառները դեռ ան միակ Թագաւորութենէն դուրս են: Նա եւ Լոմբարտիայի մէկ մասը հզօր բերդերով նոյն Թագաւորութեան սահմանին մէջ մտած չէ: Բայց ամենէն աւելի Իտալացիները վշտացընող հանգամանքն ան է՝ որ մէկ դիաց Իտալիայի քանի մը պզտիկ ու մեծ տէրութիւնները յեղափոխականաց հնարքովը Իտալիայի Թագաւորութեան մասեր եղած ատեն՝ ուրիշ կողմանէ բուն Իտալիայի երկու գլխաւոր տեղերն, այսինքն Սաւոյայի նահանգն ու Նիսա քաղաքն իր սահմաններովը նոյնէն կը զատուին ու օտար տէրութեան կը տրուին: Նաբոլէոն Բ. կայսրն Իտալիայի կազմուելու միակ Թագաւորութեան օգնած ու օտարաց ձեռքէն քանի մը երկիրներ առնելով անոր տուած ատեն՝ ինք անոր մէկ երկու տեղերը կ'առնէ ու Գաղղիայի հետ կը միացընէ:

Բայց Նաբոլէոն կայսրն աս առած տեղերուն համար Իտալիայի Թագաւորութեան իրեն երախտագիտութիւնն ուրիշ կողմանէ ցուցուց. ինչու որ Թէպէտ եւ Սարդինիացւոց քահանայապետական երկիրը մտնելուն ու անոր գաւառները գրաւելուն վրայ ի սկզբան զայրացաւ, մինչեւ ինչպէս ըսինք՝ իր դեսպանն ալ Դուրինէն ետ կանչեց, իբրեւ թէ Սարդինիայի հետ թշնամացած ըլլալը ցուցընելու համար. բայց ետքէն ամէն թշնամութեան կամ բարկութեան նշանները վերցան ու մնացին բարեկամական կապերն՝ առանց թշնամութեան պատճառ ըլլող դէպքը փոխուելու, այսինքն քահանայապետական գաւառներն ետ տրուելու: Նա եւ Եւրոպայի տէրութեանց մէջ Նաբոլէոն կամ Գաղղիա առջիններուն մէկն

եղան՝ որոնք Իտալիոյ նոր թագաւորութիւնն ընդունեցան ու Սարդինիոյ Վիկտոր Էմմանուէլ թագաւորը Իտալիոյ թագաւոր ճանչցան։ Ի վերայ այսր ամենայնի Պիոս Թ. քահանայապետն իր երկրին աս թագաւորութեան մէջ առնուած գաւառներն՝ ըստ իրաւանց՝ միշտ ետ կը պահանջէ ու ամէն ուղիղ մտածող եւ իրաւասէր մարդիկ անոր պահանջման արդարութիւնը կը ճանչնան։ Գաղղիոյ կայսրն ուրիշ կաթողիկէական տէրութեանց հետ միանալով աս պահանջումը կրնար դիւրութեամբ կատարել։ Բայց ինք միայն քանի մը գունդ Գաղղիացի զօրք Հռոմայ ու անոր սահմաններուն մէջ Ս. քահանայապետին անձին ու մայրաքաղքին պաշտպանութեան համար թողուցած է՝ որ Իտալացի հայրենասէրք ու Կարիպալտի իրենց յանկարծական արշաւանքովը մայրաքաղքին տէր չըլլան։ — Նէապոլսոյ Փրանկիսկոս Բ. թագաւորն իր ընտանիքովը Հռոմ նստած ու Եւրոպայի շատ տէրութիւններէն իբրեւ Երկու Սիկիլիոյ օրինաւոր թագաւորը ճանչցուած, ժամանակին պարագայից ու հիմակուան հանգամանաց փոփոխութեան կը սպասէ իր օրինաւոր հայրենի ժառանգութիւնը նորէն ձեռք բերելու, որուն յաջողելուն իր հաւատարիմ հպատակներէն շատերը կը բաղձան եւ ըստ կարի կ՛աշխատին։ — Աւստրիա բաւական զօրաւոր ըլլալուն եւ Վենետական գաւառներն ու Լոմպարտիոյ մէջ ունեցած հզօր բերդերը Կարիպալտիին ազատական գնդերուն կամ Սարդինիոյ զօրաց յարձակմունքէն եւ ուրիշ ամէն վտանգներէն ազատ պահելու համար իր քաջ կրթուած զօրաց մէկ մասը հարկաւոր եղած տեղերը կեցուցած ըլլալուն, անոր Իտալական ստացուածներն Իտալիոյ թագաւորութեան մէջ առնելու բաղձացողներն իրենց աս բաղձանքը կատարելու համար փորձեր ընելու չեն համարձակիր։ Մանաւանդ որ

Թէ Գաղղիա ու Անգղիա ու Թէ ուրիշ տէրութիւններն ամէն առթի մէջ յայտնապէս կը ցուցընեն որ իրենք Իտալացւոց Վենետիկի գաւառներն Աւստրիայէն առնելու համար փորձեր ընելուն ամենեւին չեն կրնար հաւանիլ։

Աս վիճակի ու հանգամանաց մէջ կը գտնուի Իտալիայի Թերակղզին ու Իտալիայի նոր Թագաւորութիւնը 1861 տարւոյն սկիզբները, որուն մէջ մենք ալ զանիկայ թող տալով՝ անոր պատմութեանը վերջ կու տանք։ Վասն զի անկից ետեւ երկու երեք տարւան մէջ նոյն Թերակղզւոյն վրայ հանդիպած անցքերը՝ քանի մը պզտիկ կամ մասնական կռիւներէն զատ՝ Կարիպալտիին իր ազատակամ զօրքովը (Սարդինիայի կառավարութեան հրամանին դէմ) Հռոմ քաղքին վրայ յարձակելու համար ըրած պատրաստութիւններն ու փորձերը, ինչպէս նա եւ ասդին անդին եղած քաղաքային կարգաւորութիւններն են, որոնք դեռ կատարած մը չունեցան. նա եւ տեղ տեղ եղած փոփոխութիւններն ալ գլխաւոր յեղափոխութեան փոքր հետեւանքն են։ Ուստի պատշաճ չենք սեպեր այսպիսի ու ասոնց նման դէպքերու համար պատմութիւննիս շարունակել. յուսալով՝ որ ապագայի մէջ Իտալիայի համար աւելի ուրախացուցիչ ու հաստատուն իրաւանց վրայ հիմնած փոփոխութիւններ ըլլալով, աւելի եւս հաստատուն ու կարեւոր նիւթեր կը պատրաստուին պատմելու, որոնց համար ժամանակաւ անշուշտ յաջողակ պատմիչներ կը գտնուին։



# ՑԱՆԿ